# ԹՈՒԿԻԴԻԴԵԱՅ

ՈՐԴՒՈՅ ՈԼՈՐԵԱՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊԵԼՈՊՈՆԵՍԱԿԱՆ ՄԱՐՏԻՆ

ՅԵՂԵԱԼ Ի ՀԱՅ

Հ. ԱԲՐԱՀԱՄՈՒ ՃԱՐԵԱՆ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ





ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ Ս. ՂԱԶԱՐՈՒ

1887

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## Դ ԳՐՈՑ



Ա-Բ. Նշկահել Մեսսենիացւոց զԱթենացիս. և արշաւանք Պելոպոնեսացւոց յԱտտիկէ, և Աթենացիք 'ի Պելոպոնէս: Գ-ԻԳ. Դեմոսթէն զօրավար Աթենացւոց 'ի Պիւղոս, նկարագիր կղզւոյն և խիստ պատերազմ 'ի վերայ նորա ընդ Աթենացիս և ընդ Լակեդեմոնացիս. և պաշարումն Սպարտացւոց 'ի Սփակտերիա կղզւոջ: ԻԴ-ԻԵ. Ճիգն Սիրակուսացւոց 'ի վերայ Հռեգիոնի և նաւամարտ 'ի Մեսսինիա: ԻԶ-ԽԱ. Երկարել պաշարման Սփակտերիոյ, առումն կղզւոյն յամառ պատերազմաւ, և վարել գերւոյն յԱթէնս: ԽԲ-ԽԸ. Ծովամարտ Աթենացւոց և յաղթութիւն նոցա 'ի վերայ Կորնթացւոց. այլև այլ արշաւանք նոցա 'ի Կորկիւրա 'ի քակտումն իշխանութեան ազնուապետաց, որոց և կոտորած անգութ: ԽԹ-ԾԷ. Ասպատակք և տիրապետութիւնք Աթենացւոց յայլև այլ տեղիս մինչև 'ի Լակոնիա, և յերեսաց նոցա երկիւղ 'ի Լակեդեմոն: ԾԸ-ԿԷ. Աշխարհաժողով Սիկիլիացւոց 'ի վախճան առնել առմին գժտութեանց և հաշտութիւն նոցա յիւրեանս: ԿԸ-ՀԵ. Խռովք 'ի Մեգարա, և պատերազմունք վասն այնորիկ ընդ Աթենացիս և ընդ Լակեդեմոնացիս: ՀԶ-ՃԱ. Դարանակալ հնարք Աթենացւոց 'ի յեղափոխութիւն Բիովտիոյ. հռչակաւոր արշաւանք Բրասիդայ 'ի Թեսսալիա. մերժել Բիովտացւոց զԱթենացիս 'ի Բիովտիոյ: ՃԲ-ՃԻԷ. Բրասիդայ ընդ քաջութեան և իմաստուն քաղաքավարութիւն յազատութիւն քաղաքանւոյն 'ի ձեռանէ Աթենացւոց. և զարմանալի նահանջ զօրու նորին: ՃԻԸ-ՃԼԷ. Բրասիդայ ապստամբել զերկիր Թագաւորութեան Մակեդոնացւոց, կըռուել նորա 'ի վերայ Սկիոնի ընդ Աթենացիս, և վայրապար փորձ' առնուլ յանկարծ զՊոտիդէա:

# Գ Ի Ր Ք Գ

Ա. Ի յաջորդել ամարայնոյս և յերևել ցորենոյն 'ի բոյս գալար, նաւք երկոտասան 'ի Սիրակուսացւոց նոյնչափ ևս 'ի Լոկրացւոց հասեալ կալան զՄեսսենէ 'ի նոցունց իսկ 'ի Մեսսենիացւոց 'ի նոյն հրաւիրեալք, և յետս եկաց Մեսսենէ 'ի ձեռանէ Աթենացւոց: Զայս արարին Սիրակուսացիք, զի տեսանէին զմուտ թշնամեաց դիւրաւ ընդ այն 'ի Սիկիլիա, և խիթային իսկ եթէ գուցէ յաւուր միում հզօր ձեռամբ արշաւեսցեն ընդ այն Աթենացիք: Իսկ Լոկրացիք առ քինու ատելութեան 'ի նոյն յորդորեալք, ընդ Հռեգիոնացիս կամելով հարկանել զնոսա ընդ ծով և ընդ ցամաք, և 'ի վտարանդեաց Հռեգիոնացւոց ապաւինելոց առ իւրեանս, համագունդ զինուորեալ միջամուխ եղեն յերկիր նոցա, արգելուլ զնոսա չտալ ձեռն Մեսսենիացւոց: Եւ զի 'ի բազմաց հետէ յառանին աղմուկս էր Հռեգիոն, վասն որոյ և անկարացեալ վանել զԼոկրացիս ընկճեցաւ 'ի նոցանէ: Որոց աւար առեալ զերկիրն ցամաքախումբ զօրօքն՝ մեկնեցան. բայց նաւատորմ նոցա պահէր զՄեսսենէ, և զայլ ևս նաւս զինեալ հանդերձէին, յորմէ իբրու 'ի միջակէտ կայանէ ածել պատերազմ 'ի վերայ թշնամւոյն:

Բ. Ընդ ժամանակս ընդ այնոսիկ 'ի գարնանի, չև ցորենոյ յօձ ելեալ՝ արշաւանս եդին Պելոպոննեսացիք դաշ-

նաւորօք հանդերձ յԱտտիկէ, որոց զօրավարէր Ագիս որդի Արքիդամեայ արքայ Լակեդեմոնացւոց, և նստեալ հարկանէր զերկիրն: Առաքեցին և Աթենացիք 'ի Սիկիլիա քառասուն նաւս կազմս ամենայն սարուք հանդերձ, և զԵւրիմեդոն և զՍոփոկլէս զօրավարս, զի Պիւթոդորոս երրորդ ընկեր նոցին՝ վաղ իսկ ժամանեալ էր 'ի Սիկիլիա: Հրաման եղև սոցա 'ի նաւելն առ Կորկիւրաւ՝ հոգ խնամոյ ունել բնակչաց քաղաքին, որոց նեղեալ տագնապէին յերեսաց ապստամբութեանց հալածական փախստէից իւրեանց ամրացելոց 'ի լերինս. քանզի և վաթսուն նաւք Պելոպոնեսացւոց եկեալ 'ի Թիկունս վտարանդեացս, 'ի սովել քաղաքին խորհէին անջան առնուլ զայն: Դեմոսթենէս՝ որ յետ դարձին իւրոյ յԱկառնանիոյ, զռամկականի վարէր կեանս, 'ի խնդրոյ նորին ինքեան տուաւ նմա իշխանութիւն ածելոյ զխումբ նաւացս զՊելոպոնեսաւ:

Գ. Հասեալ նոցա հանդէպ Լակոնիոյ, և 'ի լուր լինելն եթէ նաւք Պելոպոնեսացւոց յառաջագոյն վաղ իսկ 'ի Կորկիւրա են, աճապարեցին և Եւրիմեդոն և Սոփոկլ. բայց Դեմոսթէն խորհէր 'ի Պիւլոս նախ ելանել, և զկարևոր ամրութիւնն 'ի գլուխ տարեալ անդանօր, յառաջել անտի ապա 'ի դէմ եդեալ տեղին: Ի հակառակել այսմ զօրավարացն, յանկարծակի մրրիկ հողմոյ վարեաց զնոսա 'ի Պիւլոս. և 'ի նոյն խորհուրդս պնդէր միշտ Դեմոսթէն փութալ պարապել զվայրն, որոյ վասն և ընկերեալ նորա արշաւանին, ասէր, և ցուցանէր զլիութիւն փայտից և զքարանց, և թէ 'ի բնէ իսկ ամուր էր տեղին և անշէն ամայի, որպէս և տարածութիւն երկրին շուրջանակի: Հեռի էր Պիւլոս չորեքհարիւր ասպարիսաւ 'ի Սպարտայ, 'ի կողմն մի երկրին՝ որ մասն էր երբեմն Մեսսենիոյ, Կորիփասիոն անուն տալով նմին Լակեդեմոնացւոց: Յոլովք են սարաւանդք 'ի Պելոպոնէս, զորս և դիւրին է առելն ունել, եթէ կամ էր նմա ծախել զգանձս հասարակաց 'ի նոսա: Այլ Դեմոսթէն կարևորագոյն համարէր զտեղին քան զայլն

զամենեսին. զի նաւամատոյցք էին 'ի սմա, և զի անդստին 'ի վաղ ժամանակաց մտերմութեամբ գոլով ընդ սոսա Մեսսենիացւոց, և ստէպ միաշուրթն ընդ Լակեդեմոնացիս, մարթ էր սփռելով անտի ասպատակս, բազում չարիս հասուցանել թշնամւոյն. դարձեալ և պահանորդս լինել սոցա վայրացն հաւատարիմս:

Դ. Եւ զի չկարաց նա հաւանեցուցանել ո՛չ զզօրավարս և ոչ զզօրականն, 'ի վեր հանեալ զխորհուրդն և կարգապետաց՝ զտեղի էառ անդանօր 'ի պատճառս հողմոյն, մինչև զօրականին հանդարտելոյ պարապութեամբ վառեցաւ խիղճ ցանկութեան պարսպելոյ զվայրն որմով: Եւ փութանակի ձեռն 'ի գործ արարին. և առ 'ի չգոյէ քարահատ երկաթի գործեաց, ընտրանօք բերէին զվէմս, և ըստ յարմարութեան կցեալ ագուցանէին յերեարս. չունելով և տաշտս 'ի պէտս տաղախի, 'ի թիկնամէջս իւրեանց 'ի միջնողունս բառնային զայն. և երկոքումբք ձեռօք 'ի կորացեալ թիկունս կոյս մածելովք ամփոփել զլուծումն տաղախին, զի մի՛ սորեալ հոսիցէ: Եւ ամենայն փութով պնդութեամբ յառաջեցուցանէին զգործն 'ի լրումն, մինչչև Լակեդեմոնացւոց երևեալ՝ ամրացուցանել զդիւրամատոյց վայրս կղզւոյն, զի 'ի բազում ուրեք 'ի բնէ իսկ ամուր էր վայրն անձեռագործ, և չունէր պէտս որմով պարսպելոյ:

Ե. Դէպ եղև 'ի ժամանակին յայնմիկ խմբել Լակեդեմոնացւոց տօնս, և ընդ լուր գործոյս ոչինչ իմն առնել թուէին, իբրու եթէ ընդ երևել իսկ իւրեանց չկարասցէ ժուժալ թշնամին, և կամ զինու բռնութեամբ յարձակեալ և առնուցուն անաշխատ զվայրն, զի և բանակ զօրուն նոցա դեռ ևս յԱտտիկէ գոլով՝ չկարէին հասանել 'ի ժամուն: Իսկ Աթենացիք ամրացուցեալ զցամաքակողմն կղզւոյն՝ ուր և պէտք եղեն զաւուրս վեց, և զԴեմոսթենէս հնգօք նաւուք թողեալ անդր 'ի պահ, և ինքեանք առխեթեալ զնաւս խաղացին 'ի Կորկիւրա և 'ի Սիկիլիա:

Զ. Իբրև լու եղև առումն Պիւղոսի, աճապարեցին Պե-

լոպոնեսացիք որ յԱտտիկէ էին՝ դարձ առնել 'ի հայրենիս. զի Լակեդեմոնացիք և Անգիս արքայ գործ կարևոր 'ի մտաց զդէպս Պիւղեայ համարէին, և զի դեռ ևս 'ի դալարուտ գոլով ցորենոյ՝ կանուխ էր արշաւանն, և պակասէր բազմութեան ամբոխին կերակուր: Դարձեալ և ցրտասաստոյց հողմունք քան զօրէնս բնութեան եղանակի գարնայնոյ 'ի վերայ եկեալ, նեղէր յոյժ զզօրն. և այլ ևս բազմադիմի դէպք անակնկալք փութացուցին զնոսա 'ի դարձ, և կարճեցան այսպէս աւուրք ասպատակին յԱտտիկէ զաւուրս հնգետասան միայն:

Է. Ի սոյն աւուրս գումարեալ Սիմոնիդէս զօրավար 'ի պահանորդաց Աթենացւոց ջոկատ մի և ամբոխ բազում 'ի դաշնաւորաց երկրին, յարձակեալ կալաւ մատնութեամբ զԷիոն քաղաք՝ հատուած Մանտէացւոց 'ի Թրակիա թշնամի Աթենացւոց. այլ 'ի հասանել 'ի վերայ Քաղկիդացւոց և Բոտտիացւոց՝ վանեալ հալածեցաւ 'ի նոցանէ, կորուսեալ ոչ սակաւս յիւրոց անտի:

Ը. Դարձ արարեալ Պելոպոնեսացւոց յԱտտիկեայ, խաղացին փութով Սպարտացիք և սահմանորդք նոցա շրջաբնակք 'ի Պիւղոս. իսկ այլք 'ի Լակեդեմոնացւոց այն ինչ ժամանեալ յայլմէ ումեքէ զինուորութենէ դանդաղագոյնս չարժէին: Զայն ետուն և ընդ Պելոպոնէս ձգել 'ի Պիւղոս, պատուէր և առ տորմիղ վաթսուն նաւաց 'ի Կորկիւրա յղեցին. որոց և զանխուլ 'ի նաւաց անտի Ատտիկեցւոց անցեալ ընդ պարանոցն Լևկադեայ 'ի Զակինթոս հասին 'ի Պիւղոս, ժամանեալ էր անդր վաղագոյն և երկրախումբ զօրն: Մինչդեռ 'ի չու էին Պելոպոնեսացիք, ժամ գտեալ Դեմոսթենեայ արձակեաց նաւս երկուս առ Եւրիմեդոն և առ նաւախումբն Աթենացւոց 'ի Զակինթոս ազդ առնել նոցա զվտանգ տեղւոյն, որ և ընդ այս լուր Դեմոսթենեայ ձեպով տագնապաւ ուղւոյ եղեն նոքա: Իսկ Լակեդեմոնացիք պատրաստէին հարկանել զՊիւղոս ընդ ծով և ընդ ցամաք, կարծելով առնուլ զայն դիւրաւ անաշ-

խառ, զի չտապաւ էին կարկատեալ ամրութիւնքն, և տա-
կաւաձեւն էին 'ի նմա պահանորդք: Եւ զի կասկածելով մեա-
յին Լակեդեմոնացիք գալստեան նաւաց Աթենացւոց 'ի
Զակինթեայ յօգնականութիւն պաշարելոցն, վասն որոյ
խորհէին 'ի չմարթանալն կանխել առնուլ զամուրն. փու-
թալ խնուլ զմուտս նաւահանգստին՝ չթողլով նոցա մտել
'ի ներքս: Եւ արդարև կղզեակն Սփակտերիա յարակից
Պիւղեայ ձգեալ ընդ երկայնութիւն, անձուկ զմուտս նաւա-
հանգստին և անքոյթ գործէ, մինչ զի 'ի կողմանէ ամրու-
թեանց Աթենացւոց և Պիւղեայ՝ երկուց միայն նաւաց անցք
էին, իսկ 'ի ցամաք կուսէ ութից կամ ինունց: Կղզեակս
Սփակտերիա անտառախիտ էր, անկոխ և ամայի ունելով
տարածութիւն իբրև հնգետասան ասպարիսաց: Խորհէին
Լակեդեմոնացիք փակել զբերան նաւահանգստին խիտ առ
խիտ նաւուք՝ զառաջս նոցին 'ի ծովակողմն կոյս ուղղելով.
և առ կասկած երկիւղին թէ գուցէ ընդ կղզեակն յարձա-
կեալ կռուեսցին ընդ նոսա թշնամիք, անցուցին և անդր
զօրականս, կարգեցին և 'ի ցամաք երկրին զօրս, և այսպէս
կարծէին անհնարին զելս և անմատոյց գործել Աթենացւոց
զկղզին և զցամաք միանգամայն. զի և ծովափնեայք Պիւղո-
սի բաց 'ի մտից նաւահանգստին աննաւարկելիք՝ չէր ճանա-
պարհ Աթենացւոց մերձենալ յօգնութիւն իւրեանցայոցն,
որով մնայր ինքեանց անկանիլ, և առանց տուժից վտանգաց
առնուլ աներկեայ զանպաշար և զանպատսպար տեղին:
Իբրև հաճոյ թուեցաւ նոցա խորհուրդն՝ անցուցին 'ի կղզ-
զին վիճակաւ ընտրեալ 'ի գնդից գնդից ասպարազէն զօ-
րականս. 'ի սկզբան փոխանակաւ յաջորդէին առքա զի-
բեարս, այլ յետինքն ոյք անցեալ և հաստատութեամբ ըղ-
տեղի կալան անդանօր՝ էին չորեքհարիւր և քսան. և յիլո-
տաց գունդ մի ռամիկապաս, և իշխան զօրուն Եպիտադաս
Մոլոբրեան:

Թ. Տեսեալ Դեմոսթենեայ զպատրաստութիւն Լա-
կեդեմոնացւոց ընդ ծով և ընդ ցամաք, պատրաստեաց և

ինքն զպատերազմիկ նաւս զորս առ իւր ունէր, եհան զպանոսիկ 'ի ցամաք՝ պատուարս յօրինելով նոքօք հանդէպ ամրոցին. զինեաց և զնաւաստին դուզնաքեայ ասպարօք. յորոց յոլովք ողորահիւսք էին, զի անմարթ էր նոցա յանապատ տեղւոջ զէնս կազմել. և ոգւին իսկ յերեսնամթի նաւէ ումեքէ 'ի հինից Մեսսենիացւոց առան, և յազգ ինչ սրընթաց նաւակէ ըստ դիպաց անդր գաելոց: Եւ 'ի Մեսսենիացւոց այսր զարս իբրև քառասուն զինեալ խառնեաց ընդ իւրսն, և զբազումս անզէնս և կամ վարկպարազի զինեալս կարգեաց 'ի կողմն կոյս ցամաք երկրին հանդէպ պատուարացն և յամրագոյն տեղիս, հրաման տուեալ վանել անտի զյարձակումն հետևակազօրուն եթէ գայցեն բախել ընդ նոսա. և ինքն առեալ 'ի զօրուէն իւրմէ զընտիր ընտիրս ասպարազէնս վաթսուն և աղեղնաւորս սակաւս, ել քան զորմն պարսպացն արտաքս 'ի ծովափն, 'ի տեղին՝ ուր կասկածէր փորձել Լակեդեմոնացւոց թափելոյ զօրս 'ի ցամաք: Թէպէտ դժուարամատոյց էր վայրն և 'ի ծով կոյս ժայռուտ, այլ առ կարի յոյժ տկարութեան պատուարացն՝ կարծէր անդրնախ դիմել թշնամին և 'ի նմին թափել զձիգն. քանզի և ոչ ընդ միտ անգամ անցանէր Աթենացւոց եթէ կարիցէ ուրէք երբէք զօրանալ թշնամին 'ի նաւամարտ, վասն որոյ և անփոյթ լինէր զամրութեամբ տեղւոյն. ուր այժմ արդ յայտնապէս տեսանէին դիւրին գոլ նոցա ընդ այն 'ի ներքս անկանել: Ապա յայս թև երկրի 'ի ծով կոյս յառաջակարկառ, կարգեաց զասպարաւորսն արգելուլ զէջս նոցա: Եւ խրախուսեալ յորդորէր զիւրսն օրինակ զայս.

Ժ. « Արք զինուորակիցք իմ և ընկերք վերահաս վըտանգիս, մի' ումեք 'ի ձէնջ լիցի 'ի կարևոր ժամուս իղձ հանճարեղ խորհրդական երևելոյ և խելամուտ մեծութեան մօտալուտ տագնապոյն. այլ բարեյոյս մանաւանդ խիզախել ընդդէմ թշնամեաց, որով կորզել 'ի նոցանէ զյաղթութիւն: Զի յորժամ յայս յետին պայման հարկի ժա-

մանեն իրք, ոչ ևս յնուհետև խորհրդոց պէտք են, այլ համարձակագոյնս դիմելոյ 'ի վտանգս: Բայց սակայն ես բազում ինչ առաւելութիւն 'ի մեր կոյս տեսանեմ, միայն եթէ արութեամբ դիմակալել կամիցիմք, և մի յամբոխէ բազմութեան թշնամեաց վեհերոտեալ մատնտու յաղթութեան լինիցիմք: Տեղին դժուարամատոյց ձեռնտու է մեզ, յորում եթէ պինդ կացցուք, վերամարտիկ այն ընդ մեզ լիցի. իսկ եթէ վերջացեալ կասիցիմք՝ որ դժուարամատոյցն է, դիւրամուտ և անարգել լինիցի, և թշնամին ևս քան զևս յոխորտագոյն անտեղիտալի 'ի նահանջ և պատերազմն յամառ: Ցորչափ 'ի նաւս են, դիւրին է վանել զնոսա. իջեալ նոցա միանգամ 'ի ցամաք, հաւասարեսցի յայնժամ երկուստեք կռիւս: Դարձեալ չէ պարտ մեզ յամբոխէ նոցա կարի ահաբեկել. զի թէպէտ բազմութիւն է, այլ առ դժուարութեան յելս 'ի ցամաք ընդ սակաւուց է մեզ կռուել. արդարև մեծ է բանակ զօրու նոցա, այլ 'ի նաւս և ոչ յերկրի, որոց բազում դիպող յաջողութեան պէտք են 'ի ծովամարտ, և առ 'ի չգոյէ նոցուն հաւասարեսցի թշնամին մերոյինս սակաւութեան: Վստահ եմ աներկբայ 'ի ձեզ յԱթենացիսդ, որք նաւաստականին հմտութեամբ փորձք. եթէ յելանել թշնամւոյն 'ի ցամաք պնդութեամբ ոք զդէմ կալցի, եթէ առ երկիւղի չառաջման կոհակաց և ահագին յարձակման բազմախուռն նաւաց պակուցեալ չվերջանիցէ, ոչ երբէք վանեալ մղի այնպիսին: Արձանացէք ապա պինդ, և 'ի ժայռուտ ծովափանց անտի վարեցէք վանեցէք զխաղմն՝ 'ի վերայ փրկութեան և 'ի վերայ երկրին կռուելով»:

ԺԱ. Ի յորդոր բանիցս յայսցանէ Դեմոսթենեայ և ևս սրտապնդեալ Աթենացւոց, իջեալ նովաւ հանդերձ յափն ծովուն կարգեցան կային 'ի դիմամարտ: Իսկ Լակեդեմոնացիք յառաջեալ 'ի պատուարս անդր ցամաքային զօրօք և քառասուն և երիւք նաւուք, որոց ծովապետ էր Թրասիմելիդաս Կրատեսիկլեայ սպարտացի, որ և յար-

ձակեցաւ 'ի տեղին յորում մնայր նոցա Դեմոսթենէս: Այլ արիաբար դիմակալեալ նոցա Աթենացիք վանէին զնոսա 'ի ծովէ և 'ի ցամաքէ. որոց ոչ կարելով շարժել խմբովին զբազմութիւն նաւաց, 'ի ջոկս ջոկս զնոսա յառաջ մատուցանէին, և արութեամբ պնդութեամբ այր զընկեր իւր խրախուսէր յարձակել վանել զԱթենացիս և հասեալ առնուլ զպատուարսն: Եւ քան զամենեսին 'ի նոսա գեր 'ի վերոյ պայծառացաւ քաջութեամբ Բրասիդաս, որ հրամատար էր միում 'ի պատերազմիկ նաւաց, որոյ և տեսեալ զիշխանակիցս իւր զտրիերապետս և զղեկավարս առ տեղւոյն դժուարութեան դանդաղկոտս մերձենալ 'ի նոյն, զգուշացեալ 'ի խորտակելոյ զնաւս, ձայն տուեալ կարդայր առ նոսա. «Զէ՞ 'ի դէպ առ նաւափայտն խնայելոյ՝ թողուլ թշնամւոյն ազատաբար յերկրիս մերում ամրանալ»: Եւ պատուէր ետ բեկմամբ իւր նաւաց բռնադատել զէջս 'ի ցամաք, և յորդոր մատուցանէր դաշնաւոր մարտակցաց մի՛ դանդաղել 'ի վերայ մեծամեծ երախտեաց Լակեդեմոնացւոց՝ 'ի վտանգ զնաւս իւրեանց դնելոյ, տալ խրել զայնոսիկ մանուանդ 'ի ծանծաղուտս, որո՛վ և է մարթանօք հնարել թափել զօրս 'ի ցամաք տիրանալ մարդկան և երկրին:

ԺԲ. Եւ իբրև այսպէս ածէր շարժէր Բրասիդաս զիւրսն, ստիպեաց զիւրոյ նաւուն զղեկավարն վարել զաստափայտն 'ի ցամաք կոյս. և ինքն 'ի վերայ կամրջի նաւուն յառաջ մատեաւ, և 'ի փորձ փորձելն յէջս 'ի ցամաք՝ հարաւ յԱթենացւոց, և կարեվէր թալացեալ անկաւ 'ի խելս կոյս նաւուն. սահեալ գնաց և ասպար նորա 'ի ծով, յափշտակեալ առաւ այն յԱթենացւոց, որ և եղև ապա 'ի զարդ ախոյենի կառուցելոյ 'ի յաղթանակ պատերազմին: Ի նոյն ձիգն պնդեալ և այլոց յելս 'ի ցամաք, առ դժընդակ ափանցն խոժոռութեան և առ ուժի դիմակալութեան Աթենացւոց չյաջողէին: Յորում և տարօրինակ փոփոխումն բաղդի երևեցաւ, Աթենացւոց 'ի ցամաք երկիր, և այն 'ի

վերայ լակոնական հողոյ՝ վանել զաւարան զվերելեալս 'ի նաւս. և Լակեդեմոնացւոց 'ի նաւաց անտի ձգնել ելանել 'ի վերայ բնիկ հողոյ իւրեանց, ջանիւք կորզելոյ զայն յԱթենացւոց զինուք: Որովհետև 'ի ժամանակի յայնմիկ այսպիսի ինչ հաւատք կարծեաց յընդհանուրս կալեալ ունէր, եթէ սոքա միջերկրայք՝ վասն որոյ և անպարտելիք 'ի ցամաքային երկրախումբ կռիւս. և նոքա ծովեզերեայք, որով և 'ի ծովամարտ յաւէտ գերապանցեալք:

ԺԳ. Զայն օր և զվաղուեանն 'ի մասնէ՝ անդադար լեալ 'ի կռիւս, լռեալ հանդարտեցան ապա. և յղեալ յաւուրն երրորդի յԱսինէ զոմանս 'ի նաւաց բերել նիւթս փայտից 'ի կառոյցս պարսպամարտ կազմածոց, և նոքօք 'ի կողմանէ նաւահանգստին՝ թէպէտ բարձունք էին պարիսպքն, այլ տեղւոյն առաւել դիւրամատոյց, համարէին տիրանալ պատուարացն: Մինչդեռ սոքա յայսմ խորհրդի էին, ահա եկին հասին 'ի Զակինթեայ քառասուն նաւք Աթենացւոց. յաւելեալ 'ի սոսա և ոմանց 'ի պահանորդ նաւաց Նաւպակտեայ և չորք 'ի Քիայ: Որոց տեսեալ զցամաք երկիր և զկղզին լի հոծ ասպարաւոր զօրու, և զնաւահանգիստն գրաւեալ նաւատորմին Թշնամեաց՝ տարակուսեալ անգիտանային ո՞ւր, յորո՞ւմ վայրի մերձենալ իցէ նոցա 'ի ցամաք. և խաղացեալ 'ի կղզին 'ի Պրոտէ, ոչ ինչ բացակայ 'ի տեղւոջէն՝ անապատ անմարդի, և անդ ագան զայն գիշեր: Ի վաղիւ անդր ծովեցին 'ի խորս պատրաստեալք 'ի նաւամարտ եթէ ելցէ Թշնամին հանդիպել նոցա յընդարձակի, ապա թէ ոչ՝ յառաջել մտանել 'ի նաւահանգիստն: Իսկ սոցա ոչինչ խլրտեալ ամենևին և ոչ զմուտս նաւահանգստին խցեալ ըստ կանխագոյն խորհրդոյն, այլ հանդարտեալ 'ի ցամաքի՝ զինեցին հանդերձեցին զնաւս. և զի շատ իսկ ընդարձակ էր տեղին, պատրաստեցան 'ի ծովամարտ, եթէ համարձակեսցի Թշնամին մխել 'ի ներքս 'ի նաւակայսն:

ԺԴ. Զայս իմացեալ Աթենացւոց՝ յառաջեալ ընդ կրկին

մուտս նաւահանգստին խաղացին 'ի ներքս, անկան 'ի վերայ նաւացն՝ որոց զառաջս ուղիղ ունելով յետս յետս ընդ կրունկն հեռացեալ էր յափանց, և 'ի փախուստ զնոսա խուճապեցուցին. և առ անձկի տեղւոյն մօտ հասեալ և զբազումս 'ի նոցանէ հարեալ վտանգեցին, և նաւս հինգ նաւաստեօքն հանդերձ կալան: Եւ որոց 'ի ծովափունս էին ապաւինեալ, և 'ի չտապ տագնապի պատրաստութեան խոյացեալ և 'ի վերայ նոցա, էր զոր խորտակեցին և էր զոր դատարկացեալս 'ի Թիավարացն քարշեցին ձգեցին զհետ իւրեանց: Ընդ տեսիլ այսոցիկ ամենայնի վշտաբեկ Լակեդեմոնացիք ընդ աղէտս փակեալ պաշարելոցն 'ի կղզւոջ՝ փութային նոցա 'ի Թիկունս, և իջեալ զինու զարդու իւրեանց 'ի ծով՝ կալեալ յիւրեանս զնաւսն ձգէին, և իւրաքանչիւր համարէր առանց իւրոյ ձեռնտու ճգանց վճարեալ վասն նոցա 'ի սպառ: Եւ լինէր աղմուկ անհնարին և ամբոխ զնաւօքն շուրջանակի ըստ ազգի կռուոյն աննման ամենևին: Զի Լակեդեմոնացիք յեռանդն անդ քաջութեան և 'ի տագնապ երկիւղին, ոչ այլ ինչ, զի այսպէս ասացից, բայց եթէ 'ի ցամաքի նաւամարտիկ լինէին. մինչդեռ Աթենացիք զօրացեալք յաղթութեամբ՝ զառձեռն բաղդն ցծագ հասուցանել կամելով՝ պատերազմ ցամաքային 'ի նաւաց անտի մղէին: Յետ բազմապատիկ նահատակութեանց երկուստեք հարուածեալք խոցք վիրալից բաժանեցան յիրերաց, և ապրեցուցին Լակեդեմոնացիք զնաւս իւրեանց դատարկս, բաց 'ի յառաջագոյն գերելոցն: Եւ 'ի մեկնել իւրաքանչիւր 'ի բանակ իւր, նշան յաղթութեան կանգնեցին Աթենացիք, ետուն զմեռեալս թշնամւոյն և առին զնաւըս խորտակեալս, և վաղվաղակի պատեալ պաշարեցին տորմղաւ նաւաց իւրեանց զկղզին, 'ի պահ զգուշութեան արկեալ զարգելեալսն 'ի նմա: Իսկ 'ի ցամաքի Պեղոպոնեսացիք և որք ամենուստ եկեալ էին յօգնականութիւն, ղակիշ ածեալ նստան մօտ առ Պիւղեաւ:

ԺԵ. Իբրև գոյժ պարտութեանս առ Պիւղեաւ 'ի

Սպարտա հասանէր, խորհուրդ կալան նոքա իբրու 'ի մեծ աղէտս արկածից՝ իջանել գլխաւոր առենակալաց 'ի բանակ զօրուն, 'ի մօտոյ ականատես վկայ եղելոցն, և ըստ այնմ սահմանել զարժանն: Որոց և տեսեալ զանհնարութիւն ձեռն տալոյ արանցն, և ոչ կամելով թողուլ զնոսա 'ի վտանգ սովելոյ և կամ յամբոխէ թշնամւոյն նուաճելոյ, հաճոյ թուեցաւ նոցա բանագնաց առ զօրավարս Աթենացւոց լինել, դուլ զինուց առնել վասն Պիւլեայ միայն, և հրեշտակութիւն յԱթէնս 'ի միաբանութիւն պայմանաց և ջանալ փութալ յազատութիւն նոցին:

ԺԶ. Ի հաւանել զօրավարացն Աթենացւոց ընդ բան առաջարկութեանն՝ եղան պայմանքս այսոքիկ: Յանձն առասցեն Լակեդեմոնացիք զամենայն նաւս յորս մարտեանն և զորս 'ի Լակոնիա ունէին երկայնս, բերելով զամենայն 'ի Պիւլոս առ Աթենացիս, և մի՛ զէն առնուլ 'ի ժամանակին ընդդէմ ամրոյն ոչ ընդ ծով և ոչ ընդ ցամաք: Եւ Աթենացիք թոյլ տասցեն Լակեդեմոնացւոց անցուցանել 'ի ցամաք երկրէն պաշարելոցն 'ի կղզւոջ ցորեան աղացեալ չափով, կրկին ատտիկեցի կապիճս ալեր ըստ գլուխ, և երկու քսեստս գինւոյ և միս, և վասն ռամիկպաս զօրուն զկէս չափուցս. և յղեսցին ռոճիկքս որ ըստ օրէ ականատես դիտութեամբ Աթենացւոց, և մի՛ ումեք օրէն լիցի նաւարկել գաղտ 'ի կղզին. և հանապազորդեսցեն Աթենացիք ունել զայն 'ի պահ զգուշութեան առանց ելանելոյ յայն, և մի՛ զէն առնուցուն ընդդէմ Պելոպոնեսացւոց ոչ ընդ ծով և ոչ ընդ ցամաք. և յանցանել զպայմանօքս և փոքու անգամ աստի կամ անտի, լուծեալ համարեսցին դաշինք, որոյ և ժամանակ տեւողութեան լիցի ցդարձ Լակեդեմոնացւոց յԱթէնայ. և Աթենացւոց իցէ տանել ըզհրեշտակս 'ի նաւ մի պատերազմիկ և կրկին դարձուցանել զնոսա 'ի տեղին. և յայնժամ ապա վախճան լիցի զինադուլ պայմանաց, և 'ի դուրս տասցեն Աթենացիք զնաւսն որպէս և ընկալան: Յայսոսիկ ահա պայմանս եղև դուլ զի-

նուց, և յանձն արարան նաւք վաթսուն. առաքեցան և հրեշտակք, որոց և հասեալ յԱթէնս խօսել կալան օրինակ զայս.

ԺԷ. «Պատգամաւորք 'ի Լակեդեմոնացւոց առ ձեզ գամք, ո՛ Աթենացիք, խօսել վասն արանց պաշարելոց 'ի կղզւոջն, որ ձեզ իցէ օգտակար և մեզ 'ի ձախողակի յայսմ պայմանիս պատուաւորագոյն՝ 'ի դոյն զձեզ յորդորելով: Եւ չերևեսցի ինչ անդէպ եթէ քան զօրէն սովորութեան մերոյ բանս կարգիցեմք երկայնաձիգս, ուր հայրենաւանդ է մեզ հրահանգ՝ մի՛ բազմախօս լինել յորում հերիքանան բանք սուղ և 'ի կարճոյ, ճոխաբան դարձեալ յորում կարևոր պէտք յայտնութեան զայդ պահանջեսցեն: Ընկալարուք զբանս մեր մի՛ իբրև թշնամաբար, և մի՛ իբրև բանս խրատու առ անհանճարս ոմանս կարգելով, այլ 'ի յուշ միայն գիտակացդ իմաստնագոյն ևս խորհելոյ: Մարթ է ձեզ բարւոք վարել առաջիկայ յաջողութեամբդ, զոր ունիքդ կալջիք, և զպատիւ և զփառս 'ի վերայ այնոցիկ յաւելուլ. և մի՛ կրել կիրս մարդկան որոց անսովոր հանդիպեալ բարեաց, յանակնկալ բարեբաստութեան անդ՝ առաւելագունին անյագ զհետ կրթիցին ցանկութեամբ: Իսկ որք 'ի յաջողակս և 'ի ձախողուածս փոփոխութեան բազմին կիրթք իցեն, յիրաւի արդեօք է վասն նոցա չլինել աներկևան ընդ յաջողութիւն, որում և ձեզ արդ 'ի փորձոյ և մեզ մանաւանդ 'ի դէպ է խելամտել:

ԺԸ. «Ի մերոցս ձախողութեանց առեալ օրինակ տեսէք արդ և 'ի միտ առէք, զի մեծապատիւքս առ Հելլէնս առ ձեզ դիմեմք այսօր 'ի խնդիր՝ զոր տիրագոյնս երբեմն կարծէաք մեզէն շնորհել: Եւ զայս ոչ առ նուազութեան զօրութեանս, և ոչ երբեմն առ առաւելութեան նորին սոնքացեալ՝ կրեմք զոր կրեմքս. զնոյն ունելով զօրութիւն՝ 'ի նկատեալ խորհրդոյս վրիպեցաք, զոր ամենեցուն 'ի դէպ է նմանագոյնս կրել: Որպէս զի չէ արժան դնել ձեզ 'ի մտի՝ ըստ այժմեան զօրութեան քաղաքիդ և յաջողու-

թեան՝ ընդ ձեզ ունել հանապազ զբաղդն մշտատև: Իմաստնոց է երկբայականս հաւատալ զշնորհս բախտին և անկայունս. Նոցին է դարձեալ գիտել և 'ի ձախողութեան արժանապէս գնալ, քաջիկ խելամուտ՝ զի ոչ ըստ խորհըրդոց և հաճութեան կամաց մարդկան պատերազմ վճարի, այլ բախտին է ածել վարել զայն. որք գուն ուրեք յաղթողուածովք խրոխտացեալ գտիցեն, այլ 'ի բարեբաղդ յաղթողութեան մանաւանդ լուծանել զթշնամութիւն յանկանայցեն: Նոյնօրինակ արդ արժան է և ձեզ, ո՛ Աթենացիք, վարել ընդ մեզ, զի մի՛ յետոյ ուրեմն եթէ անհաւանութեամբք վրիպիցիք՝ որ չէ ինչ անդէպ, այժմեանս այս յաղթողուած գլխովին բախտին գրեսցի, ցորչափ անվտանգ արդ ամենևին կարէք թողուլ յետնոց զզօրութեան ձերոյ և զիմաստութեան զհամբաւ:

ԺԹ. « Հրաւիրեն զձեզ Լակեդեմոնացիք բառնալ 'ի միջոյ զթշնամութիւն, մատուցանեն ձեզ զհաշտութիւն խաղաղութեան, զդաշն միաբանութեան և զաջ մտերիմ բարեկամութեան՝ խնդրելով 'ի ձէնջ փոխանակել մեզ զարգելեալ մեր զարսն 'ի կղզւոջ, շահաւոր համարեալ երկոցունց իսկ կողմանցս մի՛ 'ի նորանոր վտանգս առեալ մխել զմեզ, կամ՝ 'ի յաղթել բախտին զէն 'ի ձեռին թափել զանձինս արանց, և կամ փակեալ պաշարեալ ձերբակալս 'ի գերութիւն վարել զնոսա: Խորհիմք դարձեալ այսու ոխերիմ ատելութեանց վախճան առնել հաստատութեամբ, և մի՛ սաստկապէս զթշնամին վանելով, և մի՛ 'ի դժպհի և 'ի բռնադատ երդմունս ոտնհար նմին լինել. ուր մանաւանդ որ զայս այսպէս կարող գոլով առնել՝ հեզութեամբ ցածութեան ընդ պարտելոյն գնայցէ, և քան զկարծիս ակընկալութեան առատաձեռն առատամիտ առ նա գտեալ, չափաւոր պայմանօք աջ հաշտութեան նմա կարկառիցէ, այնուհետև ոչ բռնադատեսցի և հակառակորդն իբրև հարստահարեալ ջանալ հանել զքէն վրիժուն, այլ զերախտիս ընդ երախտեաց փոխանակեսցէ, և առ ամօթոյ պատկառանաց

յօժարագոյն 'ի հաւատս ուխտին հաստատութեան երևեցի: Եւ ընդ անագորոյնս անգամ 'ի Թշնամեաց զայս այսպէս գործեն մարդիկ, Թող ընդ որս Թեթև ինչ և չափով 'ի վէճս իցեն: Զի որոց մտադիւրն ներեն՝ բնաւորեալ է մարդ քաղցրութեամբ անսալ. իսկ որոց յոխորտագոյնս մողանան, զամենայն իսկ վտանգ յաչս եդեալ և զօգի 'ի բռին ցմահ 'ի կռիւ կջրել:

Ի. « Գեղեցիկ է արդ և վայելուչ քան այլ ուրեք երբեք հաշտութիւն խաղաղութեան ընդ մեզ և ընդ ձեզ, մինչև անհնարին ինչ չարեաց կրճիմն ընդ մէջ անկեալ, և այնուհետև 'ի հարկէ մշտնջենաւորեսցի ատելութիւն հասարակաց, և մեր մանաւանդ առանձին ընդ ձեզ, և վրիպեցիք յայնցանէ յամենայնէ, որոյ վասն գամք այսօր 'ի խնդիր: Մինչդեռ երկդիմի է բաղդ զինուց, և ձեզ առաջի կան փառք և մերս բարեկամութիւն, և մեզ փոխանակ ամօթոյ չափաւոր ինչ տուժիւք հատուցումն և արձակուրդ, ընտրեսցուք դուք և մեք փոխանակ պատերազմի զխաղաղութիւն, և այլոց Հելլենաց վախճան չարեաց, յորում զձեզ առաւել պատճառս բարեաց ծանիցեն: Ընկճին նոքա յանդուլ պատերազմացս, ոչ գիտելով Թէ ո՞ 'ի մէնջ սկիզբըն կռուոյս իցէ, որում եթէ աւարտ լինիցի, յորում դուք էք առաւելապէս տեարք, ձեզ շնորհս ընդ այնր կալցին: Որում քաջ խելամուտ, կարէք հաստատուն բարեկամըս ձեզ առնել զԼակեդեմոնացիս, շնորհելով խնդրողացն քան բռնանալով 'ի վերայ: Եւ 'ի յաջողելն այժմ այսպէս, խորհեցարո՛ւք միանգամ զորպիսի բարիս չիցէ անտի 'ի դէպ մեզ յուսալ. զի 'ի միախորհուրդ միակամութեան մերում Հելլենք առ հասարակ, զորս խոնարհագոյն քան զմեզ գիտեմք, մեծապէս ակն ածեալ 'ի մէնջ պատուեսցեն զմեզ:

ԻԱ. Զայսոսիկ այսպէս խօսեցան Լակեդեմոնացիք, և համարէին մտադիւր ընդունել Աթենացւոց զիւրեանց առաջարկ խաղաղութեան՝ կանուխ իսկ 'ի նոյն յօժարեալք, և յընդդիմութենէ միայն Լակեդեմոնացւոց խա-

փանեալք, և թողուլ ազատ զարս պաշարեալս 'ի կղզւոջն: Բայց Աթենացիք ցորչափ փակեալ ունէին զարսն՝ 'ի կամս իւրեանց կարծելով առնել զխաղաղութիւն ընդ պատրաստական հառակորդին երբ և որպէս կամիցին, անդրագոյնս զպահանջման ձկտեցուցանէին: Եւ առ այս գրգռէր զնոսա մանաւանդ Կլէոն որդի Կլէենիտեայ առաջնորդ ռամկին յայնժամ և հզօր յոյժ առ նոսա, զորս և հաւանեցոյց առնել նոցա պատասխանի այսպէս. Զպաշարեալսն 'ի կղզւոջն զէնընկէց անձնատուրս ածել նախ յԱթէնս, և 'ի հասանել արանցն 'ի բաց տալ Լակեդեմոնացւոց զքաղաքս զՆիսա, զՊեգա, զՏրեզէն և զԱքայիա, զորս ոչ զինուք և օրինօք պատերազմի, այլ պայմանաւ դաշանց կալեալ էր. յոր առ ձախող արկածից ժամանակին և 'ի հարկէն բռնադատեալ խոնարհեցան, և ապա ուրեմն դարձուսցուք, ասէին, զարսդ առ ձեզ, և արասցուք դուլ զինուց որչափ ինչ ժամանակս հաճոյ թուեսցի կողմանցս երկոցունց:

ԻԲ. Որում ոչ ինչ ընդդիմացեալ Լակեդեմոնացիք խնդրեցին տալ ինքեանց խորհրդակիցս 'ի խօսել միաբան և սահմանել զառաջարկութեանցս պարապով հանդարտութեամբ: Սաստկապէս յուզեալ յայնժամ Կլէոն, Յառաջագոյն իսկ գիտէի, ասէ, զի ոչ ուղղութեամբ գնան սոքա, զոր և այժմ յատենիս տեսանեմ, զի չկամին առաջի ժողովրդեան խօսել, այլ 'ի սակաւուրեարն ամփոփեն զխորհուրդս, որոց եթէ առողջ իցեն միտք՝ հրամայէր առաջի հասարակաց ժողովրդեան առնուլ 'ի խօսել: Թէպէտ 'ի պատճառս ձախողութեանս պատրաստք էին Լակեդեմոնացիք և յայդ զիջումն, այլ տեսեալ թէ չէր մարթ նոցա պարզել զայն առաջի ամբոխին, առանց եպերելոյ 'ի դաշնաւորաց իւրեանց զի անյաջող ելիւք 'ի ժողով ռամկին հանին զխնդիրն, գիտելով չափ եթէ չկան Աթենացիք 'ի չափու, ելեալ գնացին առանց ինչ մի վճարելոյ:

ԻԳ. Այն ինչ հասեալ նոցա 'ի Լակեդեմոն, և լրացան աւուրք ժամադրին պայմանելոյ 'ի դուլ զինուց վասն Պիւ-

լոսի, և խնդրէին Լակեդեմոնացիք ըստ պայմանելոյ դաշանցն յետս առնուլ զնաւս իւրեանց. իսկ Աթենացիք պատճառէին իբրու հակառակ դաշին խաղաղութեան զյարձակումն նոցին 'ի վերայ ամրոյն և զայլ դէպս չնչինս, և ոչ կամէին տալ զնաւսն 'ի բաց, պնդելով եթէ և թէթև ինչ դրժումն պայմանին լուծանէր խապառ զդաշինս: Լակեդեմոնացիք զհակառակն պնդելով բողոք բառնային ընդդէմ անիրաւ յափշտակութեանս, և մեկնեցան ձայն տալով միմեանց 'ի զէն և 'ի պատերազմ վերստին: Եւ սաստկանայր կռիւն շուրջ զՊիւղեաւ. Աթենացիք զտիւ ողջոյն երկու նաւուք շուրջ գային զկղզեաւն անդադար, աստի և անտի ներհակաբար երթևեկելով, և զգիշերն բովանդակ նաւատորմաւ պատէին զտեղեաւն. և յորժամ հողմայոյզք և ձմերունք լինէին, ազատ էր կողմն ծովու մեծի: Գային և այլ քսան նաւք 'ի պահ կղզւոյն, մինչև հասանել գումարտակի նաւաց 'ի թիւ եօթանասուն և հինգ: Իսկ Պելոպոնեսացիք բանակեալ 'ի ցամաքի յարձակմունս 'ի վերայ քաղաքորմոյն առնէին, ակն կալեալ միշտ պատեհի մնալով ապրեցուցանելոյ զիւրեանց մարդիկն:

ԻԴ. Ի ժամանակիս յայսմիկ Սիրակուսացիք և դաշնաւորք նոցա 'ի Սիկիլիա յաւելեալ այլ ևս նաւս 'ի վերայ գումարտակին, որով պահէին զՄեսսենէ, և ասպատակ ընդ երկիրն սփռէին: Գրգռէին զնոսա առաւել Լոկրացիք առ ատելութեան ընդդէմ Հռեգինացւոց, և միախուռն ամբոխիւ իջին յերկիր նոցա. և տեսեալ զնուազութիւն նաւաց Աթենացւոց կամէին 'ի ծովամարտ գալ ընդ նոսա. զի լսէին եթէ մասն մի հանդերձ նաւաց նոցա, որում օր 'ի յօր մնային նոքա՝ 'ի պաշարումն կղզւոյն Սփակտերիոյ ըմբռնեալ կայր: Խորհէին սոքա յուսով՝ զօրացեալ միանգամ 'ի ծովամարտին 'ի վերայ Աթենացւոց, դիւրին լինել այնուհետև ընդ ծով և ընդ ցամաք յարձակեալ առնուլ անաշխատ զՀռեգիոն, և յաւելուած մեծ զօրութեան իւրեանց գործել: Եւ արդարև իսկ փոքու խորոցաւն ընդ հրուանդանն

Հռեգիոնի յԻտալիա, և ընդ Մեսսենէ 'ի Սիկիլիա, կալեալ և զնեղուցն, ոչ ևս այլ թողուին Աթենացւոց ոտնկոխ 'ի Սիկիլիա: Նեղուցս այս է բաղուկ ծովուն երկայնեալ ընդ Հռեգիոն և ընդ Մեսսենէ, յորում մօտաւորագոյն է կղզի Սիկիլիա մեծացամաքին, և այս է Քարիբդեան անուանեալ նեղուցն, ընդ որ նաւարկեալ ասեն Ոդիսեայ: Առ անձկութեան նեղցին և առ ընդարձակութեան Տիւրրենեան և Սիկիլեան ծովուց՝ յորձանախաղաց կոհակք ալեաց անկեալ յորդութեամբ 'ի սմա, յիրաւի դժնդակ և բազմավտանգ ճանաչի անցս այս:

ԻԵ. Յայսմ անձուկ նեղցիս ստիպեցան Սիրակուսացիք և դաշնաւորք նոցա՝ ընդ անցանել միոյ 'ի նաւաց Թըշնամւոյն ընդ այն՝ 'ի նաւամարտ գալ ընդ երեկս կոյս, իբրու երեսուն և աւելի նաւաց 'ի վերայ վեշտասանից միայն Աթենացւոց խաղալով և ութից Հռեգիոնացւոց. և 'ի պարտութիւն մատնեալ առաջի նոցա, աճապարեցին իւրաքանչիւր յիւր բանակեալ, կէսք 'ի Մեսսենէ, և այլք 'ի Հռեգիոն, զմի միայն 'ի նաւացն կորուսեալ, և 'ի վախճան կռուոյն գիշերանայր օրն: Յետ այնորիկ ելին Լոկրացիք յերկրէն Հռեգիոնացւոց. իսկ գումարտակ նաւացն Սիրակուսացւոց և դաշնաւորաց ժողովեալ առաջի Պելորեայ Մեսսենիացւոց՝ դադարեցան անդանօր. դայր հասանէր անդր և զօրն հետևակախումբ: Մօտ առ միմեանս նաւելով Աթենացիք և Հռեգիոնացիք տեսին զնաւս անզէնս, դիմեցին 'ի վերայ և ըմբռնեալ 'ի ճանկ երկաթի զմի 'ի նաւաց ընկլուզին զայն, այլ նաւաստին զերծաւ 'ի լող: Եւ իբրև ամբարձեալ Սիրակուսացիք զափամբ քերելով գնային 'ի Մեսսենէ, երկրորդ անգամ անկան 'ի վերայ նոցա Աթենացիք. և 'ի խաղալ նոցա 'ի խորս, հասեալ 'ի վերայ խորտակեցին այլ ևս նաւ մի: Բայց ոչ 'ի նաւարկութեանս և ոչ 'ի նաւամարտին 'ի սպառ անզօրք և ստորև երևեալ Սիրակուսացւոց՝ զծովեզերբ գնալով հասին 'ի նաւահանգիստըն Մեսսենեայ:

Իսկ Աթենացիք ընդ լուր յօժարելոյ Կամարինայ անձնատուր առ Սիրակուսացիս լինել՝ խորհրդով Արքեայ և կուսակցաց նորին փութացեալ նաւեցին անդր, մինչդեռ Մեսսենիացիք համախումբ խաղային ընդ ծով և ընդ ցամաք 'ի վերայ Քաղկիսեան Նաքսոսի որ սահմանակից է նոցա: Յառաջնումն աւուր փակեալ զՆաքսիացիս 'ի քաղաքի նոցա աւար հարին զերկիրն. և 'ի վաղիւն տորմղաւն իւրեանց նաւարկեալ ընդ Ակեսինէ գետ՝ յապականութիւն եդին զանդաստանս, և ցամաքային զօրօք խաղացին 'ի վերայ քաղաքին: Այլ մինչ այս մինչ այն՝ իջին Սիկելացիք գունդագունդ 'ի բարձանց անտի 'ի վերայ Մեսսենիացւոց յօգնութիւն պաշարելոցն. ընդ որ քաջալերեալ մեծապէս Նաքսիացիք և խրախոյս միմեանց կարդալով, որպէս եթէ Լէոնտինացիք և այլք 'ի դաշնաւորաց Հելլենացւոց եկեալ իցեն նոցա 'ի թիկունս, յանկարծոյն դռոյթ տուեալ 'ի քաղաքէն անկան 'ի վերայ Մեսսենիացւոց. և հալածական տանելով զնոսա, կոտորեցին 'ի նոցանէ աւելի քան զհազար այր. յորոց ապրեալքն հազիւ կարացին զերծանել յերկիր իւրեանց, զի զճանապարհսն պատահեալ նոցա բարբարոսաց զյօլովս 'ի նոցանէ սատակէին. դարձաւ և նաւատորմն նոցա 'ի Մեսսենէ, գնալ անտի իւրաքանչիւր 'ի տեղի իւր: Եւ խաղացին անդէն Լէոնտինացիք և դաշնաւորք նոցա Աթենացւովք հանդերձ 'ի վերայ Մեսսենեայ, համարեալ իսպառ վատթարեալս զնոսա, Աթենացիք նաւուք 'ի կողմանէ նաւահանգստին և հետևակազօրն 'ի ցամաք կռուէ ընդ քաղաքին կռուելով: Իսկ Մեսսենիացիք և որք 'ի Լոկրացւոց ընդ Դեմոտելեայ՝ յետ կոտորածին և պարտութեան մնացեալ էին 'ի պահ քաղաքին, յանկարծուստ անկեալ 'ի վերայ թշնամեաց, զմեծ կէս Լէոնտինացւոց 'ի փախուստ դարձուցին, և զկէս մի առ ետեղ սատակեցին: Զայս տեսեալ Աթենացւոց՝ փութացան իջին յերկիր 'ի նաւաց 'ի թիկունս օգնականութեան պարտելոց, և դիմեալ 'ի վերայ աղմկելոյ խմբին Մեսսենիացւոց՝

արկին զնոսա վերստին 'ի քաղաքն, և նշան յաղթութեան կանգնեալ դարձան 'ի Հռեգիոն: Յետ այսորիկ որ 'ի Սիկելիա էին Հելլէնք, համապաղորդէին յիւրեանս զկռուի մարտին առանց ձեռնտուութեան Աթենացւոց:

ԻԶ. Իսկ 'ի Պիւլոս դեռ ևս պաշարեալ պահէին Աթենացիք զԼակեդեմոնացիս 'ի կղզւոջ, մինչդեռ 'ի ցամաքի բանակ զօրուն Պելոպոնեսացւոց զակիչ ածեալ նստէր: Ծանր էր Աթենացւոց պահ կղզւոյն առ 'ի չգոյէ կերակրոյ և ջրոյ, զի մի միայն էր աղբիւր 'ի միջնաբերդին Պիւլեայ, և այն ոչ առատ. և բազումք պեղելով զխիճս առ ծովեզերբ՝ ըմպէին ջուր զորպիսի 'ի դէպ է կարծել: Յանձուկս յոյժ ամփոփեալ նոցա 'ի փոքու բանակի ոչ ունելով հանգրուանս նաւաց, կէսք 'ի ցամաք երկիր երթային առնուլ կերակուր, մինչդեռ այլք հեռի 'ի ծովափանց խարխսի արկեալ դադարէին: Եւ քան զկարծիս 'ի սկզբան երկարելով ժամանակին՝ Թախիծ անյոյս ածէր զնոքօք, որք 'ի սակաւ աւուրս անձնատուր լինել պաշարելոցն յուսային, որ յամայի կղզւոջ աղտաղաւին ջուրբ զպէտս ծարաւոյն լնուլ ստիպէին: Եւ պատճառք այսպէս յամելոյն Լակեդեմոնացիք էին, որոց յառաջագոյն հասարակաց ամենեցուն հրատարակեալ, թէ ոյք միանգամ յօժարեսցին ածել պարէնս 'ի կղզին՝ ցորեան, գինի, պանիր և այլ ինչ ուտելիք յուտեստ պաշարելոցն, կշռել ընդ այնս արծաթ բազում. և եթէ յԻլոտաց ոք իցէ որ ածցէ պաշարս, շնորհեսցի ինքեան ազատութիւն: Եւ բազումք այնուհետև արհամարհեալ զվտանգ, Իլոտք մանաւանդ, 'ի կողմանց կողմանց Պելոպոնեսեայ բարձեալ բերէին, և գիշերայն 'ի մեծ ծովէ կուսէ հանէին զայնս 'ի կղզին: Սպասեալ միայն սոքա յաջողակ հողմոյ, որ եթէ 'ի ծովէն շնչէր՝ դիւրեաւ խուսէին 'ի զգուշութենէ պահնակ նաւաց, չկարելով նոցա հողմուտ ժամուն առնել զիւրեանց սովորական շրջան երթևեկի զկղզեաւն. մինչդեռ ինքեանք չխնայէին և յոչինչ առ 'ի մերձենալ 'ի կղզին, որք և զնաւս վարեալ խրէին 'ի ծանծա-

ղուտս, զորոց զգինս յառաջագոյն 'ի գումար հաշուին անցուցեալ էր. քանզի 'ի դիւրամատոյց վայրս կղզւոյն 'ի պահ կային տապարազէնք, և զորս միանգամ 'ի հանդարտութեան օդոյ յանդգնէին 'ի նոյն լինել դիմագրաւ, հասեալ ըմբռնէին զնոսա: Էին և լուղակք՝ որ պարանաւ ձգելով 'ի ներքոյ ջուրց մինչև 'ի նաւահանգիստն 'ի տիկս տիկս խորխոխ մեկոնի մեղրանման, և զհատս կտաւատի լեսեալ. որոց 'ի սկզբան յաջողեալ զանխուլ, 'ի զգուշութենէ ապա պահանորդաց արգելեալ լինէին: Այսպէս յերկոցունց իսկ կողմանց զամենայն հնարս հնարէին, սոքա 'ի մուծանել պաշարս, և նոքա 'ի խափանել զայն և 'ի դերև զջանսն հանել:

ԻԷ. Եւ իբրև լու լինէր յԱթէնս եթէ նեղի զօրն և թշնամին պաշար կերակրոյ հասուցանէ 'ի կղզին, տարակուսեալք խիթային չյաղթել անդանօր և 'ի ձմերանի. զի և ինքեանց դժուարին տեսանէին ածել պարէնս զօրուն ընդ Պելոպոնէս յամայոջ անդ, յոր և յամարանի անգամ չէր դիւրին տալ բերել 'ի լիութիւն բաւական: Դարձեալ աննաւահանգիստ գոլով վայրացն պակասէին և նաւակայք. և եթէ թուլացուցանէին զպնդութիւն պաշարման, ևս քան զևս յամառեալք ժուժկալէին պաշարեալքն, և կամ 'ի մրրկալից հողմայոյզ ժամու ելեալ 'ի նպարակաւոր նաւս 'ի բաց խուսէին: Եւ քան զամենայն կասկածէին իսկ 'ի Լակեդեմոնացւոց, զի եթէ փոքր մի ոգի առնուցուն՝ ոչ ևս այլ 'ի խաղաղութիւն պատգամաւորեսցին, և զոր ջանային ընդ մերժումն առաջարկեալ պայմանաց հաշտութեան: Զղջացեալ Կլէոնի եթէ զչարի ժողովուրդն ընդ նա վասն խափանարար հաշտութեան լինելոյ, և պատճառ էր սատայօդ լինել զրուցաց զՊիւղէայ. և 'ի պնդել բանբերացն և ասել, թէ որովհետև անհաւատ թուին բանք նոցա, առաքեսցեն պատուիրակս 'ի քննութիւն իրացն ստուգութեան, և ընտրեցաւ Կլէոն ընդ Թէագինեայ 'ի նուիրակս: Եւ 'ի միտ էառ յայնժամ Կլէոն, զի և ինքեան հայր զնոյն

բան երկրորդել, զորոց զպարտէրն սուտ լինել. և կամ զհակառակն պնդելով ստախօս երևել: Վասն որոյ խրատ ետ Աթենացւոց, զօրս և մեծս 'ի խորհուրդ պատերազմի գիտէր, մի՛ ընդունայն 'ի ստուգութիւն զրուցացն ժամավաճառ լինել, այլ եթէ հաւատարիմ թուէին նոցա այնոքիկ՝ անյապաղ խաղալ ընդդէմ պաշարելոցն: Եւ տալով ակնարկել բանիւն 'ի Նիկիաս Նիկերատեան սպարապետ զօրուն յայնժամ և ինքեան թշնամի, և 'ի նախատինս առնս յաւելոյր ասել. դիւրին է, միայն զի իցեն զօրավարքս արք զօրութեան, և զինու պատրաստութեամբ անցեալ և ըմբռնել զպաշարեալսն 'ի կղզւոջ. և եթէ էր նմա իշխանութիւն՝ անձամբ իսկ կարող էր առնել զայդ:

ԻԸ. Նիկիաս լուեալ զքրթմնջիւն Աթենացւոց ընդդէմ Կլէոնի, որ եթէ այնչափ գործ դիւրին էր ընդէր այժմէն իսկ չելանէր նա 'ի ճանապարհ, և զի անպատիւ առնէր նա զինքն, հրաման ետ առնուլ զօրս որչափ և կամէր և երթալ 'ի կռիւ: Զառաջինն համարելով Կլէոնի եթէ բանիւք միայն էր հրամանն, յօժար առ այն զինքն կեղծէր. այլ իբրև ետես եթէ իսկապէս տայր նմա զիշխանութիւնս Նիկիաս, դեգերելով իմն հրաժարէր, ոչ ինքեան, ասէր, այլ նմա է անկ զօրավարել. և չկարծէր վստահել Նիկիայ յանձն առնել նմա զիւր իշխանութիւն: Այլ երկրորդեալ առ նա Նիկիայ զհրամանն, ետ նմա զիշխանութիւն զօրավարութեան 'ի Պիւղոս, վկայս առ այն կոչելով զԱթենացիս: Եւ որչափ խորշէր Կլէոն յարշաւանէս և հրաժարէր 'ի բանից խոստման, այնչափ աւելի ևս, որպէս սովոր է ամբոխն, թախանձէր զՆիկիաս յանձն առնել նմա զհրամատարութիւնն. և աղաղակէր առ Կլէոն փութալ 'ի ճանապարհ, այնպէս զի չունելով նորա այլ ևս տեղի փախստի՝ յանձն էառ զպատերազմն, և մատուցեալ յատեան ժողովրդեան, «Զերկնչիմ ես, ասէ, 'ի Լակեդեմոնացւոց, և չդանդաղեցայց իսկ ելանել 'ի ծով, առանց առնլոյ զոք ընդ իս 'ի քաղաքէն. բայց զԼեմնացիս միայն տուք ինձ և զԻմբրիացիս որք

'ի քաղաքիս են, և զտիգաւորաց վաշտ եկեալ յԷնեայ, և չորեքհարիւր աղեղնաւորս օժընդակս այլուստ: Զայսոսիկ ունելով, առեր, 'ի վերայ զօրուն 'ի Պիւղոս, 'ի քսան աւուրս ածից առ ձեզ զԼակեդեմոնացիս կենդանւոյն. և կամ առ տեղ սրոյ տուեալ ճարակ զամենեսեան զնոսա սատակեցից: Թէպէտ և սնապարծ մեծաբանութիւն առնս ծաղու լինէր յայնժամ պատճառք, այլ զգաստից և խոհական որերոյ յԱթենացւոց հաճութեան էր առիթ. զի համարէին յերկուց միումն հանդիպել անվթար բարեաց, կամ 'ի Կլէոնէ զերծանել' որում առաւել ակն ունել թուէին, և կամ եթէ յայնմանէ վրիպէին, զԼակեդեմոնացիս ածել զբռամբ:

ԻԹ. Իբրև զամենայն կարգեալ սահմանէր Կլէոն, և առնոյր 'ի ժողովն զհաճութիւն Աթենացւոց յայս զինուորութիւն, ընտրեաց իւր իշխանակից զԴեմոսթէն' զմի 'ի զօրավարաց անտի 'ի Պիւղոս, և ուղղոյ եղև վաղ ընդ փոյթ զի լուաւ խորհել և Դեմոսթենեայ զօրս 'ի կղզին հանել. որովհետև առ գժնդակութեան տեղւոյն և առ 'ի չգոյէ ամենայնի կարևորաց նեղեալ զօրուն' պաշարիչքն առաւել քան զպաշարեալսն յօժարէին դիմագրաւել 'ի վտանգս, և դէպք ինչ հրդեհի 'ի կղզւոյն յաւել զխրախոյս զօրավարին: Քանզի յառաջագոյն կասկածէր Դեմոսթէն եթէ 'ի բազմաց հետէ անբնակկղզիս անկոխ և մացառուտ' թշնամւոյն առաւել եղիցի նպաստաւոր, որ ընդդէմ բազմաձեռն անգամ զօրուն յարձակելոյ կարէր 'ի գաղտագողի թաքստոցէն դիմեալ 'ի դուրս մեծապէս վնասել նոցա. յորում սոյայս վրիպակք և յօրինուած պատրաստութեան 'ի ներքըս 'ի թաւուտս ծածկեալ, մինչդեռ ինքեանց համայն իսկ շարժումն և սխալանք մերկապարանոց, որպէս զի ընտրոյ թշնամւոյն իցէ պնդ կալ կամ 'ի վերայ յարձակել ուր և երբ կամէր: Դարձեալ եթէ յանտառախիտ անդ ստիպէր 'ի կռիւ գալ, լաւ համարէր սակաւաձեռն գնդաւ հմուտ վայրաց, քան ամբոխիւ բազմութեան անտեղեակ զօրակա-

նի. յորում մարթ էր զմեծ կէսքն պարտութեամբ կորուսանել, առանց կանուխ գիտելոյ ո՞ւր արժան էր ձեռն իրերաց տալ:

Ն. Ի ձախողելոյ անտի արշաւանին յԵտոլիա, որ ըստ մասնէ 'ի պատճառս անտառաց եղև, այս ամենայն խորհուրդք ընդ միտ նորա յածէին: Եւ զի սովորէր զօրականն առ անձկութեան տեղւոյն ելանել 'ի ծայր կղզւոյն առնուլ կերակուր, յառաջապահս անդանօր հաստատելով, 'ի պահանորդաց անտի ումն յակամայս հուր արկեալ 'ի մասն անտառին և 'ի շնչել հողմոյն հրդեհեալ զմեծ կողմն նորա ծախեաց: Որով քաջ ևս նշմարեալ Դեմոսթենեայ զբազմութիւն Լակեդեմոնացւոց. զի 'ի սկզբան վասն սակաւուց կարծէր տալ տանել ուժին 'ի կղզին, յայնժամ ապա 'ի միտ էառ թէ ոչ թեթև ինչ գործ առաջի կայր Աթենացւոց, և թէ չէր իսկ այնպէս դժուարին ելք 'ի կղզին և ձեռն 'ի գործ արար պատրաստել 'ի նոյն. առաքեաց առ սահմանորդ նիզակակից ժողովուրդս, զօրս 'ի նոցանէ յօգնականութիւն խնդրեաց, և զամենայն ինչ կազմեալ հանդերձեաց: Իսկ Կլէոն հրեշտակ առ նա յառաջագոյն արձակեալ ծանոյց նմա զիւր գալուստ, և թէ ածէ ինքն նմա խնդրեալ նորա զօրս, և ահա անձամբ եկն եհաս նա 'ի Պիւլոս: Իբրև 'ի մի վայր եկին զօրավարքն փութացան առաքել նախ պատգամաւոր 'ի բանակ զօրուն թշնամեաց 'ի ցամաք երկիր՝ ձայն տալով նոցա, եթէ կամ իցէ հրաման տալ արանց իւրեանց պաշարելոց 'ի կղզւոջն անվտանգ զէնընկէց անձնատուր լինել, ունել զնոսա 'ի պահ զգուշութեան, մինչև դաշամբ խաղաղութեան սահմանեսցի ամենայն:

ԼԱ. Իբրև չեղեն ընդունելի պայմանք առաջարկութեանս, որ մի ևս յամեալ Աթենացւոց՝ 'ի վաղիւ անդր գիշերախառն ամբարձեալ 'ի սակաւաւոր նաւս զամենայն զօրն սպարաւոր, և չև առաւօտուն ծագեալ՝ ելին 'ի նաւահանգստէն. ութ հարիւր վառեալք յասպար և 'ի զէն ելեալ 'ի կղզին 'ի հանդիպոյ ծովուն մեծի 'ի յառաջա-

Ջակոմմանէ նաւակայից՝ դէպ ուղիղ խաղացին 'ի վերայ առաջնոյ պահանորդ գնդին, քանզի յայս ձև օրինակի կարգեալ էր զօր Թշնամւոյն: Յառաջնում պահնակին էին արք իբրև երեսուն ասպարազէնք. իսկ 'ի միջոցին 'ի տափարակ ուրեք տեղւոջ մերձ 'ի ջուր՝ յոլովաձեռն 'ի զօրուէն ընդ Եպիդատայ զօրավարին, և ջոկատ մի փոքր ունէր զվերջին ծագ կղզւոյն հանդէպ Պիւլեայ, որ 'ի ծովէն կուսէ գահավէժ էր և 'ի ցամաքէն դժուարամատոյց. յորում կայր պատուար մի վաղեմի անտաշ վիմօք, յոր և կարծեցին Լակեդեմոնացիք բռնադատեալք 'ի նահանջ՝ ապաստան լինել: Այս էր ահա կարգ և պայման սոցա:

ԼԲ. Յարձակեալ Աթենացւոց 'ի վերայ յառաջապահ գնդին, 'ի խուճապատագնապի անդ նոցա 'ի զէն ընթանալ, զամենեսեան զնոսա 'ի խշտիս նոցին կոտորեցին, զի մինչդեռ համարէին նոքա զԹշնամին ըստ սովորութեան 'ի գիշերապահ երթևեկս, նոքա անտեսաբար զանխուլ ելին 'ի ցամաք: Իսկ ընդ առաւօտն յարևածագս էր բանակն ողջոյն 'ի կղզին յեւթանասնից և աւելի նաւաց Թափեալք 'ի դուրս, բաց 'ի վերջին կարգէ Թիավարացն, ամենեքեան զինեալք՝ որպէս ինչ կարէին. աղեղնաւորք ութ հարիւր և տիգաւորք ոչինչ պակաս քան զայն, Մեսսենիացւոց գունդ օժընդակ և ամենայն պահանորդք Պիւլեայ, բաց 'ի պարսպապահ զօրականէն: Եւ ըստ հրամանի Դեմոսթենեայ կարգեցան նոքա 'ի գունդս գունդս, որ երկերիւր և որ աւելի կամ նուազ մարդկաց. և հասեալ կալան զամենայն բարձունս կղզւոյն, զի շուրջ պարուրեալ զԹշնամին, 'ի տագնապ անհնարին արկցեն զնոսա, չգիտելով ո՞ւր 'ի մարտ ճակատել. և ամենուստ ըմբռնեալ նոցա 'ի բազմութենէն, 'ի յառաջելն՝ 'ի Թիկանց հարկանիցին. 'ի խաղալն յաջ կամ յահեակ՝ 'ի կողից, ունելով միշտ 'ի յետուստ զմեկնակազէնս սաստան նեղիչ նոցին. և որք 'ի հեռուստ նետաձիգք 'ի նոսա, արգնընկէցք, քարաձիգք և պարսաւորք, անըմբռնելիք ինքեանք, ճարտարք 'ի փախուստ և

'ի կրկին վերամարտ, երկոքումբք իսկ յաջողակք։ Այս հնարք չէին խորհրդոց Դեմոսթենեայ երկնեալ 'ի միտս՝ մինչև ելեալ նորա 'ի ցամաք․ զոր և արդեամբք արդ 'ի գլուխ եհան կատարեաց։

ԼԳ․ Եւ որ ընդ Եպիտադայ բազմաձեռն քան զայլս 'ի կղզւոջ գունդ զօրականին էր, տեսեալ զկոտորած առաջնոյ պահնակին և զխաղալ Թշնամւոյն 'ի վերայ, կարգեալ 'ի ռազմ միագունդ յառաջէր ընդդէմ վառելոցն Աթենացւոց՝ ձեռն 'ի կռիւ խառնել 'ի դիմաց ընդ նոսա, զի զօրն Թեթևազէն 'ի Թիկանց էր և 'ի կողից։ Եւ ոչ յաջողեաց նոցա կռուել ընդ ասպարազէն գնդին՝ 'ի հանդէս պատերազմափորձ հմտութեան իւրեանց, զի զօրն Թեթևազէն 'ի Թիկանց և 'ի կողից բախեալ ընդ նոսա՝ խոչընդոտ նոցին լինէր, և սպայագունդն Աթենացւոց զտեղի առեալ դադարէր։ Իսկ Թեթևազէնքն 'ի յարձակել Թշնամւոյն խոյս տային, և 'ի նահանջել նոցին յետս՝ կրկին 'ի նոյն դառնային․ զի առ զինուց Թեթևութեան երագոտունք էին սոքա 'ի փախուստ, և առ դժուարուտ վայրացն անհնարին լինէր վառելոցն Լակեդեմոնացւոց ձիգ զհետ նոցին պնդել։

ԼԴ․ Իբրև երկարէին նոքա 'ի նախաձեռն յայս մրցութիւնս, և անմարթ լինէր Լակեդեմոնացւոց հասանել երագ ընդդէմ յարձակմանց Թշնամւոյն, զգաց զայս նոցա դանդաղ դիմակալութիւն զօրականն Թեթևազէն, և պնդեալ խրախուսեաց 'ի բազմութիւն իւր, իբրու ընտելացեալ այնուհետև՝ մի ահաւոր համարել զԹշնամին զորս երբեմն կարծէր։ Քանզի յելանել նոցա 'ի կղզին ամենեցուն սիրտք 'ի Թունդ էին, զի ընդ Լակեդեմոնացւոց առաջի կայր նոցա կռուել․ և ոչ ըստ երկիւղին հանդիպեալ ինչ կրից, արհամարհեցին այնուհետև զնոսա, և 'ի գոչիւն աղաղակի խուռն դիմեցին 'ի վերայ, քարընկէց 'ի նոսա լինելով և նետաձիգ և զաշտէս արձակելով, և զամենայն զոր և առձեռն գտանէր իւրաքանչիւր ոք։ Ընդ Թափոյ յարձակմանն և չուինդն աղաղակին պակուցեալ սասանեցոյց զօրեարն անսովոր

յայս ազգ կռուոյ. և զի աճիւն մոխրոյն այն ինչ հրկիզելոյ անտառին ընդ օդս 'ի վեր ամբառնայր, և 'ի նետից ցնդելոց և 'ի քարանց ձգելոց յամբոխէ բազմութենէն՝ խառն ընդ մոխրոյն ամբարձելոյ յօդս անմարթ էր ինչ մի զատաջեալ նշմարել: Ահագին էր այնուհետև Լակեդեմոնացւոց տագնապ վտանգին. զի ոչ ևս զօրէին սաղաւարտք նոցին տոկալ ընդդէմ նետից թօթափելոց և գեղարդունք անգամ 'ի ձեռս նոցա բեկանէին: Ոչ ևս էր գիտել նոցա զինչ առնել նոցա, զի որ առ ոտս և առաջի աչաց էր՝ ոչ տեսանէին. և առ խառնաձայն գոչիւն ամբոխի թշնամեաց ըզպատուէրս հրամանաց առ ինքեանս ոչ լսէին. վտանգ ամենուստ պաշարէր զնոսա և ոչ մի ինչ յոյս ականկալութեան էր թափելոյ զանձինս 'ի կռուոյն և կամ ապրանաց:

ԼԸ. Ի վախճանի երբև բազումք 'ի նոցանէ խոց վիրաւորք լինէին, վասն ստէպ 'ի նոյն դարձ առնելոյ տեղի, սեղմ և հոծ պնդեալ զռազմն յետս նահանջեցան առ պահանորդս իւրեանց 'ի ծայր կղզւոյն, 'ի պատուարն որ չէր ինչ հեռի անտի: Բայց ընդ խլրտել սոցա ընդ կրունկն յետս, խրախուսեալ թեթևազէն զօրուն մեծագոյն ևս աղաղակաւ զհետ նոցա խիզախէին, և յորոց միանգամ հասանէին 'ի վերայ, պակաս առնէին զնոսա: Սակայն բազումք ապրեալ անկան 'ի պատնէշս պատուարին, և ընդ պահակերս տեղւոյն տուեալ ձիգ ընդ երկայնութիւն ամրոյն 'ի վերայ ոգւոցն կռուէին: Զհետ պնդեալ նոցա Աթենացւոց մօտ 'ի տեղին, և առ ամրութեան վայրացն չըկարելով փակեալ պաշարել զնոսա, մատուցեալ յառաջոյ վանել զնոսա ջանէին: Հարուստ մի ժամ մինչև ցմեծ կէս աւուրն խոնջ և վաստակ երկոքին իսկ կողմանք յերեսաց դժնդակ ռազմին, 'ի տօթոյ և 'ի ծարաւոյ, սակայն պնդեալ յամառէին՝ սոքա 'ի վանել զթշնամին 'ի բարձանց, և նոքա չխախտել 'ի տեղւոյն. և քան 'ի սկզբան յառաջագոյն լաւ ևս յաջողեցան աստանօր Լակեդեմոնացիք 'ի կռուին, չունելով նոցա զթշնամին սատան 'ի կողից:

ԼԶ. Իբրև չլինէր վախճան յամառ կռուոյն՝ մատուցեալ զօրապետ Մեսսենիացւոց օժընդակ գնդին առ Կլէոն և առ Դեմոսթենէս, «Վայրապար, ասէ, վաստակիք, որ եթէ տայք ինձ զմասն աղեղնաւորաց և մեկնակազէն զօրուն, պատեալ կալայց զթշնամին 'ի թիկանց՝ ընդ ճանապարհ զոր և գտից, բռնի արարեալ ինձ զելս»: Եւ ընկալեալ զխնդիրն, խաղաց ընդ գաղտագողի շաւիղս անտես 'ի թըշնամեաց, և յառաջէր ընդ վախուտս՝ յորս և գտանէր ոտնակոխ, զորս Լակեդեմոնացիք ընդ ամրութիւն վայրացն յուսացեալ՝ անպահապան էին թողեալ. և մեծաճիգն աշխատութեամբ ճանապարհ արարեալ շրջանաւ զանխուլ ամենևին 'ի թշնամւոյն՝ յեղակարծում ահա ելեալ երևեցաւ 'ի թիկանց կուսէ 'ի գլուխ կատարին, և ընդ տեսիլն անակնկալ պակուցեալ զարհուրեցոյց զնոսա, և 'ի ժամանել յամբոկ վախճանի գործոյն, անգագոյնս զիւրոն պատրաստէր: Պաշարեալ յայնժամ Լակեդեմոնացիք յառաջոյ և 'ի թիկանց, 'ի նոյն 'ի նման դէպս ըմբռնեցան՝ յորում և երբեմն, զփոքրն ընդ մեծին համեմատելով, որոց 'ի Թերմոպիլէ փակեալ 'ի Պարսից կորեան անփախուստ: Պաշարեալ և սոցա յամենայն կողմանց՝ չէր այլ ևս տեղի դիմակալելոյ, և սակաւք ընդ բազմաց մրցելով՝ 'ի քաղցէ և 'ի ծարաւ խոնջք ոգեսպառ սկսան տեղի տալ, ուր Աթենացիք կանխեալ կալեալ էին զանցս:

ԼԷ. Իբրև տեսին Կլէոն և Դեմոսթենէս, եթէ սակաւ միւս ևս և ծախէ զօրն զթշնամին, դուլ մարտի արարին արգելեալ զձեռս զօրականին 'ի կոտորածէն, և կամէին կենդանւոյն ածել զԼակեդեմոնացիս յԱթէնս, եթէ 'ի ձայն քարոզին զինջեալ յամբարտաւանութենէն նոքա, և նըկուն յերեսաց ահաւոր բաղդին՝ զինաթափ անձնատուր լինիցին: Եւ ձայն ետուն նոցա 'ի ձեռն քարոզի թողուլ զզէնս և զանձինս իւրեանց յԱթենացիս, որպէս զի ըստ կամաց հաճութեան յաղթողին սահմանեսցի նոցին բաղդ:

ԼԸ. Որոց լուեալ զբան քարոզին, և բազումք անդէն

զասպարսն 'ի վայր եդեալ, և զբազուկս 'ի վեր տատանէին զձեռս յօդս 'ի նշանակ ընդունելութեան աղաչաւոր յորդորին: Յետ այսորիկ դուլ զինուց արարեալ Կլէոն և Դեմոսթէնէ՝ մատեան 'ի բանակցութիւն ընդ Ստիփոնի Փարաքսեայ. զի յառաջնոց զօրավարաց սպանեալ Նախ Եպիտադոս, փոխանակեալ էր զնա Իպպակրեդաս, որ դեռ ևս կենդանի էր, բայց կարեվէր անկեալ և 'ի շունչ վախճանի. և երկրորդս այս՝ 'ի պակասել այլոց, ըստ օրինաց ընտրեալ 'ի զօրավարութիւն: Եւ պատասխանի արարին Ստիփոն և որք ընդ նմա գլխաւորք՝ թողուլ նոցա պատգամաւոր լինել առ Լակեդեմոնացիս 'ի ցամաք երկրին՝ հարցանել 'ի նոցանէ զիւրեանց զարժան առնելին: Եւ 'ի չներել նոցա Աթենացւոց ելանել անտի արտաքս ումեք, ինքեանք Աթենացիք յղեալ յիւրեանց անտի կոչեցին 'ի ցամաք երկրէն նաւիրակս, որք և յետ երկուց և երից պատգամաւորութեանց՝ վերջինն 'ի նոցանէ զայս պատուէր եբեր 'ի Լակեդեմոնացւոց. « Այս հրաման է ձեզ 'ի Լակեդեմոնացւոց, անձամբ զանձանց խորհել և մի ամօթոյ ինչ գործել »: Որոց և խորհելով յիւրեանս զէնընկէց անձնատուր եղեն յԱթենացիս: Զօրն զայն և զգիշերն ողջոյն 'ի պահ զգուշութեան կալեալ զնոսա Աթենացւոց, 'ի վաղիւն նշան յաղթութեան կանգնեցին 'ի կղզւոջն և պատրաստեցան չու դարձի առնել, զգերիսն յանձն արարեալ 'ի պահպանութիւն կարգապետաց. և Լակեդեմոնացիք յղելով պատուիրակ մի ամփոփեցին զդիակունս մեռելոց իւրեանց: Եւ այս եղև թիւ անկելոց 'ի կղզւոջն և կենդանւոյն ըմբռնելոց, միահամուռ չորեքհարիւր քսան ասպարազէնք անցին 'ի կղզին, յորոց երեքհարիւրն ութիւ չափ միայն պակաս 'ի գերութիւն վարեցան, այլք ամենեքեան անկան մեռեալ. 'ի գերելոցն հարիւր քսանն Սպարտացիք էին. իսկ յԱթենացւոց սակաւք յոյժ անկան, զի ոչ ըստ օրինի էր ճակատամարտ:

Լթ. Եւ աւուրք՝ զորս պաշարեալ մնացին արքն 'ի

կղզւոջն, 'ի Նաւակռուոյն մինչև 'ի մաքառումն 'ի վերայ տեղւոյն 'ի կղզւոջն՝ աւուրք եօթանասուն և երկու, յորոց զքսան աւուրս 'ի հրեշտակութիւնս և 'ի բանակցութիւն խաղաղութեան էին՝ ընդունէին պաշարեալքն կերակուր չափով. իսկ զմնացեալ ժամանակն գաղտագողի հայթհայթեալ համբարովք կերակրեցան: Եւ գտաւ ցորեան և այլ կերակուր շատ 'ի կղզւոջն, զի զօրավար նոցա Եպիտադաս խնայօրէն բաշխէր զայն և ոչ ըստ գոյին: Մեկնեցան Աթենացիք և Պելոպոնեսացիք զօրօք իւրեանց 'ի Պիւղոսէ, և դարձաւ իւրաքանչիւր յերկիր իւր. և Կլէոնի խոստումն թէպէտ մոլեկան՝ 'ի գլուխ ելեալ կատարեցաւ, զի 'ի քսան աւուրս էած զարսն որպէս և խոստացաւ:

Խ. Քան զամենայն կարծիս աննկալեաց տարադէպ երևեցաւ Հելլենաց արկածս այս պատերազմի. որոց ոչ առ քաղցու և ոչ առ ծարաւոյ, և ոչ յորում և է հարկի բռնութեան զէնընկէց լինել զՂակեդեմոնացիս գիտէլով՝ և ցորչափ շունչ էր 'ի նոսա արիաբար կռուել անկանել, չըկարէին հաւատալ թէ անձնատուրքն հաւասարք գտան անկելոց 'ի պատերազմին: Եւ 'ի հարցանել երբեմն ուրումն 'ի դաշնաւորացն Աթենացւոց ընդ հեգն 'ի գերելոց անտի կղզւոյն զօք՝ թէ մեռեալքն 'ի կղզւոջ քաջարիք ոմա՞նք էին. արար նա պատասխանի. «Յարգէր զսլաք նետին, եթէ գիտէր նա ընտիր առնել ընդ քաջ և ընդ վատ». որով տայր նա իմանալ, եթէ ըստ կոյր դիպաց ընդ հարուածովք քարանց և նետից կոչկոճեալ անկան որք անկանն:

ԽԱ. Ի հասանել արանց գերելոց յԱթէնս, խորհեցան Աթենացիք ունել զնոսա 'ի կապանս՝ մինչև միաբան հաւանութեամբ 'ի հաշտութիւն խաղաղութեան գայցեն. բայց եթէ յառաջ քան զայն ասպատակ դիցեն Պելոպոնեսացիք յԱտտիկէ՝ հանեալ կոտորել զարսն, և կարգեցին պահանորդս 'ի Պիւղոս: Առաքեցին և Մեսսենիացիք 'ի Նաւպակտեայ անդր 'ի Պիւղոս, իբրու յիւրեանց հայրենիս արս քաջս, զի մասն էր այն երբեմն երկրին Մեսսենիացւոց, որք

և սփռէին անտի 'ի Լակոնիա ասպատակս, և վասն միաշուրթըն նոյնաբարբառ ընդ գաւառականսն լինելոյ՝ զեան մեծ նոցա հասուցանէին։ Եւ զի անգէտք էին յայնժամ Լակեդեմոնացիք աւարհարութեանն և օրինակի պատերազմին, և զի Իլոտք ևս դասալիք գնային, կասկածելով նոցա թէ գուցէ մեծի իրիք յեղափոխութեան առիթք լինիցին՝ տագնապէին. և ոչ կամելով 'ի վեր հանել զայն Աթենացւոց՝ հրեշտակութեամբ առ նոսա փորձ փորձէին խնդրել 'ի նոցանէ զՊիւլոս և զարս իւրեանց։ Իսկ Աթենացիք մեծամեծս պահանջելով 'ի նոցանէ և ծանունս, զանէպ հրեշտակութիւնս ընդունայն յետս դարձուցանէին։ Այսուքիկ այսքան վասն Պիւլեայ անցից։

ԽԲ. Յետ այսորիկ 'ի նմին յայսմ ամարանի խաղացին Աթենացիք ութսուն նաւուք և երկու հազար ասպարաւոր զօրու և երկերիւր հեծեալս ամբարձեալ 'ի նաւս, որոց զհետ գնային և դաշնաւորք նոցա Միլետացիք, Անդրիացիք և Կարիստիացիք. և զօրավարէր արշաւանիս Նիկիաս Նիկերատեան ընդ այլ երկուս իշխանակից զօրագլուխս։ Նաւեալ նոցա ելին ընդ արշալուրշն 'ի ցամաք՝ որ ընդ մէջ Քերսոնեսեայ և Ռեետոնի, ուր ամբառնայ Սոլիկիոս բլուր, յորում ամրացեալ երբեմն Դորիացիք սատան լինէին քաղաքին Կորնթացւոց յԵւոլեանց, յորում կայ դեռ ևս աւան մի Սոլիկիա անուն։ Ի ծովափանց աստի ուր խարիսխ արկեալ դադարեցին նաւք, հեռի է աւանս Սոլիկիա իբրև երկոտասան վտաւանաւ. իսկ Կորնթոս քաղաք՝ վաթսուն, և պարանոցն կորնթեան քսան։ Լուր առեալ Կորնթացւոց ընդ ճանապարհ Արգոսի ընդ հուպ գալստեան զօրու թըշնամւոյն, աճապարեալ միախումբ կանխեցին եկին 'ի նեղուցն՝ բաց 'ի հեռաբնակացն, թող և զհինգհարիւրսն՝ որք յԱմբրակիա և 'ի Լեւկադա 'ի պահպանութիւն առաքեցան. և դէտ ակն կալեալ մնային տեսանել թէ ուր խարիսխ արկեալ դադարեսցեն Աթենացիք։ Եւ զի գիշերայն ծածուկ լինէր նաւարկութիւնս, և նշանք ազդարարք ամ-

բառնային, թողեալ նոցա զկէս զօրուն 'ի Կենքրէ, և խեթացեալ զի մի Աթենացիք 'ի Կրոմմիոն երթիցեն, աճապարեցին դիմել յօգնութիւն անդր:

ԽԳ. Բատտոս մին 'ի զօրավարաց, զի կրկին էին նոցա զօրավարք 'ի պատերազմիս, գնդովն հատուածելով 'ի զօրուէն եւ 'ի Սոլիկիա ևանն 'ի պահ զգուշութեան տեղւոյն, զի անպարիսպ էր. և Լիկոփրոն մնացելովք զօրօք 'ի դիմի հարաւ թշնամւոյն: Ընդ իջանել Աթենացւոց 'ի Քեռսոնեսոն՝ նախ 'ի վերայ աջոյ թևի նոցա յարձակեցան Կորընթացիք, ապա ընդ ողջոյն բանակին հարան. սաստիկ էր խազմն, և բազում առ բազում կռուէին: Զդէմ կալեալ յարձակման Կորնթացւոց աջակողմեան թևն Աթենացւոց և Կարիստացւոց, հազիւ կարացին վանել զնոսա. որոց տեղի տուեալ մինչև 'ի տեղի ուրեք ցանկապատ, և անտի 'ի բարձուէն՝ քանզի զառ 'ի թափ կողեալ էր երկիրն, քարինս 'ի թշնամին ձգէին, և զպատերազմական հնչեցուցանելով զերգս, կրկին զյարձակումն նորոգէին: Ընդ առաջել նոցա Աթենացւոց այս երկրորդ անգամ ուժգինս լանջ առ լանջ կռուէին, և վաշտու միոյ Կորնթացւոց հասեալ 'ի թիկունս ձախոյ թևի իւրոյն, 'ի փախուստ դարձոյց զաջ թև Աթենացւոց՝ հալածական տանելով զնոսա մինչև 'ի ծով. այլ վերստին ելեալ Աթենացւոց և Կարիստացւոց 'ի նաւաց իւրեանց, դարձեալ վառեցին զհրդեհ մարտին: Պատերազմ խիստ եղև 'ի տեղւոջն յայնմիկ, մանաւանդ յաջում թևի անդ Կորնթացւոց, յորում մեծապէս ճգնէր Լիկոփրոն վանել զահեկինս Աթենացւոց, զի կարծէին յարձակել նոցա 'ի Սոլիկիա:

ԽԴ. Եւ երկարեցաւ պատերազմն աստ և անտի յամառ մինչև զօրանալ Աթենացւոց 'ի ձեռն այրուձիոյն, որ զօրաւիգն մեծ էր 'ի կռուին, որ և պակասէր թշնամւոյն. և սկսան Կորնթացիք յետս ընկրկել յայնժամ և ամփոփել 'ի բլուրն, և դադարեալ անդ ոչ ևս դարձան 'ի կռիւ: Եւ անկան 'ի մարտին բազումք յաջոյ թևոյն, ընդ նոսա և

Լիկոփրոն. և մնացորդ զօրուն՝ Թէպէտ և ոչ տագնապաւ, Թիկնադարձոյց փախստեայ գնայր երԹալ ամրանալ տակաւ 'ի բարձրաւանդակն կոյս: Տեսեալ ԱԹենացւոց եԹէ ոչ ևս այլ խլրտի Թշնամին գալ 'ի կռիւ, ամփոփեալ զմեռեալսն իւրեանց և զԹշնամեացն դիակապուտ արարեալ՝ նշան յաղԹուԹեան առ ետեղ կանգնեցին:

Իսկ միւսոյ կիսոյ բանակի զօրուն ԿորնԹացւոց՝ որ 'ի պահ Կենքրեայ նստեալ էր, երկուցեալ Թէ գուցէ 'ի Կրոմմիոն նաւեսցեն ԱԹենացիք. և զի 'ի պատճառս Օնիոն լերին չկարէին նշմարել զչու նոցա, 'ի տեսիլ փոշւոյն ծանեան զեղեալսն, և արագապէս անդր 'ի տեղին դիմեցին: Եւ որք 'ի քաղաքին էին ծերք ԿորնԹացւոց՝ իբրև զգացին զիրսն՝ հասին և նոքա յօգնականուԹիւն: Տեսեալ ԱԹենացւոց զամբոխ յարձակելոցն, և կարծելով եԹէ 'ի մերձաւոր սահմանաց Պելոպոնեսեայ գան նոքա 'ի վերայ, հապճեպ մեկնեցան շտապաւ 'ի նաւս, տանելով ընդ իւրեանս զաւարն և զդիակունս անկելոց իւրեանց, բայց յերկուց՝ զորս ոչ կարացին գտանել: Եւ ամբարձեալ անտի անցին 'ի մօտաւոր կղզիս, և արձակեալ քարոզ մի ընկալան դաշամբ և զդիակունսն զորս Թողեալ էր: Եւ անկան 'ի պատերազմին երկերիւր և երկոտասան 'ի ԿորնԹացւոց, և իբրու յիսնիւ չափ յԱԹենացւոց:

ԽԵ. Ելեալ ԱԹենացւոց 'ի կղզեաց աստի 'ի նմին աւուր նաւեցին 'ի Կրոմմիոն ԿորնԹացւոց՝ որ հեռի էր 'ի քաղաքէն հարիւր և քսան ասպարիսաւ. և նստեալ 'ի տեղւոջն աւերեցին զերկիրն, և զայն գիշեր անդ ագան: Եւ 'ի վաղիւ անդր նաւարկեալ նախ յԵպիդաւրոս, ելին 'ի ցամաք և հասին մինչև 'ի ՄեԹոն՝ 'ի մէջ Եպիդաւրեայ և Տրեզենեայ, և կալեալ զպարանոցն Քերսոնեսեայ՝ յորոյ վերայ կառուցեալ է ՄեԹոն քաղաք, և պարսպեալ զայն՝ պահնակս 'ի նմա կացուցին, և յաւարի առեալ զերկիրն Տրեզենեայ, Ալեայ և Եպիդաւրեայ և ամրացուցեալ զվայրն դարձան 'ի տունս իւրեանց:

ԽԶ. Առ սովին մինչդեռ այսպիսի գործէին, Եւրիմեդոն և Սոփոկլէս ելեալ 'ի նաւս Աթենացւոց մեկնեցան 'ի Պիւլեայ երթալ 'ի Սիկիլիա, և եկին 'ի Կորկիւրա. միաբան զինուորեալ ընդ սոսա բնակչաց քաղաքին չոքան 'ի վերայ վտարանդի քաղաքացեաց իւրեանց ամրացելոց 'ի լեառն Իստոն, որք 'ի ժամանակէ անտի առանին խռովութեան ասպատակաւ բազում վնասս հասուցանէին երկրին: Ցարձակեալ կալան սոքա զամրոցն, և ամրականացն ապաստանեալ խմբովին 'ի բարձրաւանդակ ուրեք վայրի հաւանեցան դաշամբ խաղաղութեան տալ 'ի ձեռս զվարձկան զօրն, և ինքեանք թողեալ զզէնս անձնատուրք' մնալ վճռոյ ժողովրդեան Աթենացւոց: Ըստ այսմ հաւանութեան պայմանեալ դաշանցս' ածին զնոսա զօրավարքն 'ի կղզին Պտիքիա 'ի պահ, մինչև յառաքումն նոցա յԱթէնս. բայց եթէ ըմբռնեսցի ոք 'ի նոցանէ 'ի փախստեան իւրում, վասն ամենեցուն նոցա լուծեալ լիցին այնուհետև դաշինք: Սակայն երկուցեալ գլխաւորաց ժողովրդեան Կորկիւրացւոց, մի՛ գուցէ 'ի հասանել կալանաւորելոցն յԱթէնս' խնայեսցէ 'ի նոսա ժողովուրդն Աթենացւոց, այսպիսի ինչ նիւթեցին խորհուրդ նենգութեան: Առաքեցին զոմանս 'ի բարեկամաց նոցա 'ի կղզին, իբրու բարեխոհ խորհրդատուս առ նոսա, հաւանեցուցանել զնոսա խոյս տալ 'ի կղզւոյն, ունելով վասն նոցա նաւարկութիւն պատրաստական, զի խորհէին զօրավարք Աթենացւոց մատնել զնոսա 'ի ձեռս խուժանին Կորկիւրայ:

ԽԷ. Իբրև հաւանեցան սոքա, և պատրաստ էր դաւադիր նաւարկութիւնս, յելս անդ 'ի նաւս' ձերբակալ եղեն, որով լուծեալ դաշանց' մատնեցան ամենեքեան նոքա 'ի կամս Կորկիւրացւոց: Ոչ ինչ պակաս ձեռնտու գտան յայսմ նենգութեան և զօրավարք Աթենացւոց, 'ի չքմեղս անձանց և 'ի համարձակագոյն խրախոյս դաւադրաց. զի անպատրուակ յայտնի երևէր ամենեցուն չկամութիւն նոցա օտարին թողլոյ զպարծանս ածելոյ զնոսա յԱթէնս,

մինչդեռ ինքեանք չուել ունէին 'ի Սիկիլիա: Եւ կալեալ Կորկիւրացւոց զարս փակեցին զնոսա 'ի բնակութիւն մի մեծ. և 'ի մէն մինուագ ածեալ անտի արտաքս զարս քսան կապեալս 'ի միմեանս, և ընդ կրկին շարս զօրականին անցուցանելով, տային ջալատիչք հարկել զնոսա և տիգօք խոցոտել, մինչև ճանաչել ոմանց զթշնամիս իւրեանց 'ի հարկանելն. և գահիճք խարազանաւորք զհետ գնալով վարէին մլէին զդանդաղկոտս:

ԽԸ. Եւ այսպէս արք իբրև վաթսուն քարշեալ արտաքս 'ի սպանդ վարեցան, բանտարկելոցն համարելով այլուր զնոսա փոխել: Այլ իբրև կասկած կալաւ զնոսա, և պատմէր նոցա ոմն զխուժ սպանութեանց կոտորածս, աղաչէին նոքա թախանձանօք զԱթենացիս՝ թողուլ զնոսա յիւրեանց ձեռս զրաւ առնել կենաց իւրեանց, և չկամէին այնուհետև արտաքս 'ի տեղւոյն ելանել. և ոչ զոք թողուլ 'ի ներքս առ նոսա մտանել: Զէին և Կորկիւրացւոց կամք խորտակելոյ զդրունսն, այլ 'ի տանիս բնակութեան նոցա ելեալ, և 'ի բաց զձեղունսն առեալ՝ զկղմինտրս 'ի գլուխս նոցա թօթափէին, և նետիւք խոցոտէին: Նոքա որչափ ինչ կարէին, անձանց պահ ունել ճգնէին, բայց և բազումք զնետս հոսեալս 'ի բարձանց՝ 'ի պարանոցս իւրեանց մխելով, այլք 'ի պարանս մահճաց իւրեանց 'ի բանտին, և կամ 'ի ծուէնս հանդերձից խեղդ զանձամբ արկեալ զկեռովին գնային. և զմեծ կէս գիշերոյ՝ որ անհագին կոտորածոյն 'ի 'ի վերայ հասանէր, ազգի ազգի օրինակաւ ընդ իւրեանց իսկ ձեռն, և կամ 'ի նետից ցնդելոց 'ի վերուստ՝ խժաբար սատակէին: Իբրև առաւօտ եղև, 'ի սայլս սայլս բարձեալ զնոսա Կորկիւրացիք ածին արտաքոյ քաղաքին. և կանայք նոցա յամրոցին 'ի գերութիւն վարեցան: Եւ օրինակ զայս ամրացեալքն 'ի լերին Կորկիւրացիք կորեան 'ի ձեռն ժողովրդեան. և խռովութիւնս այս մեծ 'ի սոյն կալաւ վախճան, չթողլով այլ ինչ արժանալուր իբրու մաս կարևոր առաջնկայ պատերազմիս: Իսկ Աթենացիք ուր դէմ եդեալ

էին՝ ուղղոյ եղեն 'ի Սիկիլիա, գումարել ընդ դաշնաւորս 'ի պատերազմ:

ԽԹ. Իսկ որ 'ի Նաւպակտոն էին Աթենացիք և Ակառնանացիք, զինուորեալք 'ի վերջ ամարայնոյս կալան մատնութեամբ զԱնակտորիոն քաղաք Կորնթացւոց՝ որ 'ի բերան Ամբրակեան ծոցոյն, և Ակառնանացիք մերժեալ անտի զբնակս Կորնթացիս, յինքեանս գրաւեցին զերկիրն. որով եղև վախճան ամարայնոյս:

Ծ. Ի գալ ձմերայնոյ Արիստիդէս Արքիպպեայ 'ի հարկապահանջ զօրավարաց նաւատորմին արձակելոյ առ դաշնաւորս 'ի դրամաժողով, կալաւ զԱրտափեռն զայր պարսիկ 'ի Հիոն քաղաքի 'ի վերայ Ստրիմոն գետոյ՝ առաքեալ յարքայէն առ Լակեդեմոնացիս. և ետ տանել զնա յԱթէնս. ընթերցան անդ Աթենացիք զնամականի նորին, յեղեալ յԱսորեստանեայց բարբառոյն, յորում ընդ այլ բանս առ Լակեդեմոնացիս՝ էր գրեալ և այս. Թէ չիմանայ արքայ զխնդիր նոցա 'ի բազմաց հրեշտակաց եկելոց 'ի նոցանէ. ուր ոչ ոք ասէ զնոյն բան. զոր եթէ կամ իցէ նոցա յայտնապէս պարզել, արձակեսցեն առ նա ընդ Արտափեռնեայ հրեշտակս: Եւ յղեցին յետ այնորիկ Աթենացիք զԱրտափեռնէս 'ի նաւ մի պատերազմիկ յԵփեսոս, ընդ նմա և դեսպանս. որոց լուեալ անդ՝ եթէ Արտաշէս արքայ որդի Քսերքսեայ այն ինչ մեռեալ էր, որ արդարև զայնու ժամանակաւ վախճանէր, դարձ արարին յերկիր իւրեանց:

ԾԱ. Ի նմին ձմերանի քանդեալ կործանեցին Քիացիք հրամանաւ Աթենացւոց զնոր պարիսպ իւրեանց, 'ի կարծիս կասկածանաց յետս կալոյ 'ի ձեռանէ նոցա. բայց չառ իսկ երաշխաւորեալ խոստացան նոցա Աթենացիք չառնել ինչ այլ նոր յեղափոխութիւն 'ի նոսա: Այսպէս կատարած եղև ձմերայնոյս և եւթներորդի ամի պատերազմին, զոր պատմագրեաց Թուկիդիդէս:

ԾԲ. Ի սկիզբն առաջիկայ ամարայնոյս՝ 'ի նորել լուսանոյ դէպ եղև խաւարումն արևու, 'ի նմին յամսեան դի-

պեցաւ և սասանութիւն երկրի։ Իսկ 'ի Միտիլինեցւոց և յայլոց Լեսբիացւոց տարագիրք չուելով 'ի ցամաք յերկրէ ամբոխիւ և վարձկանեաւ 'ի Պելոպոնեսացւոց, զօրաժողով լեալ և յայլոց՝ եկին կալան զՀռետիոն, և առեալ երկուս հազարս ստատերս 'ի Փոկէացւոց՝ դարձուցին զայն վերստին 'ի նոսա առանց ումեք մեղանչելոյ։ Խաղացին անտի 'ի վերայ Անտանդրեայ, առին և զայն մատնութեամբ. և խորհէին յազատութիւն հանել զամենայն Ակտեան անուանեալ քաղաքանին, որք ընդ Միտիլինեցւովք էին երբեմն և այժմ ընդ Աթենացւովք, մանաւանդ զԱնտանդրոս քաղաք։ Եւ զի պատկանաւոր էր վայրն 'ի կառոյցս նաւաց՝ մերձ գոլով Իդայ լերին, առատութեամբ փայտի. խորհէին տիրել քաղաքին, և զինու պատրաստութեամբ ամրացուցեալ՝ ասպատակ անտի սփռել դիւրեաւ 'ի Լեսբոս՝ որ մօտ էր, և նեղել զայն. և 'ի ցամաքի նուաճել զԷօլեան քաղաքկնեարն։ Եւ յայսմ խորհրդի պատրաստութեան էին սոքա։

ԾԳ. Ի սմին յայսմ ամարանիս արշաւանս եդին Աթենացիք 'ի Կիւթերա վաթսուն նաւուք, երկու հազար ասպարազէն զօրու, սակաւուք ոմամբք հեծելովք և դաշնաւորօք Միլեսիացւովք և այլով. և զօրավարէր սոցա Նիկիաս Նիկերատեան, Նիկոստրատոս Դիոտրեփեայ և Ատոկլէս Տոլմեան։ Կիւթերա է կղզի յարակից Լակոնիոյ՝ մերձ 'ի սարն Մալէայ. բնակիչք նորա Լակեդեմոնացիք 'ի շրջաբնակացն. և առաքէին ամի ամի անդր իշխան մի դատաւոր Կիւթերեան անուանեալ, յղէին և պահանորդ զօրս՝ խնամ մեծ ունելով կղզւոյն. զի ապաւէն էր նա և դադար վաճառական նաւաց եկելոց յԵգիպտոսէ և 'ի Լիբիոյ, և ոչ իշխէին այնպէս դիւրաւ ասպատակել հէնք 'ի Լակոնիա, ընդ որ միայն կարէին 'ի ծովէ աւազակել. և ձգի կղզիս 'ի Սիկիլիա կոյս և 'ի Կրետէ։

ԾԴ. Հասեալ Աթենացւոց տասն նաւուք և երկու հազար միլեսիացի ասպարակիր զօրու կալան զԾովեզերեայ

քաղաքն Սկանդիա, և առաջ մի զօրուն իջեալ 'ի կողմն մի կղզւոյն, որ է հանդէպ Մալեայ, խաղացին 'ի քաղաքն Կիւթերա՝ որ է առ ծովուն, և գտին զբնակիչս զինեալս զամենեսին ընդդէմ նոցա արտաքոյ քաղաքին, և վաղվաղակի եկին 'ի կռիւ։ Կիւթերացիք փոքր մի դիմամարտեալ, թիկնադարձոյց փախստեամբ անկան 'ի վերին կողմն քաղաքին, և անտի բանագնաց եղեն առ Նիկիա և առ իշխանակիցս նորա խոնարհել 'ի կամս Աթենացւոց՝ միայն զի խնայեսցեն 'ի կեանս նոցա։ Եւ զի յառաջագոյն կանխաւ բանակցութիւն լեալ էր Նիկիայ ընդ ոմանս 'ի Կիւթերացւոց, որով դիւրացաւ արդ պատգամաւորութիւնս, և անյապաղ և շահաւորագոյն շնորհեցան նոցա պայմանք վասն այժմեան ժամուն և վասն ապառնւոյն. ապա թէ ոչ ունէին Աթենացիք խախտել զնոսա այլուր. զի Լակեդեմոնացիք էին, և կղզի նոցա մերձաւոր յոյժ Լակոնիոյ։ Յետ դաշնաւորութեանս կալան Աթենացիք զՍկանդիա, որ կառուցեալ է առ հանգրուանի նաւաց, պահանորդս 'ի Կիւթերա եդեալ՝ նաւեցին անտի յԱսինէ և 'ի Հելոս և 'ի քաղաքս ծովեզերայս. և ելեալ 'ի ցամաք գիշերեցին անդանօր 'ի դիպան տեղւոջ, և աւերէին ապատակութեամբ զերկիրն զաւուրս եօթն։

ԾԵ. Տեսեալ Լակեդեմոնացւոց եթէ կալան Աթենացիք զԿիւթերա, խիթալով միայն արշաւելոյ նոցա և յերկիր իւրեանց, այլ ոչ ուրեք միագունդ շարժեցան ընդդէմ նոցին, այլ ցիր ընդ գաւառն սփռեալ զբազմութիւն ասպարաւոր զօրուն 'ի զգուշութիւն միայն վայրացն, և 'ի տեղիս տեղիս բազում արթնութեամբ պահ կալան երկուցեալ յերեւսաց յեղափոխութեան, յետ կեղակարծ մանաւանդ արկածից կղզւոյն Սփակտերիոյ, և 'ի ձեռս թշնամւոյն անկանելոյ Պիւլոսի և Կիւթերայ. և ամենուստ յանակնկալս 'ի պատերազմ ըմբռնեալք, մինչ զի արտաքոյ քան զօրէն սովորութեան զինել նոցա հեծեալս չորեքհարիւր և աղեղնաւորս։ Չէր երբէք այնպէս գանդաղեալ Լակեդեմոնա-

ցուց 'ի գործ պատերազմի՝ որպէս զայս նուագ. զի օտար 'ի բնիկ իւրեանց սովորութենէ 'ի պատրաստութիւն նաւական մարտի ստիպէին, և այն ընդդէմ Աթենայւոց՝ որք անդուլք և անդադարք, ոչ շատ ինչ գործեալ համարէին եթէ յինչ մի ամենևին նոր ոչ ձեռնարկէին: Դարձեալ 'ի սակաւուն՝ բազմապատիկ վշտաց հանդիպեալ, մեծապէս երկնչէին, եթէ գուցէ հասցեն նոցա այլ ինչ նմանօրինակ աղէտք, զոր օրինակ որ 'ի կղզւոջ Սփակտերիոյ: Որով ոչ ևս այնուհետև նովին համարձակութեամբ 'ի պատերազմ խրախուսէին, և յամենայն ոտնփոխս գթել վրիպել կարծէին. զի և վասն անփորձ լինելոյ արկածից չարեաց, ոչ ևս այլ երաշխաւորէին մտօք նոցա 'ի յոյս յաջողութեան:

ԾԶ. Մինչդեռ զծովեզերեայս հարկանէր զօրն Աթենացւոց, բազումք այնք էին՝ որ հանդարտեալ նստէին, զի յարշաւանս անդ նոցա յերկիր ուրեք՝ պահանորդք տեղւոյն վհատութեամբ իմն անբաւական 'ի թիւ զինքեանս կարծէին: Ի Կոտիրտա միայն և յԱփրոդիսիա պահնակ գունդն արիացաւ 'ի կռիւ, որ 'ի վերայ մեկնակազէն վայրատելոյ զօրուն յարձակեալ՝ ահացոյց զնոսա. այլ յերևել ասպարազէն գնդին՝ տեղի ետ վերստին, զսակաւս թողեալ 'ի տեղւոջն մեռեալս, և զզէնս 'ի կապուտ կողոպուտ յաղթականին. որոց և նշան յաղթութեան կանգնեալ՝ նաւեցին 'ի Կիւթերա. և զափամբ գնալով անտի Աթենացիք հասին յԵպիդաւրեան Լիմերա, և հարկանելով զկողմն մի արտօրէից՝ եկին 'ի Թիւրէա, որ է մասն երկրին Կիւնուրիոյ ընդ մէջ սահմանացն Արգոսի և Լակոնիոյ: Լակեդեմոնացիք տեարք երկրիս՝ տուեալ էին զայն 'ի բնակութիւն Եգինացւոց հալածելոց 'ի բնիկ յերկրէ իւրեանց, փոխանակ երախտեացն զոր ցուցեալ էր նոցա 'ի ժամանակս սասանութեան երկրին և ապստամբութեան Իլոտաց. զի և յորժամ ընդ Աթենացւովք էին Եգինացիք սրտիւք միշտ և յօժարութեամբ 'ի Լակեդեմոնացիս մտանէին:

ԾԷ. Ի մերձենալ Աթենացւոց թողեալ Եգինացիք զշի-

նութիւն պատուարացն՝ զորս առ ծովեզերբ կառուցանէին, և ամփոփեցան 'ի վերին քաղաքն յորում բնակէին տասն վտաւանաւ հեռի 'ի ծովափանց: Գունդ մի միայն 'ի պահականաց անտի Լակեդեմոնացւոց՝ որ ընդ Եգինացիսն 'ի կառոյցս պատուարին վաստակէր, ոչ կամելով անսալ աղաչանաց նոցա մտանել ընդ նոսա 'ի քաղաքն, յորում վտանգաւոր, ասէին, ամփոփել, ելեալ մեկնեցաւ 'ի բարձունս, և անբաւական կարծելով լինել 'ի կռիւ, հանդարտեալ նստաւ անդանօր: Ի պահու աստ ելեալ Աթենացւոց 'ի ցամաք, և միախուռն յառաջեալ փութանակի կալան զԹիւրէա, և յաւարի առեալ զոր ինչ 'ի նմա՝ հրձիգ 'ի քաղաքն եղեն. և զԵգինացիս զապրեալս 'ի կռուին զհետ իւրեանց ձգելով՝ դարձան յԱթէնս. և զՏանդալոս զորդի Պատրոկլեայ զիշխան քաղաքին 'ի կողմանէ Լակեդեմոնացւոց՝ զվիրաւորեալն, տարան ընդ գերւոյն. եւուն խախտել ընդ իւրեանս և զման մի 'ի բնակչաց Կիւթերայ յառաւել զգուշութիւն ապահովութեան: Եւ վճռով սահմանեցին Աթենացիք 'ի սփիւռս բնակեցուցանել զնոսա 'ի կղզիս, և զայլ կէսս 'ի Կիւթերացւոց թողուլ անխախտ 'ի նախնի իւրեանց բնակութիւն՝ տալով նոցա հարկել ամի ամի տաղանդս չորս. և զամենայն գերութիւն Եգինացւոց 'ի մահ տալ, փոխանակ հնապազօրեայ ատելութեան նոցա ընդդէմ Աթենացւոց, և զՏանտալոս թողուլ 'ի կապանս ընդ այլ կալանաւորս Սփակտերիոյ:

ԾԸ. Ի սմին յայսմ ամարանի դուլ զինուց եղև նախ ընդ Կամարինեցիս և ընդ Ժողովուրդն Գելայ. մինչև այլոց Սիկիլիացւոց հրեշտակք 'ի քաղաքաց քաղաքաց ժողովեցան 'ի Գելա քաղաք, խորհել զհնարից հաշտութեան: Բազմապատիկ առաջարկ կարծեաց և խնդիրք ակնան 'ի մէջի, որպէս ինչ իւրաքանչիւր համարէր կրեալ վնաս. անդ Երմոկրատէս որդի Հերմոնեայ սիրակուսացի՝ որ և հաւանեցոյցն զնոսա 'ի հաշտութիւն խաղաղութեան՝ խօսել կալաւ օրինակ զայս.

ԾԹ. « Ոչ անհնչան, և ոչ պատերազմաւ պարտաւելոյ քաղաքի քաղաքացի, գամ ես 'ի խօսել, ո՛ Սիկիլիացիք, դնել ձեզ հասարակաց ամենեցուն զառաջեաւ զԹուեցեալ զօգտակար խորհուրդս վասն բոլորից իսկ Սիկիլիոյ: Այլ զի՞ պիտի 'ի փորձոյ գիտակացդ առաջի զչարեաց պատերազմի զկարի իսկ դժնդակաց երկարագոյնս ճառել: Ոչ ոք առ անգիտութեան այժմ 'ի նոյն մղեցաւ, և ոչ 'ի հաւատալն շահել ինչ մի այտի, առ երկիւղի՝ ձեռնԹափ յայնմանէ հեռացեալ մերժեցաւ: Սակայն մարԹ է առ աղետիւքն Թուել ոմանց առաւելուլ շահուն. և այլոց չկամելով անցաւոր ինչ վշտաց տանել, ընտրել մանաւանդ յանձն առնուլ, արկանել զանձինս 'ի վտանգս: Այլ եԹէ ըստ յուսոյ ակնկալուԹեան չյաջողեալ վրիպեսցին 'ի խորհուրդս, յորդոր հաշտուԹեան ապա՝ որպէս մեզ արդ 'ի ժամուս շահաւորագոյնս երևեսցի նոցա: Զի իւրաքանչիւր իւրում շահուն միտ եդեալ 'ի սկզբան՝ ձեռնամուխ 'ի կռիւս եղաք, նովին խորհրդով և այժմ այսօր 'ի հնարս հաշտուԹեան գամք մրցել բանիւք. և եԹէ չկարիցեմք հաւասար օրինօք իրաւախոհ ընդ միմեանս լինել, դարձցուք վերստին 'ի մարտ պատերազմի:

Կ. « Բայց և զայս արժան է գիտել, զի ոչ վասն անձնիւր շահուն ածեալք միայն, եԹէ իմաստուԹեամբ խորհիցիմք, գամք այսօր 'ի ժողովս. այլ ջանալ ազատել զողջոյն իսկ Սիկիլիա, որպէս հաւանեալս եմ, 'ի դարանակալուԹեանց ԱԹենացւոց. և աւելի քան զիմս առաջարկեալ բան, զԱԹենացիս հարկեցուցիչս առ այս համարել, որք հզօրագոյնք քան զամենայն Հելլենս՝ սակաւաւոր նաւովք մերձ առ մեզ՝ զվրիպակս մեր լրտեսեն, և ընդ անուամբ օրինաւոր դաշնակցի զբնիկ ԹշնամուԹիւն իւրեանց քօղարկեալ՝ յօգուտ անձանց զայնս շրջեն: Զի եԹէ վերստին պատերազմ ընտրիցեմք և դառնալ կոչել զարգ մեզ 'ի մարտակցուԹիւն, ոյք անհրաւէր անգամ 'ի նոյն զինուորին, 'ի կորուստ մեր չարաչար վաստակիմք, և ճանապարհ առ-

նեմք նոցա 'ի տիրապետութիւն. զի 'ի դէպ է ամենեւին, երբ պարտասեալս զմեզ տեսանիցեն նոքա մեծախումբ եւ տորմղաւ եկեալ 'ի վերայ, և փորձեսցեն ընդ իւրեամբք արկանել զերկիրս համօրէն:

ԿԱ. « Այլ պարտ է, եթէ իմաստնանալ կամք են մեզ, փոխանակ զանպատկանաւորն մեզ գրաւել ցանկանալոյ և զոր ունիմքս տուժելոյ՝ փութալ մանաւանդ յաճախել մեզ դաշնաւորս, և զառաջս սպառնացեալ վտանգին առնուլ. գիտելով քաջ եթէ հերձուած երկպառակութեան կործանէ զքաղաքս, և կարի իսկ քաջ զՍիկիլիա, որոյ բնակիչքս առ հասարակ խաղալիկ եմք դարանակալութեանց օտարին, ցորչափ ճեղքեալս 'ի մեզ քաղաք ընդ քաղաքի կռուիցիմք: Խելամուտ միանգամ ճշմարտութեանս, արժան է 'ի հաշտութիւն սիրոյ գալ ընկեր ընդ ընկերի և քաղաք ընդ քաղաքի, ճգնել աշխարհաձոյլ հաւանութեամբ փրկել զՍիկիլիա ողջոյն. և մի ոք զԴորիացին՝ որ 'ի միջի մերումն է, թշնամի Աթենացւոց կարծիցէ. և ոչ զՔաղկիացին վասն յոնիական ազգակցութեան ապահովագոյն լինել առ նոսա համարեսցի: Զի ոչ եթէ առ թշնամութեան այսր կամ այնր ցեղի գան նոքա 'ի վերայ ժողովրդոցս զատուցելոց 'ի բնէ, այլ առ ցանկութեան բարութեանց Սիկիլիոյ՝ որ հասարակաց են մեր ստացուածք: Եւ զայն զայս յայտ արարին նոքա յաւուրս յայսոսիկ հրաւիրեալք 'ի Քաղկիսեան ցեղից. յորոց ոչ երբէք ըստ օրինի դաշնաւորաց նպաստս ինչ օգնականութեան գտեալ, 'ի վեր քան զպարտս ուխտի դաշնակցութեան՝ հասին նոցա մտադիւր 'ի թիկունս: Եւ արդարև ներեմ ես Աթենացւոց զաւելաստաց նոցա զայս ձեռնարկութիւն, և զնախահոգ իմացութիւնս. և ոչ որ իշխելն կամին՝ բամբասեմ ինչ ես զնոսա, այլ որ մտադիւր 'ի հպատակութիւն ծառայութեան բերին: Տիրապետել բնաւորեցաւ մարդկեղէնս ազգ՝ որոց դիւրաւ տայցեն տեղի. բայց և զգոյշ լեալ վանել 'ի բաց զյարձակողն: Եւ որ գիտելով ոք զայս, և ոչ ճշմարտու-

Թեամբ կանխահոգակ այնմ լինիցի. որպէս և որ 'ի խոր-
հուրդ պատգամաւորեալ և չհամարիցի կարևոր միաբան
աշխարհաւ հաւանութեամբ մերժել զհասարակաց սպառ-
նացեալ վնաս, հաւասար մեղանչէ։ Ընդ հուպ Թափեսցին
նոքա 'ի մէնջ, եթէ մեք աջ խաղաղութեան միմեանց կար-
կառեսցուք. զի ոչ եթէ յերկրէ անտի իւրեանց գան առ
մեզ Աթենացիք 'ի պատերազմ, այլ 'ի հրաւիրելոցն զնոսա
առ իւրեանս։ Եւ այսպէս ոչ պատերազմաւ դադարիցէ
պատերազմ, այլ սիրով խաղաղութեան փոխանակ վիճից և
գժտութեանց լինիցի, և հրաւիրեալքն գեղեցիկ պատ-
րուակաւ և անիրաւ խորհրդով եկեալ. իրաւամբ դարձցին
նոքա 'ի մէնջ յետս։

ԿԲ. « Որ ինչ վասն Աթենացւոց է, գիտեմք զնոսա
առ չահու օգտի իւրեանց ածեալս առ մեզ. բայց և 'ի հա-
սարակաց հաւանութենէ ցանկալի մեզ 'ի բարեաց զխաղա-
ղութիւն գոլ, և առ ի՞նչ ապա չհաստատեմք զայդ 'ի միջի մե-
րում։ Եւ եթէ իցէ ոմանց բարեբաստիկ լինել և այլոց չա-
րաբախտ, ապաքէն խաղաղութեան է և ոչ գժտութեան և
կռուոյ կարճել զչարիս և ամրապնդել զբարին, ո՞չ նուաւ
և զփառս և զամենայն երանութիւն յաջողի ունել ան-
վտանգ. այլ զի՞ յամիցեմ և զոր 'ի պատերազմաց անտի
Թուել չարիս։ Պարտ է ուրեմն քաջիկ խելամուտ ազա-
ցելոցս, մի՛ ապախտ զբանիւքս առնել. նա զի իւրաքանչիւր
զիւր փրկութիւն 'ի սոցանէ աստի հայթայթել։ Զի եթէ
ոք յիրաւունս իւր վստահ, կամ 'ի զօրութիւն բռնու-
թեան իւրոյ յեց՝ յաջողել ինչ կարծիցէ, զգոյշ լիցի այն-
պիսին 'ի չվրիպելոյ յանկարծ չարաչար. գիտելով չափ՝ զի
բազումք 'ի վրէժ քինու անիրաւելին յարուցեալք, և կամ
'ի յոյս զինու զօրութեամբ մեծանալոյ աւելաստացու-
թեամբ. սոքա առաջինքն ոչ միայն չեղեն անզօրք 'ի վրէժ-
խնդրութիւն, այլ և ոչ իսկ սպրել կարացին. և նոքա
յետինքս՝ փոխանակ աւելաստացութեան՝ և զոր ունէին
կորուսին։ Զէ չատ 'ի յաջողութիւն վրիժուն, զի յանիւ-

րաւի զրկեցաք. և ոչ 'ի քաջայոյս ակնկալութեան է զօրութիւն կանգաղուն, այլ բազում անգամ յեղյեղուկ բաղդին է սահմանել զապառնին. և որ քան զբնաւս խաբուսիկ է, գիտէ չահաւորագոյն երևել. վասն որոյ 'ի հաւասար կարծիս երկիւղին՝ Նախահօգ խոհական խորհրդով 'ի միմեանս յարեսցուք:

ԿԳ. «Եւ արդ ընդ ահագին անստուգութիւն աներևոյթ ապառնւոյն և ընդ երկիւղալի ներկայութիւն Աթենացւոց կրկնակի սասանեալք՝ որ ինչ առ Թերութեան խորհրրդոյ և խափանարարօքս վրիպեցաքս գործել, արդ չառ եւս խրատեալ՝ զմօտաւոր Թշնամին 'ի բաց յերկրէս մերմէ մերժեսցուք, և մեք անխախուտ սիրով ընտելութեամբ առ միմեանս կեցցուք. և եթէ այս ոչ, գոնեա ընդ երկար դուլ զինուց արարեալ և դաշինս կռեալ, յայլում ժամանակի զինքնուրոյն վէճս մեր Թողցուք: Բանից գլուխ խօսիցս. զայս այսպէս գիտասցուք, Թէ 'ի հաւանելդ ձեր առաջարկութեան խորհրդոյս. կացցէ իւրաքանչիւր ոք յիւրումն ազատութեան օրէնս՝ յորս ինքնօրէնք, ինքնատէարք կարասցուք առ բարերարս մեր կամ առ չարարարս հատուցանել զկշիռ փոխարինի արդարադատ չափմամբ: Այլ եթէ անհաւան այսմ, այլոց զհետ գնայցեմք խորհրդոց, ոչ միայն չըկարասցուք զվրէժ փոխարինի հատուցանել, այլ և 'ի կարծեցեալ մեծի յաջողութեանս՝ 'ի հարկէ իրացն, կարի իսկ սխերիմ Թշնամեաց բարեկամք լինիցիմք, և որոց չէ արժան՝ հակառակորդք յառնիցեմք:

ԿԴ. «Իսկ ես, զոր օրինակ 'ի գլուխ բանիս կանխեցի ասացի, մեծի քաղաքի պատգամաւոր, որ հզօրն է ոչ 'ի պահ անձին միայն, այլ և 'ի հալածել զԹշնամին, արժան դատիմ, խոհական խորհրդով տեղի տալ, մի՛ ընդ չարի չար հատուցանել որով քան հակառակորդին առաւել անձամբ անձին վնասակար լինիցիմ՝ և մի խօլ յամառութեամբ պնդելով՝ ինքնատէր զիս կարծել կամաց իմոց և բախտին. այլ որչափ 'ի դէպ իցէ զիջանել, զնոյն և այլոց փոխանա-

կաւ գործել՝ յիրաւունս համարիմ, և զայս ինքնակամ մըտադիւր, և ոչ 'ի թշնամւոյն յայն բռնադատեալ: Եւ չէ ամօթ տոհմայինքս տոհմայնոց զիջանել, Դորիացի Դորիացւոյն, և Քաղկիդեանք իւրեանց համացեղից, միանգամայն իսկ ասացեալ, դրացիք և համակեացք, համաբնակք 'ի ծովապատ պարուրեալ յերկրիս, 'ի նոյն անուն Սիկիլիացի յորջորջեալ: Արասցուք և պատերազմ, չերկբայիմ բնաւ, եթէ այնպէս ինչ դէպք պահանջեսցեն. և դարձցուք 'ի վերստին հաշտութիւն խաղաղութեան ընդ միմեանս 'ի ժողովս մեր: Ի գալ 'ի վերայ մեր օտարին, եթէ իմաստնաբար խորհեսցիմք, աշխարհովին միաբան զնա 'ի բաց վանեսցուք. քանզի միում միում 'ի մէնջ վնասեալ ուրոյն առանձին, ամենեքին առ հասարակ վտանգիմք. մի՛ այսուհետև իբրու նիզակակիցս և հաշտարարս յօտարաց զօք առ մեզ հրաւիրեսցուք: Զայս այսպէս արարեալ՝ կրկնակի բարիս Սիկիլիոյ 'ի ներքս ածիցեմք. թափելով զաշխարհն յԱթենացւոց, և յառաջին պատերազմէն զերծուսցուք. և յետ այնորիկ ազատ առ մեզ ինքեանս բնակեալ, և 'ի դարանակալութեանց օտարին ապրեսցուք »:

ԿԵ. Զայսոսիկ Երմոկրատէս խօսեցաւ, որում հաւանեալ Սիկիլիացւոց և միաբանեցան վախճան տալ պատերազմին՝ պահելով իւրաքանչիւր զոր ունէրն. թողուլ Կամարինեցւոց զՄորկանթինէ, և այսչափ ինչ Սիրակուսացւոց կշռեալ զարծաթ: Եւ դաշնաւորացն Աթենացւոց կոչեցեալ զիշխանս զօրուն նոցա, ծանուցին եթէ և ինքեանք զհետ են խաղաղութեան, և խորհին 'ի հասարակաց ուխտ միաբանութեան մտանել. և 'ի հաւանել ընդ այն իշխանացն այնոցիկ՝ պայմանաւ դաշինս յիւրեանս կալեալ, մեկնեցան ապա նաւք Աթենացւոց 'ի Սիկիլիոյ: Ի դառնալ զօրավարացն յետս՝ դատապարտեցին Աթենացիք զՊիւթոդորոս և զՍոփոկլէս, և զերրորդն 'ի զօրավարս զԵւրիմեդոն ետուն տուգանել, զի առ ձեռն գոլով նոցա նուաճել զՍիկիլիա, կաշառաբեկ մեկնեցան անտի: Այսպէս ա-

ռաջիկայ բախտին զեղծեալք, ոչ մի ինչ արգել առաջի տեսանէին, այլ եթէ փոքու և եթէ մեծաւ պատրաստութեամբ զինուց՝ հաւասար զհնարաւորսն և զանհնարինսն նոյնօրինակ 'ի գլուխ տանել. և պատճառք իրացս, զի անակընկալ յաջողութիւնք 'ի բազում ինչ դէպս, ետուն նոցա մոլանալ և քան զկարծիս ակնկալութեան ապարթանել:

ԿԶ. Ի սմին յայսմ ամարանի պաշարեալ Մեգարացիք 'ի քաղաքին նեղէին յերեսաց Աթենացւոց, որք ամի ամի երկիցս համախումբ հինաբար հարկանէին զերկիր նոցա: Նոյնպէս և 'ի վտարանդեաց անտի քաղաքացւոց Պեղայ՝ որ 'ի չփոթս անդ աղմկի ռամկին հալածեալք էին, և թշնամացեալ ընդ սոսա գային և նոքա աւերածս զերկրաւ ածել. Խորհուրդ կալան Մեգարացիք թէ արժան իցէ ժողովել զնոսա 'ի ներքս 'ի քաղաքն, զի մի երկակի նեղեալ յապականութիւն դիցի գաւառն: Բարեկամք աքսորելոցն լուեալ զշշնջիւն ամբոխին, յայտնապէս և ինքեանք այնուհետև 'ի սատարել խորհրդոյն թևակոխէին: Գիտելով գլխաւորաց ժողովրդեան թէ պարտասեալ ռամկին չկարէ այլ ևս ժուժալ ընդդէմ հակառակորդացն, և երկուցեալ վասն անձանց իւրեանց՝ առաջի արարին զօրագլխաց Աթենացւոց Իպպոկրատեայ որդւոյ Արիփրոնի և Դեմոսթենեայ Ալկիսթենեան տալ նոցա 'ի ձեռս զքաղաքն, զի կարի իսկ փոքր զվտանգն համարէին, քան եթէ զաքսորեալս դարձուցանելով: Միաբանեցան նախ տալ 'ի ձեռս Աթենացւոց զերկայն պարիսպն՝ որ ձգէր ասպարէսս ութ 'ի քաղաքէն մինչև 'ի Նիսէ 'ի նաւահանգիստ նոցա, որպէս զի մի կարասցեն Պելոպոնեսացիք ձեռն տալ Նիսեայ, յորում ինքեանք միայն պահ ունէին 'ի զգուշութիւն Մեգարայ. Ջանալ յետ այնորիկ թողուլ և զվերին քաղաքն 'ի ձեռս Աթենացւոց՝ որ առմամբ երկայն պարսպին, դիւրեաւ և նա լինէր անձնատուր:

ԿԷ. Եւ երբև բանիւք և արդեամբք յարմարեցին զիրսըն յիւրեանս, նաւեցին Աթենացիք գիշերայն 'ի Մինոա-

կղզի Մեգարացւոց վեցհարիւր ապարաւոր սպայիւք առաջնորդութեամբ Իպպոկրատայ, և 'ի խրամի ուրեք նըստան 'ի դարանի, ուստի 'ի շինուածս որմոց աղիւսս հատանէին, և չէր տեղին հեռի 'ի քաղաքէն: Եւ որք ընդ երկրորդի զօրավարին ընդ Դեմոսթենեայ էին մեկնակազէնք Պղատէացւոց և գունդ պահնակ մանկտւոյն[1]՝ դարանամուտ եղեն յԵնիալիոս, մօտագոյնևս 'ի քաղաքն, ոչ ուրուք այնմ իրազգեաց լեալ, բայց յորանց՝ զորոց փոյթ էր գիտել զդաւադրութիւն գիշերոյս. և չև ևս առաւօտուն զգիշերն մերկացեալ համախոհք դաւոյն Մեգարացիք զայս ինչ հնարեցին. ակատ մի էր նոցա երկաթի, իբրու նաւակ հինական, զոր և 'ի բազմաց հետէ վարէին 'ի բացումն դրանց քաղաքին. սովոր էին բարձեալ զսա 'ի սայլ մի աւուր աւուր ածել գիշերի ընդ խրամն 'ի ծով՝ հաւանութեամբ զօրագլխի գիշերապահացն. և յառաջ քան զծագել աւուրն՝ դարձեալ նովին սայլիւ բերէին զայն մերձ 'ի պարիսպն, և ընդ դրունս մուծանէին 'ի ներքս, չերևելով ոչ մի շարժումն նաւակի յայտնապէս 'ի նաւահանգստին, առ 'ի չզարթուցանելոյ զկասկած պահանորդացն Աթենացւոց 'ի Մինոա: Հասեալ կայր սայլն և յայն գիշեր առաջի դրաց պարսպին, որ և բացաւ ըստ սովորութեան իբրու եթէ 'ի պատճառս նաւակիս. զայս տեսեալ Աթենացւոց՝ ըստ ժամադիր պայմանեալ դաւոյն, ելին 'ի դարանէն աճապարել նախ քան զառնուլ դրացն հասանել 'ի վերայ, մինչ կայր տակաւին սայլն 'ի միջի երկբացին դրացն խոչ չգալոյ թևոցն առ յիրարս. անդ համախոհք դաւոյն Մեգարացիք կոտորեցին զպահանորդս առ դրօքն: Եւ որ զԴեմոսթենեաւն էին Պղատէացիք և գունդ պահանորդ պատանեկաց խուժեցին նախ 'ի ներքս, ուր է այժմ ախոյեան նշան յաղթութեան. և

[1] Որք περὲπολοι զուրջ զքաղաքաւ պահնակ խումբ մանկտւոյն, յութուտամնամենից մինչ 'ի քսանամեայս զինուորէին թեթևազէնք 'ի պահ երկրին միայն:

անդէն 'ի մէջ դրաց վառեցաւ խաղմ ընդ Պղատէացի և ընդ Պելոպոնեսացիս՝ որք ընդ շաւիղն եղելոցն դիմեցին մօտ 'ի տեղին յօգնականութիւն. և յաղթական Պղատէացիք բացին անցս ասպարակիր վառելոցն Աթենացւոց խուռն յարձակելոց 'ի ներքս ընդ դրունսն 'ի քաղաքն:

ԿԸ. Եւ որք միանգամ մտանէին 'ի քաղաքն Աթենացիք՝ 'ի պարիսպ անդր յառաջ խաղային. 'ի սակաւուց անտի պահանորդաց Պելոպոնեսացւոց զոմանս սատակէին զընդդիմամարտս, և զայլս փախստեայս հալածէին, զի պակուցեալ նոցա 'ի գիշերային յարձակմանէն, և 'ի հակառակամարտից Մեգարացւոց մատնութեայ, զամենայն իսկ Մեգարացիս քաղաքին դաւաճանս կարծէին. մանաւանդ յորժամ դէպ եղև քարոզին Աթենացւոց իւրովսանն ձայնատու լինել, թէ որ կամիցի ոք 'ի Մեգարացւոց՝ եկեսցէ դնել զզէնս իւր ընդ Աթենացւոցն: Ընդ այս լուր ոչ ևս այլ պնդեցան նոքա 'ի կռիւ, և համարելով ընդ բոլորից միաբանեալ ամբոխին մարտնչել, խոյս ետուն 'ի Նիսէ: Եւ յառաւօտուն ընդ արևածայրս պարիսպք կալեալ և Մեգարացիք 'ի քաղաքին 'ի շփոթս էին և յաղմուկ խռովութեան՝ և կուսակիցք Աթենացւոց և հաղորդք դաւոյն, ամենեքեան թելադիր լինէին բանալ զդրունս և դրօք տալ արտաքս 'ի կռիւ. աներկբայք ամենեին զի 'ի բանալ դրացն խուժեսցեն Աթենացիք 'ի ներքս, և ինքեանք համախոհք նոցին յայտ արասցեն զանձինս իւղաթուրմք ընդառաջելով՝ անվտանգ յերաշխաւորութիւն: Անքոյթ էր նոցա բացումն դրանցն. զի ըստ ժամադրին չորեքհազար ասպարաւոր զօրական աթենացի և վեցհարիւր հեծելազն գիշերաւ ճանապարհորդեալ յԵլեւսեայ՝ մօտ հասեալ էին: Իբրև օծեալք սոքա շուրջ զդրամբք կային իւղաթուրմք 'ի համախոհից անտի ոմն 'ի վեր եհան անդէտ եղելոցն զդաւն, որոց և խմբովին խռնեալ առ տեղեաւն պնդէին չելանել արտաքս 'ի կռիւ. զի և ոչ յառաջ քան զայս՝ թէպէտ հզօրագոյնք, համարձակեցան այսպիսի ինչ առնել,

և 'ի յայտնի վտանգ զքաղաքն արկանել, և 'ի չանսալ նոցին՝ սպառնային անդէն վառել զխանձ մարտին: Եւ ոչ զորոց գիտակն էին հանելով ինչ 'ի վեր, իբրև 'ի վերայ ընտրելագոյն խորհրդոց պնդեալ կային 'ի կամս. և զգուշացեալ դրանցն՝ 'ի դերև հանէին զխորհուրդս դաւադրաց:

Կթ. Իմացեալ զօրավարացն Աթենացւոց եթէ յանկարծադէպ ինչ արգել խափան լեալ իցէ. և թէ չկարեն զինու բռնութեամբ առնուլ զքաղաքն, ձեռն արկին վաղվաղակի պատնէշ պաշարմամբ փակել զՆիսէ. զի եթէ յառաջ քան ուստեք հասանել նոցա օգնականութիւն յաջողեսցի առնուլ զայն, չյամեսցէ յայնժամ և Մեգարա անձնատուր լինել: Եւ արագարագ հասուցին յԱթենայ երկաթ բազում և քարակոփս և զայլ կարևոր, և սկիզբն արարին շինութեան՝ 'ի պարսպաց անտի զոր գրաւեալ ունէին ընդ միջոցս երկրին յանդիման Մեգարայ, և ձգէին մինչև 'ի ծովն Նիսեայ յայսկոյս և յայն: Եւ բաժանէր զօրականն յաշխատութիւն խրամոյն և պատուարացն. և վարէին զքարինս և զկղմինտր արձակավայրաց քաղաքին, հատանել զծառատունկն և զփայտ 'ի շինուած պատնիշաց 'ի դիպաւոր տեղիս և 'ի շէնս բնակութեան արուարձանին զմահարձանսն իբրու յամուրս կարգելով: Զայն օր և զվաղիւն 'ի բուն վաստակեալ, ընդ երեկս կոյս լրումն լինէր գործոյ պատուարին: Եւ զորս 'ի Նիսէ էին կալաւ երկիւղ մեծ, զի երթայր և կարճէր նոցա պարէն, զօրըստօրէն 'ի վերին քաղաքէն բերելով, և չունելով յոյս երագահաս ուստեք օգնականութեան 'ի Պելոպոնեսացւոց. զի և զՄեգարացիս 'ի թշնամիս ունէին, վասն որոյ և 'ի բաց եղեալ զզէնս անձնատուր եղեն յԱթենացիս, այսչափ ինչ գումար արծաթոյ հատուցանելով ըստ գլուխ, և տալով 'ի ձեռս նոցա զԼակեդեմոնացիս և զիշխանս նոցին, և զամենայն այր օտարական 'ի քաղաքին, որով ելին նոքա 'ի քաղաքէն: Կալան Աթենացիք զՆիսէ, և քակեցին զերկայն պարիսպն՝ որ 'ի Մեգարայ կոյս ձգէր, և զհետ եղեն այլոց կարևոր պատրաստութեանց:

Հ. Զայսու ժամանակաւ Բրասիդաս Տելլեան լակեդեմոնացի գումարեալ զօրս 'ի սահմանս Սիկիոնի և Կորնթեայ արշաւել անտի 'ի Թրակիա, ընդ լուր առման պարսպացն՝ երկուցեալ վասն Պելոպոնեսացւոց որ 'ի Նիսէ, և զի մի և Մեգարա ըմբռնեսցի՝ առաքեաց առ Բիովտացիս գալ ժողովել վաղվաղակի 'ի Տրիպոդիսքա յաւան Մեգարացւոց առ լեռնոտամբն Գերանիոյ. առեալ և ինքն հազար եօթնհարիւր զօրականս ասպարակիրս 'ի Կորնթացւոց, և չորեքհարիւր Փլիազիացիս և վեցհարիւր Սիկիոնացիս և զօրս ընդ իւր ունէր, և փութաց 'ի չու՝ յուսով յառաջ քան զառումն Նիսեայ ժամանել անդր: Այլ իբրև լուաւ զեղեալսն, քանզի գիշերախառն հասանէր 'ի Տրիպոդիսքա՝ այրընտիր լեալ 'ի զօրուէն աճապարեաց, չև լու եղեալ համբաւոյ գալստեան նորա, եկն մերձեցաւ երիւք հարիւրովք արամբք 'ի քաղաքն Մեգարայ զանխուլ յԱթենացւոց՝ որ բանակեալ նստէին առ ծովեզերբ: Պատճառէր Բրասիդաս փորձ փորձել առնուլ զՆիսէ, որ եթէ հնար էր և այնմ ցանկայր արդարև, այլ գլխաւոր կէտ նպատակի մտաց նորա էր՝ մտեալ 'ի Մեգարա ամրանալ. և խնդրէր 'ի Մեգարացւոց ընդունել զինքն 'ի ներքս, յուսացուցանելով զնոսա թափել զՆիսէ յԱթենացւոց:

ՀԱ. Իսկ երկպառակ հերձուած Մեգարացւոց 'ի կարծիս երկիւղի. կէսք զի գուցէ զաքսորեալ քաղաքացիս 'ի ներքս ժողովեալ նորա և զինքեանս մերժեսցէ. և այլք եթէ յաղմկել ռամկին ընդ այն և 'ի դղրդել քաղաքին յառտնին պատերազմ՝ մատնեսցի նա դիւրաւ 'ի ձեռս Աթենացւոց, որ 'ի մօտոյ ակն կալեալ մնային. որով չընկալան զԲրասիդաս. և երկոցունց իսկ կողմանց խոհականագոյն երևեցաւ հանդարտեալ ելից իրացն մնալ. զի 'ի բորբոքելն անվրէպ խազմին 'ի մէջ Աթենացւոց և օգնական զօրուն եկելոյ 'ի Թիկունս քաղաքին, պարապով զկողմն յաղթողին ունել ապահով ճանապարհաւ: Բայց իբրև չկարաց Բրասիդաս հաւանեցուցանել զՄեգարացիս, դարձ արար անդրէն 'ի բուն բանակ իւր:

ՀԲ. Եկին երևեցան Բիովտացիք ընդ այգուցն, որ և յառաջագոյն իսկ չև Բրասիդեայ առ նոսա բանագնաց լեալ յօժարամիտք էին յօգնականութիւն Մեգարացւոց. քանզի և ոչ օտարի ակամբ զվտանգ քաղաքին տեսանել կարէին. որք և վաղ իսկ համագունդ 'ի Պղատէա գոլով 'ի գալ առ նոսա հրեշտակին՝ առաւել ևս խրախուսեցան 'ի նոյն: Եւ յղեցին առ Բրասիդաս երկու-հազար երկերիւր ասպարակիր զօրական և վեցհարիւր այրուձի. յորոց բազումք դարձան ապա յետս: Եւ էր համօրէն բանակ զօրուն Բրասիդայ ոչ ինչ պակաս քան որչափ վեցհազար ասպարաւոր մարտիկք. իսկ Աթենացւոց զօրն ասպարազէն զՆիսեաւ էր և զծովեզերբն, և թեթևազէնք սփռեալ ցիր ընդ դաշտավայրն. և ահա հեծելախումբն Բիովտացւոց յանկարծօրէն ձիավարեալ 'ի վերայ թեթևազէն գնդին, հալածական տարան զնոսա մինչև 'ի ծով. զի ոչ ուրեք երբեք ցայնվայր այնպիսի հատուած զօրու հասեալ էր Մեգարացւոց 'ի թիկունս. ելեալ և Աթենացւոց հեծելազին մխեցան 'ի կռիւ: Երկարեցաւ հեծելամարտն, և կողմն իւրաքանչիւր ինքեան վերագրէր զյաղթութիւնն. զի վանեալ վարեցին Աթենացիք զհեծելապետն վաշտուն Բիովտացւոց և զայլս ոմանս 'ի Նիսէ կոյս, սպանեալ զնոսա և զիակապուտ արարեալ, և դաշամբ զդիակունս 'ի թշնամին դարձուցեալ՝ նշան յաղթութեան կանգնեցին: Սակայն յայսմ ամենայնի ոչ մի ինչ մեծ հաստատութեամբ վճարեալ կողմանքն երկոքին, դարձան իւրաքանչիւր 'ի տեղի իւր. Բիովտացիք առ իւրեանս, և Աթենացիք 'ի Նիսէ:

ՀԳ. Յետ այսորիկ յառաջ խաղաց Բրասիդաս զօրօք իւրովք 'ի ծովակողմն կոյս և 'ի քաղաքն Մեգարացւոց, և գտեալ վայր քաջադէպ կարգեաց զնոսա 'ի ռազմ, մնալով յարձակման Աթենացւոց. զի գիտէին եթէ յուսով մնան և Մեգարացիք ելից յաղթութեան. և զի դարձեալ կրկնակի շահ օգտի 'ի խորհրդեանս յայսմ տեսանէին. նախ այն իսկ՝ զի ոչ նախաձեռն 'ի մարտ լինէին և ոչ 'ի

կամաւոր վտանգ. մանաւանդ յորմէ հետէ յայս արարին եթէ պատրաստք են 'ի կռիւ՝ իրաւամբ ինքեանց համարէր յաղթութիւն և առանց իսկ գործոյ պատերազմի և արեան հեղլոյ: Դարձեալ յաջողէր այս նոցա խորհուրդ և առ Մեգարացւովք. զի եթէ չէր նոցա մօտ երևեալ, արդարև իբրև վաղ իսկ յայտնապէս պարտեալս՝ ընդ հուպ և ըզքաղաքն կորուսանէին. ուր մարթ էր այժմ չյօժարել Աթենացւոց գալ 'ի կռիւ, և հասանէին յայնժամ գիտելոյ նպատակին ոյր վասն եկեալ էին, որպէս և 'ի գլուխ ելայն իրօք: Քանզի ելեալ Ճակատեցան և Աթենացիք առ երկայն պարսպօքն, այլ 'ի չխլրտել հակառակորդացն հանդարտեալք և ինքեանք չեկին 'ի կռիւ. խորհէին զօրավարք նոցա, եթէ և 'ի յաջողելն անգամ՝ ոչ նոյն հաւասար բախտ առաջի կայր նոցա. զի նախայարձակ 'ի յոգնաթիւ թշնամին լինելով, 'ի յաղթելն առնուին զՄեգարա, իսկ 'ի պարտելն կորուսանել կորուսանէին զընտիր ընտիրս յասպարազէն զօրուէն, յորում 'ի դէպ էր թշնամւոյն և մասամբ իսկ զօրուն որպէս և ողջոյն բանակաւն հաւասար խիզախել 'ի կռիւ: Ժամանակ մի ևս զտեղի առեալ, իբրև ոչ աստի և ոչ անտի սկիզբն լինէր մարտին՝ մեկնեցան նախ Աթենացիք 'ի Նիսէ, ապա և Պելոպոնեսացիք դարձան յետս ուստի եկեալ էին: Ի խուսել Աթենացւոց 'ի կռուոյն, խրախուսեալ բարեկամք Մեգարացւոց աքսորելոց՝ բացին զդրունս քաղաքին առաջի Բրասիդայ իբրև յաղթականի, և առաջի հրամանատուաց քաղաքանւոյն, և ընկալեալ զնոսա 'ի ներքս 'ի խորհուրդ մտին, մինչդեռ կուսակիցք Աթենացւոց սասանեալ յահի և յերկիւղի էին:

ՀԴ. Յետ այնորիկ 'ի գնալ դաշնաւորաց 'ի քաղաքս իւրեանց՝ դարձաւ Բրասիդաս 'ի Կորնթոս 'ի պատրաստութիւն առաջիկայ իւրոյ արշաւանին 'ի Թրակիա, յառաջագոյն զերեսս հաստատեալ էր: Ի մեկնել և Աթենացւոց յերկիր իւրեանց, Մեգարացիք յայտնի կուսակիցք նոցին՝ ոչ ևս այլ կարելով պատրուակել զմիտս իւրեանց, ելեալ

խոյս ետուն 'ի քաղաքէն. իսկ այլք միաբանեալ ընդ բարեկամս վտարանդի աքսորելոցն՝ ածին զնոսա 'ի քաղաքն Պելայ, և երդմնեցուցեալ զարսն 'ի հաւատս մեծամեծս՝ յանյուշութիւն չարեաց, և խորհրդատու բարեաց լինելոյ ժողովրդեան: Որոց և ամբարձեալ 'ի գլուխ վարչութեան քաղաքին, և զզօրն 'ի գունդս՝ գունդս զատուցեալ հանդէս զինուց արարին, և որոշեալ զարս հարիւր 'ի Թշնամեաց իւրեանց՝ յառաւել ծանուցելոց համախոհից Աթենացւոց, և ստիպեալ զժողովուրդն ետուն յայտնապէս 'ի մահ դատել զնոսա, և վարեալ զարսն 'ի մահ, կարգեցին զքաղաքն 'ի սակաւուց իշխանութիւն: Այսպէս 'ի բազմաց հետէ ընդ սակաւուց վարչութեամբ եղեալ քաղաքն, յեղափոխութեամբս դարձաւ 'ի նոյն վերստին, և եկաց մնաց 'ի նմին:

ՀԸ. Ի սմին ամարանի Միտիլենեցիք ըստ կանուխ խորհրդոյ իւրեանց կամէին ամրացուցանել զԱնտադրոս. իսկ դրամաժողով հարկահանք Աթենացւոց՝ Դիմոդոկոս և Արիստիդէս՝ յԵլլեսպոնտոս յայնժամ, և երրորդն 'ի նոցանէ Լամաքոս տասն նաւուք 'ի Պոնտոս նաւարկելով. իբրև զգացին զպատրաստութիւն քաղաքին՝ երկեան յոյժ, զի մի որպէս Անէա 'ի Սամոս՝ լիցի և սա աստանօր, յորում վտարանդիք Սամոսացւոց հաստատեալ զբուն իւրեանց, զօրաւիգն ծովային զօրութեան Պեղոպոնեսացւոց լինէին՝ զեկաւարս առ նոսա առաքելով և խռովս 'ի Սամոս յուզելով և զփախստեայս նոցին առ իւրեանս ժողովելով: Վասն որոյ զօր գումարեալ զօրավարացն Աթենացւոց 'ի մերձաւոր դաշնաւորացն և հասեալ 'ի վերայ Անտադրեայ քաղաքին և խորտակեալ զինուք զընդդիմամարտսն արտաքոյ՝ կալան զայն վերստին: Յետ սակաւուց նաւեալ և Լամաքոս 'ի Պոնտոս, և ընդ գետն Կալէքս մտեալ յերկիրն Հերակլեայ, 'ի հեղեղել Ջուրց՝ որ յեղակարծուց իջեալ 'ի գագաթանց լերանց ողողէր, կորոյս զնաւսն. և ինքն անցեալ հետի ընդ Թրակիա Բիւթանացւոց՝ որ է 'ի հանդիպակողմն 'ի ծովափունս Ասիոյ, գայր հասանէր 'ի Քաղկե-

գոն՝ 'ի բերան Պոնտոսի 'ի գաղթականն Մեգարացւոց:

ՀԶ. Ի նոյն ընթացս ամարայնոյս Դեմոսթէն զօրավար Աթենացւոց թողեալ զերկիրն Մեգարացւոց՝ եկն քառասուն նաւուք 'ի Նաւպակտոն, զի ձեռն նորա և Իպպոկրատեայ ընդ դաւադիրս էր 'ի Բիովտիա. որք 'ի յեղափոխութիւն վարչութեան աշխարհին՝ ջանային ըստ օրինակին Աթենացւոց 'ի ռամկավարութիւն զայն փոխել: Եւ օրինակ զայս պատրաստեալ նիւթէր դաւն. 'ի ձեռն Պտիգորեայ տարագիր Թեբացւոյ տալ մատնութեամբ զՍիփաս քաղաք ծովեզերեայ 'ի Կրիսեան ծոցին յերկրին Թեսբիացւոց. և յայլոց ձեռն մատնել նոյնպէս զՔերոնիա քաղաք Որքոմենեայ՝ որ երբեմն Մինիոն և այժմ Բիովտիոն կոչի: Եւ գլխաւորք 'ի դաւադրաց Որքոմենեցիք էին տարագիրք 'ի հայրենեաց, որք և վարձկան 'ի Պեղեպոնեսեայ զինուորէին: Քերոնիա է սահմանակալ քաղաք Բիովտիոյ, մերձ 'ի Փանոտիս Փոկէացւոց, որով և ոմանք 'ի Փոկէացւոց համախոհք դաւակցութեանս գտան: Աթենացիք ունէին տիրել Դելիոնի սրբավայրում նուիրելոյ Ապողոնի 'ի Տագրեա՝ մերձ յԵւբիա, և օր սահմանեալ ժամադիր եղեն 'ի կատարումն գործոյն, չտալով Բիովտացւոց պարապ՝ շարժելոյ ամբոխիւ 'ի Թիկունս Դելիոնի, այլ հազիւ ոք եթէ կարէր խլրտել, իւրում տան հոգալ բաւէր: Եւ եթէ յաջողէր գործն 'ի ձեռս նոցա, խորհէին պարապել զԴելիոն և դիւրեաւ այնուհետև յուսային, թէպէտ և ոչ միանգամայն յեղափոխել զԲիովտիա, սակայն տիրապետութեամբ վայրացն և ասպատակելով անտի զերկիրն, ունելով 'ի նմա ոտնկոխ և տեղի ապաստանի, և Աթենացւոց ձեռն տալով ապստամբութեան և չթողլով ազգին խմբել զզօրութիւն իւր՝ չերկարէր յայդմ պայմանի երկիրն, և 'ի հարկէ իրաց՝ խորհրդոյ կամաց իւրեանց հասանէին: Այսպիսի էր ահա խորհուրդ դաւաճանութեանն զոր նիւթեալ պատրաստեցին:

ՀԷ. Իպպոկրատ 'ի գլուխ զօրաց քաղաքին Աթենա-

ցուց խորհէր 'ի դէպ ժամուն խաղալ 'ի Բիովտիա. կանխեալ արձակեաց զԴեմոսթէն քառասուն նաւուք 'ի Նաւպակտոն, զօրաժողով լինել 'ի գաւառացն այնոցիկ յԱկառնանացւոց և յայլոց դաշնաւորաց, և նաւել անտի 'ի Սիփաս, զոր պատրաստէին տալ մատնութեամբ 'ի ձեռս նոցա. և օր սահմանէին 'ի կատարումն գործոյն: Հասեալ Դեմոսթենեայ կալաւ զԻնիատ քաղաք, ստիպեալ զամենեսեան զԱկառնանացիս մտանել 'ի նիզակակցութիւն Աթենացւոց. յարոյց շարժեաց և զբոլոր դաշնաւորս գաւառին, և խաղաց նոքօք հանդերձ նախ 'ի վերայ Սալէնթիայ և Ակրէայ. նուաճեալ և զնոսա յիւր կամս, պատրաստէր 'ի պատեհ ժամուն երևել առաջի Սիփայ:

ՀԸ. Ի սոյն աւուրս ամառայնոյս խաղաց և Բրասիդաս հազար եօթնհարիւր ասպարազէն վառելովքն 'ի Թրակիա. և հասեալ 'ի Հերակլեա Տրաքինիոյ փութաց յղել հրեշտակս 'ի Փարսալոն առ կարևոր բարեկամս իւր՝ խնդրելով 'ի նոցանէ առաջնորդս ինքեան և զօրուն իւրոյ 'ի Թեսաղիա: Եկին առ նա 'ի Մելիտիա Աքայեցւոց Պանիրոս ոմն և Դովրոս և Իպպոլոքիդաս և Տորիլայոս մտերիմք ասպնջականք 'ի Քաղկիսացւոց, և ել նա յայնժամ 'ի ճանապարհ: Առաջնորդէին նմա և այլք 'ի Թեսաղացւոց և Նիկոնեդաս Լարիսացի բարեկամ Պերդիկկայ. քանզի չէր դիւրին անառաջնորդ ուղևորել 'ի Թեսաղիա, մանաւանդ զօրու զինու: Դարձեալ առ համայն Հելլենս անգամ չէր անկասկած անհրաման կոխել զերկիր դրացւոյն. նա զի բազումք 'ի Թեսաղացւոց մտերմութեամբ միշտ ընդ Աթենացիս. որ եթէ օրինաւոր վարչութիւն էր 'ի Թեսաղիա և ոչ բռնակալ հարստութիւնք՝ չմարթէր Բրասիդաս անդրագոյն ընդ աշխարհն միջամուխ յառաջել: Քանզի 'ի չուելն նորա ոմանք 'ի հակառակորդ կողման Թեսաղացւոց ընդդէմ ելեալ զօրուն առ գետեզերբն Ենիպեայ՝ արգելուին զանցս: «Չէ օրէն, ասէին, առանց հասարակ հաւանութեան ժողովրդեանս անցանել ընդ երկիրս մեր»: Որոց պատասխա-

նի արարին առաջնորդք ուղւոյն ընդ նոսա. «Ոչ եթէ հա-
կառակ ինչ ձերում հրամանի անցուցանել զսոսա ընդ
գետդ կամիմք, այլ անակնկալ հասեալս զսոսա, իբրև ըզ-
հիւրս ածեմք»: Յառաջ մատուցեալ և Բրասիդայ. «Որ-
պէս բարեկամս Թեսսաղացւոց և աշխարհի նոցա՝ համար-
ձակիմք, ասէր, գնալ ընդ երկիրս, և ոչ եթէ ընդդէմ նո-
ցուն, այլ հակառակ Աթենացւոց զինուորեալք: Եւ չգի-
տեմք եթէ իցէ թշնամութիւն ընդ մեզ և ընդ ձեզ, 'ի մէջ
Լակեդեմոնացւոց և Թեսսաղացւոց չկոխել ոտիւք զերկիր
իրերաց. և յոչ կամաց ձերոց չյառաջեմ ես յուղին, և
կարեմ իսկ ոչ, բայց աղաչեմ զձեզ չլինել խափան ճանա-
պարհիս»: Իբրև զայս լուան Թեսսաղացիք՝ թողեալ զնո-
սա մեկնեցան 'ի բաց. և Բրասիդաս ըստ խորհրդոյ ուղեցուց
առաջնորդաց իւրոց չև ամբոխի բազմութեան 'ի վերայ ե-
կեալ, ճեպէր զընթացս իւր: Եւ յաւուրն յորում մեկնե-
ցաւ նա 'ի Մելիտեայ՝ եհաս 'ի Փարսալոն, և բանակեցաւ
առ Ապիդանեայ գետով, և անտի էանց 'ի Փակիոն և 'ի Պե-
րեբի: Եւ դարձան անդրէն առաջնորդք նորա յետս, և Պե-
րեբիացիք՝ ժողովուրդ հպատակ Թեսսաղացւոց, ածին զնա
'ի Դիոն 'ի փոքրիկ քաղաք իշխանութեան Պերդիկկայ, 'ի
լեռնոտին Ոլիմպիայ Մակեդոնիոյ առ 'ի կողմանէ Թեսսա-
լիոյ:

ՀԹ. Այսպէս յաջողեաց Բրասիդայ անցանել ընդ Թես-
սալիա, մինչչև ուրուք խլրտեալ արգելուլ զճանապարհ
նորա, և եկն առ Պերդիկկաս արքայ 'ի Քաղկիս: Ի յաջո-
ղութեանց զինուց Աթենացւոց երկուցեալ ժողովրդոց
Թրակիոյ՝ լուծին զդաշնակցութիւն իւրեանց որ ընդ Ա-
թենացիս, և Պերդիկկաս ընդ նոսա, և հրաւիրեալ ածին
զզօրս զայս 'ի Պեղոպոնեսեայ. Քաղկիսացիք մանաւանդ՝ որ
խիթային 'ի մօտաւոր արշաւանէ Աթենացւոց. և մերձա-
ւոր քաղաքանին սահմանորդք, որք թէպէտ չև ևս յետս
կացեալ յԱթենացւոց, սակայն 'ի ծածուկ հաղորդք էին
և սոքա կոչոյս Բրասիդայ. 'ի սմին էր և ձեռն Պերդիկկայ՝

ոչ իբրև յայտնի Թշնամի Աթենացւոց, այլ զի 'ի խէթս էր վասն վաղեմի ինչ խնդրոյ և վիճից ընդ նոսա, և զի խոնարհեցուցանել կամէր զԱրրիբէոս զարքայն Լիւնկեստաց: Յաջողէր սոցա դիւրեաւ տալ ածել զօրս 'ի Պելոպոնեսեայ, 'ի պատճառս ձախողելոյ իրաց Լակեդեմոնացւոց 'ի ժամանակին:

Ձ. Քանզի 'ի նեղել Աթենացւոց զՊելոպոնէս, և ոչ նուազ զենիկ երկիրն զԼակոնիա, յուսային Լակեդեմոնացիք դարձուցանել զզէնս նոցա յինքեանց, եթէ չարիս ընդ չարեաց նոցա փոխանակէին՝ յղելով զօրս 'ի Թիկունս դաշնաւորաց նոցա խլրտելոց յապստամբութիւն. Թող զի նոքին ինքեանք ռոճկաւ իւրեանց յայս զինուորութիւն զնոսա հրաւիրէին: Դարձեալ և պատճառս իմն խնդրէին արձակելոյ հատուած մի յԻլոտաց, զի գուցէ 'ի ձախողակի դէպսն և 'ի կորստեան Պիւղեայ՝ շարժեսցին նոքա յապըստամբութիւն. վասն որոյ և այսպիսի ինչ հնարս հնարեցին երկուցեալ յառոյգ հասակէն և 'ի բազմութենէ նոցա. և քանզի առ Լակեդեմոնացիս ստէպ բազում ինչ օրինադրութիւնք լինին 'ի զգուշութիւն յերեսաց Իլոտաց՝ կանխեցին ծանուցին նոցա, որ միանգամ յօժարեսցին 'ի պատերազմ, ընտրեալք 'ի նոյն և յազատութիւն գրեսցին: Եւ զայս իբրու 'ի փորձ առնէին, զի որ յազատութիւն խրախուսէր, խրոխտ ոգի այնպիսւոյն անշուշտ և 'ի լծընկէց ապստամբութիւն յառաջամիտ գտանէր: Յորոց և խըմբեալ երկուս հազարս երիտասարդս, և պսակաւորս շրջեցուցեալ 'ի մեհեանս որպէս ազատագրեալս. զորս և ոչ յետ բազմաց բարձեալ 'ի միջոյ անյայտ արարին. և ոչ իմացաւ ոք եթէ որով մահուամբ կորեան արքն: Եւ եղև յայնժամ զի առաքեցին մտադիւր ընդ զօրուն Բրասիդայ եւթնհարիւր ասպարակիրս. և զօրս 'ի Պելոպոնեսեայ 'ի յոյս վարձու ռոճկին ածէր նա ընդ իւր. քանզի և ինքն Բրասիդաս յօժարագոյն բերեալ լինէր 'ի սոյն արշաւանս:

ՁԱ. Ցանկալի էր Բրասիդաս Քաղկիսացւոց՝ իբրև յա-

մենայնի ժիր և յաջողակ այր 'ի Սպարտա, որ և զինուորութեամբս մեծամեծ արդարև և կարևոր վաստակօք եբախտաւոր գտաւ Լակեդեմոնացւոց: Քանզի յերևեալ նորա միանգամ, արդարակորով և չափաւոր զանձն ծանուցեալ քաղաքաց ամենեցուն, զյոլովս 'ի նոցանէ ուծացոյց 'ի նիզակակցութենէ Աթենացւոց, և զոմանս իսկ մատնութեամբ նոցին քաղաքացւոց կալաւ. որք և 'ի կամել Լակեդեմոնացւոց երբեմն 'ի հաշտութիւն գալ պայմանաւ՝ մարթէին պիտանի նոցա լինել, որպէս և եղև իսկ 'ի փոխանակութեան քաղաքաց և 'ի թեթևացուցանել զպատերազմ 'ի Պելոպոնէս: Որպէս և յետ այնորիկ զկնի արշաւանին Սիկիլիոյ յիշատակ առաքինութեան և հանճարոյ Բրասիդայ՝ կիսոցն 'ի փորձոյ, և այլոց 'ի լրոյ մեծարեալ, արկանէր 'ի սիրտս դաշնաւորաց Աթենացւոց իղձ ցանկութեան և միաւումն առ Լակեդեմոնացիս: Եւ զի առաջին եկաց սա Սպարտացի՝ որ երևեցաւ արտաքոյ հայրենեաց, ստացաւ անուն բարի և առ օտարս, թողեալ յետնոց հաւաստ և յոյս հաստատուն՝ նոյնպիսիս լինելոյ և այլոց Լակեդեմոնացւոց յետ նորա:

ՁԲ. Իբրև լու եղև Աթենացւոց մուտ Բրասիդայ 'ի Թրակիա, թշնամի հրատարակեցին նոքա զՊերդիկկաս՝ պատճառս համարելով զնա արշաւանին, և յաճախեցին զգուշութիւնս 'ի վերայ այսր դաշնաւորաց:

ՁԳ. Եւ յաւելեալ Պերդիկկայ 'ի զօրութիւն իւր ըզԲրասիդաս և զգունդս նորա, խաղաց վաղվաղակի 'ի վերայ Արրիբեայ որդւոյ Պրոմերայ արքայի Լիւնկեստաց Մակեդոնացւոց, ընդ որում սահմանակից գոլով հակառակութեամբ էր ընդդէմ նմա, և ցանկայր խոնարհեցուցանել զնա ընդ իւրև: Իբրև մերձ եղև Պերդիկկաս 'ի սահմանս Լիւնկեստաց, չև 'ի կռիւ մատուցեալ, երթեալ, ասէր Բրասիդաս, փորձ փորձել բանիւք խաղաղութեան յաւելուլ զԱրրիբէոս 'ի դաշնաւորս Լակեդեմոնացւոց: Քանզի և Արրիբէոս կանխէր պատգամաւոր լինել առ Բրասիդաս, թէ

պատրաստ է ընդունել զնա մտադիւր իրաւարար իւրումն դատին. և հրեշտակ Քաղկիսացւոց մօտ գտեալ առ զօրավարն՝ խորհուրդ տային նմա, մի՛ վաղվաղել յանդորր հանել զՊերդիկկաս 'ի տագնապ տարակուսանացն, առ յօժարագոյնս ունելոյ զնա 'ի շահ օգտի հասարակաց: Նա և զի պատգամաւորաց Պերդիկկայ այսպիսի ինչ կանուխ խոստացեալ էր յերեսաց Թագաւորին ջանալ յօրդորել նոցա 'ի շրջաբնակ գաւառաց դաշնաւորս, 'ի սոյն խրախուսեալ Բրասիդաս 'ի խնդիրս Արրիբեայ միջամուխ եղև: Բայց Պերդիկկաս, չածի, ասէր, զԲրասիդաս իրաւարար վճռից իմոց և խնդրոց, այլ առ 'ի բառնալ 'ի միջոյ զթշնամիս իմ, զորս և ցուցանիցեմ նմա այնպիսիս լինել. և 'ի տալ իմում ռոճիկ կիսոյ զօրուն նորա, անիրաւի նա յիս՝ բանագնաց ընդ Արրիբեայ լինելով: Իսկ Բրասիդաս ընդդէմ բողոքոյ և հակառակ կամաց արքային 'ի բանակցութիւն ընդ Արրիբեայ եկն, և հաւանեալ բանից նորա, չև մտեալ յերկիր տէրութեան նորա ամփոփեաց զձեռն իւր: Յետ այսորիկ և Պերդիկկաս երբև անիրաւեալ 'ի Բրասիդայ՝ փոխանակ կիսոյն՝ զերրորդ մասն ռոճկին միայն հատուցանէր զօրուն:

ՁԴ. Ի նմին ամառանի աճապարեաց Բրասիդաս, չուարար խաղաց ընդ Քաղկիսացիս 'ի վերայ Ականթոսի հատուածի գաղթականին Անդրիացւոց՝ փոքր մի յառաջ քան զայգեկութան: Թէպէտ երկպառակեալ յիւրեանս ժողովուրդն գժգմնէր ընդ նոսա, որոց միաբան ընդ Քաղկիսացիս կոչեալ էր զԲրասիդաս, և չկամէր ընդունել զնա, այլ առ երկիւղի կթոցն չև ևս շտեմարանելոյ՝ հաւանեցաւ ընդ առաջարկ նորա ընդունել զինքն միայն, և յետ լսելոյ բանից նորա խորհրդով ինչ սահմանել: Մատեաւ Բրասիդաս յատեան ժողովրդեան, և զի երբև Լակեդեմոնացի չէր անկարող ոք 'ի խօսել, խօսեցաւ օրինակ զայս.

ՁԵ. « Ես և զօրականն իմ 'ի Լակեդեմոնացւոց առաքեալ գամք, ո՛ Ականթացիք, առ ճշմարտութեամբ 'ի գլուխ հանելոյ զոր անդստին 'ի սկզբանէ անտի պատերազ-

միս վաղ իսկ խոստացաք, կռուելով ընդ Աթենացիս յազատութիւն զՀելլէնս հանել: Եւ զի անագան ուրեմն առ ձեզ գամք՝ վրիպեալ 'ի յուսոյ ելից պատերազմին զոր յԱտտիկէ մղեցաք, յորում ակն ունէաք առանց ինչ զձեզ աշխատ առնելոյ խոնարհեցուցանել ընդ հուպ զԱթենացիս, մի ոք իցէ որ զմեզ բամբասիցէ. զի այսօր արդ 'ի ներել ժամանակիս հասեալ կամք հնարել ճգնել ընդ ձեզ 'ի խորտակել զզօրութիւնս Թշնամւոյն: Զարմանամ զի պնդէք դուք ինձ ընդդէմ զդրունս ձեր, և ընդ գալուստ իմ խոժոռիք: Զի մեք Լակեդեմոնացիքս խորհրդով գոնեա 'ի դաշնակից բարեկամս մեր զձեզ գրելով՝ մինչև իսկ արդեամբ 'ի դոյն յաջողեալ, և առ ցանկացողս մեր ճեպով հասանել, զայսպիսի և զայսքան վտանգս յանձն եդաք, և զաւուրս բազումս անսովոր մեզ ճանապարհ հատեալ՝ յոչինչ ոչ խնայեցաք: Իսկ եթէ յայլ միտս շրջիցիք դուք, եթէ ընդ ձերոյինդ և ընդ այլոց Հելլենաց ընդ ազատութիւն խանդայցէք, ծանր եղիցի ձեզ այն և կարի վնասակար. զի ոչ դուք միայն հակառակամարտ նմին լինիցիք, այլ առ որս գնամս դժկամակութեամբ զիս ընդունիցին՝ պատճառելով իմն զի առ ձեզ հասեալ նախ, և դուք մեծի և հզօր քաղաքի քաղաքացիք, և 'ի հանճար խոհականութեան ոչինչ չիջելափառք, մերժեցէք զիս չընդունել: Եւ չունիցիմ ինչ բանս հաւանեցուցիչս գնելոյ նոցա առաջի. և կարծիցիմ ածել նոցա ազատութիւն սուտ, և կամ թէ չիցեմ կարող վանելոյ զԱթենացիս յերկրէ նոցա: Եւ սակայն զօրուս՝ որ ընդ իս են, 'ի գալ իմում յօգնութիւն Նիսեայ, չիշխեցին Աթենացիք՝ թէպէտ բազմութեամբ յոլովագոյնք քան զմեզ, ելանել ընդդէմ. և զի չէ 'ի դէպ կարծել թէ բազմամբոխ ևս գունդս զօրաց ընդդէմ ձեր արձակեսցեն նոքա, քան որչափ ինչ նաւական զօրութիւն է նոցա 'ի Նիսէ:

ՁԶ. « Իսկ ես ոչ 'ի վնաս չարեաց, այլ յազատութիւն Հելլենաց հասեալ կամ, երդմամբք մեծամեծօք պարտաւո-

բեալ զիշխանս Ղակեդեմոնացւոց, զի զորս յաւելում 'ի դաշնաւորս նոցա՝ ինքնօրէնք իցեն, և ոչ զինու բռնութեամբ կամ նենգանօք 'ի նիզակակցութիւն ստիպեալք, այլ նմին հակառակ ընկճելոցդ ձեզ ընդ լծով ծառայութեան Աթենացւոց մարտակից լինիցիմք: Եւ արդարև քան զխէթ և զկարծիս գեր 'ի վերոյ գտանիմ ես, յորժամ զերդմունս հաւատարմութեան տամ ձեզ ծանուցանս. մի՛ ապա անզօր զիս յօգնականութիւն ձեր համարեսջիք, այլ խրախուսեալ զհետ իմ եկեսջիք: Այլ եթէ 'ի միտս ոք կասկածոտս զոմանց 'ի քաղաքայնոց լինիցի՝ թէ գուցէ 'ի նոցա ձեռս զքաղաքս մատնիցեմ ես, քան զբնաւս իսկ վստահագոյն մանաւանդ այնպիսին իցէ, զի չեկի ես ձեռն խռովութեանց տալ. և չհամարիմ ազատութիւն աներկեան ձեզ բերել՝ եթէ զհայրենական օրինօք ապախտ արարեալ, ըզժողովուրդն՝ սակաւուց, և կամ զսակաւ իշխանսն՝ ամբոխին ծառայեցուցանել կամիցիմ: Դժնդակագոյն լինէր այդ ազատութիւն քան զօտարին բռնութիւն. և մեզ Ղակեդեմոնացւոց ոչ կշռէին ընդ վաստակոց շնորհակալու գոհութիւնք, այլ փոխանակ պատուոյ և փառաց՝ դարովանք աներկբայ: Զի որով ամբաստանեալ հալածեմք զԱթենացիս, առելի ևս երևէաք քան զորս ոչ ցուցին երբէք առաքինութիւն: Որոց 'ի պատիւ և 'ի համբաւ բարի վայելեն՝ անօթապարտ ևս գործ է, ընդ պատրուակաւ պատշաճից պատիր նենգութեամբ զաւելաստացութեան զհետ կրթել քան յայտնի բռնութեամբ: Զի սա՝ զզօրութիւն զոր շնորհեաց նմա բաղդն, իրաւամբ վարել կարծէ, իսկ նա՝ վատախորհուրդ դրժանօք դաւադիր լինի: Այսպէս ուրեմն բազմապատիկ զգուշութեամբ և 'ի շահս մեր անդամ մեծամեծս վարել գիտեմք:

ձէ. «Յետ երդմանց չիք երկյադոյն երաշխաւորութիւն քան զգործոց արդիւնս ընդ բանից համեմատեալ, և 'ի հարկէն 'ի միտ առնուցուք թէ նմանագոյնս արկաւ ձեր առաջի խորհուրդ օգտակարութեան: Եւ եթէ անհնարին

զառաջարկն իմ ասիցէք, և 'ի ձերումդ բարեմտութեան՝ մերժել անպատուհաս զխնդիրս ժտիցէք, և թէ ազատութիւնս ոչ անվտանգ երևեսցի ձեզ, յիրաւի իցէ ապաքէն առաջի առնել զայն ինչ, որոց և հնար իցէ ընդունել, և ոչ յակամայս զոք 'ի դոյն բռնադատել. վկայ կոչեմ յայնժամ և ես զդիս և զդիւցազունս երկրին, զի 'ի բարերարել եկեալ և զձեզ անհաւանս գտանեմ՝ վասն որոյ և զերկիրդ յապականութիւն եդեալ՝ 'ի փորձ բռնութեան մատչիմ: Եւ ոչ անիրաւել սովիմբ համարիմ, այլ 'ի կրկնակի հարկէն իրաւամբ 'ի նոյն ստիպեալ. նախ այնու, զի ոչ միամտելով ձեր ընդ Լակեդեմոնացիս, և յընչից և յարարոց ձերոց ձեռն տալով Աթենացւոց վնասակար մեզ յառնէք. և զի ծառայութեամբդ այդուիկ առ նոսա՝ ազատութեան Հելլենացս խափան լինիք: Եւ ոչ արդեօք մտադիւր զայս առնէաք Լակեդեմոնացիքս, եթէ չէր այն 'ի պատճառս օգտի հասարակաց, և զանկամս անգամ յազատութիւն բռնադատել: Ոչ զհետ տիրապետութեան ձգտիմք, այլ զօտարին բառնալ 'ի միջոյ. և ընդդէմ հակառակ բազմաց անիրաւիցիմք աներկբայ, եթէ 'ի շնորհել զինքնօրէն ազատութիւն ամենեցուն, զձեզ զհակառակորդս ազատութեան անտես առնիցեմք: Խորհեցարուք քաջ զիրացս, և լերուք արք զօրութեան, նահատակել նախ 'ի վերայ ազատութեան Հելլենաց՝ յաւէժական անկապուտ փառաց գնելով հիմն ամրապինդ, մի և ձերումդ շահուն վնասակար լինել, և գեղեցիկ անուամբ զփառս քաղաքիդ պսակիցէք»:

ՁԸ. Զայս այսպէս խօսեցաւ Բրասիդաս: Իսկ Ականթացիք յետ ընդ երկար վիճելոյ յիւրեանս, եկին ապա 'ի ծածուկ քուէայս, և 'ի բանից Բրասիդայ յորդորեալ, և յերկեղէ կորստեան արարոց երկրին, սահմանեցին բազմաձայն հաւանութեամբ յետս կալ 'ի դաշնակցութենէ Աթենացւոց: Եւ տուեալ նոցա Բրասիդայ զերդումն, զոր իշխանք Լակեդեմոնացւոց յարձակեալն զնա երդուեալ էին, յինքնօրէն իւրեանց ընիկ վարչութեան թողուլ զդաշնա-

կեցս՝ զորս յաւելուցուն յիւրեանս յարշաւանիս, և այնպէս ընկալան զզօրս նորա: Յետ ոչ բազմաց և Ստագիրա գաղթական Անդրիացւոց յարեցաւ 'ի նոցա դաշնակցութիւն. և այսուքիկ եղեն դէպք տարւոյս:

ՁԹ. Ի սկզբանէ անտի առաջիկայ ձմերայնոյս 'ի պատրաստի էին քաղաքք Բիովտիոյ մատնութեամբ անձնատուր լինել 'ի զօրավարս Աթենացւոց Իպպոկրատէս և 'ի Դեմոսթէն. վերջինոյս էր գալ երևել նաւատորմաւ 'ի Սիփա, մինչդեռ իշխանակից նորա ունէր խաղալ զօրօք 'ի Դելիոն, բայց վրիպելով ժամադիր աւուրն յայս կրկին յարշաւանըս. Դեմոսթենեայ զինուորեալ ընդ իւրև զԱկառնանացիս և զբազումս 'ի դաշնաւորաց գաւառին, եկն երևեցաւ նախ 'ի Սիփա, ուր 'ի դերև ել նա յառաջարկեալ գործոյն. քանզի յայտնիլով դաւոյն 'ի ձեռն Նիկոմաքեայ առն Փոկեացւոյ 'ի Պանոպեայ՝ որ 'ի վեր եհան զայն նախ Լակեդեմոնացւոց, և նոքա Բիովտացւոց. և յարեան աշխարհօրէն Բիովտացիք յօգնութիւն քաղաքին՝ մինչչև Իպպոկրատեայ երևեալ նեղել զերկիրն. և կանխեցին կալան նոքա զՍիփա և զՔերոնիխա: Իբրև լու եղև այս դաւադրաց 'ի քաղաքին, եթէ վրիպեցան 'ի խորհրդոյն. լռեալ հանդարտեցին և նոքա:

Ղ. Իսկ Իպպոկրատ քաղաքովին շարժեալ զժողովուրդն Աթենացւոց 'ի զէն, և զեկս համաբնակս և զամենայն այր օտարական՝ անագան ուրեմն եկն եհաս 'ի Դելիոն. մինչդեռ Բիովտացիք վաղ իսկ ելեալ էին 'ի Սիփայ: Նստոյց նա անդ զզօրս իւր, և պատնիշափակ ամրացոյց զԴելիոն զսրբավայրն Ապոլոնի՝ ըստ օրինակիս ըստ այսմիկ: Ետ խրամ հատանել զտեղեաւն սրբութեան և զտաճարաւ մեհենին, արկանելով զհողն զեզերբ փոսոյն՝ իբրու 'ի պատուար հողաբլրոյ, ցիցս հարկանելով յայնս, և զուռս որթոյ լցեալ յայգեաց անտի յօտելոց՝ որ շուրջ զտեղեաւն էին զսրբութեան, ցցապատնէշ ընդ երկայնութիւն յօրինէր, և զքարինս և զաղիւս 'ի մերձաւոր բնակութեանց

յայն ածէր, և ամենայն հնարիւք 'ի բարձրութիւն պատուարին ձգնէր հասուցանել. և ուրեք ուրեք յորում 'ի դէպն թուէր՝ բրգունս փայտեայս ամբառնայր. և ուր չէին չէնք մեհենին, զի կործան անկեալ էին կամարակապքն: Ցաւուրն յերրորդի յետ ելից նոցա յԱթենայ սկիզբն արարին շինուածոյն՝ զայն օր գործեցին, նոյնպէս և զչորրորդ և զհինգերորդ աւուրս մինչև 'ի ժամ ճաշուն. և իբրև մեծ մասն շինուածոյն 'ի գլուխ ել կատարեցաւ, բանակ զօրուն թողեալ զԴելիոն չու դարձի արար. և իբրև ասպարէսս տասն յառաջեալ մտանել յԱտտիկէ, զօրականն մեկնակազէն փութայր յընթացս, մինչդեռ ասպարազէն գունդն զտեղի առեալ հանգչէր: Բայց Իպպոկրատէս այլ ևս ժամանակ մի յամեալ 'ի Դելիոն, պահանորդս հաստատեաց անդանօր և զոր ինչ յամրութիւն տեղւոյն էր՝ 'ի գլուխ եհան:

ՂԱ. Ի ժամանակին յայնմիկ եկին ժողովեցան Բիովտացիք 'ի Տանագրա յամենայն քաղաքաց նոցա. այլ 'ի լսելն զվերջնոտել Աթենացւոց, և 'ի չյօժարել Բիովտապետացն՝ որք տասն էին թուով, 'ի կռիւ ընդ թշնամւոյն գալ արտաքոյ Բիովտիոյ, և արդարև ելեալ յայնժամ Աթենացւոց յերկրէն և 'ի սահմանս Որոպիոյ դադարէին, անդ Պագոնդաս Թեբացի որդի Յոլատեայ Բիովտապետ՝ միաբան ընդ Արիանթեայ որդւոյ Լիւսիմաքեայ՝ որ 'ի գլուխ կայր յայնժամ զօրուն, որոց ընդ պատերազմ կամէին, և ընտրէին մանաւանդ 'ի վտանգս շահատակել, կոչեցեալ ուրոյն 'ի ջոկս ջոկս զզօրականն, զի մի թափուրեսցի բանակըն, և յորդորեալ հաւանեցոյց Պագոնդաս զԲիովտացիս 'ի պատերազմ, որ և խօսեցաւ այսպէս.

ՂԲ. «Չէ պարտ, չէ արժան, արք Բիովտացիք, ընդ միտ անգամ ածել ումեք 'ի մէնջ յիշխանացս. իբրու եթէ չիցէ 'ի դէպ 'ի կռիւ ընդ Աթենացիս գալ, յորժամ ոչ ևս այլ 'ի Բիովտիա կարեմք զնոսա ըմբռնել, և զի 'ի սահմանաց երկրիս միջամուխ նոքա 'ի սմա՝ պատանէշս և ամուրս

կանգնեցին 'ի կործանումն Բիովտիոյ, ապա ուր և հաստանիցեմք նոցա 'ի վերայ, յորմէ և զպարծանսն իւրեանց արարին՝ Թշնամիք մեր են: Իսկ որ զգուշագոյն համարի խորհուրդ զհանդարտելն՝ վրիպի յոյժ այնպիսին, զի խոհական զգուշութիւն չէ ընդ համար, յորժամ յօտարին յարձակմանէ ոք զիւրն թափել ջանայցէ, և որ զիւրոյինն ունելով անքոյթ՝ առաւելագունին ցանկութեամբ կամովին 'ի վերայ ընկերին գնայցէ: Մերժել զօտարոտին յերկրէս մերմէ և 'ի դրացեաց մերոց բարեկամաց՝ հայրենաւանդ է մեր առաքինութիւն, և պարտք մանաւանդ վանելոյ 'ի մէնջ զԱթենացիս, որ սահմանակիցք մեր են. զի ընդ սահմանակիցս զոյգ կշիռ ընդդիմակ զօրութիւն գործէ զազատութիւն: Իսկ ընդ սոսա որք ոչ զդրացիս միայն, այլ և զյոյժ հեռաւորս անգամ 'ի ծառայութիւն նուաճել ձգնին, զիա՞րդ չիցէ պարտ անհաշտ ունել կռիւ ցվախճան: Օրինակ մեզ ունիմք 'ի հանդիպոյ զԵւբիացիս և զբազումս 'ի Հելլենաց. գիտելի է զի ժողովուրդք մերձաբնակք 'ի վերայ սահմանաց երկրի կռուին. իսկ մեք 'ի վերայ բոլորին եթէ յաղթիմք, զի մի միայն սահման է մեր անփոփոխ: Զի միջամուխ նոքա միանգամ յերկիր մեր՝ կալցեն զոր ունիմքս, որով փառաւորագոյն քան զայլս զամենեսեան ունիմք մեք զսոսա դրացիս: Ոյք ուժգինս սովորեցան խիզախել 'ի վերայ ընկերին, որպէս Աթենացիքն այսօր, 'ի վերայ հանդարտելոցն, և 'ի պահ երկրին միայն զգուշացելոց յանդըգնագոյնս արշաւեն. իսկ որ արտաքոյ քան զսահման աշխարհին իւրեանց համարձակիցին, և 'ի դէպ ժամուն 'ի զէն գայցեն, ոչինչ կարի դիւրեաւ զնոսա ըմբռնել կարիցեն: Զորոյ մեք իսկ անձամբ զփորձ առաք, զի հարեալ զնոսա միանգամ 'ի Կորօնիա, յորժամ յառնին շփոթս մեր բռնացեալ ունէին նոքա զերկիրս մեր, բազում աներկեանութիւն այնուհետև մինչև ցայսօր կալաք մեք 'ի Բիովտիա: Եւ պարտիմք իսկ անմոռաց կալեալ զայնոցիկ զյիշատակ, ծերոց՝ մի այլազգ ինչ քան զոր երբեմն գործել,

և պատանեաց՝ հարց ժամանակին այնորիկ առաքինեաց որդիք գոլով, մի՛ անպատուել զսեփական իւրեանց հայրենաւանդ առաքինութիւնս: Վստահք ապա՛ 'ի դիս, զորոյ զմեհեանն սրբապիղծ ձեռօք որմարգել արարեալ պահեն Աթենացիք, վստահք և 'ի զոհս մեր և 'ի նուէրս՝ որ հաշտարարք և բարեգուշակք մեզ երևին, խաղացուք հա՛պա ընդդէմ նոցա, և ցուցցուք հաւաստեաւ, թէ հասանել հասանիցեն նոքա 'ի վերայ անվրէժխնդիր հանդարտելոյն ըմբռնել զնոսա. այլ մի՛ և որոց արիաբար 'ի մշտնջենաւորել զազատութիւն իւրեանց կռուիցին և ոչ զընկերին կապտելոյ՝ ակն կալցին նոքա անկռւի 'ի նոցունց զերծանել»:

ՂԳ. Զայսոսիկ Պագոնդաս առ Բիովտացիս խօսելով 'ի յորդոր, խրախուսեալ հաւանեցոյց զնոսա 'ի կռիւ ընդդէմ Աթենացւոց: Եւ զի օրն ընդ երեկս էր, աճապարեալ էած նա զզօրն, և հուպ 'ի բանակս թշնամւոյն հասեալ՝ դադարեաց 'ի տեղւոջ, յորում անջրպետ կայր 'ի մէջ բլուր մի որ բաժանէր զնոսա յիրերաց անտես. անդ կարգեաց Պագոնդաս զիւրսն 'ի ռազմաճակատու: Ի Դելիոն էր Իպպոկրատէս յորժամ զգացուցին նմա զգալուստ Բիովտացւոց, և առաքեաց նա անտի պատուէր առ զօրս իւր ելանել 'ի մարտ, և ինքն աճապարեալ փութացաւ անդր՝ թողեալ առ Դելիոնիւ 'ի պահ այրուձի երեքհարիւր, եթէ յանկարծ յարձակեսցի անդր թշնամին. միանգամայն ակն կալեալ մնայր ժամուն անկանելոյ սոցա 'ի վերայ Բիովտացւոց 'ի խառնել անդ մարտին: Բայց և Բիովտացիք նախահոգ խորհրդով կարգեցին ընդդէմ հեծելագնդին ձեռն հզօր 'ի խափանել զյարձակումն նոցին, և ամենայն պատրաստութեամբ ելին երևեցան 'ի վերայ բլերն, և զտեղի առին 'ի ճակատամարտ: Եօթն հազար ասպարաւորք էին և աւելի քան զբիւր մի մեկնակազէնք, հազար մի հեծեալ և հինգհարիւր տիգաւորք: Զաջ թևն Թեբացիք կալան և դաշնաւորք նոցա. զբուն բանակին Ալիարտացիք, Կորովնիացիք և Կովբէացիք, և որք զճակատ բնակէին. իսկ զա-

հեակն Թեսբիացիք, Տանագրեացիք և Որքոմենացիք. և զայրուձին և զմեկնակազէն զօրական կարգեցին աստի և անտի Թևոցն: Ռազմ Ճակատու Թեբացւոց էր 'ի քսան և 'ի հինգ ասպարաց 'ի խորութիւն, և այլոց՝ որպէս և դէպն շնորհէր նոցա: Այսպիսի էր կարգ և յօրինուած Բիովտացւոց:

ՂԴ. Իսկ Աթենացիք՝ որոց հաւասար բազմութիւն էր ասպարակիր զօրուն, յութ կարգս յօրինեցին զխորութիւն Ճակատուն, յաջ և յահեակ թևս զհեծելագունդն բաժանեալ. զի ոչ 'ի բանակին և ոչ 'ի քաղաքի ունէին յայնժամ թեթևազէն զօրական: Եւ որ ընդ զօրուն ելեալ էր քան ըզհակառակորդացն ամբոխ բազում՝ ընդ հիւր և ընդ քաղաքացի գուգազ անզէն, կանուխ դարձ արարեալ 'ի տուն՝ սակաւուց էր մնացեալ անդանօր: Եւ Ճակատեալ սոցա իբրև պատրաստք էին ձեռն 'ի կռիւ խառնել, ընդ կարգս զօրուն ընթանալով, Իպպոկրատէս վառէր զԱթենացիս բանիւս 'ի խրախոյս այսպէս.

ՂԵ. « Աթենացիք, սակաւուք է յորդորս, այլ արանց առաքինեաց հաւասարազօր, 'ի յուշ մանաւանդ քան 'ի խրախոյս քաջութեան կարգեալ: Մի ումեք 'ի ձէնջ և ոչ ընդ միտ անգամ անցանիցէ, իբրու եթէ յերկիր օտարյայս վտանգ տարագեալ ըմբռնիմք. զի յերկրի ոչ 'ի մերում՝ 'ի վերայ մերոյս շահատակիմք, յորում եթէ յաղթող գտանիցիմք, ոչ ևս այնուհետև Պելոպոնեսացիք 'ի Բիովտացի հեծելազնէն թափուր, արշաւանս 'ի մեզ արասցեն. և այսպէս միով այսու պատերազմաւ զերկիրս զայս կալեալ, և զմերս Ատտիկէ ազատագոյն ևս գործիցէք: Ընթացարուք ապա արութեամբ 'ի պատերազմն որ առաջի կայ, արժանաւոր անուան քաղաքիդ՝ ընդ որ մի մի 'ի ձէնջ նախկին իւր հայրենիս լինել պարծի և նախիշխան Ելլադայ: Լերուք արժանաւորք և հարցդ, որք ընդ Միւրոնիդեայ սոցուն իսկ հակառակորդաց յաղթողք յՈինափիտս, կալան յայնժամ զԲիովտիա »:

ՂԶ. Զայսուիկ Իպպոկրատեայ խօսելով 'ի յորդոր, հաստանէր մինչև 'ի կէս բանակին և չկարէր անդրագոյն ևս յառաջել. քանզի և Պագոնդեայ ըստ ժամուն ներելոյ փութանակի խրախուսեալ զիւրսն, և Բէովտացւոց հնչեցուցեալ զՊէոնեան զերգ մարտին՝ դուոյթ տուեալ անկանէին 'ի բարձանց բլրոյն: Խաղացին և Աթենացիք ընդդէմ նորա. և ընթացեալ աստի և անտի խառնեցան 'ի կռիւ. երկոցունց բանակաց թևոց վերջք՝ հաւասար 'ի հեղեղատից խափանեալ չմտին 'ի խաղմն. իսկ այլք համայն բռնագոյնս 'ի հարուածս մնդաց զմիմեանս վանէին: Զախ թև Բէովտացւոց մինչև 'ի բուն բանակին տկարանայր առաջի ուժգնակի հարուածոց Աթենացւոց, Թեսպիացիք մանաւանդ՝ որ 'ի տեղի տալ համարզ գնդին, և 'ի փակել պաշարել նոցունց յանձուկս և 'ի կռուել բազուկ առ բազուկ, յոլովք 'ի նոցանէ սրոյ լինէին ճարակ, մինչև ոմանց և յԱթենացւոց 'ի պատել անդ զթշնամին և 'ի չփոթել ռազմին՝ դէպ լինէր յանդէտս զմիմեանս կոտորել: Իսկ աստի հարուածեալ Բէովտացիք փախստեամբ առ իւրեանսն անցանէին, որք դեռ ևս պինդ կացեալ կռուէին. բայց աջ թև նոցա՝ յորում էին Թեբացիք՝ զօրացեալ 'ի վերայ Աթենացւոց, տակաւ ոտն առ ոտն վանեալ տանէին զնոսա: Եւ եղև զի առեալ Պագոնդեայ վաշտս երկուս հեծելոց արձակեաց ծածկաբար զբլերբ, յորում տագնապեալ նեղէր ահեակ թև բանակին. որոց և ընդ յեղակարծ երևումն՝ 'ի կարծիս այլոյ նորոյ օժընդակ գնդին, պակուցեալ սասանէր յաղթական թև զօրուն Աթենացւոց: Եւ երկուստեք յայնժամ յերևաց սոցա և յերևայց բուռն յարձակման Թեբացւոց աղմկեալ ռազմին, թիկնադարձոյց 'ի փախուստ աճապարէր ողջոյն բանակն Աթենացւոց, ոմանք 'ի Դելիոն կոյս և 'ի ծով, ոմանք յՈրոպոս, կէսք 'ի Պառնէս լեառն. և այլք դէմ եդեալ իւրաքանչիւր ուր ակն ունէր փրկութեան: Իսկ Բէովտացւոց՝ հեծելազօրուն նոցա մանաւանդ և Լոկրացւոց հասեալ 'ի վերայ թշնամւոյն վաթարելոյ ձիգ

զհետ պնդեալ՝ շատ զօք 'ի նոցանէ պակաս առնէին, մինչև գիշերոյն 'ի վերայ եկեալ՝ տեղի տայր փախստէին դիւրեաւ ապրելոյ: Ի վաղիւ անդր որ յՈրոպոս և որ 'ի Դելիոն էին ապրեալք, պահս 'ի նմա կարգեալ՝ զոր տակաւին ընդ ձեռամբ ունէին, դարձան ինքեանք յետս ընդ ծով:

ԴԷ. Նշան յաղթութեան կանգնեալ Բիովտացւոց և զմեռեալս իւրեանց բարձեալ, և զթշնամեացն դիակապուտ արարին. և պահանորդս 'ի Տանագրա եդեալ մեկնեցան, խորհել թէ զիա՛րդ յարձակմամբ առնուցուն զԴելիոն:

Ի գալ քարոզին Աթենացւոց 'ի խնդիր դիականց անկելոց՝ հանդիպեալ նուիրակին Բիովտացւոց դարձուցաւ յետս ունայն. ոչինչ ոչ վճարել, ասէր, չև ինքեան դարձ 'ի զօրն արարեալ. և եկեալ սորա առ Աթենացիս, խօսէր 'ի դիմաց Բիովտացւոց այսպէս. « Ոչ արդարութեամբ արարէք, Աթենացիք, զանցանելդ ձեր զօրինօք Հելլենաց, զի հասարակաց օրէնք են նոցա 'ի մտանել յերկիր ընկերին՝ մեծարել զնուիրական վայրս սրբութեան. ուր Աթենացիքդ ամրացեալ նստիք 'ի Դելիոն, և որ 'ի պղծում տեղւոյ սովորութիւն է գործել՝ գործէք զամենայն անպատկառ. հանէք ջուր զանհպելին ձեզ, բայց եթէ 'ի լուացումն սրբութեան միայն: Յանուն արդ աստուծոյն և Բիովտացւոց, զդիս կարդալով վկայս՝ զչահապետս երկրիս և զԱպոլոն, նախըզձիկս առ ձեզ բարբառիմ՝ ելանել մեկնել 'ի տեղւոյդ սրբութենէ, տանելով 'ի բաց զձերդ զամենայն »:

ԴԸ. Եւ յետ բանիցս այսոցիկ քարոզին, առաքեցին և Աթենացիք զնուիրակ իւրեանց առ Բիովտացիս, ասել. « Ոչ ինչ իւիք անիրաւեալ է մեր ընդդէմ սրբութեան տաճարին, և ոչ կամք են մեր պղծելոյ զայն և յայսմհետէ կամովին. զի ոչ եթէ յայն միտս մտաք մեք 'ի դոյն զառաջինն, այլ զի 'ի տեղւոջէ այտի կռուեսցուք 'ի վերայ իրաւանց մերոց. և զի օրէնք են Հելլենաց 'ի տիրապետել ուրեք երկրի, եթէ մեծ իցէ և եթէ փոքր, տեարք լինին և մեհենից որ 'ի նմա, սակայն ըստ օրինաց կրօնից աշխարհին

որչափ մարթ է պաշտել զայն. և թէ Բիովտացիք ինքնին և թաղումք այլք 'ի տիրել ուրեք երկրի, և 'ի մերժել անտի զընակիչս՝ նախ զՄեհեանս նոցա կալան, զորս և սեփականեալ է նոցա ցայսօր. և մեք իսկ եթէ յաջողէաք տիրապետել մեծի մասին Բիովտիոյ, իրաւամբ արդեօք զդոյն առնէաք. արդ 'ի մասնէն յորում եմքս, իբրև 'ի բնիկ ստացուածոց չմեկնիմք երբէք ինքնակամ: Եւ զի հանաք ջուր 'ի հարկէ պիտոյից և ոչ առ թշնամանս, և 'ի նախայարձակ լինել ձեր յերկիրս մեր, բռնադատիմք վարել նովաւ 'ի մարտ. և կարի 'ի դէպ է թողութեան հանդիպել առ յաստուածոյն, զոր ինչ 'ի պատերազմիս 'ի հարկէ չարեաց մեղաք. զի ակամայ մեղանաց ապաւէն գիտեմք զբագինս, և զանօրէնութիւնս կոչել՝ ոչ յոր 'ի հարկէ ոք մլեցի, և ոչ որ 'ի տագնապ աղետից յայն գթիցէ, այլ պարզաբար կամովին. և որք զմեռեալս ընդ սրբութեանց փոխանակել խնդրիցեն՝ մեծապէս ամբարշտել երևին, քան որ ոչն կամիցին փոխանակութեամբ դարձուցանել զսրբավայրսն ընդ այնոցիկ որ իւրեանց է անկ: Եւ հրամայեալ էր նոցա, ասել քարոզին յայտնապէս. «Զհեռասցուք ընաւ յերկրէս Բիովտիոյ՝ որ ոչ ևս է նոցուն Բիովտացւոց, զոր զինու զօրութեամբ ստացաք. այլ և ըստ հայրենի սովորութեան դաշամբ պայմանի ամփոփեսցուք զմեռեալս»:

ՂԹ. Որում պատասխանի արարին Բիովտացիք. «Եթէ 'ի Բիովտիա են Աթենացիք, որ ինչ իւրեանց է՝ առեալ 'ի բաց գնասցեն 'ի մէնջ. իսկ եթէ 'ի բնիկ երկրի իւրեանց համարին, նոցա է գիտել զառնելին»: Քանզի խորհէին Բիովտացիք՝ եթէ Որոպիա յորում եղև պատերազմն, յորում և անկեալ դնէին դիակունք, ընդ Աթենացւոց իշխանութեամբ էր, սակայն հակառակ կամաց նոցա չէին կարող Աթենացիք բառնալ զմեռեալս իւրեանց, և ոչ դարձեալ 'ի դաշինս կարէին գալ՝ տեարք գոլով երկրին. վասն որոյ և վայելչապէս ետուն զպատասխանին «Ի բաց գնալ յերկրէն, առնելով ընդ իւրեանս որ ինչ ինքեանց է սեփա-

կան » ։ Եւ լուեալ զայս քարոզին Աթենացւոց, ել և գնաց առանց ինչ վճարելոյ ։

Ճ. Եւ փութանակի ետուն կոչել Բիովտացիք 'ի ծովածոցէն Մելեայ տիգաւորս և ասպարաւորս. և զի յետ պատերազմին հասեալ էր երկու հազար ասպարազէն զօրական 'ի Կորնթեայ և 'ի Պելոպոնեսացւոց 'ի պահանորդաց Նիսեայ և 'ի Մեգարացւոց, խաղացին միաբան 'ի Դելիոն մարտնչել ընդ ամրոցին. ընդ այլ բազմապատիկ հնարս՝ մատուցին և մեքենայ մի ընդդէմ պատուարին, որով և կալան զամրոցն օրինակաւս այսու ։ Գերան մի մեծ սղոցեալ ընդ մէջ յերկուս, և փորեալ խոր զմէջն ընդ երկայնութիւն, կցեցին զայն վերստին ճշգրիտ շուրթն առ շուրթն յարմարելով 'ի ձև խողովակի, և զմիոյ 'ի ծագաց նորուն կախեցին կաթսայ մի շղթայակապ, յորում և հաստատեցին երկաթապինդ կտուց փքոյ դարբնաց մետ 'ի կաթսայն. և մեծ մասն գերանոյն երկաթապատ էր ։ Զայս կազմած ածեալ սայլիւք 'ի հեռուստ, և մատուցեալ յոտս պատուարին՝ որ փայտաշէն էր և ուռովք որթոյ կազմեալ, և յեց հուպ 'ի սա, և 'ի միւսոյ ծագաց գերանոյն որ յիւրեանց կողմն էր, փուքս մեծամեծս եդեալ՝ սկսան փչել 'ի ներքս ։ Եւ յընթանալ օդոյն 'ի ներքուստ ընդ խողովակն 'ի կաթսայն լի կայծակամբ, ծծմբով և նաւթիւ, արծարծեալ բոցոյ հրոյն անհնարին և հրդեհէր զպատուարն, մինչև ոչ ումեք կարող լինել կալ 'ի տեղւոջն, և խոյս տուեալ աճապարեցին 'ի փախուստ, և առաւ այսպէս ամրոցն ։ Ի պահանորդաց անտի նորա կէս մի սպանան, արք երկերիւր գերի վարեցան, և յոլովք ելեալ 'ի նաւս դարձան 'ի հայրենիս ։

ՃԱ. Յեւթնևտասներորդի աւուր յետ առաջնոյ մարտին առաւ Դելիոն, և զկնի ոչ բազում աւուրց գայր նուիրակն Աթենացւոց՝ ոչինչ գիտելով զեղելոցն, 'ի խնդրել զմեռեալս. Թոյլ ետուն նոցա Բիովտացիք ոչ ևս ըստ առաջնոյ օրինակին պատասխանելով ։ Եւ անկան 'ի Բիովտացւոց

զօրուէն արք որպէս թէ հինգհարիւր․ իսկ յԱթենացւոց հազարիւ չափ, և Իպպոկրատէս զօրավար նոցա․ և 'ի մեկնակաղէն և 'ի կարեւէկիր զօրուէն բազումք յոյժ։ Յետ ոչ բազմաց Դեմոսթենէս' որում ոչ յաջողեցաւ մատնութեամբ 'ի բուռն առնուլ զՍիփա քաղաք, ասպատակ եդ ընդ երկիրն Սիկիոնացւոց' ունելով ընդ իւրև զԱկառնանացիս, զԱկրեացիս, և յԱթենացւոց չորեքհարիւր զօրական ասպարաղէն 'ի նաւս։ Բայց չև թափեալ 'ի ցամաք համօրէն զօրուն' հասեալ Սիկիոնացւոց 'ի վերայ ասպատակաւորացն հալածական տարան զնոսա մինչև 'ի նաւս, զոմանս կոտորեցին և զայլս կենդանւոյն կալան, և նշան յաղթութեան կանգնեալ, թողին նոցա պայմանաւ ամփոփել զմեռեալս իւրեանց։

Զայսու ժամանակաւ մեռաւ և Սիտալքէս արքայ Ոդրիսաց, որ յաւուրս պատերազմին Դելիոնի խաղալով 'ի վերայ Տրիբալլաց պարտեալ լինէր յերեսաց նոցա․ և պայազատեաց զնա Սևթէս Սպարատոկեայ եղբօրորդի նորա յարքայութեան Ոդրիսաց և այլոց Թրակացւոց' որոց թագաւորէր հօրեղբայր նորա Սիտալքէս։

ԾԲ. Ի ձմերանիս խաղայ Բրասիդաս ընդ դաշնաւորս իւր Թրակացիս ընդդէմ Ամփիպօլեայ գաղթականին Աթենացւոց 'ի վերայ Ստրիմոն գետոյ։ Փորձ փորձեաց երբեմն Արիստագորաս միլետացի փախստեայ յերեսաց Դարեհի, գաղութս հաստատել 'ի տեղւոջն յորում է այժմ քաղաքս, այլ հալածեալ մերժեցաւ յԻդոնացւոց։ Յետ երեսուն և երկուց ամաց յղեցին Աթենացիք հատուած մի 'ի քաղաքացւոց իւրեանց և յօտարաց' որք միանգամ յօժարեցան յայդ, բիւր մի մարդկան, որք և բնաջինջ կորեան 'ի Դրաբիսք յերեսաց զինուց Թրակացւոց։ Դարձեալ 'ի լրանալ քսան և ինն ամաց խաղացին Աթենացիք վերստին ընդ Ագնոնի որդւոյ Նիկեայ հաստատել անդ բնակութեամբ․ և մերժեալ անտի զԻդոնացիս կառուցին զքաղաքն 'ի տեղւոջն' զոր երբեմն Իննաշաւիղ կոչէին։ Ի Հիոնայ խախտեալ

էր սոցա, ուր Թանգարան վաճառուց էր նոցա 'ի բերան գետոյն, քսանևհինգ ասպարիսաւ հեռի յայժմեան քաղաքէս, զոր Ամփիպօլիս կոչեաց Ագնոն վասն պարապաւ պատելոյ զայն 'ի շրջահոսան խաղացից Ստրիմոնեայ, 'ի մասնէ գետոյս ձգելով զերկայնութիւն պարապին մինչև 'ի միւս մասն, երևելի զքաղաքն առնելով յերեսաց ծովուն և 'ի ցամաքէն:

ճԳ. Մեկնեալ արդ Բրասիդաս յԱռնեայ Քաղկիսացւոց՝ գայր զօրօք 'ի վերայ քաղաքիս, և հասեալ ընդ երեկս կոյս յԱւլոն և 'ի Բրոմիսկոս՝ 'ի տեղին յորում Թափի լիճն Բոլբէ 'ի ծով, և յետ ընթրեաց գիշերաւ ել 'ի ճանապարհ: Եւ զի ձմեռն էր և ձիւնաբեր լինէր, վասն որոյ ձեպէր մեծարշաւ ուղևորութեամբ Բրասիդաս զչուն, առ 'ի ծածկել զգալուստ իւր 'ի բնակչաց Ամփիպօլեայ՝ բաց 'ի համախոհ դաւադրաց: Քանզի Արկիլեացիք հաստուած յԱնդրացւոց բնակեալ 'ի քաղաքիս, ընդ այլ համախոհս իւրեանց՝ կիսոց 'ի Պերդիկկայ հրապուրեալ և այլոց 'ի Քաղկիսացւոց թելադրեալ յայս դաւադրութիւն եկին. բայց Արկիլեացիք առաւել մերձաբնակք, կասկածաւորք միշտ յաչս Աթենացւոց՝ նենգաւ էին ընդ քաղաքին: Իբրև դէպք 'ի բարի յաջողեցին նոցա և Բրասիդաս եկեալ հասեալ կայր, զ'ի բազմաց հետէ խորհեալս ընդ Արկիլեացիս՝ որ յԱմփիպօլիսն էին, տալ 'ի ձեռս զքաղաքն, 'ի գլուխ տարեալ կատարեցին ժողովելով զԲրասիդաս 'ի ներքս և նըշկահեալ զԱթենացիս զայն գիշեր, ածին և զզօրն Բրասիդայ մինչև 'ի կամուրջ գետոյն: Հեռի է քաղաքն յանցից անտի, և չժամանէր յայնժամ որմն պարսպաց ցայնվայր որպէս այսօր, յորում էր գունդ մի սակաւաձեռն գիշերապահ, զորս և անաշխատ նուաճեաց Բրասիդաս սատարութեամբ դաւադրաց և առ օդոյն անհարթութեան. զի յանկարծօրէն անկեալ 'ի վերայ՝ անց ընդ կամուրջն և արագապէս կալաւ զամենայն արձակավայրն բնակեալ յԱմփիպօլսեցւոց արտաքոյ քաղաքին:

ճԴ. Անակնկալ անցանելովն Բրասիդայ և բազմաց ձեր-
բակալ գերութեամբ արտաքոյ, և այլոց փախչելով 'ի ներ-
քըս 'ի քաղաքորմն, աղմուկ մեծի չփոթի յարեաւ յԱմ-
փիպօլսեցիս, այր զընկերէն կասկածելով. և պատմեն զի ե-
թէ Բրասիդայ զգուշացուցեալ զիւրսն յաւարէն՝ դէպ ու-
ղիղ 'ի քաղաքն արշաւէր, աներկբայ առեալ էր զայն.
բայց ինքն բանակ հարեալ և ասպատակ սփռեաց արտա-
քոյ, և զի ոչ ըստ ակնկալութեան իւրում յաջողէր նմա 'ի
ներքուստ անտի 'ի քաղաքացւոց, զտեղի առեալ դադա-
րեաց: Իսկ հակառակորդք դաւադրաց առաւելեալ 'ի բազ-
մութիւն՝ արգելին զբացումն դրանցն. և արձակեցին զարս
ընդ Եւկլեայ զօրագլխի՝ որ 'ի կողմանէ Աթենացւոց բեր-
դապահ իշխան էր պահանորդաց, առ այլ ոք զօրավար հրա-
մատար 'ի Թրակիա, առ Թուկիդիդէս որդի՝ Ոլորեայ որ և
պատմագրէ զայս. որ և 'ի Թասոս էր յայնժամ 'ի գաղթա-
կան Պարիացւոց, կիսաւուրբ ճանապարհաւ հեռի յԱմփի-
պօլեայ, և կոչեցին զնա 'ի թիկունս: Որոյ առեալ զայս
լուր աճապարեաց փութացաւ եւթն նաւուք զորս առ-
ձեռն ունէր, եւ 'ի ճանապարհ կանխել զանձնատուր ա-
ռումն Ամփիպօլեայ, կամ գոնեա յառաջեալ առնուլ զՀիոն,
մինչև 'ի նոյն ժամանեալ թշնամւոյն:

ճԵ. Երկուցեալ Բրասիդայ ընդ լուր գալստեան նա-
ւացն 'ի Թասեայ, և իմացեալ եթէ 'ի կողմանս յայնոսիկ
Թրակացւոց ոսկւոյ հանք են Թուկիդիդեայ, որով մեծա-
փարթամ էր այրն և հզօր 'ի ցամաքին, վաղվաղեալ փու-
թացոյց զառումն քաղաքին, զի մի՛ գալստեամբ զօրավարին
մեծայոյս ամբոխ քաղաքացւոց ընդ օգնութիւն դաշնաւո-
րաց 'ի ծովէ և 'ի Թրակիոյ, և չյօժարեսցին այնուհետև
անձնատուր լինել ինքեան: Վասն որոյ և պայմանս դնէր
յոյժ չափաւորս առաջի նոցա՝ ծանուցեալ 'ի ձեռն քարո-
զին, եթէ թողեալ է յազատ կամս Ամփիպօլսեցւոց բնա-
կաց քաղաքին և Աթենացւոց կալ 'ի նմա 'ի հաւասար ի-
րաւունս, և կամ ելանել երթալ 'ի բաց 'ի հինգ աւուրս
բարձեալ ընդ իւրեանս զինչս և զստացուածս:

ճԶ. Զայս լուեալ բազմութեան ժողովրդեան յայլ մտս այնուհետեւ շրջէին, մանաւանդ զի նուաղունք էին 'ի քաղաքին Աթենացիք. եւ երիցագոյն մասն խառնուրդ էր ցեղից եւ յոլովք ազգականք ընդ գերելոցն արտաքոյ, եւ առ խեթին իրաւացի թուէր բանս այս ազդարար, եւ Աթենացիք մտադիւր յօժարէին թողուլ ելանել 'ի քաղաքէն, զի մեծագոյնի քան զայլս աղխից մնալ համարէին, եւ ոչ մի ինչ յոյս ուստէք օգնականութեան. իսկ մնացորդք ամբոխին զի մի կորուսցեն զհաւասար իրաւունս քաղաքացւոց եւ զի քան զակնկալութիւն իսկ զերծ 'ի վտանգէն դառնէին: Եւ յայտնապէս այնուհետեւ սկսան համախոհք Բրասիդայ պանծացուցանել զարդարութիւն առաջարկութեանս, զի այլախորհուրդս տեսանէին զժողովուրդն, եւ ոչ եւս այլ անսացողս բանից զօրագլխացն Աթենացւոց. եւ գրեցան դաշինք տուչութեան քաղաքին, եւ ըստ ազդարար պայմանին ընկալան զԲրասիդաս 'ի ներքս 'ի քաղաքն: Եւ իբրեւ այսպէս անձնատուր եղեւ քաղաքն, եւ ահա եկն եհաս Թուկիդիդէս նաւուք 'ի նմին իսկ աւուր ընդ երեկս կոյս 'ի Հիոն: Բրասիդայ այն ինչ կալեալ զԱմփիպօլիս, եթէ գիշեր մի եւս յամեալ էր նաւախմբին, առնոյր նա աներկբայ ընդ ծագել աւուրն եւ զՀիոն քաղաք:

ճԷ. Եւ կազմէր պատրաստէր յայնժամ Թուկիդիդէս զամենայն կարեւոր զգուշութիւնս 'ի Հիոն, իցէ՛ թէ խորհեսցի Բրասիդաս յարձակել պատերազմաւ 'ի վերայ քաղաքին. եւ առ աներկեան պահելոյ զայն եւ առ յապայս՝ ընկալաւ զամենեսեան զնոսա 'ի ներքս որք ըստ պայմանի դաշանցն մեկնեալ էին յԱմփիպօլեայ: Եւ ահա յանկարծուց նաւագնաց լեալ ընդ գետն էջ Բրասիդաս հզօր գումարտակաւ 'ի Հիոն, զի թերեւս կալեալ զմասն ցամաքին երկայնեալ 'ի ծայր պարապացն՝ տիրեսցէ 'ի կողմանէ գետոյն մօտից քաղաքին. զնոյն փորձ փորձեաց եւ 'ի ցամաքէն, եւ վանեալ ամենուստ դարձաւ ձեռն էարկ ամրացուցանել շուրջանակի զԱմփիպօլիս: Անձնատուր եղեւ նմա եւ Միւր-

կինոս քաղաք Իդոնացւոց, յետ մահու Պիտտակոսի արքային որ սպանաւ յորդւոց Գոաքսեայ և յիւրմէ կնոջէն Բրաւրայ: Ոչ յետ բազմաց և Գափսելոս և Իսիմէ գաղթականք Թասոսի նուաճեցան ընդ ձեռամբ Բրասիդայ. զի զկնի առման Ամփիպօլեայ հասեալ առ նա փաղփաղակի Պերդիկկաս արքայ յայսմ ամենայնի ձեռնտու և գործակից նմին լինէր:

ՃԸ. Ընդ գոյժ առման Ամփիպօլեայ յերկիւղ անհնարին ըմբռնեցան Աթենացիք, զի յոյժ կարևոր էր նոցա քաղաքս, մատակարարելով նոցա ատաղձ 'ի նաւակառոյցս և մեծափարթամ եկամտիւքն. և զի մինչև 'ի Ստրիմոն գետ ճանապարհ արարեալ էր Լակեդեմոնացւոց առաջնորդութեամբ Թեսսաղացւոց գնալ 'ի վերայ դաշնաւորաց իւրեանց: Բայց ոչ տիրելով նոցա կամրջին, և զի 'ի վերին կողմն երկրին ձգեալ ծաւալէր լիճ մի մեծ ընդ երկայնութիւն գետոյն, և 'ի կողմանէ Հիոնայ 'ի պահ կային պատերազմիկ նաւք չկարացին նոքա յառաջ վարել զարշաւանն. այլ 'ի դիւրել անցիցն կասկածէին այնուհետև Աթենացիք զապստամբութենէ դաշնաւորաց: Եւ արդարև ողոքով գնայր Բրասիդաս ընդ ամենեսին, և ամենայն ուրեք քարոզէր զինքն յազատութիւն Ելլադայ եկեալ: Իբրև լուէին զառումն Ամփիպօլեայ և զխոստմունս և զհեզութիւն քաղցրութեան Բրասիդայ՝ շարժէին այնուհետև քաղաքք հպատակք Աթենացւոց 'ի յեղափոխութիւնս, և 'ի ծածուկ պատգամաւոր առ նա լինելով աղաչէին զնա գալ և առ նոսա. և ամենեքեան ջանային յառաջամիտ 'ի վտարանջութիւն երևել: Զի աներկիւղ թուէր նոցա յետ այնորիկ, և 'ի վրիպակ անդ կարծիս իւրեանց ոչ այնչափ մեծ ինչ զզօրութիւն Աթենացւոց դնէին, զոր օրինակ ցուցաւն ապա արդեամբ. և անզգոյշ խորհրդով քան նախահոգ աներկեանութեամբ զայս այսպէս ախորժէին դատել: Այսպէս սովորեցան մարդիկ, որում ցանկանն՝ յախուռն զհետ պնդել յուսով. իսկ զանհաճոյսն յամառ գոռոզութեամբ

մերժել։ Միանգամայն ձախող ելւք պատերազմին Աթենացւոց 'ի Բիովտիա սրտապնդեալք, և 'ի նանիր հրապուրական բանից Բրասիդայ սադրեալք, որպէս եթէ ոչ համարձակեալ Աթենացւոց ընդ զօրուն նորա 'ի կռիւ գալ 'ի Նիսէ, աներկևանք ոչ ևս այնուհետև խիթային յարձակելոյ ուստեք թշնամւոյ։ Եւ որ մեծն էր առ նորասէր ըղձից ժամուն, և զի զայս առաջին նուագ 'ի փորձ փութոյ նախանձու ջանից Լակեդեմոնացւոց մատչէին, յօժարամիտք առ ամենայն վտանգս դիմագրաւ գտան։ Զայս զգացեալ Աթենացւոց՝ թէպէտ ձմեռն էր և ժամանակն սուղ, փութացան առաքել պահանորդս 'ի քաղաքս 'ի քաղաքս։ Իսկ Բրասիդաս նուիրակս 'ի Լակեդեմոն յղելով խնդրէր զօրս, և ինքն զհետ լինէր կառուցանելոյ նաւս պատերազմիկս 'ի վերայ Ստրիմոն գետոյ։ Իսկ Լակեդեմոնացիք առ մախանաց գլխաւորաց քաղաքին ընդդէմ զօրավարին չետուն նմա ձեռն, և զի կամէին մանաւանդ գերադարձ առնել կալանաւորելոցն 'ի կղզւոջն և վախճան տալ պատերազմին։

ճԹ. Ի նմին ամարանի կալան Մեգարացիք զերկայն պարիսպն 'ի ձեռաց Աթենացւոց. և հիմն 'ի վեր կործանեցին զայն, մինչդեռ Բրասիդաս յետ առման Ամփիպոլեայ դաշնաւորօք իւրովք սպառնայր զերկիրն որ կոչի Ակտէ այն որ սկսեալ 'ի ջրադարձէ արքային և ձգի մինչև յԱթովս լեառն բարձր, և երթեալ աւարտի յԵգեան ծով. և քաղաքանի 'ի նմա՝ Սանէ գաղութ յԱնդրիացւոց՝ մերձ 'ի ջրադարձն որ շրջանաւ թափի 'ի ծով հանդէպ Եւբիոյ. դարձեալ և Թիւսոս և Կլէովնէ և Ակրոթովս և Ոլոփիքսոս և Դիոն՝ 'ի խառնափնդոր խժից բնակեալ. որոց և կրկին են խօսից բարբառք։ Ի Քալկիսացւոց են սակաւ, բայց յոլովագոյնք 'ի Պելասգեանց և 'ի Տիւրսիեանց՝ որք կալան երբեմն զԼեմնոս և զԱթէնս. և Բիսալտեանք և Կրիստոնեանք և Եդոնք բնակեալք յաւանս, յորոց բազումք անձնատուրք 'ի Բրասիդաս եղեն, իսկ Սանէ և Դիոն հակառակ կացին նմա, որ և յամելով յերկրին աւարտ վարեաց զանդաստանս նոցա։

ճԺ. Եւ զի անլսող լեալ անսաստէին սոքա, չու արար խաղաց անտի Բրասիդաս 'ի Տորոնէ Քաղկիսացւոց որ ընդ Աթենացւովք էր, հրաւիրեալ յոմանց 'ի քաղաքացւոց տալ 'ի ձեռս նորա զքաղաքն: Գիշերախառն հասեալ նորա մերձ յարշալուշն՝ նստոյց զզօրն առ մեհենին Դիոսկուրեանց, երիւք ասպարիսաւ բացակայ 'ի քաղաքէն: Թագոյց նա զգալուստ իւր 'ի Տորոնեցւոց և 'ի քաղաքապահ զօրուէն Աթենացւոց, բաց յայնցանէ որոց յառաջագոյն տեղեակ գալստեան նորա դէտ ակն կալեալ մնային նմա, և ոմանք իսկ ելանէին զանխուլ ընդ առաջ նորա: Եւ իբրև գիտացին եթէ հուպ հասեալ է զօրավարս, զինեալ զարս եւթն 'ի գաշոյն՝ մուծին ընդ իւրեանս 'ի ներքս, քանզի 'ի քսանից անտի յառաջագոյն ընտրելոց սոքա միայն գտան անվեհեր միջամուխ 'ի քաղաքն լինել. յորոց 'ի գլուխ կայր Լիսիստրատ Ոլինթացի. որք և գաղտագողի սպրդեալ ընդ որմն պարսպին որ 'ի ծովակողմն կոյս, մտին 'ի ներքս. և զի քաղաքն կառուցեալ է 'ի վերայ բլեր, ամբարձեալ նոցա ընդ այն կոտորեցին զբերդապահ զօրն որ յական միջնաբերդին, և զփոքրիկ դուռն որ 'ի կողմանէ Կանաստրէոնեայ խորտակեցին:

ճԺԱ. Յառաջեալ Բրասիդաս փոքր մի և զտեղի էառ. և արձակեաց փութով տիգաւորս հարիւր, զի 'ի բանալ դրաց և 'ի փողել նշանին՝ խուժեսցեն 'ի ներքս 'ի քաղաքն: Ընդ յամել նշանին զարմացեալ սոքա իբրև յանզգաստից տակաւ ոտն առ ոտն 'ի քաղաքն կոյս մերձենային: Իսկ որք 'ի Տորոնեցւոց ընդ յարամրի սպրդեալսն 'ի ներքս համախոհք պատրաստք էին 'ի քաղաքամիջի անդ, խորտակեալ նախ զդուռն փոքր, ջախեալ և զնիգս դրացն որ ածէր 'ի հրապարակն, մուծին շրջանաւ զոմանս ընդ փոքրիկ դուռն. զի յեղակարծուց 'ի թիկանց և 'ի կողից զյարձակումն տուեալ՝ զանգէտս դասուն պակուցեալ զարհուրեցուսցեն. և յետ այնորիկ 'ի ժամադիր հրամանին ամբարձին հրանշանս, և զմնացորդս տիգաւորացն մուծին ընդ դրունս հրապարակին 'ի ներքս:

ՃԺԲ. Ի տեսիլ նշանին խաղացոյց Բրասիդաս զզօրս իւր 'ի ներքս 'ի քաղաքն, որոց և միաբարբառ ղաղաղակ հարեալ ահաբեկ զքաղաքացիսն առնէին. ոմանք ընդ դրունս, այլք ընդ քառակուսի գերանս յեցուցեալս յորմն խարխուլ առ 'ի բառնալ զքարինս 'ի բեգեկ տեղւոյն, սողոսկեալ 'ի ներքս խուժէին: Եւ Բրասիդաս բազմութեամբ զօրուն դիմեաց նոյնժամայն 'ի վերնակողմն քաղաքին հասանել ունել զայն. միապէս և ամբոխն սփռեցաւ ընդ քաղաքն ողջոյն:

ՃԺԳ. Յառման անդ քաղաքին բազումք 'ի Տորոնեցւոց ոչ ինչ գիտելով զեղելոցն 'ի շփոթս էին. այլ համախոհք դաւոյն և որոց հաճոյ էր գործն, նոյնհետայն եկեալ յարեցան ընդ եկաւորսն: Իսկ Աթենացիք որոց դէպ լինէր արանց յիսնից ասպարազինաց ննջել 'ի հրապարակի, 'ի զգաստ լինել զիրացն՝ ոմանք զէն 'ի ձեռին կռուելով անկան. և կէսք որ հետի և որ յերկուս պահնակ նաւս փախուցեալք ապրեցան յամուրն 'ի Լեկիթոս ընդ ձեռամբ իւրեանց յայնժամ, գոլով 'ի ծայր քաղաքին 'ի ծովեզրն կոյս մինչև յանձուկ նեղուցն երկայնեալ: Առ սոսա եղեն ապաստան և կուսակիցք բարեկամք նոցա 'ի Տորոնեցւոց:

ՃԺԴ. Իբրև տիւ եղև և աներկբայ հաստատութեամբ տիրապետեալ կալան զքաղաքն, ազդ արար Բրասիդաս Տորոնեցւոց փախստէից ընդ Աթենացիս դառնալ որոց կամք իցեն առ սեփական իւրեանց ժառանգութիւնս, և աներկիւղ յազատ իրաւունս քաղաքավարութեան: Առաքեաց քարոզ և առ Աթենացիս պատուիրանաւ թողուլ ելանել 'ի Լեկիթեայ դաշամբ, հանդերձ իւրեանց ստացուածովք, զի Քաղկիսացւոց էր տեղին: Չհաւանեալ նոցա ընդ պատգամն՝ խնդրեցին զօր մի դուլ զինուց առ 'ի բառնալ զդիակունս անկելոց իւրեանց: Շնորհեաց նոցա Բրասիդաս զաւուրս երկուս, յորում ամրացոյց նա զմօտաւոր շէնս 'ի Լեկիթոս, զնոյն և Աթենացիք արարին: Եւ ժողովեալ Բրասիդայ զՏորոնեցիս՝ որպէս երբեմն առ Ականթա-

ցիս՝ խօսեցաւ առ նոսա օրինակ զայս. «Զէ՛ արդար, ասէ, զհամախոհս իւր 'ի տուչութիւն քաղաքին դրուժանս համարել և մատնիչս, ոչ 'ի ծառայութիւն նորին կաշառաբեկ 'ի սոյն հաւանեալ, այլ 'ի բարին և յազատութիւն քաղաքայնոց. և ոչ դարձեալ ո՛ք չեղենն ինչ այնմ բաժանորդ՝ զայնոսիկ 'ի բարեաց աստի անմասն գրել. զի և ինքն ոչ 'ի կորուստ քաղաքին և ոչ 'ի վնաս ուրուք եկեալ՝ առաքեցի, ասէր, քարոզ ազդարար որոց առ Աթենացիս էն ապաւինեալ, զի ոչ վասն բարեկամութեան նոցա առ նոսա վաճառս ինչ զնոսա համարի. որոց եթէ 'ի փորձոյ հաւաստեալ էր զմտերմութիւն հաւատարմութեան Լակեդեմոնացւոց՝ բարեմտագոյն ևս արդեօք առ սոսա գտանէին. մանաւանդ յորժամ առաւել իսկ արդարակորով ըզԼակեդեմոնացիս տեսանէին, 'ի նոցանէ առ անփորձութեան արդ խիթացեալ երկնչին: Աթենացւոց արդ կազմս լինել, ասէր, հրամայեմ, հաւատարմագոյն ևս 'ի դաշնակցութեան երևելոյ, զի յետ այսորիկ յանցանաց վրէժք հատուսցին, և ոչ վասն առաջնոցն, որով ոչ եթէ ընդդէմ Լակեդեմոնացւոց ինչ անիրաւեցան նոքա, այլ մանաւանդ 'ի վնաս անձանց 'ի հզօրագունից յայն բռնադատեալ. և եթէ հակառակ ինչ երևեցան՝ ներողութեան են արժանաւորք»:

ՃԺԵ. Սրտապնդեալ զնոսա բանիւքս այսոքիւք Բրասիդաս, 'ի լրանալ պայմանադիր ժամուն 'ի դուլ զինուց՝ յարձակեցաւ 'ի վերայ Լեքիթեայ: Զդէմ կալան նմա Աթենացիք 'ի բարձանց անտի տկար պատուարաց և 'ի մահարձանաց տանց. զայն օր վանեցին զթշնամին, այլ 'ի վաղիւ անդր 'ի կազմել նոցա մեքենայ հրձիգ 'ի փայտաշէն պատուարսն և 'ի մերձենալ 'ի նոյնս, Աթենացիք յոր կարծէին մերձեցուցանել թշնամեաց զմեքենայն 'ի տեղի դիւրամատոյց, փութանակի կանգնեալ էին աշտարակ մի փայտեայ 'ի վերայ շինուածոյ իրիք, և սափորս և տակառս ջըրալիցս բազումս անդր հասուցեալ և քարինս մեծամեծս, յեղանելն և ինքեանց 'ի նոյն՝ ծանրաբեռնեալ շինուածոյն

յամբոխէ մարդկան , յանկարծօրէն ահագին թնդմամբ փլուզեալ անկաւ 'ի տխրութիւն առաւել՝ քան յերկիւղ ականատեսից մերձաւորայ Աթենացւոց. իսկ հեռաւորաց և կարի բացակայից կարծելով 'ի բուռն անկեալ քաղաքին յայնմ կուսէ, փախստեամբ դիմեալ անկան 'ի ծովակողմն կոյս և 'ի նաւս:

ծԺԶ. Իբրև ետես Բրասիդաս զեղեալսն, և թէ թողին Աթենացիք զմահարձանսն, խաղացոյց անդէն զզօրսն, և կալեալ զամուրն՝ սրոյ ետ ճարակ զամենեսեան որոց և պատահեաց: Իսկ Աթենացիք 'ի նաւս և 'ի նաւակս իւրեանց անցին 'ի Պալլենէ, և այսպէս թողին զտեղին: Մեհեան մի էր Աթենասայ 'ի Լեկիթոս, և Բրասիդաս յառաջ քան զյարձակելն յամուրն՝ քարոզ տուեալ էր կարդալ, թէ որում նախ վերելակեսցէ 'ի պարիսպն, կշռեսցէ նա երեսուն մնաս արծաթոյ 'ի պարգևի մասին. քան մարդկեղինաւս՝ նորահրաշ իմն ճանապարհաւ կարծելով զառումն քաղաքին, նուիրեաց զերեսուն մնասն Դիցուհւոյն 'ի մեհեան նորա, հիմն 'ի վեր յատակեալ զշէնս և զողջոյն իսկ զբնակութիւնս 'ի Լեկիթոս, կարգեաց զերկիրն նուիրական մեհենին: Եւ զմնացեալ ձմերայնոյն պարապէր Բրասիդաս 'ի կարգաւորութիւն քաղաքաց զորս էառ. 'ի նոյն խորհուրդս էր և վասն այլոց. 'ի կատարած առաջիկայ ձմերայնոյս՝ լրացաւ և ութերորդ ամ պատերազմիս:

ծԺէ. Ի գալ երևել գարնայնոյ 'ի մուտս առաջիկայ ամարայնոյս խորհեցան Լակեդեմոնացիք և Աթենացիք տարևոր դուլ զինուց առնել. Աթենացիք 'ի խափանել զընթացս Բրասիդայ, որ 'ի յապստամբութիւն դաշնաւորաց իւրեանց նկրտէր, և պարապով ժամ գտանել 'ի պատրաստութիւն ընդդիմակալ. զի և 'ի կամելն մարթէր երկարել զզինադուլն: Թէպէտ չէին անկասկած Լակեդեմոնացիք զխորհրդոյ մտաց Աթենացւոց, սակայն և ակն ունէին, զի 'ի դլալ չարեաց և վշտաց աղխտից պատերազմին՝ ցանկալի ևս լիցի նոցա խաղաղութիւն 'ի փորձոյ.

և դարձիւ գերւոյն՝ երկարատև ևս տրասցեն զհաշտութիւն խաղաղութեան: Եւ ցորչափ 'ի յաջողութեան էր Բրասիդաս՝ կամէին Լակեդեմոնացիք գերեթափ իւրեանցայոցն առնել. զի եթէ յառաջադէմ ևս գտանէր նա, և ախոյեան հաւասար ընդդէմ Աթենացւոց երևէր, պարտ էր նոցա հրաժարել 'ի գերեաց. և 'ի հաւասար կռուին անգամ վտանգել զբաղդ յաղթութեան. և արարին վասն ինքեանց և վասն դաշնաւորաց ամենեցուն զայս դուլ զինուց:

ՃԺԸ. « Վասն մեհենին և պատգամատու ըղձութեանց Պիւթեան Ապողոնի հաճոյ թուեցաւ մեզ վարել հաւասար օրինօք ըստ կամս իւրաքանչիւր աննենգ և աներկիւղ ըստ հայրենատուր կարգաց: Այս են կամք Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցին այժմուց, և որ յանձն առնուն նուիրակութեամբ 'ի սոյն ջանալ հաւանեցուցանել և զԲիովտացիս և զՓոկեացիս: Իսկ վասն գանձուց և կալուածոյ աստուծոյն, հոգ խնամոյ կալցուք 'ի յայտնութիւն սեղանակապտիցն ըստ հայրենի օրինաց ուղղութեամբ և արդարութեամբ, և ոյք օրինօք նախնեաց գնալով զնոյն կամեսցին:

Այսպէս հաճոյ թուեցաւ Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցա, զի եթէ և Աթենացիք ընդ դուլ զինուց յօժարեսցին, կալցէ կողմն իւրաքանչիւր զոր ունի արդ զիւրն: Որք 'ի Կորիփասիոն են՝ մի անցցեն անդրագոյն քան զԲուփրաս և զՏոմէոս. իսկ 'ի Կիւթերա մի ունիցին դաշնակիցք մեր կցորդութիւն ընդ նոցայոցն, և մի նոցայքն ընդ մերոցն: Եւ որք 'ի Նիսէ և 'ի Մինոա, մի անցցեն անդր քան զուղին որ 'ի դրանց անտի Նիսեայ մինչև 'ի տաճարն Պոսիդոնի, և անտի 'ի մեհենէն մինչև 'ի կամուրջն 'ի Մինոա: Նոյնպէս և Մեգարացիք և դաշնակիցք նոցա մի անցցեն ընդ այս ճանապարհ. և զկղզին զոր կալան Աթենացիք՝ պահելով զայն, մի խառնեսցին կցորդութեամբ առ միմեանս աստի և անտի: Ի Տրեզենէ կայցեն մնասցեն որք 'ի պայմանի՝ յորում են ըստ դաշանց կռելոց ընդ Աթենացիս:

Իշխանութիւն իցէ ամենեցուն նաւարկել ընդ ծով՝ որ զերկիրնոցա թանայ և զդաշնաւորաց, այլ մի՛ երկայն նաւուք՝ ոչ Լակեդեմոնացիք և ոչ դաշնաւորք նոցա, բայց թիակաւորովք միայն հինգհարիւր տաղանդաց բեռնաբարձիւք: Քարոզք բանբերք և ուղեկից նոցին հրեշտակք 'ի վէճս հակառակութեան և 'ի լուծումն թշնամութեան, որպէս ինչ հաճոյ թուեսցի կողմանց երկաքանչիւր՝ գնասցեն յերթևեկս իւրեանց 'ի Պելոպոնէս և յԱթէնս ընդ ծով կամ ընդ ցամաք՝ 'ի հաւատ հասարակաց երաշխաւորեալք:

Յայսմ ժամանակի մի՛ ընկալցին ինքնեկ գնացականք ոչ 'ի մէնջ և ոչ 'ի ձէնջ, թէպէտ ազատք, թէպէտ ստրուկք: Ի խնդիրս հակառակութեան 'ի միջի մերում, դուք առ մեզ և մեք առ ձեզ՝ ըստ հայրենական օրինաց դատ վարեսցուք, և ըստ դատախազութեան կարգի իրաւախոհ ընդ միմեանս լիցուք՝ առանց 'ի զէն գալոյ:

Այսուքիկ այսպէս հաճոյ թուեցան Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցուն. բայց եթէ լիցի ձեզ խորհուրդ լաւագոյն և արդար առաջարկելի, 'ի Լակեդեմոն եկեսջիք ուսուցանել մեզ զայդ. զի ոչ Լակեդեմոնացիք և ոչ դաշնաւորք նոցա անսաստեալ մերժեսցեն երբէք զարդարն և զիրաւ: Եւ որք նուիրակութեամբ առաքին առ այս, լիովին իշխանութեամբ եկեսցեն, զոր օրինակ և դուք զդոյն խնդրէք 'ի մէնջ: Դաշինքս այս և դուլ և դադար 'ի կռուոյ տարեւոր իցէ, վասն միոյ միայն տարւոյ:

Այսպէս հաճոյ թուեցաւ ժողովրդեանս 'ի նախագահութեան Ակամանտեանց, յատենադպրութեան Փենիպպեայ և 'ի վերակացութեան Նիկիասայ՝ ըստ առաջարկութեան Լաքեսայ. 'ի բարւ. դէպ յաջողութիւն Աթենացւոց եղև դուլ զինուցս՝ որպիսի ինչ ընդունելի երևեցաւ Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցուն: Եւ կռեցան դաշինքս առաջի ժողովրդեան զամ մի միայն դադար առնուլ 'ի զինուց, սկիզբն լինելով յօրէ յայսմանէ 'ի չորեքտասաներորդէ ամսեանն Ելափեբոլիոն: Ընդ այս ժամանակս եր-

Թիցեն պատուիրակք և քարոզք ժողովրդեան ասել և անտի առ միմեանս 'ի խօսել և 'ի յարմարել զպայմանս հաշտութեան, և լռեցուցեալ լուծանել զԹշնամութիւն և ըզպատերազմ: Զօրագլուխք և նահապետք Բրիտանիկք ինխանք 'ի ժողով խմբեալ՝ յորում զխաղաղութենէ խորհելով Աթենացիք ըստ առաջարկութեան պատգամաւորաց 'ի լուծումն պատերազմին, և երդնուցուն անդէն առաջի ժողովրդեան հրեշտակքն պատգամաւորք պահել հաւատարմութեամբ զտարեւոր դուլ զինուց »:

ծժթ. Եւ կռեցան դաշինքս 'ի մէջ Լակեդեմոնացւոց և Աթենացւոց, և 'ի մէջ դաշնաւորաց սոցա և նոցա, յերկոտասան Գերաստիոն ամսեան ըստ Լակեդեմոնացւոց: Եւ կային յօրինիչք դաշանցս և երաշխաւորք Տաւրոս որդի Եքետիմիդայ, Աթենէոս Պերիկլիդայ և Փիլոքարիդաս Երիքսիտայիդեան: Ի Կորնթացւոց Ենէաս որդի Ոքիտեայ և Եւփամիդաս Արիստոնիմեայ: Ի Սիկիոնացւոց՝ Դամոտիմոս որդի Նաւկրատեայ և Ոնասիմոս Մեկակլեայ: Ի Մեգարացւոց՝ Նիկասոս Կեկալեան և Մենեկրատէս Ամփիդորեան: Յեպիդաւրացւոց՝ Ամփիաս որդի Եւփէիտայ: Իսկ յԱթենացւոց՝ Նիկոստրատ Դիիտրեփայ, Նիկիաս Նիկերատեայ և Աւտոկլէս Տոլմեան, զօրավարք: Եւ այսպէս սահմանեցաւ զինուց և պատերազմի դուլ և դադար, յորում ժամանակի անդուլ ժողովք և բանակցութիւնք լինէին 'ի մնայուն և 'ի յարատև հաշտութիւն խաղաղութեան:

ծի. Ընդ այն աւուրս մինչդեռ յայսմ բանակցութեան էին սոքա, յետս եկաց յԱթենացւոց Սկիոն քաղաք՝ որ 'ի Պալլենէ նեղցին, ձեռս տալով 'ի Բրասիդաս: Կարծին Սկիոնացիք հատուած 'ի Պելոպոնեսացւոց լինել 'ի Պալլենէ. զի զկնի առման Տրոյիոյ 'ի ծովաչու դարձին նախնեաց նոցա վարեալք 'ի մրրկէ յայս ափունս՝ որպէս և Աքայեցիք, և հաստատին անդ բնակութեամբ: Ի վտարանջել սոցա յայտնապէս զԱթենացիս՝ էանց Բրասիդաս գիշերաւ

'ի Սկիոն, կարապետեալ յառաջոյ 'ի դաշնաւորաց այտի պատերազմիկ նաւու, և ինքն 'ի հեռուստ յակատ մի փոքրիկ, զի 'ի հանդիպել հարստագունին քան զինքն խոյ և արգել ճանապարհին՝ ապաւինեսցի 'ի նաւն պատերազմիկ. իսկ եթէ այլ նաւ պատերազմիկ 'ի վերայ գայցէ, անշուշտ ոչ 'ի վերայ շնչենւոյն, այլ 'ի վերայ հաւասարազօր ինքեան նաւուն յարձակելով՝ ժամ լիցի նմա ճողոպրեալ ապրել: Եւ անցեալ նորա ընդ նեղուցն եկն եմուտ 'ի Սկիոն. և ժողովեալ զքաղաքացիսն, որպէս երբեմն առ Ականթացիս և առ Տորոնեցիս՝ խօսեցաւ առ նոսա, յաւելեալ 'ի գովութիւնս. զի 'ի նեղցին Պալլենեայ փակեալ յԱթենացւոց յիշխողաց Պոտիդեայ, և ինքեանք կղզայինք ինքնայօրդօր դիմեցին ընդ առաջ ազատութեան, և ոչ վատութեամբ կացին մնացին հարկի բռնութեան 'ի խնդրել աներկեան զիւրեանց երանութիւն. որ և 'ի յաջողել ըստ ըղձիցն, մեծագունից դժնդակաց արութեամբ ժուժկալելոյ հաւաստիք են աներկբայ. և մտերմագոյն արդարև յայնժամ համարեսցի զնոսա 'ի բարեկամս Լակեդեմոնացւոց և մեծապատիւ մեծարեսցէ:

ճԻԹ. Իսկ Սկիոնացւոց վառեալք յեռանդն բանիւս, և ամենեցուն միօրինակ քաջալերեալ, նոցուն իսկ անգամ որոց 'ի սկզբան չէր հաւան ընդ եղեալսն, և խորհէին մտադիւրագոյնս ժուժկալել մարտի. և զԲրասիդաս ընկալեալ մեծաւ փառօք իբրև ազատարար Եղլադայ՝ քաղաքովին ոսկի պսակաւ պսակէին զնա, ուրոյն առանձին և երից վարսակալ զճակատուն ածեալ, որպէս յաղթական ըմբշի ընդ առաջ ելանէին նմա: Եթող նոցա Բրասիդաս առ ժամայն յիւրոց անտի պահականս և դարձաւ. և յետ ոչ բազմաց անցոյց նոցա զօր բազմաձեռն, խորհելով փորձ փորձել այնու 'ի վերայ Մենդեայ և Պոտիդեայ. զի կասկածէր աճապարել Աթենացւոց՝ որպէս կղզայնոց հասանել սոցա 'ի Թիկունս, վասն որոյ խորհէր վաղվաղել զառաջս առնուլ նոցին: Միանգամայն առաքեալ բանագնաց լինէր ընդ

քաղաքացն այնոցիկ, յետս կալ յԱթենացւոց և յարել յիւրսն, և խաղայր անձամբ 'ի վերայ նոցա:

ԾԻԲ. Բայց մինչ այս մինչ այն, հասին առ նա պատգամաբերք 'ի նաւ մի պատերազմիկ, որ զդուլ զինուց ծանուցանէին. և էին սոքա յԱթենացւոց՝ Արիստոնիմոս, և 'ի Լակեդեմոնացւոց՝ Աթենէոս: Եւ դարձաւ զօրն 'ի Տորոնէ քաղաք, և ազդ արարին նուիրակքն Բրասիդայ զպայմանս դաշանցն. և ընկալան ամենայն դաշնաւորք Լակեդեմոնացւոց 'ի Թրակիա զսահմանս դաշանց: Հաւանեալ Արիստոնիմեայ ամենայնի որ ինչ վասն այլոց դաշնաւորաց օրինադրէր, չկամէր զՍկիոնացիս 'ի նոյն պայմանս համարել, զի 'ի համարոյ աւուրց անտի 'ի վերայ հասանէր, եթէ յետոյ ուրեմն քան զդուլ զինուց հանդիպեալ էր վտարանջութիւն նոցա: Իսկ Բրասիդաս պնդէր՝ կանուխ քան զպայմանն լինել, և չկամէր թողուլ զքաղաքն: Եւ 'ի վաղվաղել ազդ առնել Արիստոնիմեայ վասն իրացս յԱթէնս, շարժէին պատրաստէին Աթենացիք գալ պատերազմաւ 'ի վերայ Սկիոնի. բողոք կալան Լակեդեմոնացիք հրեշտակութեամբ ընդդէմ արշաւանին, իբրու հակառակ պայմանաց հաշտութեան, զի 'ի հաւատ բանից Բրասիդայ՝ զկողմն Սկիոնացւոց ունէին, սակայն և յօժարամիտ լինել ցուցանէին օրինօք դատաստանի իրաւախոհ լինելոյ. բայց ոչ կամելով Աթենացւոց քննութեամբ ատենի կասկածելի առնել զիրաւունս իւրեանց, խորհէին ելանել 'ի չու՝ ծանրացասումն ընդ ժպրհութիւն կղզեցւոց. որք ընդ անպիտան ինքեանց ընդ հետեւակախումբ զօրութիւն Լակեդեմոնացւոց վստահացեալ՝ յայս ապստամբութիւն յաւակնեցան: Եւ զի 'ի խնդիրս այս ժամանակի ապստամբութեան՝ իրաւամբ արդարանայր կողմն Աթենացւոց, զի երկաւուրբ յետոյ լինէր քան զդուլ զինուց վտարանջութիւն Սկիոնացւոց. վասն որոյ ըստ խորհրդոյ Կլէոնի սահմանեցին նոքա հիմն 'ի վեր բնաջինջ, առնել զՍկիոն. և պարապ առեալ յամենայնէ յայս արշաւանս պատրաստէին:

ԾԻԳ. Յայն աւուրս նչկահեաց զԱթենացիս և Մենդէ քաղաք 'ի Պալլենէ՝ հատուած Երետրիացւոց. զոր և ընկալաւ Բրասիդաս՝ ոչինչ խղճելով ընդ յայտնի վտարանջութիւնն 'ի դուլ զինուց, քանզի և ինքն բողոք ունէր զԱթենացւոց՝ զպայմանօք դաշանաց անցանելոյ: Եւ որ առաւել համարձակէր զՄենդացիս 'ի սոյն, զի տեսանէին զյօժար կամս Բրասիդայ 'ի փորձոյ անտի Սկիոնացւոց, չլինել մասն և նոցա. միանգամայն և ոմք համախոհք դաւոյս էին նուազունք յոյժ, խիթացեալ զի 'ի յամել գործոյն իսպառ 'ի դերև ելցէ, և 'ի յայտ գալ իրացն, դրդեցին շարժեցին զամբոխն յայս ակամայ ապստամբութիւն. ընդ որ մեծաւ ցասմամբ շարժէին Աթենացիք գալ 'ի վերայ երկուց քաղաքացս այսոցիկ: Բրասիդայ ճալով արշաւանի նոցա ընդ ծով՝ ժողովեաց անցոյց յՈլիւնթոս Քաղկիսացւոց ըզմանկունս և զկանայս Սկիոնացւոց և զՄենդացւոց, և յղեաց 'ի Պելոպոնեսացւոց անտի իւրոց հինգհարիւր ասպարակիր զօրս և երեքհարիւր վահանաւոր քաղկիսացի, և 'ի զօրավար նոցա զՊոլիդամաս: Որք և ընդ մօտալուտ գալուստ Աթենացւոց հաւասար հաւանութեամբ 'ի պաշտպանութիւն անձանց և քաղաքաց վերամարտիկ զկեանս դնել խորհէին:

ԾԻԴ. Յաւուրսն յայնոսիկ զայս երկրորդ անգամ խաղաց Բրասիդաս ընդ Պերդիկկայ 'ի վերայ Արրիբէոսի 'ի Լիւնկոս. ածէր ընդ իւր Պերդիկկաս զգունդս զօրաց Մակեդոնացւոց՝ որոց և իշխէրն. և զօր ասպարաւոր 'ի Հելլենաց բնակաց երկրին. իսկ Բրասիդաս բաց 'ի Պելոպոնեսացւոց ունէր զՔաղկիսացիս, զԱկանթացիս և յազգաց ազգաց զօր օգնական ըստ կարի նոցա: Եւ էին ընդ ամենայն երեքհազար ասպարաւոր Հելլենք, և համօրէն այրուձին ընդ մակեդոնացի և ընդ քաղկիսացի իբրու հազար մի, և խուժան ամբոխ բարբարոսաց: Որոց միջամուխ լեալ յերկիրն Արրիբեայ՝ գտին պատրաստական զբանակ զօրուն Լիւնկեստաց ճալով նոցա. զակիշ ածեալ նստան և ինքեանք

յանդիման նոցին: Իբրև աստի և անտի կալեալ հետևակազօրուն զհանդիպահայեաց բարձունս՝ թողլով 'ի մէջի երկիր տափարակ՝ նստէին, իջեալ հեծելազին երկուստեք առ իրեարս՝ խառնեցան 'ի կռիւ հեծելամարտ. և 'ի գալ յառաջէլ և ապարաւոր գնդին Լիւնկեստաց խառն ընդ հեծելազօրուն 'ի բլրոյն պատրաստ 'ի կռիւ, եւուն խաղալ և Բրասիդաս և Պերդիկկաս զիւրեանց քաջամարտիկս, և դիմեալ 'ի վերայ հալածական տարան զԼիւնկեստս, սրակոխ առնելով 'ի նոցանէ ոչ սակաւ. յորոց ապրեալքն 'ի բարձունս ապաւինեալ՝ զկայ առին անդանոր: Յետ այսորիկ նշան յաղթութեան կանգնեալ, և զերկուս կամ զերիս աւուրս դադար առեալ 'ի տեղւոջն՝ Լիւրիկեցւոց մնայրն, զորս վարձկանեալ էր Պերդիկկայ զհետ իւր գալ. այլ ոչ կամելով ընդ վայր ժամավաճառ լինել՝ խորհէր Պերդիկկաս մտեալ յերկիր Արրիբեայ անկանել 'ի վերայ աւանաց նորա. բայց Բրասիդաս վասն Մենդացւոց հոգայր՝ գուցէ փութանակի արշաւանօքն Աթենացւոց ըմբռնեսցին նոքա 'ի տագնապ և 'ի վնաս. և զի չերևէին Լիւրիկեցիք՝ չյօժարէր նա զհետ գնալ խորհրդոց արքայի, այլ պնդէր մանւանդ դառնալ յետս:

ՃԻԵ. Եւ մինչդեռ յայսմ հակառակ խորհուրդս էին սոքա, և ահա լուր եղև եթէ Լիւրիկեցիք նենգեալ զՊերդիկկաս ընդ Արրիբեայ զինուորին, որով հաւանեցան նոքա յայնժամ փախչել յերեսաց մարտիկ ազգին, այլ չըկարացին ճշդիւ ժամադիր լինել 'ի նահանջ: Ի գիշերանալ աւուրն ըմբռնեալ յերկիւղ յեղակարծ զօրուն Մակեդոնացւոց և խուժանի ամբոխին բարբարոսաց, զոր օրինակ սովոր է դիւրեաւ ահաբեկել բանակ բազմամբոխ, քան զոր էրն յոգնախումբ և ծանր ձեռամբ հասեալ համարելով զթշնամին, զոտս ամբարձեալ 'ի փախուստ խուճապեցան դառնալ յերկիր իւրեանց: Զառաջինն ոչինչ զգացեալ Պերդիկկաս, ապա իբրև գիտաց զեղեալսն, բռնադատեցաւ և ինքն փութալ 'ի չու, առանց տեսանելոյ ընդ Բրասիդայ՝ զի

հեռի յիրերաց բանակեալ էին։ Ի ծագել աւուրն տեսեալ Բրասիդայ զՄակեդոնացիս կանխեալս 'ի նահանջ, և ըզԼիւրիկեցիս և զԱրրիբէոս եկեալ հասեալ 'ի վերայ, ել և ինքն. Ժողովեաց զգունդ իւր ասպարազէն և 'ի ռազմ քառակուսի կարգեալ զնոսա և զզօրն մեկնակազէն զետեղեալ 'ի միջի՝ չարժէր 'ի նահանջ։ Յառաջապահս կարգեաց զմանկագոյն հասակ զօրուն՝ պինդ կալ ընդդէմ յարձակման թշնամւոյն. և ինքն երեքհարիւր ընտրելովք եկաց 'ի վերջապահս՝ 'ի պատուար քաջ ամուր անտեղիտալի։ Եւ չև մօտ հասեալ թշնամւոյն՝ 'ի հապճեպ ժամուն, սրտապընդէր զիւրսն օրինակ զայս.

ԾԻՁ. « Եթէ ոչ կասկածէի, արք Պելոպոնեսացիք, սրտաբեկեալս լինել զձեզ, զի լքեալ թողայք 'ի մարտակից նիզակակցաց ձերոց, և հրոս թանձրախուռն ամբոխի խըժից դիմեալ գայ 'ի վերայ, ոչ ինչ նոր 'ի յորդոր խրախուսի յաւելուի. այլ 'ի թողուլ արդ հեռանալ մերոցն, և 'ի գալ մերձենալ գուգազի թշնամեաց, ջանացայց սակաւուք յուշարար խրատու ամրապնդել զոգիսդ։ Արիանալ պիտի ձեզ յառաջինկայ կռուիս՝ ոչ սովորական օգնականութեամբ նիզակակցաց ձերոց, այլ բնիկ ձերովդ առաքինութեամբ, և ոչ 'ի թշնամեաց յամբոխէն պակուցեալ զարհուրել. զի ոչ եթէ 'ի քաղաքաց անտի գայք դուք, յորում բազմութեան է սակաւուց իշխել, այլ ուր սակաւք բազմաց տիրապետեն. և զայս իշխանութիւն ոչ այլով իւիք, բայց արիական յաղթութեամբ 'ի պատերազմունս ստացեալ։ Իսկ վասն բարբարոսաց՝ որոց անփորձ արդ երկընչիք 'ի նոցանէ, պարտ է ձեզ 'ի կանուխ նախատակութեանցդ ընդ խժից Մակեդոնացւոց 'ի միտ առնուլ. և զոր 'ի կարծեաց և զոր 'ի լրոյ գիտեմս չեն սոքա բնաւ ահագինք։ Եւ զի 'ի բնէ իսկ անզօր գոլով սոցա կարծիս իմն զօրութեան տան, այլ յորժամ 'ի փորձոյ ոք հասու ճըշմարտութեանս լինիցի, յորդորագոյնս յայնժամ 'ի կռիւ դիմամարտ խիզախեսցէ. որոց եթէ իցէ ինչ հաստատու-

թեամբ արութիւն քաջութեան, ոչ նախատես այնմ լինելով՝ յանդգնագոյնս ոք ընդ նոսա բերիցի: Սոքա խուժքս չեւ 'ի կռիւ եկեալ՝ անգիտաց են ահաւորք. 'ի տեսիլ ամբոխի նոցա անհնարինք, եւ 'ի գոչիւն աղաղակի՝ ահրնկէցք. եւ 'ի վայրապար ճօճալ զինուց՝ սպառնալիցք, այլ 'ի բախել ընդ քաջապնդից ոչ եւս նոյնպիսիք: Ոչ ռազմի եւ ոչ կարգի հպատակեն նոքա, եւ չամաչեն իսկ 'ի ստիպել հարկին խախտեալք ընկրկել յետս. փախուստ եւ յարձակումն հանդիտապատիւ է առ նոսա, եւ արիական քաջութիւն ապաշնորհ ամենեւին. ինքնատեարք 'ի պատերազմի, եւ 'ի փրկութիւն անձին այր իւրաքանչիւր 'ի վայելուչ բաղբաղայս պատրաստք գտանին: Քան եթէ միջամուխ 'ի կռիւ, աներկեան եւս համարին նոքա 'ի հեռուստ որոտալ, ապա թէ ոչ՝ քան 'ի սպառնալիս, 'ի պատերազմ՝ արդեօք կանխէին: Եւ ապաքէն որ 'ի սկզբան անդ ահագին թուի, թեթեւ ինչ է եւ դուզնաքեայ, յաչս միայն եւ 'ի լսելիս ահարկու: Զի եթէ ընդդէմ առաջնոյ յարձակման նոցա ժուժկալիցէք, եւ 'ի դէպ ժամուն վայելուչ կարգաւ եւ յօրինուածով վերջոտնիցէք, արագապէս յանքոյթ աներկեանութիւն եղանիցէք. գիտասջիք դարձեալ զի այս հրոս խառնափնդոր, յորժամ զնախկին նոցա բախումն յաջողեսցի վանել, 'ի բացուստ լոկ միայն շառաչմամբ սպառնալեաց խրոխտալ գիտէ. բայց եթէ որ ընկրկեալ տեղի տայցէ յերեսաց նոցուն, անվտանգք այնուհետեւ եւ խիզախք երագունք լիցին 'ի հալածել»:

ՃԻԷ. Եւ յետ բանիցս այսոցիկ խրախուսանաց փող եհար Բրասիդաս 'ի նահանջ. զոր տեսեալ բարբարոսաց եւ փախստեայս զնոսա կարծելով՝ մեծաձայն աղաղակաւ եւ աղմկիւ անկանէին 'ի վերայ սատակել ծախել զամենեսեան: Բայց ուր եւ խիզախել կամէին՝ նախայարձակ հեծելոց հանդիպէին. եւ Բրասիդաս ընտրելովքն իւրովք դիմամարտ նոցին խոյանայր, եւ քան զամենայն ակնկալիս ժուժկալեալ հզօրեղապէս, վանէր զբուռն յարձակումն ամբոխի բաղ-

մութեան, որով զինու զօրութեամբ զչու նահանջին առնէր: Մինչև բազմաց 'ի բարբարոսաց ոչ ևս այլ զհետ Հելլենաց և Բրասիդայ պնդելով ձիգ 'ի դիւրի, հատուածս յիւրեանց անտի թողեալ հետամուտս և խոչ ընդ ոտն ճանապարհին, ինքեանք զկնի փախստէին Մակեդոնացւոց դիմեալք գնացին, և որոց միանգամ հանդիպէին 'ի նոցանէ սրակոտոր սատակէին. և հասեալ կալան զանձուկս կրճին ընդ մէջ երկուց բլրոց, որ ածէր յերկիրն Արրիբեայ' դիտելով թէ չէին այլ ելք անցից զօրուն Բրասիդայ: Ի գալ նորա և 'ի մերձենալ 'ի տեղին, եկեալ պատեցան և նոքա զդժուարուտ անցիւն' կարծելով ըմբռնել զնա 'ի ծուղակ անճողոպրելի:

ճիը. Գիտաց զայս Բրասիդաս և հրաման ետ անդէն իւրոց երեքհարիւրոցն ընտրելոց, արձակաբար գրոհ տուեալ հասանել ունել զմի 'ի բլրոցն' զոր և դիւրաւ համարէր, և մերժել անտի զբարբարոսս' չև խռնեալ նոցա ամբոխիւ 'ի տեղին: Որոց և արիաբար դիմեալ անդր, և սաստկապէս հարեալ սատակեցին զորս 'ի բլերն, և բազմութիւն հելլենական զօրուն խաղաց յայնժամ համարձակ 'ի տեղին: Քանզի հալածեալ միանգամ խժից 'ի բարձանց անտի, և պակուցեալք յահէն ոչ ևս այլ զհետ պնդէին Հելլենաց, կարծելով զնոսա վաղ իսկ 'ի սահմանս աշխարհին ապրեալս 'ի վտանգէն: Բրասիդայ կալեալ զբարձունս' բազում աներկեանութեամբ այնուհետև առնէր զնահանջ իւր. մինչև եկն եհաս 'ի նմին աւուր յԱռնիսսա քաղաք' յերկրի իշխանութեան Պերդիկկայ: Զայրացեալ Հելլենք ընդ կանուխ մեկնել Մակեդոնացւոց' որոց միանգամ պատահէին զճանապարհայն լծից եզանց և կամ աղխից կարասեաց, որ 'ի դէպ էր լինել 'ի նահանջ գիշերախառն և լի երկիւղիւ, արձակելով զլուծսն' կարթակոտոր զեզինն առնէին, և զկարասին յափշտակէին: Յետ այնորիկ իբրու 'ի թշնամի իւր հայէր Պերդիկկաս 'ի Բրասիդաս, և ցուցանէր ընդդէմ Պելոպոնեսացւոց ատելութիւն անսովոր 'ի պատ-

ձեռս Աթենացւոց և ջանահնար լինէր' 'ի կարևոր շահուն բերեալ, փութալ հաշտել ընդ սոսա, և խորշել հեռանալ 'ի նոցանէ։

ծՒԹ. Իբրև դարձ արար Բրասիդաս յերկրէն Մակեդոնացւոց 'ի Տորոնէ, և եգիտ զՄենդէ վաղ իսկ անկեալ 'ի ձեռս Աթենացւոց, զտեղի էառ անդանօր. և տեսեալ զանհնարութիւն անցանելոյ 'ի Պալլենէ յօգնութիւն նոցա, ամրացոյց պահակօք զՏորոնէ։ Քանզի յարշաւանին և անցից 'ի Լիւնկոս' Աթենացիք յառաջագոյն իսկ կազմք, խաղացին յիսուն նաւուք 'ի վերայ Մենդեայ և Սկիոնի, յորոց տասունքն 'ի Քիայ էին, և զօրական ասպարաւոր հազար 'ի նոսա, և վեցհարիւր աղեղնաւոր և հազար Թրակացի վարձկան, և զօր սպայագունդ 'ի դաշնաւորաց անտի աշխարհին, և զօրավար սոցա Նիկիաս Նիկերատեայ և Նիկոստրատ Դիիտրեփեայ։ Ամբարձեալ սոցա 'ի Պոտիդեայ և իջեալ առ Պոսիդոնեաւ 'ի ցամաք' խաղացին 'ի վերայ Մենդեայ։ Ունելով Մենդացւոց երեքհարիւր Սկիոնացիս օգնականս, և 'ի Պելոպոնեսացւոց օժընդակս, ընդ ամենայն եօթնհարիւր ասպարազէնս, և Պոլիդամիդաս առաջնորդ նոցա, բանակեալ նստէին արտաքոյ քաղաքին 'ի վերայ բլեր 'ի բնէ ամրացելոյ։ Իսկ Նիկիաս հարիւր քսան մեկնակազէն Մեթոնացւովք և վաթսուն քաջընտիր ասպարակիր վառելովք աթենացւովք և համայն աղեղնաւորօք փորձ փորձեալ ընդ հետս ուրեք 'ի բլուրն վերելակել. և խոց վիրաւոր 'ի նետից թշնամւոյն չկարաց բռնի առնել իւր ճանապարհ, բայց Նիկոստրատ ընդ այլ շաւիղ հեռաւոր մնացորդ գնդաւն ելեալ 'ի բլուրն դժուարամատոյց արդարև' և անկեալ ինքնին 'ի շփոթս և 'ի խուճապ տագնապի, փոքր միւս ևս և իսպառասպուռ ջախջախեր զօրն Աթենացւոց։ Եւ զի Մենդացիք և մարտակիցք դաշնաւորք նոցա պինդ կացին զայն օր անխլիրտ, ընկրկեալ յետս Աթենացւոց և բանակ հարեալ նստան։ Ի հասանել գիշերոյն 'ի վերայ' դարձան և Մենդացիք մտին 'ի քաղաքն իւրեանց։

ԾԼ. Ի վաղիւ անդր զափամբ շրջանաւելով Աթենացիք մինչև հանդէպ Սկիոնի կալան զբուրաստանս նորա, և զօրն 'ի բուն յապականութիւն եդին զերկիրն, ոչ ումեք 'ի բընակչաց երևելով ընդդէմ նոցա. զի 'ի խռովութեան էր քաղաքն, և երեքհարիւր Սկիոնացիքն դարձան յիւրեանս զայն գիշեր: Իսկ յառաւօտուն յառաջ խաղացեալ Նիկիաս կիսով չափ զօրուն ընդ սահմանս երկրին՝ աւերէր զանդաստանս Սկիոնացւոց, մինչդեռ Նիկոստրատ մնացելով կայր հանդէպ քաղաքին՝ առաջի վերնոյ դրան որ ածէր 'ի Պօտիդէա: Իսկ Պոլիդամիդաս 'ի ռազմ զՄենդացիս կարգեալ և զօգնական գունդս, զորս անդ առ պարսպաւ զետեղեալս եգիտ, և վարէր զնոսա ելանել ընդդէմ Թըշնամւոյն: Անդ ոմն 'ի հերձուածոյ ռամկին բանս ընդդէմ եդ նմա խազմարար մտօք չելանել ընդ դրունս և ոչ 'ի կռիւ գալ: Իբրև հակառակէր ընդ առնն Պոլիդամիդաս և կալեալ զձեռանէ նորա 'ի մի կողմն մղէր, աղմկեալ ռամկին 'ի զէն ընթացաւ, և ցասմամբ մեծաւ դիմեալ 'ի վերայ Պելոպոնէսացւոց և կուսակցաց նոցին 'ի փախուստ զնոսա խուճապեցուցին. որք 'ի յեղակարծում յարձակմանէն պակուցեալք և զբանալ դրանց առաջի Աթենացւոց տեսանելով՝ համարեցան կանուխ հաւանութեամբ ընդ նոսա զայս այսպէս դաւաճանեալ նոցա: Եւ որք ապրեցանն 'ի սրոյ՝ փախստեայ անկան յամրակողմն 'ի գլուխ քաղաքին, զոր և յառաջագոյն կալեալ ունէին: Եւ մինչդեռ Նիկիաս դարձ յարշաւանէն արարեալ մերձ էր 'ի Մենդէ՝ յարձակեցան Աթենացիք համախումբ 'ի քաղաքն. և զի առանց դաշանց կամ պայմանի բացաւ նոցա առաջի, իբրու զինու կալեալ՝ յաւար մատնեցին զայն. և հազիւ հազ կարացին զօրավարք արգելուլ զկոտորած ժողովրդեան: Հրաման եղև ապա Մենդացւոց ունել վարչութիւն՝ յոր սովորն էին, դատելով յատենի իւրեանց զորս և առաջնորդս ապստամբութեան համարիցին: Եւ զամրացեալսն 'ի միջնաբերդին փակեալ պաշարեցին որմովք ձգելովք երկուստեք մինչև

'ի ծով, և զօրս 'ի պահ նոցա նստուցին։ Եւ յետ նուաճելոյ այսպէս զՄենդացիս՝ խաղացին 'ի վերայ Սկիոնի։

ՃԼԱ. Ելին ընդդէմ սոցա քաղաքացիքն Պելոպոնեսացւովք հանդերձ և նստան 'ի վերայ բլեր հանդէպ քաղաքին անձեռագործ ամրացեալ, զոր առանց առնլոյ անմարթ էր փակեալ պաշարել զՍկիոն։ Յարձակեալ Աթենացիք և զինու բռնութեամբ վանեալ անտի զհակառակորդսն՝ նշան յաղթութեան կանգնեցին, և բանակ հարեալ անդանօր պատրաստեցան 'ի պաշարումն քաղաքին։ Եւ մինչդեռ սոքա յայսմ էին, որ 'ի դղեակ բերդին Մենդեայ պաշարեալ էր զօրականն օժանդակ՝ վանեալ զպահանորդս ծովակողման պատուարին հասին գիշերաւ, և զերծեալ յոլովք 'ի պաշարիչ զօրուէն Աթենացւոց անկան 'ի քաղաքն 'ի Սկիոն։

ՃԼԲ. Մինչդեռ գործ պատուարին զՍկիոնիւ յառաջէր՝ Պերդիկկաս հրէշտակութեամբ առ զօրավարս Աթենացւոց դաշինս միաբանութեան ընդ նոսա կռէր, որ 'ի ժամանակէ անտի նահանջին Լիւնկեայ՝ առ ատելութեան Բրասիդայ, բանագնաց 'ի սոյն լինէր։ Դէպ եղև զայնու ժամանակաւ և Իսաքորայ Լակեդեմոնացւոյ ածել զօրս ընդ ցամաք առ Բրասիդաս։ Իսկ իբրև ստիպէր Պերդիկկաս 'ի Նիկեայ ըստ դաշանց միաբանութեան հաւաստել գործով իւեք զմտերմութիւն բարեկամութեան իւրոյ ընդ Աթենացիս, և զի Թագաւորն ինքնին չէր ինչ հաճ ընդ մուտ Պելոպոնեսացւոց յերկիր տէրութեան իւրոյ, առաքեաց 'ի բանի առնել զասպնջականս իւր մտերիմս 'ի Թեսաղիա, զորոց զգլխաւորս վարէր միշտ յիւր պէտս, և արգել զզօրս թշնամւոյն, զառաջս առեալ և պատրաստութեանց դըրդելոյ զԹեսաղացիս։ Բայց Իսաքորաս, Ամինիոս և Արիստեւս հասին առ Բրասիդաս՝ առաքեալ 'ի Լակեդեմոնացւոց դիտել զպայման իրաց. և ընդդէմ օրինաց աշխարհին ածին նոքա 'ի Սպարտիոյ պատանիս կարգել վարիչս քաղաքաց, զի մի ըստ դիպացուած և է հաւատացեն զայնս, և զԿլէարի-

դաս զօրդի Կլէոնիմեայ կացուցին իշխան յԱմփիպօլիս, և զԵպիտելիդաս զօրդի Հեգեսանդրեայ 'ի Տորոնէ:

ՃԼԳ. Ի նմին ամարանի ետուն քանդել Թեբացիք ըզպարիսպս Թեսպիացւոց, ամբաստան զնոցանէ լինելով կուսակիցս գոլ Ատտիկեցւոց, երկնէին նոքա միշտ զայս խորհուրդ, որ և դիւրին եղև յայնժամ 'ի գլուխ հանել զայն. յորմէ հետէ կորուսին Թեսպիացիք զիւրեանց արբուն հասակ 'ի պատերազմին ընդդէմ Աթենացւոց:

Առ սովին հրկէզ եղև տաճարն Հերայ յԱրգոս՝ Խրիսեայ քրմուհւոյ՝ ճրագ մօտ առ նուիրական պսակաւն եդեալ և ինքն 'ի քուն, յանզգաստից ծաւալեալ հրդեհին աճիւնացոյց զամենայն. և Խրիւսիս երկուցեալ յԱրգիացւոց խոյս ետ գիշերի 'ի Փլիուս. և Արգիացիք ըստ օրինի յայնժամ կացուցին զայլ քրմուհի՝ Փայինիս անուն: Եւ դէպ լինէր փախուստ քրմուհւոյս յութերորդի և 'ի կիսում տարւոյ առաջիկայ պատերազմիս: Եւ 'ի կատարած կոյս ամարայնոյս ամենևին փակեալ պաշարեցաւ Սկիոն, և Աթենացւոց պահանորդս նստուցեալ, մեկնեալ գնացին ինքեանք բանակաւ զօրուն:

ՃԼԴ. Ի գալ ձմերայնոյ լուեալ հանդարտեցին Աթենացիք և Լակեդեմոնացիք 'ի դադարման զինուց. իսկ Մանտինեացիք և Տեգեացիք և դաշնաւորք նոցա մարտ պատերազմի ետուն 'ի Լաոդիկկիոն Որեստիդեայ, և յաղթութիւնն եկաց յերկբայս, զի աստի և անտի կողմանք երկոքին վանելով զընդդիմամարտ թև ախոյենին նշան յաղթութեան կանգնեցին, և աւարամասն 'ի Դելփիս առաքեցին: Եւ յերկուց կողմանց անպարտելի՝ ճապաղիք արեանց խաղացին, մինչև գիշերոյն 'ի վերայ եկեալ՝ վախճան արար մարտին: Տեգեացիք զայն գիշեր 'ի տեղւոջ ագանելով՝ իսկ և իսկ ախոյեան կանգնեցին. և Մանտինեացիք 'ի Բուքոլիոն մեկնեալ, անագան ուրեմն ամբարձին և նոքա զնշան յաղթութեան:

ճԼԵ. Ի կատարած ձմերայնոյս և 'ի սկիզբն կոյս գարնայնոյ փորձ փորձեաց Բրասիդաս՝ հասանել ունել յանկարծ զՊոտիդեա քաղաք: Մատուցեալ նորա գիշերայն, զանխլաբար զսանդուխս 'ի պարիսպն յեցուցանէր, զի յետ մեկնելոյ զարթուցիչ գիշերապահին՝ մինչև փոխանակեալ 'ի տեղի նորա այլում ընդ զանգակին և զարթուցիչ պաշտաման, ետ նա յենուլ 'ի տեղին Թափուր 'ի պահանորդէն զսանդուխն: Բայց չև վերելակեալ 'ի նոյն, իբրև յայտնեցաւ դաւն, եւ մեկնեցաւ նա անտի՝ ոչ մնալով առաւօտուն: Այսպէս վախճան եղև ձմերայնոյս և իններորդ տարւոյ առաջիկայ պատերազմիս, զոր պատմագրեաց Թուկիդիդէս:

---

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## Ե ԳՐՈՑ

---

Ա. Մերժել Աթենացւոց զԴելոսացիս զորբնակիչս 'ի կղզւոյն: Բ-ԺԳ. Կլէոն զօրավար Աթենացւոց 'ի Թրակիա ընդդէմ քաղաքացն ապստամբելոց և Բրասիդայ սպարտացւոյ զօրավարի. պարտութիւն Աթենացւոց առ Ամփիպօլեաւ և մահ երկոցունց զօրավարացն Կլէոնի և Բրասիդայ: ԺԴ-ԻԶ. Յօժարութիւն մարտադիր կողմանց 'ի հաշտութիւն խաղաղութեան. պայմանք յիսնամեայ խաղաղութեան ընդ Աթենացիս և ընդ Լակեդեմոնացիս, որ և սակաւատեւ լեալ վերստին դառնալ նոցա 'ի պատերազմ: ԻԷ-Ծ. Նորանոր փոփոխութիւնք 'ի դաշնաւոր ժողովուրդս, կասկածք և վէճք 'ի նոսա: ԾԱ-ԾԲ. Վասն գաղթականին Հերակլէոյ բանք: ԾԳ-ՁԱ. Պատերազմ Լակեդեմոնացւոց ընդ Արգիացիս. յաղթութիւն նոցա 'ի Մանտինեա և դաշնակցութիւն նոցա ընդ Արգիացիս և ընդ Մանտինեացիս: ՁԲ-ՁԳ. Խռովութիւն յԱրգոս և վերստին փոփոխութիւն դաշնակցաց և քանդումն պարսպաց Արգեայ: ՁԴ-ՃԺԱ. Աթենացիք 'ի Մելոս կղզի 'ի հաստուած գաղթականին Լակեդեմոնացւոց. երկար բանակցութիւն նոցա ընդ աւագորերոյն Մելիացւոց. պաշարումն Մելոսի, և առմամբ կղզւոյն անգութ կոտորած և գերութիւն բնակչաց նորա:

# Գ Ի Ր Ք Ե

Ա. Ի սկիզբն ամարայնոյս մինչև 'ի Պիւթեան խաղս վախճան լինէր և տարևոր դաշանց կռւելոց: Ի դուլ զինուց մերժեցին Աթենացիք զԴելոսացիս 'ի կղզւոյն 'ի բնակութենէ նոցա. զի 'ի վաղնջուց մեղանաց չև սրբեալ, գային նոքա մերձենալ 'ի նուիրական պաշտամունս, և զի ինքեանց իսկ Աթենացւոց յառաջնումն անդ մաքրութեան յիրս իրս թերացեալ էր. իբրու զի բառնալով նոցա արդ այժմ զոսկերոտին մեռելոց և զշիրիմս գերեզմանաց՝ զամենայն ըստ օրինի կատարէին: Իսկ Դելոսացիք 'ի շնորհել նոցա Փառնակայ զԱտրամիտիոն յԱսիա, որոց կամ եղև 'ի նոցանէ, անցեալ բնակեցան անդր:

Բ. Յաւարտ ժամանակակէտ աւուրցս դադարելոյ զինուց՝ հաւանեցուցեալ Կլէոն զԱթենացիս խաղալ նաւուք 'ի սահմանս Թրակիոյ, էառ ընդ իւր հազար երկերիւր ասպարակիր զօրական աթենացի և երեքհարիւր հեծելազն. և 'ի դաշնաւորաց այտի իւրեանց զօր բազմագունդ և նաւս երեսուն: Ելեալ նորա նախ 'ի Սկիոն որ դեռ ևս 'ի պաշարման էր, էառ անտի զզօրականն պահանորդ և եկն եմուտ 'ի նաւահանգիստ Կոլոփոնիացւոց, որ չէր ինչ հեռի 'ի Տորոնեայ: Եւ անդ լուեալ 'ի դասալիք զօրականէն եթէ Բրասիդաս չէր 'ի Տորոնէ, և որք էինն 'ի քաղաքին չէին բաւականք 'ի դիմամարտ՝ խաղացոյց զզօրն ընդ

ցամաք 'ի վերայ քաղաքին: Եհաս նախ 'ի շրջապարիսպ պատնիշացն, որով պատեալ էր Բրասիդաս զՏորոնէ՝ 'ի ներքս ամփոփելով զբուրաստանսն, և քակեալ զմասն մի վաղեմի պարսպին, 'ի մի քաղաք բովանդակեալ էր զամենայն:

Գ. Իշխան զօրուն Լակեդեմոնացւոց Պասիտելիդաս դիմեալ 'ի տեղին պահանորդ գնդաւն վանել զյարձակումն Աթենացւոց, իբրև բռնադոյն քան զիւր զօրութիւն ետես զթշնամին, և զի նաւք նոցա հասեալք երթևեկէին զնաւահանգստաւն՝ երկեաւ, մի՛ կանխեալ տորմղին կալցէ զքաղաքն անմարդի, և յառնուլ պատնիշացն ըմբռնեսցի և ինքն 'ի նոյն, վասն որոյ թողեալ զնոսա աճապարեաց դառնալ 'ի քաղաքն: Բայց Աթենացւոց ելեալ ձեպով 'ի նաւաց կալան զՏորոնէ. և զօրն երկրախումբ ժամանեալ անկաւ ընդ աւերածս հնոյ պարսպին 'ի ներքս 'ի քաղաքն. էր զոր կոտորեցին 'ի Պելոպոնեսացւոց և 'ի Տորոնեցւոց, և էր զոր 'ի գերութիւն վարեցին. ընդ որս և զՊասիտելիդաս հրամատար քաղաքին: Իսկ Բրասիդաս որ գայր յօգնութիւն Տորոնեայ, լուեալ զառումն քաղաքին զճանապարհայն՝ տեղի ետ մեկնեցաւ, զի բացական գոլով նորա իբրև վտաւանաւ քառասուն՝ չկարաց հասանել 'ի ժամուն: Եւ ամբարձին Կլէոն և Աթենացիք կրկնակի նշանս յաղթութեան՝ մին 'ի կողմանէ նաւահանգստին և միւսն 'ի պատնիշացն կուսէ, և զՏորոնեցւոց զկանայս և զմանկտի 'ի վաճառ հանին. և զՊելոպոնեսացւոց և զԽաղկիսացւոց գերին թուով իբրև եօթնհարիւր առաքեցին յԱթէնս, յորոց Պելոպոնեսացիք 'ի լինել ապա հաշտութեան, դարձան 'ի հայրենիս. իսկ այլք ածեալք յՈլինթացւոց ընդ գերւոյն ըստ գլխոյ փոխանակեցան:

Զայսու ժամանակաւ կալան Բիովտացիք մատնութեամբ զՊանակտոն ամրոց Աթենացւոց 'ի սահմանագլուխս երկրին: Եւ Կլէոն պահանորդս 'ի Տորոնէ նըստուցեալ՝ ամբարձաւ 'ի նաւս, և պատելով զԱթոսիւ եկն յԱմփիպոլիս:

Դ. Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ և Փէակս որդի Երասիստրատեայ արձակեալ յԱթենացւոց հրեշտակութեամբ՝ եկն կրկին նաւուք և երկոքումբք ընկերօք յԻտալիա և 'ի Սիկիլիա: Քանզի Լէոնտինացիք յետ թողլոյ Աթենացւոց զՍիկիլիա դաշամբք հաշտութեան, 'ի քաղաքացիս գրեալ զբազմութիւն եկաց, խորհէր ժողովուրդն նոր բաժանումն կալուածոց երկրին առնել: Զոր զգացեալ ճոխից՝ օգնութեամբ Սիրակուսացւոց, 'ի բաց զժողովուրդն հալածեցին, որք աստանդական ցանեալ ցրուեցան. և աւագանին դաշնաւորեալ ընդ Սիրակուսացիս, և ամայի զքաղաքն թողեալ՝ գնացին իրաւամբ քաղաքացւոց բնակել 'ի Սիրակուսա: Այլ սարջացեալ ապա ոմանց ընդ եղեալսն և կրկին թողեալ զՍիրակուսա, եկին կալան զՓոկէա՝ զմասն քաղաքին Լէոնտինացւոց, և զԲրիկիննիա զամրոց երկրին՝ յորում եկեալ յարեցան և բազումք 'ի վտարանդեաց անտի ժողովրդեան, և 'ի բարձուէ պարսպաց կռուէին ընդ թշնամիս իւրեանց ընդ Սիրակուսացիս: Զայս լուեալ Աթենացւոց յղեցին զՓէակս ջանալ հաւանեցուցանել զդաշնաւորս իւրեանց և զայլս 'ի Սիկելացւոց 'ի պատերազմ աշխարհախումբ ընդդէմ Սիրակուսացւոց, որոց ձեռն յանձին հարեալ էր 'ի նախիշխան տիրապետութիւն կղզւոյն, և ապրեցուցանել զժողովուրդն Լէոնտինացւոց: Հասեալ Փէակս և որսացաւ զմիտս Կամարինեցւոց և Ակրագանդացւոց յիւր խորհուրդ. այլ հակառակութիւն կրեալ 'ի Գելա, ոչ մատեաւ և առ այլս, 'ի միտ առեալ եթէ անհնար էր հաւանեցուցանել զնոսա, և ընդ երկիր Սիկելացւոց դարձ արար 'ի Կատանիա. զճանապարհայն եկն եմուտ 'ի Բրիկիննիա, և սրտապնդեալ զնոսա 'ի յոյս օգնականութեան՝ գնաց անտի նաւուք:

Ե. Ի նաւարկել իւրում 'ի Սիկիլիա և 'ի դարձին բանագնաց լինէր ընդ քաղաքս քաղաքս Իտալիոյ 'ի դաշն բարեկամութեան ընդ Աթենացիս, և հանդիպէր 'ի ճանապարհին Լոկրացւոց հալածական մերժելոց 'ի Մեսսինայ՝

խախտելով նոցա այլուր բնակութեամբ, որոց յերկպառակել Մեսսինիացւոց յառաջնին խռովս՝ յետ դաշնակցութեան Սիկիլիոյ, հրաւիրմամբ 'ի նոցանէ եկեալ առ ժամանակ մի կալեալ էր զՄեսսինէ: Հանդիպեալ սոցա Փէաքս յերթալն իւրում, ոչ մի ինչ արար նոցա չար, զի 'ի բանի էր ընդ Լոկրացիս 'ի հաւանութիւն դաշնակցութեան ընդ Աթենացիս: Սոքա միայն 'ի ժամանակի միաբանութեան Սիկելացւոց չէին դաշնաւորեալ ընդ Աթենացիս. և ոչ այժմ իսկ արդ զդոյն առնէին, եթէ չէր նոցա նեղեալ յերեսաց Իտոնէացւոց և Մելէացւոց սահմանորդ գաղթականաց իւրեանց, և այսպէս դարձ արար Փէաքս յԱթէնս:

Զ. Իսկ Կլէոն կանուխ իսկ մեկնեալ 'ի Տորոնեայ նաւէր յԱմփիպօլիս. եւ նա 'ի Հիոնեայ յարձակեալ առնուլ զՍտագիրա հատուած Անդրիացւոց, և չկարացեալ ստնանել ինչ նոցա, էառ զԳալեփոս զգաղթական Թասսիացւոց: Եւ արար հրեշտակս առ Պերդիկկաս, ըստ դաշանց նիզակակցութեան գալ առ նա զօրօք. յղեաց զայլս 'ի Թրակիա առ Պոլլէս արքայ Ոդոմանտաց՝ ածել գունդ բազմաձեռն 'ի վարձկանաց Թրակացւոց, և ինքն հանդարտեալ զտեղի կալաւ 'ի Հիոն: Ի լուր այսոցիկ ամենայնի բանակեալ նըստաւ և Բրասիդաս 'ի Կերդիւլիոն յանդիման զօրուն Աթենացւոց: Կերդիւլիոն է քաղաք Արգիլիացւոց 'ի վերայ բարձու յայսկոյս գետոյն, ոչինչ հեռի յԱմփիպօլեայ, ուստի երևի շուրջանակի բացակայութիւն վայրացն, մինչև չկարել Կլէոնի խլրտել ուրեք ծածկաբար զօրօք իւրովք, որում դէտ ակն կալեալ հնայր Բրասիդաս, որպէս զի արհամարհեալ Կլէոնի զսակաւութիւն իւրոցն՝ առաձեռն գընդաւն շարժեսցի 'ի վերայ Ամփիպօլեայ: Պատրաստէր միանգամայն Բրասիդաս հազար և հինգհարիւր վարձկան Թրակացի, ժողովէր և զամենայն Եդոնացիս զհետևաւոր և զայրուձի, յաւել և զՄիւրկինացւոց և զՔաղկիդացւոց զհազար մեկնակազէնս, թող և զօրս յԱմփիպօլիս էին. և զօր մնդաւոր ընդ ամենայն երկու հազար և երեքհարիւր

հեծելազն հելլենացի։ Ի սոցանէ Բրասիդաս զհազար հինգ-հարիւրսն միայն ունէր ընդ իւր 'ի Կերդիւլիոն, և զայլսն յԱմփիպօլիս թողոյր ընդ հրամանատարութեամբ Կղէարիդեայ։

Է. Կղէոն հանդարտեալ առ ժամանակ մի, ստիպեցաւ ապա ըստ ակնկալութեան Բրասիդայ գործել. զի 'ի քըրթմնջել զօրականին ընդ դանդաղկոտ յապաղումն նորա, և 'ի ձախողակի խորհուրդս իւրեանց զառաջնորդութենէ նորին, և թէ ընդդէմ որքանոյ արութեան քաջութեան և փորձոյ հմտութեան ունէր նա հանել զանգիտութիւն իւր և զանարի վատութիւն, և թէ անդուստ իսկ 'ի հայրենեաց յակամայս առ նա էին ժողովեալք։ Զայս ամենայն տրտունջ զօրուն զգացեալ Կղէոնի, առ 'ի բառնալոյ 'ի նոցանէ զտաղտուկ յամելոյ անխաղացք 'ի տեղւոջն, շարժեաց զբանակ զօրուն. և վարէր խորհրդով որպէս երբեմն 'ի Պիւլոս, յորում յաջողութիւն բաղդի ետ կարծել նմա զինքն լինել ինչ մի 'ի հնարս հանճարոյ։ Ոչ ումեք համարձակել խլրտել, ասէր, ընդդէմ իւր, 'ի տեսիլ միայն երկրին ամբարձեալ 'ի բլուրն՝ մնալ անդանօր առաւելագունի զօրութեան. և զայս ոչ 'ի զգուշութիւն աներկեանութեան՝ եթէ պատերազմել նմա հասանիցէ, այլ միահաղոյն զքաղաքաւն պատելով և առնուլ զայն զինու զօրութեամբ. վասն որոյ 'ի գալ իւրում նստոյց զզօրն 'ի վերայ քաջադէպ բլեր յանդիման Ամփիպօլեայ՝ հանդէպ ունելով զմօրուտն Ստրիմոնի, և զնիստ քաղաքին 'ի Թրակիոյ կուսէ. և համարէր ըստ կամի և անկռիւ իսկ ելանել մեկնել 'ի տեղւոջէն։ Եւ արդարև ոչ ոք 'ի պարսպին երևեցաւ, և ոչ ըստ դուռն քաղաքին ոք ել, այլ ամենայն փակեալ և ամրացեալ՝ մինչև անձին իսկ մեղադիր լինել Կղէոնի, զի չեբեր ընդ իւր պարսպամարտ կազմածս, որ մարթ էր նմա առնուլ զլքեալ զամայի քաղաքն։

Ը. Իբրև ետես Բրասիդաս զշարժումն Աթենացւոց՝ էջ և ինքն 'ի Կերդիւլիոնէ և եկն եմուտ յԱմփիպօլիս. ոչ ըստ

պարիսպն ելանէր 'ի վերայ Աթենացւոց, և ոչ 'ի դիմամարտ նոցուն զզօրսն շարժէր, զի չէր աներկեան ընդ զօրութիւն իւր. թէպէտ թուով բազմութեան հաւասար, այլ յարութեան մասին խոնարհագոյն քան զթշնամին, որ անխառն յօտարաց՝ յԱթենացւոց միայն և 'ի քաղաքաց Լեմնացւոց և յԻմբրացւոց կազմէր: Վասն որոյ և հնարիմացութեամբ իմն պատրաստէր Բրասիդաս 'ի կռիւ. զի եթէ ցուցանէր նա անպատրուակ զբազմութիւն իւրոցն, և զ'ի հարկէ նոցա զինուորութիւն, ոչ ինչ սատարել կարծէր 'ի յաղթութիւն, որպէս ծածկելովն և չնչաւակելով զնոսա յարհամարհութիւն: Եւ ընտրեալ 'ի սոցանէ արս հարիւր և յիսուն ասպարազէնս, եթող զայլսն առ Կղէարիդեայ. և խորհէր յառաջ քան զչուն Աթենացւոց յանկարծօրէն անկանել 'ի վերայ. զի 'ի գալ ժամանել ակնկալեալ նոցա օգնականութեան, ոչ ևս այնուհետև ակն ունէր նոյնօրինակ գամագիւտ խորհրդոց իւրոց լինել: Գումարեալ ապա զզօրն խօսեցաւ առ նոսա 'ի խրախոյս քաջալերութեան և 'ի յայտնութիւն խորհրդոց իւրոց այսպէս.

Թ. « Արք Պելոպոննեսացիք, շատ է ձեզ գիտել յորմէ աշխարհէ գամք մեք. քաջապինդ արութեամբ ազատ միշտ, Դորիացիքդ 'ի կռիւ գայք ընդ Յոնիացիս, զորովք սովորդ էք գերազանցել միշտ յաղթութեամբ: Եւ թէ իւ համարձակեցիմ 'ի մարտ ելանել, ցուցից ձեզ, զի մի ընդ տեսիլ սակաւաւոր և ոչ միագունդ զօրուս վհատեալ ջլատիցիք: Քանզի ընդ հենգն մեր և 'ի հեծուկս իմն համարիմ ելեալ թշնամւոյն 'ի բլուրն, անկասկած ամենևին եթէ իցէ որ իշխեսցէ ելանել ընդդէմ նոցա, և յանհոգս և անռազմ կան վայրապար 'ի տեսիլ երկրին: Եւ որ զայսպիսի վրիպակ հակառակորդին քաջիկ նկատեալ, և վստահ 'ի զօրութիւն իւր՝ ոչ յայտնապէս և ոչ օրինաւոր ճակատու, այլ ըստ ժամու պատեհի ձեռն 'ի կռիւ լինի, բազում ուրեք անվրէպ է նմա յաջողութիւն: Փառաւոր և գեղեցիկ հնարք 'ի խաբկանս թշնամւոյն, և 'ի շահ օգտի բարեկա-

մաց. վասն որոյ մինչդեռ յանպատրաստից՝ որպէս ինձ թուի, 'ի նահանջ՝ քան զտեղի առեալ մնալ խորհի նա, յանքոյթ անզգուշութեան նորա չտալով նմա պարապ անձին գալոյ, աճապարեալ իմովքս՝ եթէ կարեմ, անկայց արշաւակի 'ի վերայ 'ի բուն բանակի նորին։ Եւ դու, Կղէարիդաս, յորժամ տեսցես զիս վանել զնոսա, և որ հաւանագոյն է, խուճապեալս զնոսա տագնապաւ, առեալ զքոյսդ և զԱմփիպօլսեցիս և զդաշնաւորս, և յեղակարծում բացեալ զդրունս քաղաքիս և դիմեալ գայցես խառնել վաղվաղակի 'ի կռիւ։ Յոյս մեծ է ինձ ահիւ պակուցանել զնոսա. զի որ 'ի վերայ եկեալ անկանիցի թշնամին ահաւորագոյն է քան ընդ որում պատրաստական դէմ յանդիման կռուիցի. լեր դու այր զօրութեան, արժանի սպարտացի անուանդ։ Եւ դուք, ո՛վ նիզակակիցք, պնդեցարուք արիաբար զհետ նորա, և կալարուք յանձինս ձեր զայս բան. զի յաջողութիւն յաղթութեան 'ի կամս է, 'ի պատիւ անձին և 'ի հլու անսացողութեան հրամանաց զօրավարին։ Յարիանալդ ձեր յաւուր յայսմիկ՝ կալջիք ձեզ զազատութիւն և զանուն դաշնաւորի Լակեդեմոնացւոց. յորմէ եթէ վրիպիցիք, շատ իցէ ձեզ՝ միայն եթէ յաջողեսջիք չելանել ընդ մարդագերւոյն 'ի վաճառ և կամ 'ի մահ, կրել զանուն ստրկաց Աթենացւոց, որ դժնդակագոյն է ծառայութիւն քան զամենայն, զի և խափան ազատութեան այլոց Հելլենաց լինիցիք։ Հա՛պա, մի թուլացեալ մեղկանայցէք տեսեալ առաջի զմեծութիւն նահատակութեանդ. և ես ցուցից ձեզ օրինակաւս, թէ ոչ 'ի խորհուրդ միայն, այլ և անձամբ 'ի գործ բաւական եմ»։

Ժ. Իբրև կատարեաց Բրասիդաս զբանս իւր 'ի լսելիս զօրականին՝ պատրաստեցաւ յելս իւր յարձակումն, կարգեաց և զմնացորդ զօրուն ընդ Կղէարիդեայ առ Թրակեան կոչեցեալ դրամբ՝ ըստ յառաջագոյն տուելոյ հրամանին, փութել զհետ նորա 'ի ժամուն։ Եւ 'ի յայտնի լինել թէ իջանէր Բրասիդաս 'ի Կերդիւլիոնէ, և գայր 'ի

քաղաքն 'ի զօհ արտաքոյ մեհենին Աթենասայ, և 'ի գլուխ հանէր զպատրաստութիւնսն. զայս ամենայն 'ի հեռուստ նշմարեալ և ազդ առնէին Կլէոնի որ ելեալ էր 'ի տեսիլ երկրին, և երևէին 'ի ներքոյ դրրաց քաղաքին ոտք բազմութեան մարդկան և երիվարաց պատրաստելոց 'ի մերձաւոր արշաւանս: Ընդ այս լուր յառաջ մատեաւ Կլէոն, և ինքնին անձամբ ականատես իրացն՝ չկամէր 'ի կռիւ գալ մինչչև օգնական զօրուն ժամանեալ. և կարծելով պարապով մեկնել 'ի տեղւոջէն՝ հրամայեաց 'ի նահանջ. պատուէր ետ ձախում թևոյն՝ որում միայն հնարաւոր էր խաղալ 'ի Հիոն կոյս. և զի դանդաղել թուէր նմա չուն, ինքնին շրջան առեալ աջում թևին, հած շարժեաց զզօրն՝ զանպատսպար կողս բանակին [1] 'ի թշնամին կոյս: Տեսեալ Բրասիդայ ըղժամն բարեպատեհ 'ի խլրտել զօրուն Աթենացւոց, ձայն տուեալ առ իւրսն ասէ. «Զմեան մեզ արքդ այդոքիկ, 'ի շարժելոյ գեղարդանցն և գլխոց նոցա յայտ լինի այնպէս առնեն, թէ չեն սովոր մնալոյ թշնամւոյն. բացցին դրունքդ, և ելցուք անկանել արիաբար 'ի վերայ նոցա»: Եւ նա ընդ դրունսն՝ որ 'ի կողմանէ ցցապատնիշին, և ընդ առաջին դուռն երկայն պարսպին՝ որ յոտին կանգուն կայր յայնժամ, և կալաւ դէպ ուղիղ ճանապարհ 'ի քաջամուր վայրն, ուր ախոյեանք երևին արդ կանգնեալք: Եհաս նա առ Աթենացիս խռովեալս յանկարծ և 'ի խառնիխուռն չուն իւրեանց, և 'ի յանդուգն յարձակմանէ նորա պակուցեալս ահաբեկ. և անկեալ 'ի բուռն բանակի նոցա խորտակեալ վանեաց զնոսա: Եհաս և Կլէարիդաս ըստ ժամադրին ընդ Թրակեան դրունս, խոյացաւ առ թշնամին, և երկուստեք անակնկալ յարձակմամբն տագնապեալ խուճապեցոյց ըղնոսա: Ձախ թև զօրուն Աթենացւոց որ 'ի Հիոն կոյս յառաջէր, բեկեալ անդէն 'ի փախուստ ճեպէր. իսկ Բրասի-

[1] Անպատսպար կողմն՝ էր անվահան կողմն զօրուն, որոց ձախումն զվահանս կալեալ, աջակողմն անպատսպար մնայր:

դաս Թողեալ զնոսա, արար զիւր յարձակումն 'ի Թեւն ա-ջակողմեան. և յանկանելն իւրում խոց կարեվէր, բարձին զնա իւրքն զանխուլ յԱԹենացւոց: Տևէր տոկայր ընդ եր-կար աջ Թև զօրուն ԱԹենացւոց, և որ 'ի սկզբանէ անտի սասանեալ յերերի կայր Կլէոն՝ իբրև զոտս ամբարձեալ փախչէր, հանդիպեալ 'ի միոյ յասպարազէն զօրականէ Միւրկինիացւոյ սպանաւ: Բայց ասպարակիր զօրն ԱԹե-նացւոց իբրև փաղանգ ամուր 'ի միխմբեալ՝ երկիցս և երիցս վանեաց զյարձակումն Կլէարիդեայ, և յայնժամ միայն տե-ղի ետ, յորժամ այրուձին Միւրկինիացւոց և Քաղկիսա-ցւոց միագունդ ընդ ասպարաւորաց արգնընկէց 'ի նոսա լինէին: Եւ այսպէս 'ի մեծէ կոտորածէն դժուարաւ ապրե-ցաւ բանակն ԱԹենացւոց. և վայրավատեալ ընդ լերանցա-մէջս յերեսաց սրոյ հեծելազին Քաղկիսացւոց և ասպա-րաւոր զօրուն՝ երԹեալ անկաւ 'ի Հիոն: Եւ որք բարձին զԲրասիդաս 'ի խառնէ մարտին 'ի տեղի անքոյԹ, տարան զնա 'ի քաղաքն՝ դեռ ևս շունչն 'ի նմա. և գիտաց նա եԹէ իւրքն են յաղԹողք, և յետ սակաւուց վախճանեալ ել 'ի կենաց: Եւ զօրն դարձ արարեալ ընդ Կլէարիդեայ 'ի հա-լածելոյ զԹշնամին, դիակապուտ զանկեալսն արարին և նշան յաղԹուԹեան կանգնեցին:

ԺԱ. Յետ այնորիկ համայն իսկ մարտակից դաշնաւորք առհասարակ վառեալք զինու զարդու զհետ դագաղացն Բրասիդայ գնային, և Թաղեցին զայրն մեծաւ փառօք և երևելի հանդիսիւ 'ի քաղաքին՝ 'ի տեղւոջն ուրոյ հանդէպ կայ արդ հրապարակն: Ապա ժամանակաւ ցանկապատեալ Ամփիպօլսեցւոց զշիրիմ նորա՝ իբրև դիւցազինն զոհս զոհէին նմա, կարգեալ 'ի յիշատակ նորա խաղս և նուէրս տարե-կանս, և զգաղԹականն՝ իբրու հիմնադիր հեղինակի, 'ի նո-րա անուն կոչէցին. և քանդեալ զշինուածս Ագնոնեայ և զամենայն յիշատակս հիմնարկուԹեան ջնջեալ անհետ ա-րարին, զի 'ի Բրասիդաս զփրկիչ իւրեանց այնուհետև տե-սանէին. և առ ահի ԱԹենացւոց պինդ կալան ընդ Լակե-

դեմոնացիս զգաշն նիզակակցութեան. զի առ ատելութեան ընդդէմ Աթենացւոց՝ ոչ ևս այլ շահ կամ հաճութիւն ինչ 'ի պաշտօն Ագնոնեայ գտանէին, բայց թողին 'ի նոսա ըզդիակունս անկելոց իւրեանց: Եւ անկան յԱթենացւոց արք իբրև վեցհարիւր, և 'ի կողմանէ հակառակորդաց եւթն միայն. զի ոչ ըստ օրինի ճակատամարտ էր այն, այլ անակնկալ երկիւղի դէպ և արկած: Յետ բառնալոյ զդիակունսն դարձ արարին Աթենացիք ընդ ծով 'ի տուն, և որ ընդ Կղէարիդեայ էին, զհետ եղեն այնուհետև կազմել կարգել զիրս Ամփիպօլեայ:

ԺԲ. Զայսու ժամանակաւ 'ի կատարած ամարայնոյս Հռամփիաս, Աւտոքարիդաս և Եպիկիդիդաս Ղակեդեմոնացիք ածին յօգնականութիւն իննհարիւր զօրական ասպարաւոր 'ի սահմանածայրս Թրակիոյ: Հասեալ սոցա 'ի Հերակլիա Տրաքինացւոց ուղղեցին ինչ ինչ որ բարւոքն թուէր նոցա. որոց 'ի յամելն անդանօր, դէպ եղև պատերազմն Ամփիպօլեայ և վախճան ամարայնոյս:

ԺԳ. Ի գալ ձմերայնոյ չոգան Հռամփիաս և իւրքն մինչև 'ի Պիերիոն Թեսսալիոյ, և արգելեալք 'ի Թեսսալացւոց, զի Բրասիդաս առաջնորդ զօրուն մեռեալ էր, ոչ ևս 'ի դէպ համարեալ յետ պարտութեան և մեկնելոյ Աթենացւոց, դեգերել 'ի տեղւոջն՝ խորհեցան 'ի դարձ. զի և ինքեանք անբաւականք 'ի գլուխ տանելոյ զխորհեալսն 'ի Բրասիդայ, և զի վաղ իսկ գիտէին զՂակեդեմոնացիս մետ և յօժարս 'ի հաշտութիւն խաղաղութեան:

ԺԴ. Յետ պատերազմին Ամփիպօլեայ և մեկնելոյ Հռամփեայ 'ի Թեսսալիոյ՝ դէպ եղև երկոցունց իսկ կողմանց դըլալ 'ի կռուոյ և 'ի խաղաղութիւն մտանել: Աթենացիք զի հարեալք խորտակեցան 'ի Դելիոն, և յետ սակաւու միոյ և յԱմփիպօլիս, և ոչ ևս այլ յանձնապաստանք 'ի զօրութիւն իւրեանց որով մերժեցին երբեմն զառաջարկ հաշտութեան, կարծելով յաջողութեամբ ժամանակին վեհագոյնք լինել: Եւ խիթային իսկ զի ձախողութեամբ իւր-

եանց յանդգնեալ դաշնակիցք յաճախեցէն յապստամբութիւնս. և ապաշաւ մեծ էր նոցա, զի յետ իրաց Պիւլեայ չեկին մեծաշահ օգտիւք 'ի դաշինս խաղաղութեան:

Ի խաղաղութիւն յօժարէին և Լակեդեմոնացիք, տեսանելով զի արտաքոյ ակնկալութեան նոցա այլ կերպարան առնոյր պատերազմն. ոյք 'ի սկզբան այսպէս իմն հաշուէին, եթէ 'ի սակաւ ամս ասպատակութեամբ և աւարաւ վատթարեալ զզօրութիւն իշխանութեան Աթենացւոց խոնարհեցուցանել զնոսա. այլ իբրև ձախողեցան 'ի կղզւոջն, որպիսի ոչ բնաւ երբէք կրեալ արկածս Սպարտայ, և երկիր նոցա յաւար առաջի հինից Պիւլեայ և Կիւթերայ. և Իլոտք դասալիք խէթ էին միշտ մտաց նոցա' թէ գուցէ և որ 'ի ներքս յաշխարհին էն' ձեռն տալով արտաքոյ եղելոցն Իլոտաց' 'ի դէպ ժամու գլուխ ամբարձցեն հետամուտ նորութեանց լինել: Զի և երեսնամեայ դաշն հաշտութեան նոցա ընդ Արգիացիս յաւարտ էր, և ոչ ևս այլ երկրորդել զնոյն կամէին, բայց եթէ դարձուսցի 'ի նոսա երկիրն Կենուրիա. որով անհնարին թուէր նոցա պատերազմաւ լինել միանգամայն ընդ Արգիացիս և ընդ Աթենացիս: Եւ կասկածէին դարձեալ եթէ ոմանք 'ի քաղաքաց Պեղոպոնեսեայ յետս կացեալ 'ի նոցանէ' յԱրգիացիս յաւելուցուն, որպէս և եղեն իսկ:

ԺԵ. Խելամտութիւնքս այսոքիկ հաւանեցուցանել թուէին զերկոսին կողմանն 'ի հաշտութիւն խաղաղութեան, զԼակեդեմոնացիս մանաւանդ որք ցանկային փրկանաւորել զգերեալ կալանաւորս կղզւոյն, յորս էին գլխաւորք 'ի քաղաքացւոց Սպարտայ, և արենակից ազգականք նոցա: Անդստին 'ի սկզբանէ ընդ կալանաւորել նոցա և բանագնաց պատգամաւորութիւնք եղեն, այլ 'ի յաջողութեան յայնժամ Աթենացիք չկամեցան հաւասար պայմանօք 'ի հաշտութիւն գալ. իսկ իբրև խորտակեցան նոքա 'ի Դելիոն' զիջողագոյն տեսեալ զնոսա այնուհետև Լակեդեմոնացիք տարևոր դուլ զինուց արարին, առ պարապով

խորհելոյ միաբանութեամբ զերկարատև խաղաղութենէ:

ԾԶ. Եւ յետ պարտութեան Աթենացւոց յԱմփիպօլիս և մահուն Կլէոնի և Բրասիդայ՝ երկոցուն սոցա հակառակորդաց խաղաղութեան, սա 'ի պատճառս յաջողութեան զինուց և փառաց որ այսի, նա խորհրդով թէ 'ի լինել խաղաղութեան ոչ ևս այլ պատրուակեալ ծածկին եղերունքն, և ոչ դիւրալուրք լինիցին զրպարտութիւնք նորա, յարեան յայնժամ յերկոսին քաղաքսդ արք երկու հետամուտք առաջնորդութեան, միանգամայն և սիրողք խաղաղութեան, Պլիստոանաքս որդի Պաւսանեայ արքայի Լակեդեմոնացւոց, և Նիկիաս Նիկերատեան բարեբաղդագոյն 'ի զօրավարս ժամանակին: Կամէր Նիկիաս մինչ չև ձախողեալ յիմիք, ցորչափ 'ի պատուի էր՝ աներկեան գործել զբարեբաստութիւն իւր, և ընդ փոյթ անդորրացեալ 'ի վաստակոց հանգուցանել և զքաղաքացիս իւր. և թողուլ յետնոց զանուն փառաւոր՝ ոչ մի ինչ աղէտս պատճառելոյ իւրոցն, և յանվտանգ անդորրութեան զայնպիսի ինչ 'ի ձեռս բերել կարծելով բարիս, և անվտահ 'ի բաղդըն, 'ի ծոց խաղաղութեան զանկասկածաւոր խնդրէր հանգիստ: Եւ զի թշնամիք Պլիստոանաքսայ դժկամակէին ընդ դարձ նորա, և յամենայն իսկ վրիպակս ձախորդութեան իւրեանց զայն ստէպ յանդիման առնէին նոցա. խըղճալով իմն որպէս եթէ առ օրինազանց կոչոյն, զայդ ամենայն վիշտս կրիցեն Լակեդեմոնացիք: Եւ յաւելուլին իսկ ամբաստան զնմանէ լինել եթէ միաբանութեամբ ընդ եղբօր իւրում Արիստոկլեայ յորդորեալ էր նորա զհարցուկըն Դելփեայ տալ պատգամս պատգամահայց խնդրակաց[1] Լակեդեմոնացւոց, յաճախելոց ստէպ անդր 'ի նոյն հարցումն. «Զդիւցախառն զաւակ Արամազդայ կոչել յօտարութենէ յիւր ընիկ գաւառ, եթէ չկամին 'ի խոփ արծաթի

[1] Θεωρός. Նուիրակք էին սոքա առաքեալք 'ի քաղաքաց Յունաց 'ի խնդիր պատգամաց, կամ նուիրաբերք զոհից 'ի մեհեանս աշխարհին. քառեակք էին Թէօրէն 'ի հասարակաց գանձուէն սակեալք:

առօրէլ զերկիր[1] »: Եւ թէ յետ այնորիկ յորժամ իբրև կարծեօք կաշառակուրծ՝ թողեալ մեկնէր յԱտտիկեայ, փախստեայ 'ի Լիւկիոն եղև. և առ երկիւղի Լակեդեմոնացւոց բնակէր 'ի տան կիսով չափ 'ի սրբավայրս մեհենին Արամազդայ, և 'ի ձեռն նորին հարցկին յետ իննևտասն ամաց ետ կոչել զինքն, նովին զոհիւք և նովին պարուք, որով 'ի սկզբանէ անտի օրէնք էին 'ի Լակեդեմոն ամբառնալոյ զթագաւորս յաթոռ իշխանութեան:

ԺԷ. Տաղտկացեալ արքայորդւոյն 'ի տարապարտ քըրթմընջանաց աստի, խորհէր եթէ 'ի լինել խաղաղութեան ոչ մի ինչ ձախողակս այնուհետև կրելով Լակեդեմոնացւոց և զկալանաւորս կղզւոյն թափելով՝ հանգիցէ և ինքն 'ի լինելոյ նոցա նշաւակ դարովանաց, ցորչափ 'ի պատերազմի ամենայն արկածից պատճառք զիշխանօք ժողովրդեան արկանին, վասն որոյ և կաթոգին զհետ լինէր նա խաղաղութեան: Եւ 'ի մուտս անդ ձմերայնոյն սկիզբն եղեն բանագնացութեանց. և 'ի գարնանի չուինգն իմն սպառնալեաց ընթանայր ընդ քաղաքս 'ի կողմանէ Լակեդեմոնացւոց, իբրու եթէ 'ի հանդերձանս պատրաստութեան իցեն նոքա 'ի կառոյցս ամրոցաց ընդ տարածութիւն երկրին, առ 'ի դիւրանսացս և դիւրամէտս զԱթենացիս գործելոյ: Եւ իբրև բազմադիմի պահանջք 'ի ժողովս նոցա աստի և անտի լինէին, ուր ուրեմն ապա 'ի հաւանութիւն եկին, դարձուցանելով փոխանակաւ զնորոգ աշխարհակալութիւնս՝ առնել խաղաղութիւն. սակայն անդարձ կալցեն Աթենացիք զՆիսէ, քանզի 'ի խնդրել նոցուն զՊղատէա՝ ասացեալ էր Թեբացւոց, ոչ բռնութեամբ զինուց և ոչ մատնութեամբ, այլ ինքնակամ յօժարութեամբ բնակչաց կալեալ էր նոցա զքաղաքն, 'ի նոյն իրաւունս ապա և Աթենացիք պնդէին ունել զՆիսէ: Եւ 'ի գումարել Լակեդեմոնացւոց զդաշնաւորս, 'ի միաձայնել նոցա ամենեցուն՝ բաց 'ի Բիով-

[1] Բանիւս սով սպառնայր պատգամս:

տացւոյն, Կորնթացւոց, Ելէացւոց և Մեգերացւոց, որք չէին հաճ ընդ իրսն, կարգեցան պայմանք հաշտութեան, զոհս քաւութեան և երդմունս արարեալ յուրեանս Աթենացիք և Լակեդեմոնացիք՝ օրինակ զայս.

ԺԲ. Դաշինս խաղաղութեան կռեցին Աթենացիք և Լակեդեմոնացիք և նոցուն նիզակակիցք ըստ օրինակիս ըստ այսմիկ, յորոց 'ի պահպանութիւն երդուան միաբան քաղաք իւրաքանչիւր:

Ազատութիւն իցէ ամենեցուն ըստ հայրենաւանդ կարգաց երթևեկելոյ 'ի մեհեանս հասարակաց, զոհս զոհել, իղձս հարցանել և 'ի խնդիրս պատգամաց գալ հրեշտակութեամբ ընդ ծով և ընդ ցամաք համարձակ աներկիւղ:

Սրբավայր մեհենին և տաճարն Արամազդայ և Ապոլլոնի 'ի Դելփիս, և երկիր նոցա ազատ 'ի հարկաց ինքնօրէն՝ ինքնիշխան և ընիկ դատաւորօք վարեսցին, որպէս ընկալան 'ի նախնեաց անտի:

Եւ եղիցի խաղաղութիւն զամս յիսուն 'ի մէջ Աթենացւոց և դաշնաւորաց նոցին, և 'ի մէջ Լակեդեմոնացւոց և նոցուն դաշնաւորաց աննենգ և անվնաս ընդ ծով և ընդ ցամաք:

Մի լիցի զէն առնուլ թշնամական մտօք ոչ Լակեդեմոնացւոց և ոչ դաշնաւորաց նոցա ընդդէմ Աթենացւոց և նոցուն դաշնաւորաց. դարձեալ և ոչ Աթենացւոց և կամ դաշնաւորաց նոցա ընդդէմ Լակեդեմոնացւոց և նոցին դաշնաւորաց. և ոչ որով և իցէ պատճառանօք, կամ հնարիւք նենգութեամբ:

Եթէ դէպ լիցի երբեք ծագել 'ի նոսա վէճից և խռնդրոց, յիրաւունս արդարութեան դիմեսցեն և յերդմունս ըստ ուխտի դաշանց:

Դարձուսցեն Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա զԱմփիպոլիս յԱթենացիս: Եւ 'ի քաղաքացն զորս դարձուսցեն Լակեդեմոնացիք Աթենացւոց, որքն իցէ բնակչաց

ըստ կամի ազատաբար ելեալ մեկնել ընչիւք իւրեանց և ստացուածովք ։ Քաղաքանւոյս յինքնօրէն վարչութեան վայելելով՝ հատուցանել զօրինադրեալ տուրս, զոր սովորն էին 'ի ժամանակէ անտի Արիստիդեայ հատուցանել։ Մի լիցի օրէն Աթենացւոց զէն առնուլ ընդդէմ սոցա և ոչ դաշնաւորաց սոցուն՝ 'ի հարկել նոցին յետ կռելոյ դաշանց հաշտութեան զօրինաւոր հարկն։ Եւ են քաղաքս այսոքիկ Արգիլոս, Ստագիրաս, Ականթոս, Սկոլոս, Ոլիւնթոս և Սպարտալոս, որք ոչ ընդ Լակեդեմոնացիս և ոչ ընդ Աթենացիս դաշինս նիզակակցութեան կռեցին։ Բայց եթէ 'ի յաջողել Աթենացւոց հաւանեցուցանել զքաղաքանին 'ի դաշնաւորութիւն, օրէն լիցի նոցա ինքնակամ հաճութեամբ զայդ առնել։

Մեկիւբեռնացիք, Սանէացիք և Սինգէացիք 'ի բնիկ իւրեանց քաղաքս նստցին, որպէս և Ոլիւնթացիք և Ականթացիք։

Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա 'ի բաց տացեն Աթենացւոց զՊանակտոն· և Աթենացիք դարձուսցեն Լակեդեմոնացւոց զԿորիփասիոն, զԿիւթերա, զՄեթոն, զՊտելէոս և զԱտալանտէ, և զերեթափ արասցեն զամենայն այր լակեդեմոնացի, զորս 'ի բանտս հասարակաց յԱթէնս և կամ այլուր 'ի սահմանս տէրութեան իւրեանց կալանաւորս ունիցին· և զորս 'ի Սկիոն պաշարեալ Պելոպոնեսացիս ազատս 'ի բաց արձակեսցեն· և որ միանգամ այլ դաշնաւորք իցեն Լակեդեմոնացւոց 'ի Սկիոն, և զորս Բրասիդայ ածեալ անդր· համառօտ ասել· և որք 'ի դաշնաւորաց Լակեդեմոնացւոց յԱթէնս, և կամ այլուր յերկրի տէրութեան նոցա բանտարկեալ իցեն հրապարակաւ։ Նոյնպէս և Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա՝ զորս միանգամ յԱթենացւոց և կամ 'ի դաշնաւորաց նոցա ունիցին, արձակեսցեն ազատս։

Իսկ վասն Սկիոնացւոց, Տորոնեցւոց, Սերմիլիացւոց և այլոց ժողովրդոց որք ընդ տէրութեամբ Աթենացւոց

են, իշխանութիւն իցէ նոցա որպէս և կամք իցէ հրամայել:

Եւ ըստ քաղաքաց քաղաքաց երդմունս արասցեն Աթենացիք Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցա, և քաղաք իւրաքանչիւր զհայրենաւանդ երդումն սրբազան տասցեն իւերաց: Եւ ձև օրինակի երդմանս իցէ այս.

« Կացից մնացից հաւատարիմ պայմանաց և դաշանց խաղաղութեան ըստ արդարութեան աննենգ »: Զնոյն երդումն և Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա արասցեն Աթենացւոց:

Եւ երկոքին իսկ կողմանք ամի ամի նորոգեսցեն զերդմունս: Եւ կոթողս յիշատակի կանգնեսցեն յՈլիմպիա, 'ի Դելփիս, 'ի Նեղուցն Կորնթեայ, յԱթէնս 'ի միջնաբերդին, և 'ի Լակեդեմոն յԱմիկլէոն:

Եթէ ինչ մի մոռացեալ լիցի անյիշատակ յերկոցունց իսկ կողմանց, կամ խնդիր ինչ յուզեսցի, օրէն իցէ 'ի մէջ մատուցանել և հասարակաց հաւանութեամբ Լակեդեմոնացւոց և Աթենացւոց ըստ օրինի սահմանել:

ԺԹ. Եւ կնքեցան պայմանք դաշանցս առ իշխանութեամբ Պլիստոլայ Պարետի 'ի չորրորդում աւուր վերջնոյ տասնեկի ամսեանն Արտեմիսեայ: Եւ յԱթէնս յիշխանապետութեան Ալկէոսի յամսեանն Ելափէպոլիոն 'ի վեցերրորդն աւուր վերջնոյ տասնեկին: Եւ որք երդմունս տուեալ նուէրս քաւութեան մատուցին 'ի Լակեդեմոնացւոց կողմանէ՝ Պլիստոլաս, Դամագետոս, Քիոնիս, Մետագենէս, Ականթոս, Դայիթոս, Իսքագորաս, Փիլոքարիդաս, Զեւքսիդաս, Անտիպպոս, Տելլիս, Ալկինիդաս, Եմպէդիաս, Մենաս, Լափիլոս: Իսկ 'ի կողմանէ Աթենացւոց՝ Լամպոն, Իսթմիոնիկոս, Նիկիաս, Լաքէս, Եւթիդեմոս, Պրոկլէս, Պիւթոդորոս, Ագնոն, Միւրտիլոս, Թրասիկլէս, Թէագենէս, Արիստոկրատ, Յոլկիոս, Տիմոկրատէս, Լէոն, Լամաքոս և Դեմոսթենէս:

Ի. Եւ կռեցան դաշինքս խաղաղութեան 'ի վերջ կոյս ձմերայնոյն 'ի սկիզբն գարնան, յետ քաղաքային տօնա-

կան խմբութեանց Դիոնիսեայ. յորմէ հետէ յառաջնոյ անտի յարշաւանէն յԱտտիկէ և 'ի սկզբանէ պատերազմին անցեալ էին ամք տասն և աւուրք սակաւք: Պարտ է միտ դնել կարգի ժամանակաց, և ոչ յատենակալութենէ իշխանաց այսր կամ այնր քաղաքի, և կամ յանուանէ բարձու պաշտաման նոցա և պատուոյ նշանակել զարժանաւոր դէպս՝ որ չէ ամենևին ճշգրիտ. զի կարէ 'ի սկիզբն կամ 'ի վերջ կոյս, կամ յորում և է մասին իշխանութեան նոցա հանդիպել: Իսկ եթէ որպէս ես արարի, ըստ ամառայնոյ և ըստ ձմերայնոյ հաշուեսցէ ոք, յերկուց անտի եղանակաց զողջոյն ամն բովանդակեսցէ. որով առաջին այս պատերազմ 'ի տասն ամարունս և 'ի նոյնչափ ձմերունս տևեաց:

ԻԱ. Լակեդեմոնացիք՝ որոց վիճակեցաւ կանխել 'ի բաց տալ զորս պատերազմաւ ունէին, արձակեցին ազատ զգերիսն, և յղեցին դեսպանս 'ի քաղաքս Թրակիոյ զԻսքագորաս, զՄենաս և զՓիլոքարիդաս, պատուիրանաւ առ Կլէարիդաս դարձուցանել զԱմփիպօլիս յԱթենացիս. հրաման տալ և այլոց ընդունել զպայմանս խաղաղութեան, որպէս և սահմանեալ էր վասն միոյ միոյ 'ի նոցանէ: Սոքա անսաստեցին չանսալ հրամանին՝ զոր չհամարէին ինքեանց պատշաճաւոր, և Կլէարիդաս 'ի շնորհունս Քաղկիսացւոց ոչ դարձոյց զքաղաքն Ամփիպօլիս, զի չկարեմ, ասէր, ընդդէմ կամաց քաղաքացւոց տալ զայն 'ի ձեռս. և վաղվաղակի դարձաւ 'ի Լակեդեմոն ընդ դեսպանսն 'ի ջատագովութիւն անձին իւրոյ, եթէ յանկարծ ամբաստան զնմանէ լինիցի Իսքագորաս յանհնազանդութիւն անհաւանութեան, և կամէր իսկ գիտել, եթէ մարթ էր արդեօք փոփոխութիւնս ինչ 'ի դաշինսն մուծանել: Այլ իբրև վաւերացեալ եգիտ զամենայն, փութացաւ անյապաղ ուրոյն մանաւանդ հրամանաւ Լակեդեմոնացւոց դարձուցանել յԱթենացիս զքաղաքն, ապա թէ ոչ՝ 'ի բաց ածել անտի անյապաղ զամենայն այր պելոպոնեսացի:

ԻԲ. Եւ զի դէպ՝ եղև գտանել դաշնաւորաց 'ի Լակեդեմոն, առաջի արարաւ նոցա՝ որոց չև էր յայս ուխտ դաշնակցութեան մտեալ, որք և նովին պատճառաւ՝ որով և յառաջնում անդ նուագի մերժեալ էր, ասացին չընդունել և զայս, եթէ ոչ արդարագոյն կարգեսցին պայմանք: Եւ ոչ կարելով Լակեդեմոնացիք հաւանեցուցանել զնոսա՝ արձակեցին 'ի բաց, և ինքեանք ուրոյն առանձին կռեցին դաշինս ընդ Աթենացիս, զի տեսին եթէ չէր հնար նորոգել զհաշտութիւն խաղաղութեան ընդ Արգիացիս. որովհետև 'ի պատգամաւորել առ նոսա Ամպելիդայ և Լիքասայ՝ մերժեալ էր նոցա զառաջարկս խաղաղութեան, զի առանց Աթենացւոց ոչինչ ահարկուս զԼակեդեմոնացիս համարէին. և զի այլք 'ի Պելոպոնեսացւոց լռեալ հանդարտէին. և եթէ հնար լինէր շարժել զնոսա՝ զկողմն Աթենացւոց առաւել ընտրէին: Եւ 'ի ժամանակի անդ 'ի Լակեդեմոն եղեալ դեսպանացն Աթենացւոց, և բանս արկեալ 'ի միջի երկուստեք և հաւանեցան 'ի նոյն խորհուրդս. հաստատեալ կնքեցան երդմամբք և եղև դաշնակցութիւն նիզակակցութեան օրինակ զայս:

ԻԳ. «Դաշնաւորք նիզակակիցք եղիցին Լակեդեմոնացիք զամս յիսուն: Եթէ մտցէ թշնամին յերկիր տէրութեան Լակեդեմոնացւոց 'ի վնաս նոցին, 'ի թիկունս հասցեն նոցա Աթենացիք հզօր ձեռամբ. իսկ եթէ յապականութիւն եդեալ զերկիրն մեկնեսցին, ժողովուրդն այն և քաղաք 'ի թշնամիս համարեսցի և Լակեդեմոնացւոց և Աթենացւոց. և յերկոցունց իսկ 'ի նոցանէ միանգամայն լուծցեն զվրէժ պատուհասին. և միաբանութեան նոցուն վախճան և պատերազմիս լինիցի: Պահեսցին պայմանքս արդարութեամբ, մտադիւր և աննենգ կամօք:

Իսկ եթէ մտցէ թշնամին յերկիր տէրութեան Աթենացւոց վնասու պատճառաւ, 'ի թիկունս նոցին փութասցին Լակեդեմոնացիք զինու զօրութեամբ. բայց եթէ աղարտ վարեալ զերկիրն մեկնեսցի թշնամին, քաղաքն այն

և ժողովուրդ միապէս և Լակեդեմոնացւոց և Աթենացւոց ընդ Թշնամիս դրեսցի, և յերկոցունց իսկ պատերազմաւ վանեսցի, և միաբանութեամբ միայն կարասցեն վախճան տալ պատերազմին: Եւ պահեսցին պայմանքս արդարութեամբ, մտադիւր և աննենգ կամօք:

Իսկ եթէ ստրուկք 'ի ծառայապստամբ կռիւ յանդըդնեսցին, փութասցին Աթենացիք ձեռն տալ Լակեդեմոնացւոց՝ ըստ կարի զօրու մեծաւ: Որպէս յառաջ քան զայս կռեալ դաշինքն՝ վաւերասցին և պայմանքս երդմամբք երկոցունց կողմանց: Եւ նորոգեսցին երդմունքս այսոքիկ ամի ամի, Լակեդեմոնացւոց յԱթէնս երթալով 'ի Դիոնիսեան տօնս, և Աթենացւոց՝ 'ի Լակեդեմոն 'ի Յակինթեանս: Եւ ժողովուրդքս իւրաքանչիւր կանգնեսցեն սիւնս. սոքա 'ի Լակեդեմոն մերձ 'ի մեհեան Ապոլոնի յԱմիկլէոն, և նոքա յԱթէնս 'ի միջնաբերդին առ մեհենաւն Աթենասայ:

Եւ եթէ յետ այդց բանից խորհուրդ 'ի միտս անկցի Լակեդեմոնացւոց և կամ Աթենացւոց՝ յաւելուլ ինչ 'ի պայմանս դաշանցն կամ յապաւել այտի, օրէն իցէ կարգել զայդ հասարակ հաւանութեամբ:

ԻԴ. Եւ ետուն երդումն հաւատարմութեան 'ի կողմանէ Լակեդեմոնացւոց Պլիստոանաքս, Ագիս, Պլիստոլաս, Դամագետոս, Քիոնիս, Մետագենէս, Ականթոս, Դայիթոս, Իսքագորաս, Փիլոքարիդաս, Զեւքսիդաս, Անտիպպոս, Ալկինիդաս, Տելլիս, Եմպէդիաս, Մենաս և Լափիլոս:

Իսկ յԱթենացւոց՝ Լամպոն, Իսթմիոնիկոս, Լաքէս, Նիկիաս, Եւթիդեմոս, Պրոկլէս, Պիւթոդորոս, Ագնոն, Միւրտիլոս, Թրասիկլէս, Թէագենէս, Արիստոկրատ, Յոլկիոս, Տիմոկրատէս, Լէոն, Լամաքոս և Դեմոսթենէս:

Եւ դաշնակցութիւնս այս եղև ոչ բազմօք ինչ զկնի դլալոյ զինուց՝ Աթենացիք ետուն Լակեդեմոնացւոց զգերեալս 'ի կղզւոջն, և սկիզբն եղև ամարայնոյ մետասաներորդի ամին: Այս են ամք տասն առաջնոյ տասնամեայ անդուլ պատերազմին պատմագրելոյ 'ի մէնջ:

ԻԵ. Յետ լուելոյ մարտից պատերազմաց և կուելոյ դաշանց նիզակակցութեան 'ի մէջ Լակեդեմոնացւոց և Աթենացւոց, զկնի տասնամեայ պատերազմին, առ Պարեաւ Պլիստոլաւ 'ի Լակեդեմոն, և առ իշխանապետաւն Ալկէոսիւ յԱթէնս, հաստատեցաւ յայնժամ խաղաղութիւն և 'ի մէջ դաշնաւոր ժողովրդոց 'ի նոյն միաբանութիւն հաւանելոց: Իսկ Կորնթացիք և ոմանք 'ի քաղաքաց Պելոպոնեսացւոց խլրտէին խախտել զայդ, և հետ ընդ հետ նորանոր վէճս և հակառակութիւնս յարուցանէին ընդդէմ Լակեդեմոնացւոց: Զի և Լակեդեմոնացիք ինքնին յետ այնորիկ՝ 'ի թերանալ Աթենացւոց յիրս իրս 'ի կատարումն պայմանաց, ոչ ևս միամտէին 'ի նոսա: Ընդ ամս վեց և ընդ ամիսս տասն դադարեցին ասպատակութիւնք և փոխանակաւ արշաւանք յերկիր իրերաց. իսկ արտաքոյ՝ 'ի ժամանակս յայսոսիկ վէր 'ի վերոյ խաղաղութեան՝ վնասս ծանունս այր ընկերին հասուցանէր, մինչև եկին ապա և 'ի լուծումն խաղաղութեան յետ տասնամեայ հաշտութեան, և դարձան վերստին 'ի յայտնի թշնամութիւն:

ԻԶ. Եւ առեալ բովանդակեաց զայս ամենայն անցս պատերազմաց նոյն ինքն Թուկիդիդէս աթենացի ըստ կարգի պատմութեան իւրում, որպէս և դէպ եղեն յամարանի և 'ի ձմերանի, մինչև 'ի ժամանակս յորում Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա ետուն զվերջին հարուած տիրապետութեան Աթենացւոց, և կալան զերկայն պարիսպն և զՊիրէոն. և տևեաց ցայնվայր անդուլ պատերազմն զամս քսան և եօթն: Եւ որ զդուլ զինուց ոչ կարգէ 'ի չարս ամաց պատերազմին՝ մեծապէս վրիպի այնպիսին: Զի եթէ միտ դիցէ ոք պատմութեան՝ որպէս և կարգեցաւն, հաւանեսցի արդարև չհաշուել ընդ ժամանակս խաղաղութեան զդուլ զինուց, յորում ոչ ըստ կարգի դաշանց գերեթափ և տուրևառ փոփոխութիւնք քաղաքաց եղեն: Բայց յայսցանէ և 'ի պատերազմին Մանտինեայ և Եպիդաւրեայ և այլ ուրէք ուրէք յերկոցունց իսկ կողմանց,

անիրաւութիւնք և զրկանք առ իրարս ոչ պակասէին. յորում և դաշնաւորք Թրակիոյ ոչ դադարեցան 'ի Թշնամութենէ, և Բիովտացիք տասնօրեայ միայն աւուրբք դուլ զինուց արարին: Այնպէս զի ըստ կարգի ժամանակաց 'ի համար արկեալ ոք զառաջին տասնամեայ պատերազմն, և յետ այնորիկ զվէր 'ի վերոյ կասկածաւոր դուլ զինուց և ըզկրկին յաջորդել ապա պատերազմին, գտցէ գոյնչափ ամս, զօրս և եդ և զաւուրս ինչ. և որք 'ի պատգամաց ըզգէպս հաւաստել ջանայցեն, յայսմ ապաքէն ճշմարտեալ արդարանան, զի 'ի սկզբանէ անտի պատերազմին մինչև ցվախճան յիշեմ յեղյեղել բազմաց, եթէ զերիս իննեակս ամաց տևեսցէ պատերազմս: Եւ կեցի ես ընդ բովանդակ շարս ամաց պատերազմացս այսոցիկ 'ի հասակի յորում յուժի էր մտացս առոյգ, և միտ եդեալ ճշդիւ գտակաւ 'ի վերայ հասի համայն իսկ անցիցն անցելոց: Դէպ եղև ինձ տարագիր վտարանդի կեալ 'ի հայրենեաց իմոց զամս քսան զկնի զօրավարութեանս յԱմփիպօլիս, և անձամբ մօտ ականատես լինել եղելոցն աստի և անտի. մանաւանդ որ 'ի Պելոպոնէս լինէին առ վտարանդութեամբս պարապով քըննեալ ճշգրտեցի: Արդ որ յետ տասնամեայ պատերազմին և լուծանելոյ դաշանց հաշտութեան յաջորդէյին վէճք և գժտութիւնք, որով և կուռ զմիմեանց կնի պատերազմունք, զայն ամենայն առեալ պատմագրեցից աստանօր:

ԻԷ. Յետ յիսնամեայ կռելոյ դաշանց խաղաղութեան և մարտակից նիզակակցութեան, իբրև մեկնեցան 'ի Լակեդեմոնեայ դեսպանք Պելոպոնեսացւոց, զարտուղեալք 'ի ճանապարհէն հրեշտակք Կորնթացւոց չոգան նախ յԱրգոս, բանս արկին առաջի ոմանց յաւագանւոյն Արգիացւոց, եթէ որովհետև Լակեդեմոնացիք ոչ 'ի բարին, այլ 'ի ծառայութիւն Պելոպոնեսեայ դաշն խաղաղութեան ընդ Աթենացիս՝ ընդ ոսոխս Թշնամիս ցայնժամ կռեն. պարտք են արդ Արգիացւոց խորհել թէ իւ և զիարդ ապրեցուցանել իցէ զՊելոպոնէս, և օրինագրել վճռով թէ որ

միանգամ 'ի քաղաքաց Հելլենաց, որ յինքնօրէն և որ 'ի հաւասար[1] ազատ վարչութեան իցէ և կամեսցի դաշնակցել ընդ Արգիացիս 'ի մարտակից նիզակակցութիւն, անարգել օրէն իցէ նոցա առնել ըստ կամս. և կարգել առ այս զոմանս 'ի քաղաքայնոց լիուլի իշխանութեամբ, և մի 'ի սկզբան անդ հրապարակել զամենայն յունկն ժողովրդեան, զորս չկարեմքն հաւատալ ամբոխին. և յաւելուլն ասել եթէ բազումք 'ի քաղաքաց առ ատելութեան Լակեդեմոնացւոց՝ եկեալ 'ի սոյն դաշնակցութիւն յարեսցին: Զայս այսպէս ծանուցեալ Կորնթացւոց՝ մեկնեցան:

ԻԸ. Եւ որք յԱրգիացւոց լուան զբանն՝ 'ի վեր հանեին զայն աւագանւոյն և ժողովրդեան. և սահմանեցին նոքա վճռով, և կարգեցին ընտրութեամբ զարս երկոտասան, ընդ որս օրէն լիցի Հելլենաց խօսել և յարմարել զդաշնակցութիւն, բաց յԱթենացւոց և 'ի Լակեդեմոնացւոց, զի առանց գիտութեան և կամաց ժողովրդեան չմարթէր 'ի դաշնաւորութիւն գալ ընդ նոսա: Մտադիւր ընկալան զայս Արգիացիք մօտ առ դուրս տեսանելով նոցա պատերազմ ընդ Լակեդեմոնացիս, քանզի մերձ 'ի վախճան էր պայմանեալ ժամանակ դաշին խաղաղութեան ընդ նոսա, և զի ակն ունէին գլուխ և առաջնորդ կալ Պելոպոնեսացւոց: Եւ արդարև համբաւ չար ընթանայր 'ի ժամանակին յայնմիկ զԼակեդեմոնացւոց, և վասն ձախող արկածից իւրեանց արհամարհեալ լինէին. իսկ Արգիացիք յամենայնի յաջողեալ, զի ոչ ձեռնամուխ յԱտտիկեան պատերազմ եղեն, և ընդ երկոսին ժողովրդեան 'ի խաղաղութեան կալով՝ մեծապէս շահեցան: Եւ այսպէս ուրեմն ընկալան Արգիացիք ոյք միանգամ 'ի Հելլենաց 'ի նիզակակցութիւն նոցուն յօժարեցան:

ԻԹ. Մանտինեացիք նախ և դաշնաւորք նոցին առ եր-

[1] Ինքնօրէնք՝ իսպառ ազատք 'ի վարչութեան, զերծք 'ի տուրց հարկաց, և յոր և է ձեռնարձակութենէ օտարին: Իսկ հաւասար վարչութիւն, ամենայն առն քաղաքացւոյ 'ի նոյն իրաւունս վայելելով, այն է հաւասար առաջի օրինաց հասարակաց:

կիւղի Լակեդեմոնացւոց եկեալ մտին 'ի դաշնակցութիւնս, զի նուաճեալ էր Մանտինեացւոց զմասն մի Արկադիոյ՝ մինչդեռ պատերազմաւ էին Լակեդեմոնացիք ընդ Աթենացիս, և խիթային չհանդարտել Լակեդեմոնացւոց 'ի պարապել յերեսաց պատերազմաց՝ Թափելոյ զզաւառն 'ի նոցանէ. վասն որոյ և յօժարագոյնս դիմեցին 'ի բարեկամութիւն Արգիացւոց, որպէս 'ի պետութիւն հզօր և ոխերիմ միշտ Լակեդեմոնացւոց, և նման ինքեանց 'ի ռամկավար. ընկերհաշտութեան. 'ի լսել և այլոց Պելոպոնեսացւոց թէ յետս կացին Մանտինեացիք 'ի Լակեդեմոնացւոց՝ բարձրացաւ տրտունջ նոցա, զի և ինքեանց արժան էր 'ի սոյն կանխել, և խոհականագոյնս զնոսա յայդ գործ քան զայլս զամենեսեան համարէին. զչարէին ևս ընդդէմ Լակեդեմոնացւոց՝ թող զայլս, և վասն յաւելուածոյ բանին 'ի դաշնագիր պայմանս Ատտիկեայ՝ թէ օրէն լիցի նոցա յաւելուլ ինչ կամ բառնալ՝ որպէս և զիարդ հաճոյ թուեսցի երկուց պետութեանց Աթենացւոց և Լակեդեմոնացւոց: Պայմանս այս յաւելեալ 'ի դաշինսն խռովեցուցանէր զՊելոպոնեսացիս, և 'ի խէթ էր մտաց նոցա, եթէ գուցէ միաբանեալ նոցա ընդ Աթենացիս ծառայեցուցանել զնոսա կամեսցին. զի հասարակաց դաշնաւորաց հաւասար իրաւունք էին փոփոխութիւն 'ի պայմանսն գործելոյ: Այսպէս առ կարծիս երկիւղին արարին բազումք առանձին ուրոյն ուխտադիր նիզակակցութիւնս ընդ Արգիացիս:

Լ. Իբրև լու եղև 'ի Լակեդեմոն յոյզ շփոթի ազգացն Պելոպոնեսացւոց, և թէ Կորնթացիք են առաջնորդք 'ի սոյն և պատրաստք 'ի դաշնակցութիւն ընդ Արգիացիս, արձակեցին հրեշտակս 'ի Կորնթոս առ 'ի զառաջս առնլոյ իրացն: Գանգատ կալան սոքա զԿորնթացւոց իբրև զպատճառաց խռովութեանս, խորհրդով սարտուցեալ 'ի նոցանէ երթեալ յարելոյ ընդ Արգիացիս: Ուխտադրուժս զնոսա ասէին և անիրաւս 'ի մերժել զդաշն խաղաղութեան Աթենացւոց. որ ընդունելիս ասէր լինել և վաւերս, զոր միան-

գամ միաբան հաւանութեամբ վճռեսցէ բազմութիւն դաշնաւորաց, բայց 'ի դիպաց խափանարարաց առ 'ի դից և 'ի դիւցազանց: Այսոցիկ ամենայնի պատասխանի արարին Կորնթացիք առաջի նոցուն իսկ դաշնաւորաց, որոց չէր ընկալեալ զպայմանս խաղաղութեան, զորս և 'ի նոյն յառաջագոյն էին ժողովեալ. սակայն ոչինչ յայտնագոյնս զզրկանաց նոցա բողոքելով. և զի զՍոլլիոն ոչ դարձուցին առ նոսա Աթենացիք և ոչ զԱնակտորիոն, և ոչ զոր ինչ այլ 'ի վնաս նոցին էր գործեալ, այլ պատճառէին միայն չկարել մատնու Թրակացւոց լինել, որոց յառաջնմէ անտի ապստամբութեան ընդ Պոտիդէացւոց, երդմունս տուեալ էր. թող և զերկրորդ երդումն: Ոչ անցանեմք, ասեն, զուխտիւք մերովք՝ զոր ընդ դաշնաւորս մեր արարաք, և մտանել 'ի դաշն խաղաղութեան ընդ Աթենացիս. զի 'ի հաւատ աստուածոց երդուեալ նոցուն, յերդմունս մեր մեղանչեմք եթէ մատնեմք զնոսա, զի 'ի դաշինս ասացեալ է. Ճա՛տ է, զի չիցէ ինչ արգել առ 'ի դից և 'ի դիւցազանց որ արդ թուի այս մեզ արգել յաստուածոց: Եւ զայս այսչափ վասն նախնոյ երդման ասացեալ. իսկ վասն դաշնաւորելոյն ընդ Արգիացիս, խորհելով ընդ բարեկամս մեր, ասեն, արասցուք զարժանն. և դարձան դեսպանքն Լակեդեմոնացւոց ձեռնունայն յետս: Էին յայնժամ 'ի Կորնթոս և հրեշտակք Արգիացւոց յորդորելով զԿորնթացիս մի յապաղել մտանել յառաջիկայ իւրեանց դաշնակցութիւն. հրաւիրէին զնոսա և Կորնթացիք գալ 'ի ժողով՝ որ 'ի մօտ աւուրս ունէր գումարել:

ԼԱ. Եկն ընդ հուպ և հրեշտակութիւն Ելէացւոց 'ի Կորնթոս, որք դաշինս ընդ Կորնթացիս դնելով անցին յԱրգոս ըստ կանուխ հրահանգացն առելոց, արարեալ և անդր դաշնակցութիւն ընդ Արգիացիս, որովհետև 'ի խռովս էին սոքա ընդ Լակեդեմոնացիս վասն Լէպրեայ: Եւ պատճառք վէճիս, զի 'ի պատերազմել երբեմն Լէպրէացւոց ընդ Արկադացիս, և 'ի կոչել նոցա 'ի թիկունս զԵ-

լէացիս, պայմանաւ թողլոյ նոցա զմասն երկրին. Ելէացիք 'ի վախճանի պատերազմին 'ի տեարս թողեալ զվայելս երկրին, հարկս 'ի վերայ եդին Լէպրէացւոց ամի ամի հարկել տաղանդ մի արծաթոյ Ոլիւմպեանն Արամազդայ: Եւ մինչև 'ի ժամանակս Ատտիկեան պատերազմին հատուցեալ նոցա զհարկ, անտի ապա դադարեցան 'ի տալոյ 'ի պատճառս պատերազմին. և 'ի ստիպել զնոսա Ելէացւոց առ Լակեդեմոնացիս դիմեցին նոքա իբրև առ իրաւարարս: Կասկածեալ Ելէացւոց ընդ արդարութիւն Լակեդեմոնացւոց՝ մերժեցին զիրաւարարութիւն նոցին, և ասպատակաւ աւերեցին զերկիր Լէպրէացւոց. սակայն և այնպէս ոչ զերծան 'ի վըճռոյ Լակեդեմոնացւոց, որ անիրաւս հրատարակեալ զԵլէացիս, հրամայէին ինքնօրէնս թողուլ զԼէպրէացիս. և որպէս եթէ անսաստեն Ելէացիք իրաւարար օրինաց, գունդ մի զօր պահնակ 'ի Լէպրէոն առաքեցին: Պնդելով Ելէացւոց եթէ զվտարանջեալն 'ի ձեռանէ նոցա ընդունին Լակեդեմոնացիք, յիշեցուցանէին զպայմանս դաշանց որ 'ի վախճանի Ատտիկեան պատերազմին, պահել իւրաքանչիւր զոր ունէրն յառաջագոյն. և իբրև զրկեալս յիրիդ յայդմիկ անցին և սոքա 'ի կողմն Արգիացւոց, և ըստ կանուխ հրահանգացն կռեցին դաշն միաբանութեան ընդ նոսա: Յետ սոցա յաւելան յայս դաշնակցութիւն և Կորնթացիք և Քաղկիսացիք Թրակիոյ. իսկ Բիովտացիք և Մեգարացիք՝ թէպէտ հաւանք 'ի սոյն միտս, բայց ակն ածեալ 'ի Լակեդեմոնացւոց՝ հանդարտեալ լռեցին. զի ընդ սակաւ իշխանօք եղելոց ոչինչ այնպէս ռամկավար իշխանութիւն Արգիացւոց պատշաճական թուէր, որպէս Լակեդեմոնացւոցն:

ԼԲ. Ի սոյն աւուրս ամարայնոյս առին Աթենացիք պատնէշ պաշարմամբ զՍկիոն քաղաք, ընդ սուր հանելով զարբուն հասակ Սկիոնացւոց, և զմանկտին և զկանանի 'ի գերութիւն վարեցին, և զերկիր նոցա Պղատէացւոց ետուն 'ի վարել: Եւ զԴելոսացիս 'ի յուշ աղետից պատերազմին,

և ըստ պատգամացն դից Դելփեայ՝ վերստին յիւրեանց բնակութիւն հաստատեցին: Եւ եղև սկիզբն թշնամութեան ընդ Փոկեացիս և ընդ Լոկրացիս. իսկ Կորնթացիք և Արգիւացիք վաղ իսկ դաշնաւորք ընդ միմեանս՝ յղեցին 'ի Տեգեա յորդորել զնոսա յետս կալ 'ի Լակեդեմոնացւոց, զի տեսանէին զՏեգեա ոչինչ աննշան, և ակն ունէին 'ի յարել զնա յիւրեանս՝ միաբանել զողջոյն իսկ Պելոպոնէս: Այլ ընդ պատասխանին Տեգեացւոց, թէ չեն նոցա կամք հակառակելոյ ընդ Լակեդեմոնացիս, լուծան լքան իսպառ Կորնթացիք 'ի քինու ոխութենէն՝ յոր մտադիւր ձգնէին ցայնժամ, և սկսան այնուհետև երկմտել և ընդ այլոց դաշնաւորութիւն. համայն և այնպէս չոգան առ Բիովտացիս աղաչել զնոսա մտանել 'ի դաշնաւորութիւն իւրեանց և Արգիւացւոց, և միաբան հաւանութեամբ գործել: Եւ զի տասնօրեայ դուլ զինուց էր 'ի մէջ Բիովտացւոց և Աթենացւոց՝ որ ոչ յետ բազում ինչ աւուրց զկնի յիսնամեայ խաղաղութեան արարաւ, աղաչէին զնոսա Կորնթացիք գնալ ընդ նոսա յԱթէնս, և ըստ օրինակի նոցա առնել և ինքեանց դուլ զինուց. և եթէ ժխտեսցեն զայն Աթենացիք հրաժարել և Բիովտացւոց 'ի նոցանէ, և մի առանց Կորնթացւոց 'ի պայմանս ընդ նոսա գալ: Ընդ այս առաջարկ Կորնթացւոց՝ խնդրեցին Բիովտացիք պարապ խորհելոյ վասն ընդ Արգիւացիս դաշնաւորութեան. բայց գնացին ընդ Կորնթացիս յԱթէնս, և չկարացին ընդունել և վասն նոցա զտասնօրեայ դուլ զինուց. քանզի պատասխանի արարին նոցա Աթենացիք եթէ արդէն իսկ 'ի դաշնաւորութեան են ընդ մեզ Կորնթացիք, նիզակակիցք գոլով և դաշնաւորք ընդ Լակեդեմոնացիս: Սակայն և ոչ Բիովտացիք յետս կացին 'ի տասնօրեայ զինադուլ դաշանց ըստ խնդրոյ թախանձանաց Կորնթացւոց, և եկաց մնաց ընդ Կորնթացիս և ընդ Արգիւացիս դուլ զինուց անպայման:

ԼԳ. Ի սմին յայսմ ամարանի ընդ զօրավարութեամբ Պլիստոանաքսայ արքայորդւոյն Պաւսանեայ արշաւանս ե-

դին Լակեդեմոնացիք աշխարհովին յԱրկադիա՝ յերկիր Պառրասիացւոց հպատակաց Մանտինեացւոց, յառնելն հերձուածս անդ նոցուն հրաւիրեալք 'ի նոցանէ, երթալ քանդել զամրոցն Կիւփսելայ՝ զոր կառուցեալ էր Մանտինեացւոց յերկրին Պառրասիացւոց՝ մերձ 'ի Սկերիս Լակոնիոյ. և պահանորդս 'ի նմա հաստատեալ, յապականութիւն եդին զերկիրն Լակեդեմոնացիք: Իսկ Մանտինեացիք յանձն արարեալ զքաղաքն իւրեանց յԱրգիւացիս 'ի պահ, մարտնչէին 'ի վերայ երկրի նիզակակցաց իւրեանց, այլ չկարացեալ ապրեցուցանել ոչ զամրոցն Կիւփսելայ և ոչ զքաղաքս Պառրասիացւոց, ելեալ գնացին. և Լակեդեմոնացիք ազատ արարեալ զՊառրասիացիս, քանդեցին զամրոցն և դարձան յիւրեանս:

ԼԴ. Ի սմին ամարանի 'ի դառնալ զօրուն Բրասիդայ 'ի Թրակիոյ, զորս յետ դաշանց խաղաղութեան ածէր Կլէարիդաս 'ի հայրենիս՝ յազատս կարգեցին Լակեդեմոնացիք քաղաքաժողով օրինօք զՀիլոտս զինուորեալս ընդ Բրասիդայ, հրաման տուեալ նոցա բնակել ուր և ախորժիցեն. այլ յետ ոչ բազմաց յղեցին զնոսա ընդ նոր ազատագրեալս [1] 'ի Լեպրէոն յեզր սահմանաց Լակոնիոյ և Եղէայ, մինչդեռ պատերազմաւ էին ընդ Եղէացւոց: Իսկ վասն 'ի կղզւոյն փրկանաւորեալ քաղաքացւոց՝ որոց զէնընկէց լեալ էր, երկուցեալ Լակեդեմոնացիք զի մի արկածիւքս այսու արհամարհք սոքա 'ի նախկին իրաւունս անդ խլրտիցին 'ի նորութիւն, թէպէտ բարձիւ ատենակալ ոմանք էին նոքա, սակայն և այնպէս անպատիւս զնոսա արարին. և էր պատուհասս այս չկալ 'ի գլուխ առաջնորդութեան, ոչ գնոց և առից տէր լինել. բայց ապա ժամանակաւ դարձան հաստատեցան նոքա յիւրեանց յառաջին իրաւունս:

[1] Ազատագիրքս (νεοδαμώδος) որիշք էին յՀիլոտաց. զի և յետ նոցա 'ի վարձ զինուորութեան շնորհեալ ազատութիւն, բայց առանց իրաւանց քաղաքացւոյ:

ԼԵ. Ի սմին ամարանիս կալան Դիկտիդիացիք զքաղաքն Թիսոս յԱթոս լերին դաշնաւոր Աթենացւոց: Ընդ աւուրսն ընդ այնոսիկ յաճախէին ազատ երթեւեկք ընդ Աթենացիս և ընդ Պելոպոնեսացիս. բայց յետ դաշանցն կռելոց սկսան անդէն կասկածել զիրերաց Աթենացիք և Լակեդեմոնացիք՝ 'ի դարձուցանել անդ իւրեանց առ միմեանս զքաղաքս պայմանեալս: Եւ զի վիճակեցաւ նախ Լակեդեմոնացւոց տալ 'ի բաց զԱմփիպօլիս և զայլ քաղաքանին, և ոչ կացին նոքա 'ի բանի խոստման իւրեանց. և ոչ ընդունելի արարին զպայմանս խաղաղութեան դաշնաւորաց իւրեանց 'ի Թրակիա, և ոչ Բիովտացւոց և Կորնթացւոց, և ոչ դադարէին իսկ յասելոյ թէ միաբան հաւանութեամբ ընդ Աթենայիս բռնադատեսցուք զնոսա յակամայս իսկ յընդունելութիւն նոցին: Ժամադիր եղեն ապա, որ սահմանեցին, թէպէտ անգիր, յորում եթէ անսաստեսցեն նոքա մտանել 'ի դաշնաւորութիւնս, երկոցունց իսկ ժողովրդոց թշնամի համարեսցին: Եւ տեսեալ Աթենացւոց եթէ ոչ մի ինչ 'ի սահմանելոցս ատոր յարդիւնս գան, կասկածէին զուղղութենէ մտաց Լակեդեմոնացւոց, որով և չկամէին և 'ի թախանձել իսկ նոցա ստէպ՝ տալ զՊիւլոս. այլ և զղջանային ևս ընդ դարձ կալանաւոր գերեաց կղզւոյն. պահէին և զայլ տեղիս մնալով լրման խոստմանց Լակեդեմոնացւոց: Բայց սոքա պնդէին ըստ կարի զամենայն 'ի գլուխ տարեալ, գերեացն Աթենացւոց գերեդարձ արարեալ. 'ի Թրակիոյ և որ այլ ուրեք գունդք զօրաց էին նոցա յետս կոչեալ. իսկ վասն ոչ դարձուցանելոյ զԱմփիպօլիս չլինել ասէին տէարք. այլ ջանասցուք մուծանել 'ի դաշնաւորութիւնս զԲիովտացիս և զԿորնթացիս, տալ ըզՊանակտոն և զոր առ Բիովտացիս Աթենացիք իցեն կալանաւորք դարձուցանել. զՊիւլոս միայն փոխանակել խընդրէին, կամ գոնեա 'ի բաց հանել անտի զՄեսսինիացիս և զԻլոտս, զոր օրինակ և ինքեանք կոչեցին 'ի Թրակիոյ զիւրեանս. և նստուցանել անդ, եթէ այնպէս հաճոյ իցէ նո-

ցա՝ պահանորդս աթենացիս: Եւ յետ սակաւ բանագնացութեան առ միմեանս յընթացս ամարայնոյս, ուր ուրեմն ապա կարացին հաւանեցուցանել զԱթենացիս հանել ըզՄեսսենիացիս 'ի Պիւղեայ, և զԻլոտս և զամենայն այր գնացական և փախստեայ 'ի Լակոնիոյ, զորս և բնակեցուցին նոքա 'ի Կրանիա Կեփաղենիոյ: Եւ այսպէս հանդարտեալ լռեցին զամառն ողջոյն, և երթևեկք ազատօրէն և խառնուրդք առ միմեանս լինէին:

ԼԶ. Ի գալ ձմերայնոյս դէպ եղև այլոց նորոց Պարետաց 'ի գլուխ կալ վարչութեան, ոչ ընդ որովք դաշինքս խաղաղութեան կռեցան՝ յորս էին մանաւանդ ոմք չէին հաւան ընդ հաշտութիւնս. և հրեշտակութիւնք 'ի դաշնաւորաց անտի և յԱթենացւոց, և 'ի Բիովտացւոց և 'ի Կորնթացւոց 'ի Լակեդեմոն եղեն, և բազում բանք 'ի միջի առանց միաբանելոյ յիւրեանս: Եւ իբրև մեկնեցան սոքա երթալ՝ Կլէոբուլոս և Քսենարէս 'ի Պարետաց, որք 'ի քակել զհաշտութիւն խաղաղութեան առաւել միտէին, առեալ ուրոյն մեկուսի զԲիովտացիս և զԿորնթացիս յորդոր եղեն նոցա միաբան կալ ընդ միմեանս. և Բիովտացւոց նախ ջանալ մտանել 'ի դաշնաւորութիւն ընդ Արգիացիս, և ածել զնոսա ապա 'ի Լակեդեմոնացւոց դաշնակցութիւն, և ազատ կացուցանել զինքեանս յԱտտիկեան միաբանութենէ. և խորհէին առանց ընդ Աթենացիս թշնամանալոյ և դաշանց լուծանելոյ՝ յաւելուլ զԱրգիացիս 'ի դաշնաւորս ինքեանց և 'ի բարեկամս: Քանզի գիտակք էին Պարետքս զի ցանկալի էր միշտ Լակեդեմոնացւոց այս կարևոր բարեկամութիւն Արգիացւոց, որով դիւրանայր պատերազմ արտաքոյ Պելոպոնեսեայ: Եւ աղաչեցին զԲիովտացիս թողուլ զՊանակտոն 'ի Լակեդեմոնացիս, որպէս զի իցէ նոցա փոխանակել զայն ընդ Պիւղեայ, և հեշտեաւ յետ այնորիկ ապա ընդ Աթենացիս մարտնչելոյ:

ԼԷ. Իսկ Բիովտացիք և Կորնթացիք թելադրեալք այսպէս 'ի Քսենարեայ և 'ի Կլէոբուլեայ 'ի Պարետացն. և 'ի

բարեկամաց անտի իւրեանց 'ի Լակեդեմոնացւոց աղդ առնել իւրաքանչիւր իւրում վարչութեան քաղաքին՝ մեկնեցան: Եւ յԱրգիացւոց երկուք ոմանք յառաջնոյ անտի կարգէ յաւագանւոյն սպասեալ յանգս ճանապարհին, և ընդ առաջ ելեալ նոցա 'ի դարձին՝ բանս 'ի մէջ արկին, եթէ իցէ՞ն արդեօք և Բիովտացւոց կամք ըստ օրինակի Կորնթացւոց, Եղէացւոց, Մանտինէացւոց դաշնաւորելոյ ընդ նոսա. որովհետև յետ այսպիսի դաշնաւորութեան մարթ էր նոցա միաբան հաւանութեամբ դիւրին յոյժ 'ի պատերազմ գալ կամ 'ի խաղաղութիւն ընդ Լակեդեմոնացիս կամ ընդ այլում ումեք: Հաճոյ թուեցաւ դեսպանացն Բիովտացւոց առաջարկ խորհրդոյս, ոյք արդէն իսկ 'ի բարեկամաց իւրեանց 'ի Լակեդեմոնացւոց 'ի սոյն էին թելադրեալք: Իբրև տեսին Արգիացիք եթէ ընդունելի գտաւ բանն, խոստանալով հրեշտակս վասն այսր 'ի Բիովտիա արձակել՝ մեկնեալ գնացին: Ի դառնալ Բիովտացւոց յերկիր իւրեանց պատմեցին Բիովտապետաց զոր միանգամ լուան 'ի Լակեդեմոնացւոց անտի և յԱրգիացւոց զճանապարհայն: Հաճեցան և Բիովտապետք ընդ այն և յօժարագոյնք իսկ 'ի դոյն գտան. զի զնոյն առաջարկ խորհրդոյ և բարեկամաց 'ի Լակեդեմոնիոյ և Արգիացւոց առաջի արարեալ տեսին: Ոչ յետ բազմաց եկին և հրեշտակք Արգիացւոց 'ի լրումն առաջարկութեանս, ընդ որ հաւանեալ Բիովտապետաց գովութեամբ՝ արձակեցին զարսն, խոստացեալ հրեշտակս առնել յԱրգոս խօսել զնրայս:

ԼԸ. Ի ժամանակիս յայսմիկ 'ի սոյն աւուրս հաճոյ թուեցաւ և Բիովտապետաց երդումն միաբանութեան տալ նախ ինքեանց ընդ Կորնթացիս, ընդ Մեգարացիս և ընդ պատգամաւոր նուիրակս Թրակիոյ, պատրաստ լինել 'ի թիկունս օգնականութեան կարօտելոյն. և առանց հասարակ հաւանութեան ոչ ումեք 'ի պատերազմ շարժել և ոչ դաշինս խաղաղութեան առնել. և յետ այնորիկ ապա թոյլ լիցի Բիովտացւոց և Մեգարացւոց դաշնաւորութիւն ընդ

Արգիւացիս: Բայց մինչեւ երդումն տուեալ Բիովտապետաց, 'ի վեր հանին զիրսն չորից ատենից խորհրդոց Բիովտիոյ՝ որ նախիշխան վարիչք էին. եւ ջանային հաւանեցուցանել զնոսա յերդումն քաղաքանւոյն, որք 'ի Թեկունս օգնականութեան քաղաք ընդ քաղաքի դաշնաւորութեամբ կապել ցանկային: Այլ ոչ հաճեցան ընդ բանն ատենակալք խորհրդոց Բիովտացւոց, զգուշացեալ չառնել ինչ հակառակ Լակեդեմոնացւոց՝ երդմնակցութեամբ ընդ չմիաբանից նոցա ընդ Կորնթացւոց: Քանզի չհանին ինչ 'ի վեր Բիովտապետքն զիրացս 'ի Լակեդեմոն, թէ որպէս Պարէտքն Կլէոբուլոս եւ Քսենարէս եւ բարեկամք խորհուրդ տային, դաշնակցել նախ ընդ Արգիւացիս եւ ընդ Կորնթացիս, նոքօք հանդերձ ապա ընդ Լակեդեմոնացիս. համարելով եւ առանց ինչ լսելոյ զայսմանէ, զնոյն վճիռ ունէր տալ ատեանս զոր եւ կանուխ սահմանեալ էր: Բայց 'ի կերպարանափոխ լինել գործոյն 'ի հակառակն ընդդէմ՝ առանց ինչ վճարելոյ դարձան յետս Կորնթացիք եւ Նուիրակք Թրակիոյ. եւ որ 'ի յաջողել խորհրդոյն կամէին Բիովտապետքն փորձ փորձել նիզակակից ընդ Արգիւացիս լինելոյ, չարարին ինչ բան զայդմանէ յատենին խորհրդոց, եւ ոչ իսկ զդեսպանսն զոր խոստացեալ էին յղեցին յԱրգոս. յամենայնի անփութութիւն երեւէր եւ վայրապար ժամավաճառ դանդաղութիւն:

ԼԹ. Ի ձմերանիս յարձակեալ կալան Ողիւնթացիք զՄեկիւբեռնա ամրոց 'ի ձեռաց պահանորդաց Աթենացւոց: Եւ զի անդուլ անդադար 'ի բանագնացութեան էին Աթենացիք եւ Լակեդեմոնացիք 'ի փոխանակութիւն քաղաքաց իւրաքանչիւր, ակն ունելով Լակեդեմոնացւոց եթէ 'ի դարձուցանել Բիովտացւոց զՊանակտոն յԱթենացիս, ընկալցին եւ ինքեանք փոխանակաւ զՊիւլոս. չոգան 'ի ժամանակիս յայսմիկ հրեշտակութեամբ 'ի Բիովտիա, եւ խնդրէին տալ զՊանակտոն եւ զմարդագերին Աթենացւոց 'ի փոխանակութիւն ընդ Պիւլեայ: Ոչ կամեցան Բիովտացիք

տանել զայդ մինչև դաշնաւորեալ Լակեդեմոնացւոց ընդ իւրեանս առանձին դաշնակցութեամբ, ըստ օրինակին զոր արարեալ էր նոցա ընդ Աթենացիս: Եւ չէին բնաւ անգէտ Լակեդեմոնացիք անիրաւելոյ սովաւ ընդդէմ դաշանցն Աթենացւոց, որոց երդումն տուեալ էր չառնել ոչ դաշն խաղաղութեան և ոչ մարտ պատերազմի ընդ ումեք առանց հասարակաց երկուստեք հաւանութեան. բայց զի կամէին ունել զՊանակտոն, և որք մանաւանդ ընդ քակտումն դաշանց և խաղաղութեան ցանկային՝ ընդ այս դաշնակցութիւն Բիովտացւոց յօժարէին. և կռեցան դաշինքս նիզակակցութեան 'ի կատարած ձմերայնոյս և 'ի սկիզբն գարնայնոյ: Եւ ձեռն արկին Բիովտացիք քանդել զամրութիւնս Պանակտոնի, և վախճան եղև մետասաներորդի ամի պատերազմիս:

Խ. Ի գալ հասանել առաջիկայ ամարայնոյս՝ 'ի սկզբան անդ բանալոյ գրաց գարնան տեսեալ Արգիացւոց եթէ չերևին ուստեք խոստացեալ դեսպանք Բիովտացւոց, և թէ Պանակտոն քանդեալ և Բիովտացիք առանձին դաշնակցութեամբ միաբանեալ են ընդ Լակեդեմոնացիս, երկեան 'ի դիմել ամենեցուն առ Լակեդեմոնացիս՝ չմնալ միայնակ: Այնպէս իմն կարծիս կարծէին՝ եթէ 'ի Լակեդեմոնացւոց յորդորեալ Բիովտացիք կործանեցին զՊանակտոն առ 'ի մտանել 'ի դաշն խաղաղութեան ընդ Աթենացիս, գիտակ գոլով այնմ և նոցա. և խիթային երկիւղիւ չկարել այնուհետև և ոչ ընդ Աթենացիս դաշնաւորել. զի յայնմ ակնկալութեան էին ցայնժամ, եթէ 'ի չյաջողելն ընդ Լակեդեմոնացիս՝ գոնեա ընդ Աթենացիս յաջողեսցին 'ի դաշնաւորութիւն: Եւ 'ի տագնապ տարակուսին երկնչէին Արգիացիք թէ գուցէ ընդ Լակեդեմոնացիս և ընդ Տեգեացիս, որպէս և ընդ Բիովտացիս և ընդ Աթենացիս առաջի կայցէ նոցա միանգամայն պատերազմ և որ յառաջագոյն խրոխտալով իմն նախիշխան 'ի Պելոպոնէս լինել, մերժէին զդաշնաւորութիւն Լակեդեմոնացւոց. պնդադեսպանս 'ի

Լակեդեմոն արձակեցին զԵւստրոփոս և զԵսոն, զորս և մըտերիմս նոցա գիտէին: Եւ այսպէս աճապարեցին 'ի ժամանակին յայնմիկ 'ի կարևորս յայս դաշնաւորութիւն ընդ Լակեդեմոնացիս յաներկեան հանդարտութիւն մնաց իւրեանց:

ԽԱ. Հասեալ դեսպանացն Արգիւացւոց 'ի խորհուրդ և 'ի բանակցութիւն վասն պայմանաց դաշնաւորութեան ընդ Լակեդեմոնացիս, խնդրէին նախ զմի ոք 'ի քաղաքաց, կամ զաոսկական ոք այր իրաւախոհ 'ի միջի կացուցանել վասն սահմանակալ երկրին Կիւնուրիայ, որ սակս անդուլ 'ի վէճս էին և 'ի կռիւս, յորում էին Թիւրէա և Անթենէ քաղաքք՝ 'ի հասոյթս վայելից Լակեդեմոնացւոց: Եւ չներելով Լակեդեմոնացւոց յիշատակ առնել զերկրէս, բայց եթէ կամք իցեն Արգիւացւոց ըստ առաջնոյ օրինակին 'ի դաշնաւորութիւն գալ՝ յայնժամ ապա խօսել զիրացս: Այլ ածին ապա հաւանեցուցին դեսպանքն զԼակեդեմոնացիս յայս պայման. առնել առ ժամս դուլ զինուց զամս յիսուն, յորում օրէն իցէ երկոցունց կողմանց՝ 'ի չլինել սրածութեան կամ պատերազմի 'ի Լակեդեմոն կամ յԱրգոս, զէն առեալ կռուել 'ի վերայ տէրութեան երկրին Կիւնուրիայ, որպէս երբեմն յառաջագոյն, յորում կողմն իւրաքանչիւր յաղթող լինել կարծէր. այլ մի՛ լիցի ածել զխաղմն անդր քան զսահման Արգոսի և Լակեդեմոնեայ: Ի սկզբան անդ անհեդեդ ամենևին և խօլ երևեցան պայմանքս Լակեդեմոնացւոց, այլ զի հաստատութեամբ զհետ էին նոքա բարեկամութեան Արգիւացւոց, ձեռն հաւանութեան ետուն միմեանց և 'ի գիր իսկ անցուցին: Բայց խնդրեցին Լակեդեմոնացիք մինչև վաւերացուցեալ զայն՝ դառնալ նախ հրեշտակաց յԱրգոս, առնուլ զհաճութիւն ժողովրդեան 'ի դոյն, և ապա գալ 'ի Յակինթեան տօնս յերդումն հաւատարմութեան: Եւ մեկնեցան հրեշտակքն:

ԽԲ. Մինչդեռ Արգիւացիք զայսու էին պարապեալ, դեսպանք Լակեդեմոնացւոց Անդրոմենէս, Փեդիմոս և Ան-

տխմենիդաս երթեալք առնուլ 'ի Բիովտացւոց զՊանակտոն և զգերին, և յԱթենացիս զնոսա դարձուցանել, գտին քանդեալ զՊանակտոն, պատճառելով Բիովտացւոց եթէ յետ երկարատև խնդրոյ 'ի վերայ քաղաքիս, երդումն վաղեմի էր 'ի մէջ Աթենացւոց և 'ի մէջ Բիովտացւոց մի ումեք ուրոյն ինքեան սեպհականել զայն 'ի բնակութիւն, այլ 'ի հասարակաց կարգել վայելս: Եւ ընկալեալ նուիրակացն Լակեդեմոնացւոց զմարդագերին՝ ածին հասուցին առ Աթենացիս, ծանուցին և զքանդումն Պանակտոնի, համարելով դարձուցեալ այսու զայն 'ի նոսա, զի ոչ ոք այնուհետև 'ի թշնամեաց Աթենացւոց 'ի նմա բնակէր: Զչարեցան յոյժ ընդ այս Աթենացիք. քանդմամբ Պանակտոնի զրկեալք 'ի Լակեդեմոնացւոց, ասէին, զոր ողջ անարատ արժան էր դարձուցանել. և զի հակառակ յառաջագոյն խոստման եղելոյ առանձին ընդ Բիովտացիս դաշնաւորեալ նոցա՝ զանյօժարսն ստիպելով 'ի միաբանութիւն խաղաղութեան: Յաւելին առաջի դնել և զայլ ամենայն զանցառութիւն պայմանացն, խաղ իմն առնելով զնոքօք, և այսպէս խստիւ պատասխանի արարեալ դեսպանացն՝ արձակեցին զնոսա:

ԽԳ. Ի յուզել վիճից 'ի մէջ Լակեդեմոնացւոց և Աթենացւոց, որ ընդ լուծումն դաշանց յօժարէին յԱթենս, վաղվաղակի 'ի նոյն շարժեցան: Ընդ այլս էր և Ալկիբիադ որդի Կլինեայ, որ յայլում ուրեք քաղաքի 'ի թիւս պատանեաց յայնժամ, մեծապայծառ տոհմիւն և փառօք երևելի էր յԱթենս: Թէպէտ 'ի բնէ իսկ խորհուրդ Ալկիբիադեայ 'ի միաբանութիւն ընդ Արգիացիս էր, այլ յամբարհաւաճ գոռոզութենէ մանաւանդ գրգռեալ զայն խորհէր, զի Լակեդեմոնացւոց 'ի ձեռն Նիկիայ և Լաքեսայ կալով զդաշինսն խաղաղութեան, զմանկութեամբ նորա արհամարհել թուէին. և ոչ առ վաղեմի ասպնջական մտերմութեան տոհմին իւրոյ ակն ածեալ ինչ 'ի նմանէ, յորմէ հրաժարեալ հաւուն իւրոյ, և Ալկիբիադ հոգաբարձու-

թեամբն 'ի փրկանս գերւոյն Սփակտերիոյ՝ վերստին ըզնոյն նորոգել կամէր: Եւ յամենայնի կարծելով առ ոտն հարեալ զպատիւ իւր, 'ի սկզբանէ իսկ հակառակէր խաղաղութեան, եթէ չեն ամենեին 'ի բանս իւրեանց հաստատուն Լակեդեմոնացիք, և դուլ զինուց առնեն՝ զի ուծացուսցեն զԱրգիացիս յԱթենացւոց, և դաշնաւորութեամբ յիւրեանս ձգեալ զնոսա, ընդ միայնակ ապա Աթենացիս կռուիցին: Եւ 'ի ծագել գրգռութեանս 'ի միջի՝ առեալ յղեաց յիւրմէ կողմանէ նուիրակս յԱրգոս, և յորդորէր թախանձէր զնոսա գալ վաղ ընդ փոյթ ընդ Մանտինեացիս և ընդ Եղէացիս յԱթէնս 'ի խնդիր նիզակակցութեան. զի դիպաւոր էր ժամանակն, և խոստանայր յամենայնի ձեռնտու նոցա լինել:

ԽԴ. Ընդ այսլուր հրեշտակութեանս՝ Արգիացիք յառաջագոյն իսկ գիտելով զդժկամակութիւն Աթենացւոց ընդ առանձին դաշնակցութիւն Բիովտացւոց ընդ Լակեդեմոնացիս, յորմէ և գրգռել նոցա ընդ միմեանս, անփոյթ արարին զդեսպանօքն՝ զորս 'ի խօսել զդաշնաւորութենէս արձակեալ էին, և սկսան յԱթենացիս կոյս միտել, յուսով առնելոյ ինքեանց թիկունս զմեծազօր պետութիւն ծովակալ, և ըստ իւրեանց քաղաքավարութեան ռամկավար և վաղեմի բարեկամ: Եւ փութացան առաքել վաղվաղակի պատգամաւորս յԱթէնս 'ի դաշնաւորութիւն. ընդ սոսա էին և Եղէացւոց և Մանտինեացւոց դեսպանք: Հասին անդր շտապաւ և նուիրակք Լակեդեմոնացւոց Փիլոքարիդաս, Լէոն և Ենդիոս, կարևոր բարեկամք կարծեցեալք Աթենացւոց. քանզի խիթային թէ գուցէ 'ի զայրոյթս անդ բարկութեան իւրեանց Աթենացիք ուխտս նիզակակցութեան ընդ Արգիացիս արասցեն. կամէին դարձեալ փոխանակել ընդ Պանակտոնեայ զՊիւլոս, և պատասխանի առնել վասն ընդ Բիովտացիս դաշնաւորութեան, թէ ոչ չարոյ վասն Աթենացւոց զայն արարեալ էր:

ԽԵ. Վասն ամենայնի այսոցիկ խօսելով նոցա յատենի

խորհրդոց, յաւելլն եթէ լիուլի իշխանութեամբ եկեալ են զելս դժկամակութեանցս գտանելոյ. ընդ այս խիթացեալ Ալկիբիադեայ թէ գուցէ յառաջարկել նոցա զայս և յատենի ժողովրդեան, հաւանեցուսցեն զամբոխն և մերժեսցի նիզակակցութիւն Արգիացւոց, վասն որոյ այսպիսի ինչ նիւթեաց ընդդէմ նոցա: Հաւանեցոյց զպատգամաւորս Լակեդեմոնացւոց հաւատարմացուցեալ զխոստումն, զի եթէ ոչ 'ի վեր հանցեն ժողովրդեան զլիուլի իշխանութիւն իւրեանց 'ի յարմարել զիրս, արասցէ նա դարձուցանել 'ի նոսա զՊիւլոս, հաւանեցուցեալ 'ի դոյն զԱթենացիս. որպէս ցարդ հակառակեալ էր միշտ, որպէս և յայլս յամենեսին այնուհետև լիցի նոցա ձեռնտու: Եւ կամէր սովաստարացուցանել զնոսա 'ի Նիկիայ, և բանսարկել զնոցանէ առ ժողովրդեան, որպէս եթէ ոչ մի ինչ ճշմարտութեամբ խորհին կամ գործեն նոքա, և այնպէս առնել զի դաշնաւորեսցին Արգիացիք, Եղէացիք և Մանտինեացիք ընդ Աթենացիս, որպէս և յաջողեացն իսկ: Քանզի իբրև եկին պատգամաւորքն Լակեդեմոնացւոց յատեան ժողովրդեան՝ հարցեալք 'ի նոցանէ, չարարին պատասխանի որպէս յատենի խորհրդոց ծերակուտին լիով իշխանութեամբ եկեալ 'ի գործս, ընդ որ ոչ ևս այլ կարացին համբերել Աթենացիք, և զի ուժգնագոյնս յառնէր Ալկիբիադ ընդդէմ Լակեդեմոնացւոց՝ անսացին նմա դիւրեաւ. և իբրև կազմ էր ամենայն և յարմարեալ՝ 'ի ներքս մուծեալ զԱրգիացիս և զորս ընդ նոսա, կռել դաշն նիզակակցութեան ընդ նոսա, և ահա մինչ չև ինչ սահմանեալ՝ սասանութիւն մեծ լեալ երկրի, լուծաւ ժողովն:

ԽԶ. Իբրև վերստին խմբեցաւ ժողովն՝ թէպէտ 'ի նոյն խաբկանս Լակեդեմոնացւոց ըմբռնեալ էր և ինքն Նիկիաս, իբրու եթէ չէր նոցա կատարեալ իշխանութեամբ եկեալ 'ի գործ հրեշտակութեան, բայց և այնպէս պնդէր կալ մնալ 'ի բարեկամութեան Լակեդեմոնացւոց. և թողեալ առ ժամս զԱրգիացւոցն բանագնացութիւն, առաքել նուի

րակս 'ի Լակեդեմոն, հարցանել գիտել յինչ միտս իցեն նոքա. քանզի յօգուտ մեծ Աթենացւոց զգուլ զինուցս ասէր, և յամօթ Լակեդեմոնացւոց. զի 'ի բարգաւաճ պայմանի աստ իւրեանց չահաւորագոյն էր երկարել 'ի բարեբաստութեան, մինչդեռ նոցա 'ի չարաբաստ ձախող անցս՝ գիւտ ցանկալի դիմագրաւել զինուք 'ի փոփոխութիւն բաղդի: Եւ հաւանեցոյց նա զԱթենացիս արձակել հրեշտակս՝ յորս էր և ինքն, յորդորել զԼակեդեմոնացիս, զի եթէ ուղղութեամբ իրաւախոհ կամեսցին լինել՝ դարձուսցեն ողջամբ զՊանակտոն և զԱմփիպօլիս, և 'ի բաց կացցեն 'ի նիզակակցութենէ Բիովտացւոց. բայց եթէ 'ի հասարակաց միաբանութիւն մտցեն և նոքա, ըստ որում ասացաւ, մի առանց հաւանութեան երկոցունց ժողովրդոց լիցի ուրոյն դաշնաւորութիւն: Յաւելուլ ևս 'ի սոյն, զի եթէ այլազգ ինչ կամք էին Աթենացւոց, մարթ էր նոցա ցարդ ընդունել զԱրգիացիս 'ի դաշնակցութիւն՝ զեկեալս այնմ 'ի խնդիր. և որ ինչ այլ տրտունջ էր նոցա եդեալ 'ի բերանս հրեշտակացն, արձակեցին ընդ Նիկիայ:

Հասեալ նոցա 'ի Լակեդեմոն, յանդիման արարին մի ըստ միոջէ յոյր սակս և եկեալ էին. և 'ի գլուխ խօսիցն, զի եթէ ոչ լուծցեն նոքա զառանձին դաշնաւորութիւն ընդ Բիովտացիս, ցորչափ արտաքոյ են նոքա 'ի հասարակաց դաշնակցութենէ, արասցեն և ինքեանք Աթենացիք ուրոյն ուխտ նիզակակցութեան ընդ Արգիացիս և ընդ բարեկամս նոցա: Որոց պատասխանի արարին Լակեդեմոնացիք ըստ խրատու Քսենարեայ Պարետի և որոց 'ի նորա խորհըրդոյ համարի էին, թէ չկարեն յետս կալ 'ի դաշնաւորութենէ Բիովտացւոց. բայց ըստ խնդրոյ Նիկիասայ նորոգեցին զերդումն ուխտին: Քանզի երկնչէր Նիկիաս 'ի մեկնելն անտի ձեռնունայն բամբասիլ 'ի ժողովրդենէ, որպէս և եղեն իսկ, իբրև պատճառք դաշնաւորութեանս ընդ Լակեդեմոնացիս: Իբրև լու եղև յԱթէնս դարձ դեսպանացն ոչինչ ոչ վճարեալ՝ ծանրացասումն Աթենացիք ընդ կար-

ծեցեալ նախատինս, և մուծանելով Ալկիբիադեայ զԱր-
գիացիս և զդաշնաւորս նոցա՝ որ դեռ ևս 'ի քաղաքին էին,
յատեան ժողովրդեան, և արարին ընդ նոսա դաշինս նիզա-
կակցութեան օրինակ զայս.

ԽԷ. « Եւ արարին Աթենացիք հարիւրամեան խաղա-
ղութիւն, որպէս և Արգիացիք և Մանտինէացիք և Եղէա-
ցիք յիւրեանս և որոց ընդ իշխանութեամբ նոցունց էին դաշ-
նաւորաց, պահել աննենգ և անվնաս ընդ ծով և ընդ
ցամաք:

Մի լիցի զէն առնուլ Արգիացւոց, Եղէացւոց և Ման-
տինէացւոց և դաշնաւորաց նոցա ընդդէմ Աթենացւոց և
դաշնակից նիզակակցաց՝ որոց նոքա հրամայեն. նոյնպէս և
ոչ Աթենացւոց և նիզակակցաց նոցա օրէն լիցի ընդդէմ
Արգիացւոց, Եղէացւոց, Մատինէացւոց և դաշնաւորաց
նոցա՝ որով և է նենգաւոր հնարիւք:

Ըստ այսմ օրինի դաշնաւորեսցին Աթենացիք, Արգիա-
ցիք, Եղէացիք և Մանտինէացիք զամս հարիւր: Եթէ մտցէ
թշնամին յերկիր սահմանաց Աթենացւոց՝ 'ի թիկունս հաս-
ցեն նոցա Արգիացիք, Եղէացիք և Մանտինէացիք, ըստ ժա-
մուն պիտոյից կոչեցեալ 'ի նոցանէ երթալ մտադիւր ըստ
կարի հզօր ձեռամբ: Եւ եթէ յաւարի առեալ մեկնեսցի
թշնամին, ժողովուրդն այն ընդ թշնամիս համարեսցի և Ար-
գիացւոց և Եղէայւոց և Մանտինէացւոց և Աթենացւոց.
և յարիցեն պատերազմաւ սոքին քաղաքքս 'ի վերայ ժողո-
վրդեան կամ քաղաքին այդորիկ, և մի լիցի ումեք 'ի քա-
ղաքացս խաղաղութիւն առնել ընդ նմա, բայց եթէ հա-
սարակաց հաւանութեամբ:

Եւ եթէ մտցէ թշնամին յերկիր սահմանաց Եղէացւոց,
Մանտինէացւոց և Արգիացւոց՝ հասցեն նոցա Աթենացիք
յօգնականութիւն ըստ ազդարար դուժին յԱրգոս, 'ի
Մանտինէա և յԵղէա՝ ըստ մարթելոյն ամենայն զօրու-
թեամբ ուժոյ իւրեանց մտադիւրագոյնս: Եւ եթէ ա-
ւար հարեալ զերկիրն մեկնեսցի, թշնամի համարեսցի քա-

ղաքն այն և ժողովուրդ և Աթենացւոց և Արգիացւոց և Մանտինեացւոց և Եղեացւոց, և չարեաւ լուծցէ զվրէժ քաղաքացս այսոցիկ: Եւ մի՛ լիցի օրէն լուծեալ զթշնամութիւն՝ խաղաղութիւն առնել ընդ ժողովրդեանս, բայց եթէ հասարակաց հաւանութեամբ այսոցիկ քաղաքաց:

Մի՛ թողցի 'ի ժամանակի պատերազմի անցանել զինուք ընդ երկիր նոցա և մի՛ ընդ երկիր դաշնաւորաց նոցուն՝ որոց նոքա հրամայեն, և մի՛ ընդ ծով, բայց եթէ հաւանութեամբ Աթենացւոց, Արգիացւոց, Մանտինեացւոց, Եղեացւոց:

Օժընդակ զօրուն առաքելոյ 'ի քաղաքաց իւրաքանչիւր տացի ռոճիկ ամսօրեայ մի աւուրց՝ 'ի գալստենէ անտի հաշուելով և զօր մեկնելոյն. իսկ եթէ երկարագոյն պէտք լիցին յամելոյ զօրուն, քաղաքն՝ որ խնդրեացն զնոսա՝ հատուսցէ զերիս եգինայի դանկս ըստ գլուխ ասպարաւորացն, թեթեւազէն զօրուն և աղեղնաւորաց, և մէն մի դահեկան հեծելազին:

Քաղաք կամ ժողովուրդ օժընդակեալ 'ի դաշնաւորաց՝ ցորչափ յերկրի իւրում իցէ պատերազմ, կալցէ զառաջնորդութիւն զօրուն. իսկ յորժամ հաճոյ թուեսցի դաշնաւորաց այլուր ածել միաբան զպատերազմն, ամենեցուն քաղաքացս է մասնաւորել յառաջնորդութեան զօրուն:

Երդումն տայցեն Աթենացիք վասն ինքեանց և վասն դաշնաւորաց իւրեանց. իսկ Արգիացիք, Մանտինեացիք, Եղեացիք և դաշնաւորք նոցուն՝ իւրաքանչիւր քաղաքի զիւր երդումն: Եւ երդնուցուն ամենեքեան զնուիրական երդումն աշխարհին, յաղելով զզոհ կատարեալ[1]: Եւ երդումնս իցէ օրինակ զայս. « Պինդ կացից 'ի նիզակակցութեանս ըստ դաշանց ուխտին արդարութեամբ, աննենգ, անվնաս. ոչ իւիք բնաւ նենգաւոր հնարիւք անցանելով զերդմամբս »:

[1] Զոհս այս էր եզն՝ նոխազ, որպէս որթն և գառն այն ինչ հատեալ 'ի ստենէ:

Եւ արասցեն զերդումնս զայս յԱթէնս ծերակոյտն և ատենակալք քաղաքին առաջի նահապետաց ժողովրդեան՝ որ Բրիտանիկքն կոչին: ՅԱրգոս երդնուցու ծերակոյտն, և Ութսունքն և Արտիւնք կոչեցեալ ատենակալքն առաջի Ութսնից: Իսկ 'ի Մանտինէա ժողովրդապետքն, ծերակոյտն և այլ ատենակալք առաջի ժողովոյ քրմացն և իշխանաց պատերազմի: Եւ յԵլիս՝ ժողովրդապետք և ատենակալք յանձանձիչք քաղաքին և Վեցհարիւրքն առաջի հահազարապետաց ժողովրդեան և Օրինապահ անուանեալ իշխանաց, որք են պահապանք օրինաց:

Եւ նորոգեսցեն երդմունքս՝ Աթենացւոց երթալով յԵլիս, 'ի Մանտինէա և յԱրգոս՝ ամսօրեայ մի աւուրբք յառաջ քան զՈլիմպիական խաղս. իսկ Արգիացւոց, Ելէացւոց, Մանտինէացւոց գնալով յԱթէնս տասնօրէիւք կանուխ քան զՀամաթենական մեծ տօնախմբութիւնս:

Եւ պայմանք ուխտին խաղաղութեան և երդմունք դաշնաւորութեանս արձանագրեսցին 'ի սիւն վիմեղէն յԱթէնս 'ի միջնաբերդին, և յԱրգոս 'ի հրապարակին 'ի մեհենի Ապողոնի, 'ի Մանտինէա 'ի տաճարին Արամազդայ 'ի հրապարակի: Կանգնեսցի և սիւն պղնձի միաբանութեամբ յՈլիմպիա 'ի ժամանակին՝ յորում խմբին Ոլիմպիականքն: Եւ եթէ այնպէս ինչ հաճոյ իցէ միում ումեք 'ի քաղաքացն յայսցանէ յաւելուլ ինչ մի 'ի պայմանսն, որ միակամ և միախորհուրդ առնիցի, վաւեր լիցի և հաստատուն »:

ԽԲ. Եւ կռեցան օրինակ զայս դաշինքս խաղաղութեան և նիզակակցութեան, և որ 'ի միջի կայր Լակեդեմոնացւոց և Աթենացւոց դաշնաւորութիւն՝ վասն այսորիկ ոչ բարձաւ. և Կորնթացիք դաշնաւորք Արգիացւոց ոչ մտին 'ի նիզակակցութիւնս, զի և ոչ յառաջագոյն կցորդք էին ուխտի դաշանցն՝ որ 'ի մէջ Ելէացւոց, Արգիացւոց և Մանտինէացւոց հաւասարել ընդ նոսա 'ի պատերազմ և 'ի խաղաղութիւն, այլ ըստ հարկի պէտոյից ձեռն տալ միմեանց օգնականութեան, և մի զինուորել յարշաւանս 'ի

վերայ օտարին։ Ըստ այսմ 'ի բաց կացին Կորնթացիք 'ի դաշնաւորութենէ աստի, բայց և վերստին 'ի Լակեդեմոնացիս կոյս մտէին խորհուրդք նոցա։

ԽԹ. Կատարեցան Ողիմպիականքն յամարանիս, յորում յամենախումբ մրցութիւնս յաղթող եկաց Անդրոսթենէս արկադացի զայս առաջին նուագ. և Լակեդեմոնացիք մերժեցան յԵղէացւոց մի մտանել 'ի մեհեան Արամազդայ և մի 'ի զոհս մատչել և 'ի մրցութիւնս ագոնին մասնաւորել մինչև հատուցեալ զտուգանսն, յոր ըստ Ողիմպիական օրինաց պարտական էին, փոխանակ զի զէն առեալ էր նոցա 'ի վերայ Փիւրգոս ամրոցին, և 'ի ժամանակի խաղաղութեան և յՈղիմպիական դուլ զինուց՝ զօրս արձակեալ 'ի Լեպրէոն։ Եւ էին տուգանքս երկու հազար մնասք, մնասք երկու ըստ գլուխ, որպէս և օրէնք հրամայէին։ Բողոք կալան Լակեդեմոնացիք ընդ անիրաւ տուգանսն, հրեշտակս առ Եղէացիս առնելով, եթէ չև էր ծանուցեալ լրոյ խաղաղութեան 'ի Լակեդեմոն՝ յորժամ արձակեցին նոքա զզօրն։ Որում պատասխանի արարին Եղէացիք, եթէ վաղ իսկ դուլ զինուց էր 'ի Լակեդեմոն, և յառաջագոյն ծանուցեալ անդ առ նոսա, որով յորժամ իբրև 'ի խաղաղութեան հանդարտեալ նստէին Եղէացիքն՝ յեղակարծում 'ի գլուխ տարան Լակեդեմոնացիք զայդ անիրաւ բռնութիւն։ Որոց բանս ընդդէմ դնէին Լակեդեմոնացիք, զի եթէ կանուխ իսկ զրկանօքս անիրաւեալ 'ի մէնջ համարէին Եղէացիք, չէր նոցա պարտ դուլ զինուց ծանուցանել մեզ 'ի Լակեդեմոն. և զի արարին զայդ, ապա անգիտութեամբ համարեցան 'ի մէնջ 'ի Լակեդեմոնացւոցս զայն գործեալ, զի և յետ այնորիկ չյաւելաք զէն ածել, ասէին, ընդդէմ նոցա։ Իսկ Եղէացիք պնդէին չհաւանել ընդ չքմեղութիւն Լակեդեմոնացւոց, բայց եթէ դարձուցանելով առ նոսա զԼեպրէոն, և ինքեանց թողուլ նոցա յայնժամ զմասն տուգանաց արծաթոյն, և մեք մեզէն հատուսցուք զայն աստուծոյն, ասէին։

Ծ. Իբրև և ոչ այսմ անսային Լակեդեմոնացիք, այսպիսի ինչ դարձեալ առաջի արարին Եղէացիք, պահել ըզԼեպրէոն՝ որովհետև չկամին թողուլ զայն, բայց ելեալ 'ի բագին Ոլիմպիական Դիայ, յորոյ 'ի մեհեանն ցանկան մտանել, և երդնուցուն յանդիման Հելլենաց՝ պարապով հատուցանելոյ զտուգանսն: Եւ ոչ զայս յանձն առեալ Լակեդեմոնացիք մերժեցան 'ի մեհենէն, 'ի զոհից և 'ի խաղուց, և առանձին յիւրեանս զոհէին. և այլք 'ի Հելլենաց՝ բայց 'ի Լեպրէացւոց հանդիսատեսք տօնին լինէին: Սակայն երկուցեալ Եղէացւոց, զի մի բռնի զոհել կամեսցին Լակեդեմոնացիք, զինեալ խումբ մի պատանեաց պահանորդս եդին մեհենին. և հազար մի Արգիացի, և դոյնչափ ևս Մանտինէացի եկին յարեցան 'ի նոսա, Թող և զհեծելազօրն աթենացի՝ որ մնայր յԱրգոս վասն տօնին: Եւ էր ահ մեծ յաշխարհախումբ հանդիսին մնալով Լակեդեմոնացւոց յարձակել զինու. յորմէ հետէ մանաւանդ Լիքաս որդի Արկեսիլայ հարուածս գանից 'ի գաւազանակրաց ագոնին ընկալաւ: Զոյգք կառաձիգ երիվարաց նորա յաղթողք եղեն 'ի հանդիսին, այլ զի չէին նմա իրաւունք մրցելոյ յագոնին, 'ի հռչակել քարոզին եթէ Բիովտացւոց ժողովրդեան են զոյգք երիվարացս, յառաջ մատուցեալ 'ի կրկէսն Լիքաս զճակատ կառավարին կապէր երիզաւ, յայտ արարեալ թէ իւր էին կառքն. որով և ևս առաւելաւ ահ երկիւղի հասարակաց, և մնային յուզելոյ աղմկի և խռովութեան. սակայն լռեալ դադարեցան Լակեդեմոնացիք, և այսպէս աւարտ եղև խաղուց: Յետ կատարելոյ Ոլիմպիական խաղուցս գնացին Արգիացիք և դաշնաւորք նոցա 'ի Կորնթոս հրաւիրել և զնոսա 'ի դաշնաւորութիւն. անդ գտան և դեսպանք Լակեդեմոնացւոց. որոց և յետ բազում խօսից ոչինչ սահմանեալ՝ 'ի հանդիպել սասանութեան երկրի, դարձաւ իւրաքանչիւր 'ի տուն իւր, և վախճան եղև ամարայնոյս:

ԾԱ. Ի գալ ձմերայնոյ դէպ եղև պատերազմս Հերակ-

լեացւոց 'ի Տրաքինիա, ընդ Ենեանս, Դոլոփս, Մելեանս և ընդ մասն մի Թեսսաղացւոց: Ժողովուրդքս այսոքիկ շուրջանակի բնակք երկրին ոխերիմք էին ընդ քաղաքիս, զոր ընդդէմ ինքեանց մանաւանդ քան այլոց տեսանէին զայն ամրացեալ. վասն որոյ 'ի սկզբանէ անտի հաստելոյ գաղթականիս յարեան նոքա սատան 'ի նեղել զնա: Ի պարտութիւն մատնեցան Հերակլեացիք առաջի նոցա, և անկաւ 'ի մարտին զօրավար նոցա Քսենարէս Լակեդեմոնացի Կնիդեան և բազումք 'ի ժողովրդենէ կորեան: Յորում վախճան եղև ձմերայնոյն, և վախճան երկոտասաներորդ ամի պատերազմիս:

ԾԲ. Ի սկզբան անդ ամարայնոյս կալան Բիովտացիք զՀերակլեա, զտկարացեալն յերեսաց վերջնոյ կռուոյս, և զՀիգեսիպպիդաս Լակեդեմոնացի՝ իբրև անբաւական յիշխանութեան իւրում 'ի բաց արձակեցին: Կալան զքաղաքն, զի մի՛ յաղմուկս անդ շփոթից Լակեդեմոնացւոց 'ի Պելոպոնէս՝ առնուցուն զայն Աթենացիք. բայց գժգմնեցան յոյժ ընդ այս Լակեդեմոնացիք:

Ի սմին յայսմ ամարանիս Ալկիբիադէս որդի Կլինեայ զօրավար Աթենացւոց սատարութեամբ Արգիացւոց և դաշնաւորաց ոմանց եմուտ 'ի Պելոպոնէս սակաւաձեռն ասպարազէն աթենացւովք և աղեղնաւորօք, և ձեռնտուութեամբ դաշնաւորաց երկրին եդ նոցա կարգս, և յանցանելն զօրօք ընդ Պելոպոնէս՝ հաւանեցոյց զժողովուրդն Պատրասայ ձգել երկայնել զամրութիւնս քաղաքին մինչև 'ի ծով: Խորհէր և ինքն ամբառնալ այլ նոր պարիսպ 'ի Հռիոն Աքայեցւոց. բայց Կորնթացիք, Սիկիոնացիք և այլք որոց խէթ էր ամրութիւնս այս, հասեալ 'ի վերայ արգելին զայն:

ԾԳ. Յամարանիս եղև կռիւ մարտի 'ի մէջ Եպիդաւրացւոց և Արգիացւոց 'ի պատճառս զոհագործ նուէրին Պիւթեան Ապողոնի, զոր թերացեալ էր Եպիդաւրացւոց 'ի

պարտուց առաքելոյ զայն 'ի Բոտամիոն[1] տունն, զի Արգիացւոց էր անկ գերագոյն վերատեսչութիւն մեհենին։ Բայց առանց իսկ պատճառացս այսոցիկ խորհէր Ալկիբիադ հնարել առնուլ զԵպիդաւրոս առ 'ի հանդարտութեան ունել զԿորնթացիս. և քան զԱկիլէոն սարիւն պատելոյ՝ ընդ աղագոյն ճանապարհ ընդ Եգինա արձակել Աթենացւոց օգնութիւն յԱրգոս։ Եւ կազմեալ պատրաստեցան Արգիացիք 'ի պատճառս նուիրի զոհին ելանել պատերազմաւ 'ի վերայ Եպիդաւրացւոց։

ԾԴ. Զայնու ժամանակաւ աշխարհովին արշաւանս եդին Լակեդեմոնացիք 'ի Լեւկտրա, յելս սահմանաց երկրին իւրեանց 'ի Լիկէոն կոյս. և Ագիս որդի արքային Արքիդամեայ առաջնորդէր զօրուն. ոչ ոք գիտէր թէ ուր դէմ եդեալ գնան, և ոչ իսկ քաղաքանին դաշնաւոր. և զոհ նուիրին՝ որ 'ի յաջողութիւն զինուորութեանս, ոչինչ բարեգուշակ հանդիպեալ՝ դարձ արարին անդրէն 'ի տուն, պատուէր տուեալ դաշնաւոր զօրուն՝ պատրաստ լինել 'ի կատարած առաջիկայ ամսեանս, որ է Կառնէան սրբազան ամիս Դորիացւոց՝ զինուորել վերստին 'ի սոյն արշաւանս։ Յետ մեկնելոյ նոցա յարեան Արգիացիք չորիւք աւուրբք կանխելով յառաջ քան զսկիզբն Կառնեան ամսոյ, թէպէտ և նուիրական էր միշտ օրս, և անկան ասպատակաւ յերկիրն Եպիդաւրացւոց։ Ի խնդիր օգնականութեան առ դաշնաւորս իւրեանց դիմեցին Եպիդաւրացիք, յորոց կէսք զամիսն նուիրական պատճառելով՝ յամեցին, այլք մինչև 'ի սահմանածայրս աշխարհին եկեալ դադարեցին անդանօր։

ԾԵ. Մինչդեռ Արգիացիք յԵպիդաւրիա էին, ժողովեցան դեսպանք քաղաքացն հրաւիրանօք Աթենացւոց 'ի

[1] Ὑπὲρ Βοταμίων, բազմապատիկ մեկնութեամբ ծգնեալ յիմաստ բանիս Թարգմանչաց մերոց. իբրու, յաղօթական իրաւունս մեհենին, իբրու տօ գեօղէյէրէն ժողովրդոյն. պարզագոյն զվերջինդ զայդ համարեցաք, զոր և եդաք։

Մանտինէա. և յառաջ մատուցեալ 'ի խորհրդեան անդ
Եւփամիդաս կորնթացի, «Զգտանեմ, ասէ, զբանս ընդ
գործոյն միաբան. զի մինչդեռ 'ի խորհուրդ խաղաղութեան
ժողովեալ եմք մեք, Եպիդաւրացիք և դաշնաւորք և Ար֊
գիացիք 'ի զէնս են. նախ պարտ է լռեցուցանել զնոսա 'ի
կռուոյս, և ապա զխաղաղութենէ խօսել»: Ընդ որ հա֊
ւանեալ գնացին հեռացուցանել զԱրգիացիս յԵպիդաւ֊
րեայ, և դարձեալ անտի վերստին 'ի ժողով և այնպէս իսկ
ոչ կարացին միաբանել. և կրկին դարձ արարին Արգիացիք
յիւրեանց ասպատակութիւն յԵպիդաւրիա աւերել զեր֊
կիրն: Արշաւեցին և Լակեդեմոնացիք 'ի Կարիա. և զի որ 'ի
յաջողութիւն ճանապարհին զոհն չերևեցաւ բարեգուշակ,
դարձան և յայս նուագ յետս. մեկնեցան և Արգիացիք ա֊
պականեալ զերրորդ մասն երկրին Եպիդաւրացւոց: Ընդ
լուր արշաւանին Լակեդեմոնացւոց, եկին հազար մի աս֊
պարակիր զօրական աթենացի և զօրավար նոցա Ալկիբիադ
'ի թիկունս Արգիացւոց. և տեսեալ թէ չուելին նոքա այնմ
պէտս՝ ելեալ գնացին, և վախճան եղև ամարայնոյս:

ԾԶ. Ի գալ ձմերայնոյ առաքեցին Լակեդեմոնացիք
զանխուլ յԱթենացւոց երեքհարիւր պահանորդ զօրս ընդ
ծով յԵպիդաւրոս, և զԱգեսիպպիդաս զօրագլուխ գնդին:
Զոգան Արգիացիք յԱթէնս 'ի բողոք, զի հակառակ ուխտի
դաշանց՝ չներել թշնամւոյ կոխել զերկիր դաշնաւորաց՝
թողեալ են Աթենացիք անցանել Լակեդեմոնացւոց ընդ
ծով. և թէ անիրաւեին ընդդէմ նոցա մեծապէս, եթէ ոչ ար֊
ձակեն զՄեսսինիացիս և զԻլոտս 'ի Պիւլոս հակառակ Լա֊
կեդեմոնացւոց: Եւ ետուն Աթենացիք ըստ խորհրդոյ Ալ֊
կիբիադեայ դրոշմել 'ի ներքոյ Լակոնական սեան. «Զկացին
Լակեդեմոնացիք 'ի պայմանս ուխտի դաշանց». և անցու֊
ցին այնուհետև զԻլոտս 'ի Կրանիացւոց անտի 'ի Պիւլոս յա֊
ւար երկրին, բայց ինքեանք Աթենացիք ոչ խլրտեցան: Եւ էր
կռիւ 'ի ձմերանիս 'ի մէջ Արգիացւոց և Եպիդաւրացւոց
այլ ոչ մի ըստ օրինի ճակատամարտ, այլ դարանակալու֊

թիւնք միայն և նախաշաւիղ մրցութիւնք, յորս և դէպ լինէր անկանել ոմանց աստի և անտի 'ի հակառակորդկուսողաց:

Ի կատարած ձմերայնոյս 'ի սկիզբն կոյս գարնայնոյ եկեալ մերձեցան Արգիացիք յԵպիդաւրոս բարձեալ ընդ իւրեանս սանդուխս, իբրու 'ի քաղաք անպահանորդ 'ի պատճառս պատերազմին, յարձակեալ զինու բռնութեամբ առնուլ զայն, այլ ձեռնունայն մեկնեցան 'ի բաց: Վախճան եղև ձմերայնոյ և երեքտասաներորդ ամի պատերազմին:

ԾԷ. Ընդ միջել առաջիկայ ամարայնոյս տեսեալ Լակեդեմոնացւոց զվիշտս վտանգի դաշնաւորաց յԵպիդաւրոս, և որ 'ի Պելոպոնէս էին՝ կէսք ճեղքեալ յուխտէ միաբանութեան, և այլք թշնամութեամբ էին ընդ նոսա, խորհեցան չև երկպառակ վիճիցն չարագոյն ևս կերպարանս առեալ, աշխարհովին ասպատակ դնել յԱրգոս բազմութեամբ Իլոտաց և առաջնորդ զինուորութեանս Ագիս որդի Արքիդամեայ արքայի Լակեդեմոնացւոց. և ընկերէին արշաւանին Տեգէացիք և ամենայն դաշնաւորք նոցա յԱրկադիոյ: Իսկ որ 'ի Պելոպոնեսեայ և արտաքոյ նիզակակիցք էին՝ ժողովեցան 'ի Փլիուս. Բիովտացիք հինգ հազար ասպարաւորք, դոյնչափ ևս թեթևազէն զօրական, հինգհարիւր հեծելազն, և հետի նոյնաթիւ իբրու 'ի համհարզ[1] հեծելազօրուն: Կորնթացիք էին երկու հազար ասպարակիր զօրական, և այլք 'ի դաշնաւորաց մի ըստ միոջէ իւրաքանչիւր ըստ կարի տալով օժընդակս. և Փլիասիացիք համագունդ աշխարհօրէն, զի յերկրի անդ նոցա գումարէր բանակ զօրուն:

ԾԸ. Զգացեալ Արգիացւոց յառաջագոյն զմեծ պատրաստութիւն արշաւանին Լակեդեմոնացւոց, իբրև տեսին զչու բանակին նոցին 'ի Փլիուս՝ որ գային խառնել ընդ դաշ-

[1] Ἄμιπποι, իբրու համաձի, հետևակախումբ երագոտն, թեթևազէն նոյնաթիւ ընդ հեծելազին խառն ընդ նոսա կռուելով:

նաւորս. խաղացին և ինքեանք անդր, հասին և Մանտինէացիք դաշնաւորօք իւրեանց յօգնութիւն Արգիացւոց, և երեք հազար ապարազէն յԵլէացւոց: Հանդիպեցան նոքա զճանապարհայն Լակեդեմոնացւոց 'ի Մեթիտրիոն Արկադիոյ, և բանակքն երկոքին հասեալ կալան զբարձունս, և պատրաստէին Արգիացիք բախել ընդ Լակեդեմոնացիս, այլ գիշերայարոյց Ագիս գաղտագնաց եղև 'ի Փլիուս առ դաշնաւոր մարտակիցս իւր: Զգաստ լեալ Արգիացւոց զչուոյն, ելեալ խաղացին և ինքեանք ընդ արշալուրջն յԱրգոս կոյս նախ, ապա ընդ ճանապարհ Նեմեայ՝ ընդ որ կարծէին իջանել և Լակեդեմոնացւոց դաշնաւորօք իւրեանց հանդերձ: Այլ թողեալ Ագիս զճանապարհն՝ ընդ որ սոքա ակն ունէին, և չարժեալ զԼակեդեմոնացիս, զԱրկադացիս և զԵպիդաւրացիս, եկն էջ ընդ դժուարուտս 'ի դաշտավայրն Արգիացւոց. և յառաւօտուն Կորնթացիք, Պելլենացիք և Փլիասիացիք ընդ այլ ճանապարհ չուեցին և նոքա: Պատուէր տուաւ և Բիովտացւոց, Մեգարացւոց և Սիկիոնացւոց ընդ Նեմեայն իջանել ճանապարհ, յորում բանակեալ նստէին Արգիացիք. որպէս զի եթէ գայցեն սոքա յարձակել 'ի վերայ Լակեդեմոնացւոց 'ի դաշտավայրին, հասեալ այրուձիովն անկցին 'ի թիկանց նոցա: Զայս այսպէս կարգաւորեալ Ագիս՝ խաղայր ինքն ընդ դաշտավայրն յաւար մատնեալ զՍամինթոս և զայլ քաղաքանին:

ԾԹ. Իրազեկ այսմ Արգիացիք դիմեցին 'ի Նեմեայ իբրու զհասարակաւուրբ, և հանդիպեալ զօրաց Փլիասիացւոց և Կորնթացւոց, կրճատէին զոմանս 'ի գնդէ Փլիասիացւոց, բայց և ինքեանք զհաւասարն 'ի Կորնթացւոց կրեցին: Իսկ Բիովտացիք, Մեգարացիք և Սիկիոնացիք ըստ հրամանին զոր ընկալան, յառաջեալ 'ի Նեմէ կոյս և չգտին զԱրգիացիս. զի իջեալ սոցա 'ի դաշտավայրն և զաւեր երկրին տեսեալ, զտեղի առին 'ի կռիւ ճակատամարտ. կարգեցան և Լակեդեմոնացիք ընդդէմ նոցա: Փակեալ պաշարեցան 'ի միջի Արգիացիք, զի 'ի կողմանէ դաշտավայրին ար-

գեղուղին զնոսա 'ի քաղաքէն Լակեդեմոնացիք և դաշնաւորաց նոցա գունդք օժընդակք. իսկ 'ի բարձանց՝ Կորնթացիք, Փլիասիացիք և Պելլենացիք. և 'ի Նեմեայ՝ Բիովտացիք, Սիկիոնացիք և Մեգարացիք: Եւ պակասէր նոցա գունդ հեծելազօր. զի 'ի դաշնաւորաց նոցա Աթենացիք միայն չև էին հասեալ: Այլ բանակն Արգիացւոց և զօրն դաշնաւոր ոչինչ դժուարին զառաջիկայ պայմանս համարելով. մեծայոյս մանաւանդ խրախուսէին, զի յիւրեանց ընիկ երկրին և մօտ 'ի քաղաքն ըմբռնեալ զԼակեդեմոնացիս կարծէին: Բայց երկուք ոմանք յԱրգիացւոց, Թրասիլլոս՝ մի 'ի հնգից անտի զօրավարաց, և Ալկեփրոն ասպնջական Լակեդեմոնացւոց, չև ձեռն 'ի մարտ խառնեալ՝ մատուցեալ առ Ագիս լուծանել զկռիւն խնդրեցին. զի եթէ վէճ ինչ իցէ Լակեդեմոնացւոց ընդ Արգիացիս, ասեն, հաւասար օրինօք իրաւախոհ ընդ նոսա լինիցին, և ուխտիւ դաշանց 'ի խաղաղութիւն գայցեն:

Կ. Եւ որք յԱրգիացւոց զայս առաջի արարին, ինքնահրաման յիւրեանց կողմանէ էր և ոչ 'ի հաւանութենէ բազմութեան զօրուն: Հաճեցաւ ընդ այն Ագիս՝ ինքնին և ոչ 'ի խորհրդոյ հաւանութենէ բազմութեան, այլ միում միայն 'ի գլխաւոր ատենակալաց որ ընդ զօրուն 'ի վեր հանեալ զայն՝ արար չորեքամսեայ դուլ զինուց, յորում դըլխաւորել ունէին զպայմանեալ դաշինս. և հրամայեաց Ագիս չու դարձի առնել առանց աւելի ինչ ասելոյ դաշնաւորաց: Ըստ օրինի անսալով նոցա Ագիսեայ որպէս զօրավարի, զհետ գնացին հրամանին և Լակեդեմոնացիք և դաշնաւորք, բայց քրթմնջիւն մեծ էր զնմանէ, զի դէպք 'ի բարին յաջողեալ նոցա և զթշնամին ամենուստ փակեալ պաշարեալ 'ի միջի հեծելովք իւրեանց և հետևակօք, և ոչ մի ինչ ըստ զինուորութեան արժանաւոր գործ վճարեալ՝ ձեռնունայն դառնան յետս: Եւ արդարև գեղեցիկ էր բանակ զօրուն յերևեալս ցայնժամ առ Հելլենս, որ չքեղաբար հանդիսանայր աշխարհախումբ գումարեալ 'ի Նեմէա,

յորում Լակեդեմոնացիք էին քաղաքովքն, Արկադացիք, Բէովտացիք, Կորնթացիք, Սիկիոնացիք, Պելլենացիք, Փլիասիացիք, Մեգարացիք, որք ամենեքեան ընտիրք յազգաց ոչ միայն բաւականք 'ի հաւասարել ընդ դաշնակցութեան Արգիացւոց, այլ և ընդ որոց և է ժողովրդոց 'ի նոսա յարելոց. այսպէս դժկամակեալ յոյժ զօրն ընդ Ագիս՝ մեկնեցաւ իւրաքանչիւր յերկիր իւր։

Նոյնպէս և Արգիացիք իսկ դառնագոյնս քրթմնջէին զարանցն որք առանց հաւանութեան ժողովրդեան դուլ զինուց արարին. զի 'ի յաջողել բաղդին ընտիր ընտիր բազմամբոխ դաշնաւոր զօրու առ քաղաքաւն 'ի մարտ ընդ Լակեդեմոնացիս դուպարել, թողին զնոսա այսպէս ձողոպրեալ զերծանել։ Եւ 'ի դառնալ նոցին 'ի քաղաքն մտանել 'ի Քարաթրոն, 'ի հարցափորձ տեղին և յատեան դատաստանի յանցաւոր զօրականի, սկսան քարկոծ առնել զԹրասիլլոս, որ անձնապուր զերծաւ փախստեամբ անկեալ 'ի բաղդին, այլ ինչք նորա 'ի հասարակաց գանձս հատան։

ԿԱ. Յետ այնորիկ եհաս նոցա 'ի թիկունս գունդ մի աթենացի հազար ասպարակրաց և երեքհարիւր հեծեալ ընդ զօրավարութեամբ Լաքեսայ և Նիկոստրատեայ։ Բայց ոչ կամելով Արգիացւոց լուծանել զպայմանեալ դուլ զինուց ընդ Լակեդեմոնացիս, աղաչէին զնոսա երթալ 'ի բաց և չկամէին մուծանել զնոսա առ ժողովուրդն 'ի խօսել, բայց եթէ թախանձանօք Մանտինէացւոց և Եղէացւոց՝ որք դեռ ևս յԱրգոս էին։ Եւ մատուցեալ Աթենացւոց յանդիման Ալկիբիադեայ նուիրակի իւրեանց, խօսեցան առ Արգիացիս և առ դաշնաւորս նոցա, թէ չէր ըստ օրինի ուղղութեամբ գործեալ առանց հաւանութեան հասարակաց ամենեցուն դաշնաւորաց դուլ զինուց առնել. և զի այժմ արդ 'ի դէպ ժամուն եկին նոքա, պարտ է դառնալ վերըստին 'ի կռիւ։ Եւ հաւանեցուցեալ զդաշնաւորս խաղացին անդէն յՈրքոմենոն Արկադիոյ բաց յԱրգիացւոցն, որք թէպէտ 'ի նոյն էին հաւանեալք, սակայն 'ի սկզբան անդ

յետ կացեալ՝ զկնի ապա գնացեալ միացան ընդ նոսա։
Նստեալ սոցա զՈրքոմենեաւ մարտ տային ընդ քաղաքին.
և ոչ միայն կամէին տիրել նմին, այլ և Թափել անտի
զպատանդս Արկադացւոց՝ զաւանդս Լակեդեմոնացւոց 'ի
նմա։ Երկուցեալ Որքոմենացւոյ 'ի տկարութենէ պարս֊
պացն և յամբոխէ բազմութեան Թշնամւոյն, և զի չէր ուս֊
տեք նոցա յոյս օգնականութեան, զիջան 'ի հաշտութիւն
դաշնաւորութեան ընդ նոսա, պատանդս տալով յիւրեանց
անտի և յանձն առնելով 'ի Մանտինէացիս՝ զորս նստու֊
ցեալ էին անդ յաւանդ Լակեդեմոնացիք։

ԿԲ. Յետ տիրելոյ Որքոմենեայ՝ խորհուրդ կալան դաշ֊
նաւորք, յո՛ր քաղաք արժան իցէ ուղղել նախ զարշաւանն.
Եղէացիք 'ի Լեպրէոն դիմել ասէին, Մանտինէացիք 'ի Տե֊
գէա, յորում Արգիացիք և Աթենացիք զկողմն Մանտի֊
նէացւոց կալան. ընդ որ դժկամակեալ Եղէացւոց, զի չե֊
ղեն գամագիւտ ըղձիցն՝ ելեալ մեկնեցան. իսկ այլք 'ի դաշ֊
նաւորաց պատրաստեցան 'ի Մանտինէա խաղալ 'ի վերայ
Տեգէայ, յորում էին 'ի Տեգէացւոց ոմանք զքաղաքն 'ի ձեռս
տալ կամէին։

ԿԳ. Իսկ Լակեդեմոնացիք յետ քառամսեայ զինադուլ
առնելոյ ընդ Արգիացիս, մեկնեալ յերկրէն 'ի մեծագոյն
ևս տրտունջ հատան զԱգիսեայ՝ փոխանակ զի ապախտ ա֊
րար նա զգեղեցիկ պատեհիւն տիրելոյ Արգոսի. զի չէր
արդարև դիւրին դառնալ 'ի մի վայր գումարել զայնչափ
և զայնպիսի զօր աշխարհախումբ։ Եւ 'ի հռչակել մանա֊
ւանդ առման քաղաքին Որքոմենեայ՝ ծանրացասումն ևս
եալ, 'ի զայրոյթս անդ իւրեանց շտապաւ սահմանեցին֊
ըհակառակ իւրեանց սովորութեան, կործանել զտուն ար֊
քայի և տալ տուգանել նմա տասն բիւր դրաքմայս։ Ա֊
ղաչէր զնոսա Ագիս մի յայդպիսի ինչ ձեռնարկել, այլ մնալ
նմա 'ի պատերազմի ուրեք գեղեցիկ նահատակութեամբ
զարատ անուան իւրոյ սրբելոյ, ապա եթէ ոչ՝ առնել յետ
այնորիկ զոր և ախորժեն։ Ժամանակեցին նոքա զտուգանն

նմա և զքանդումն տանն, բայց սահմանեցին՝ որպէս ինչ յառաջագոյն չէր լեալ երբէք, տալ արքայի տասն խորհրդականս 'ի Սպարտացւոց անտի առընթեր նմին, և առանց հաւանութեան նոցա և ոչ զօրս ըստ քաղաքն հանել:

ԿԴ. Մինչ այս մինչ այն՝ լուր 'ի Տեգեայ 'ի բարեկամաց անտի նոցա առ Լակեդեմոնացիս հասանէր, զի եթէ ոչ աճապարեն նոքա գալ 'ի Թիկունս, ելցէ ըստ ձեռն նոցա Տեգէա յարել յԱրգիացիս և 'ի դաշնաւորս նոցին, որ արդէն իսկ գայթ 'ի գայթի կան: Շարժեցան փութանակի բազմութեամբ Լակեդեմոնացիք և Իլոտք, անօրինակ ցայնժամ երագապէս խաղալով յՈրեստիոն Մենալեայ, պատուէր տուեալ Արկադացւոց դաշնաւորաց իւրեանց զէն առեալ զհետ գալ նոցա 'ի Տեգէա: Եւ ժամանեալ նոցա համախումբ յՈրեստիոն, դարձուցին անտի զվեցերորդ մասն զօրուն 'ի ծերունեաց և 'ի մանկագունից յետս 'ի տուն 'ի պահ երկրին, և մնացելովքն զօրօք հասին 'ի Տեգէա, ուր ոչ բազում ինչ անցեալ 'ի վերայ, եկին ժամանեցին և դաշնաւորքն յԱրկադիոյ: Եւ յղեցին անտի պատուէր հրամանի 'ի Կորնթոս, 'ի Բիովտիա, 'ի Փովկիս և 'ի Լոկրիս, ամենեցուն նոցա գալ հասանել անյապաղ իւրաքանչիւր օժանդակ գնդովք 'ի Մանտինէա: Այլ ընկալեալ նոցա յեղակարծումն զպատուէրն, չէր դիւրին առանց իւրերաց մնալոյ՝ անցանել համագունդ ընդ երկիր թշնամւոյն որ փակեալ էր առաջի. սակայն և այնպէս ոչինչ դանդաղեալ փութացան 'ի նոյն: Իսկ Լակեդեմոնացիք դաշնաւորօք իւրեանց Արկադացւովք գրոհ ետուն 'ի սահմանս երկրին Մանտինեացւոց, և հարեալ զբանակ իւրեանց առ Հերակլեայ մեհենիւ՝ զաւերածս զանդաստանօքն ածէին:

ԿԵ. Իբրև տեսին զսոսա Արգիացիք և դաշնաւորք նոցա, հասեալ կալան զվայր մի քաջամուր և դժուարամատոյց, և կարգեցան 'ի ռազմ ճակատու: Յառաջ մատեան և Լակեդեմոնացիք 'ի քարաձիգ կամ յարդնընկէց մի բացակայ. անդ ոմն 'ի ծերունեաց անտի տեսեալ դիմել զօրուն

ընդ դժուարուստ, ձայն բարձեալ գոչէր. «Զարաւ զչարն բուժել է այդ, Ագիս». յայտ արարեալ, զի տարադէպ աշխուժիւ սրբել կամէր նա զարատ ամօթապարտ Նահանջին: Եւ Ագիս կամ վասն ազդարար ձայնի ծերունւոյն, և կամ յանկարծ ուրեմն յայլ միտս լեալ, չև ձեռն 'ի մարտ խառնեալ հրամայեաց փոխել 'ի Նահանջ: Եւ հասեալ յերկիրն Տեգեացւոց դարձոյց զջուրն յանդաստանս Մանտինեացւոց, որոյ վասն անդադար կռիւ էր 'ի մէջ Մանտինեացւոց և Տեգեացւոց, զի յոր կողմն և ջուրն գնայր զեան բազում գործէր: Խորհէր Ագիս ընդ լուր իրացս իջուցանել զԱրգիացիս և զդաշնաւորս նոցա յամրութենէ բլրոյն 'ի տեղի ջրադարձին, և տալ պատերազմ 'ի դաշտավայրին. և եկաց զօրն ողջոյն 'ի տեղւոջն 'ի շրջել զընթացս ջրոյն: Արգիացիք և դաշնաւորքն զարմացեալ զառաջինն ընդ անակնկալ նահանջ նոցուն 'ի տարակուսի կային. այլ իբրև մեկնեալ գնացին նոքա և ծածկեցան յաչաց, զտեղի առին և ինքեանք չպնդել զհետ նոցա, և սկսան վերստին քրթմնջէին 'ի զօրուն ընդդէմ զօրավարաց. զի և յառաջնումն անդ ըմբռնեալ աներկբայ զԼակեդեմոնացիս առ քաղաքաւն Արգոս և ազատս թողլն. և այժմ արդ չպնդելն զկնի փախստէին, այլ թողուն զնոսա պարապով զերծեալ ապրել, մինչդեռ անձամբ անձանց մատնտու լինէին նոքա: Խռովեցան ընդ այս յոյժ զառաջինն զօրավարք, իջուցին ապա զզօրն 'ի բլրոյն 'ի դաշտավայրն, հարին անդ զբանակս՝ գալ անտի խառնել 'ի կռիւ ընդ թշնամւոյն:

ԿԶ. Ի վաղիւ անդր Արգիացիք և դաշնաւորք նոցա 'ի ռազմ կարգեալ մնային թշնամւոյն: Ի դառնալն իւրեանց Լակեդեմոնացիք 'ի ջրոյն 'ի բանակետղն 'ի մեհեան Հերակլեայ՝ տեսեալ յանկարծ համագունդ զթշնամին տողեալ առաջի բլեր, ուստի իջեալ էին՝ պակուցեալք զարհուրեցան յոյժ յերկիւղ անսովոր. և ըստ ժամուն փութոյ 'ի զէն դիմեալ՝ աճապարեցին իւրաքանչիւր 'ի կարգ իւր և 'ի տեղի. և Ագիս արքայ ըստ օրինին տայր հրամանս. զի յոր-

ժամ 'ի գլուխ կայր բանակին Թագաւորն, 'ի նմանէ ելանէին ամենայն պատուէրք և հրահանգք, որ միում միում 'ի զօրավարաց դնէր զպարտս առաջի, և նոքա գնդապետացն և յիսնապետաց և խմբապետաց երեսնից և երկուց, և նոքա իւրաքանչիւր զօրուն մի ըստ միոջէ[1]: Եւ ամենայն ազդք և հրամանք կարևորք միանգամայն ելեալ և արագ արագ ընթանային ընդ կարգս զօրուն. զի բաց 'ի սակաւուց՝ յոգունք են հրամատարք, և բազմաց է անկ հոգ պարտուց:

ԿԷ. Ի ճակատամարտիս զաջեակ թեւն Սկիրիտք[2] ունէին, 'ի դոյն կարգ ռազմին պահեալ միշտ ընտիր գունդ առ Լակեդեմոնացիս. առ սոքօք զօրականն արշաւանին Բրասիդայ և ազատագրեալք յԻլոտաց. և ըստ գնդի գնդի Լակեդեմոնացիք, և ըստ սոցանէ Հերեան Արկադացիք և Մենալեանք: Յաջում թեւին Տեգէացիք և չոկատ մի փոքր լակեդեմոնացի 'ի վերջ թեւոյն, և հեծելազն աստի և անտի 'ի կրկին թեւս բաժանեալ: Այս էր կարգ ռազմին Լակեդեմոնացւոց:

Իսկ 'ի կողմն հակառակորդ՝ զաջ թեւն Մանտինէացիք ունէին, զի յերկրի նոցա մղէր մարտս, և յետ նոցա դաշնաւորք Արկադացիք. ապա այրընտիր գունդն Արգիացի, զոր 'ի բազմաց հետէ 'ի հասարակաց գանձուէ ռոճկեալ մարզէր զնոսա քաղաքն 'ի գործ պատերազմի: Ըստ կարգի ապա և այլ Արգիացիք և դաշնաւորք Կլէոնեցիք և Որնէացիք, և զկնի ամենեցուն սոցա Աթենացիք՝ որ 'ի ձախում թեւի կային հանդերձ վաշտիւք հեծելոց:

[1] Πολεμάρχος, ըստ ձեռանէ արքայի զօրավարք էին նոքա, և 'ի ձեռն սոցա ընթանային պատուէրք արքայի առ գնդապետս (λοχάγοσ), որք հինգհարիւր երկոտասանից հրամայէին, առ յիսնապետս (πεντηκοντης), առ երեսնապետս (ἐνωμοταρχας), և առ երդուեալ գունդ զօրականին (ἐνωμοτία).

[2] Ընտիր հետևակախումբ զօրական Լակոնիոյ, որպէս հինաւուրցն Հռովմայ՝ 'ի դէպս վտանգաց պահեալ միշտ:

ԿԸ. Այս էին կարգք և պատրաստութիւնք կողմանց երկոցունց. սակայն բազմաձեռն երևէր զօրն Լակեդեմոնացւոց, զորոց զթիւ իւրաքանչիւր գնդի, կամ զբովանդակութիւն միանգամայն ճշգրտիւ չունիմ ասել: Զի Լակեդեմոնացւոց զօրուն համար՝ առ քաղաքագէտ ծածկութեան նոցա գաղտ պահէր. իսկ այլոցն առ մարդկօրէն սնապարծ առաւելազանցութեան՝ անհաւատալի թուէր: Սակայն այսպիսի ինչ հաշուով մարթ է 'ի վերայ հասանել համարոյ զօրուն Լակեդեմոնացւոց. զի բաց 'ի Սկիրիտաց որ էին վեցհարիւր զօրական, եօթն գունդք էին նոցա 'ի պատերազմին. 'ի մէն մի գունդ՝ չորս չորս յիսնեակք, և յիւրաքանչիւր յիսնեակս՝ չորք Ենովմատք, և 'ի մէն մի կարգ Ենովմատից՝ քառեակ մարտիկք: Ոչ ամենայն ուրեք նոյն խորութիւն էր ռազմի ճակատուն, այլ ըստ կամի գնդապետացն այլայլեալ. սակայն բազում այն էր զի յութից մարտկաց խորութիւնն լինէր. միագումար ապա յառաջնում կարգին, թող զՍկիրիտան, չորեքհարիւր և ութ զօրականք էին:

ԿԹ. Մինչդեռ կազմք էին սոքա 'ի կռիւ մարտի, զօրավար իւրաքանչիւր 'ի խրախոյս իւրոցն այսպիսի ինչ խօսէր. զօրավարն Մանտինէացւոց, զի առաջի կայր նոցա 'ի վերայ հայրենեաց մարտնչել, 'ի վերայ տէրութեան կամ ծառայութեան, զի մի՛ յետ միանգամ զփորձ առնլոյ երկոցունց սոցա, յառաջնոյն զրկեալ՝ յերկրորդն վերստին անկանիցին: Յոյժ և Արգիացւոց ածէր, զի պատերազմ էր նոցա 'ի վերայ նախնոյ իշխանութեան և հաւասար տէրութեան 'ի Պելոպոնէս, ջանալ ճգնել չկորուսանել զայն իսպառ. խնդրել մանաւանդ զվրէժ ծանր ծանր զրկանաց և անիրաւութեան 'ի թշնամեաց անտի և 'ի դրացեաց: Իսկ Աթենացւոցն՝ թէ զի՛ գեղեցիկ, զի՛ բարի յոգնախումբ քաջընտիր դաշնակցովք չհատակեալ արիանալ, և յաղթանակելով 'ի վերայ Լակեդեմոնացւոց 'ի Պելոպոնէս, ամրապինդ ևս և մեծազօր զպետութիւնս գործել, և չթողուլ

ումեք այնուհետեւ իշխել զոտս 'ի վերայ երկրիս ամբառնալ: Օրինակ զայս Արգիւացւոց և դաշնաւորաց նոցա յորդորք խրախուսի լինէին: Իսկ Լակեդեմոնացիք այր իւրաքանչիւր 'ի նոցանէ 'ի յուշ երբեմն նահատակութեանց յերգ պատերազմական զմիմեանս սրտապնդէր. գիտակ քաջ, զի քան 'ի սուղ գեղեցիկ քաջալեր խօսից՝ արդեամբք երկար մարզից հրահանգաց պատերազմն վճարի:

Հ. Եւ այս սկիզբն լինէր մարտին. Արգիւացիք ընդ մարտակից դաշնաւորս իւրեանց խրոխտագոյնս և զայրագինս դիմելով. իսկ Լակեդեմոնացիք յամրաքայլ 'ի ձայն սրնգի և փողոց՝ ոչ 'ի պատիւ աստուծոյն, այլ զի 'ի չափ հաւասար ոտից խաղասցէ չուն, և մի՛ չփոթեսցի ռազմն, որ սովոր է լինել 'ի յառաջխաղացութիւնս բազմամբոխ զօրուն:

ՀԱ. Իբրեւ մօտ առ միմեանս ախոյեանքն մերձենային, այսպիսի ինչ խորհուրդ խորհեցաւ Ագիս. և զի դէպ լինի յաճախ 'ի յարձակել զօրուն 'ի կռիւ ընդլայնել աջոյ թեւին, և աստի և անտի երկուստեք աջինք զահեկաւ հակառակորդացն զեղուլ. և պատճառք իրացս, զի իւրաքանչիւր մարտիկ ջանայ 'ի բնէ առ ահին զանգէն կողմն մարմնոյն ընդ վահանաւ աջակողմեան ընկերին պատսպարել, և կարծէ սեղմելով խիտ զռազմն՝ աներկեւան ևս ամրանալ: Եւ նախկին պատճառք այսր՝ զի որ զօրավարէն յաջում թեւին, պնդէ անդադար զանգէն կողմն՝ զգուշանալով 'ի հարուածոց թշնամւոյն, որով 'ի նոյն զհետ իւր ձգէ և զայլսն: Իճակատամարտիս տարածեալ զեղուին Մանտինէացիք զահեկաւ Սկիրիտայ, բայց առաւել ևս Լակեդեմոնացիք և Տեգէացիք բազմութեամբ զԱթենացւովք պատէին. վասն որոյ երկուցեալ Ագիս թէ փակեսցի ահեակ իւր թեւն, և տեսեալ ծաւալել յոյժ Մանտինէացւոց՝ 'ի նշան հրամանին խաղացոյց զՍկիրիտս և զԲրասիդեան գունդն 'ի ձախակողմն, 'ի հաւասարութիւն ճակատուն Մանտինէացւոց. և առ 'ի լնուլ զպարապ գնդիցս՝ պատուէր ետ Հիպ-

պոնոյիդայ և Արիստոկլեայ զօրավարացն անցանել անդր յաջոյ Թևէ անտի 'ի տեղին երկոքին գնդովք. խորհէր չատ իսկ ամրացուցեալ սովաւ զաջ Թևն, և որ ընդդէմ Մանտինէացւոց էին պնդագոյնս գործել:

ՀԲ. Բայց զի անկարծ և 'ի ժամու յարձակման Թշնամւոյն էր հրաման արքայի, անսաստեցին զօրավարքն Հիպպոնոյիդաս և Արիստոկլէս խաղալ 'ի տեղին, որոյ վասն 'ի վատութիւն ամբաստանեալ տարագիր եղեն 'ի Սպարտայ: Եւ 'ի յամել գնդին ըստ բանի հրամանի արքայի յառաջել 'ի կողմն կոյս Սկիրիտաց, և ոչ սոցա կարացեալ դարձ առնել 'ի նոյն յառաջին տեղին, ժամ եղև Թշնամւոյն գրոհ տուեալ անկանել 'ի վայրն դատարկացեալ: Եւ այսպէս յամենայնի նուազեալ գտան Լակեդեմոնացիք 'ի փորձոյ հմտութենէ, այլ ոչ և յարութեան մասին. զի 'ի խառնել մարտին՝ աջ Թև զօրուն Մանտինէացւոց վանեալ խորտակեաց զՍկիրիտս և զգունդն Բրասիդեան. և նոքին դարձեալ Մանտինէացիք դաշնաւորովք իւրեանց և այրընտիր հազար Արգիացւովք անկեալ 'ի վայրն դատարկ՝ անհնարին կոտորածս Լակեդեմոնացւոց հասուցին. և փակեալ զնոսա՝ մինչև 'ի սայլս աղխից կարասեաց հալածական տարան, և զոմանս 'ի կարասապահ զօրուէն 'ի ծերոց՝ սրակոտ արարին: Այլ մինչդեռ յայսմ կողմանէ հարեալ 'ի պարտութիւն մատնէին Լակեդեմոնացիք, այլուր՝ մանաւանդ 'ի բուն բանակին յորում էր Ագիս արքայ՝ երեքհարիւրովք վաշտու հեծելոց անկեալ 'ի վերայ Հնգագնդեան կոչեցեալ հինաւուրց զօրուն Արգիացւոց և Կլէոնացւոց և Որնէացւոց և Աթենացւոց ճակատելոց առ նոքօք, 'ի փախուստ զնոսա դարձուցին. յորոց բազումք և յառաջնում անդ յարձակման Լակեդեմոնացւոց, չհամարձակեալ յընդդիմամարտել տեղի ետուն, և առ խուճապ տագնապին եղեն ոտք և ոտնակոխ կորեան:

ՀԳ. Ի կորանալ մասի զօրուն Արգիացւոց և դաշնաւորաց նոցուն և 'ի տեղի տալ, խորտակեցան և երկոքին

իսկ Թեւք նոցա. տարածեալ անդ յայնժամ աջ Թև Լակե-
դեմոնացւոց և Տեգէացւոց փակեաց 'ի մէջ զԱԹենացիս,
որ երկուատեք վտանգէր, 'ի միոյ կողմանէ պաշարեալ և 'ի
միւսոյ անդէն յաղԹահարեալ. յորում եԹէ հեծելազօ-
րուն նոցա չէր հասեալ 'ի Թիկունս, չարագոյն ևս քան
զողջոյն իսկ բանակ զօրուն կրէին հարուածս: Տեսեալ յայն-
ժամ Ագիսայ զպարտուԹիւն ահեակ Թևին առաջի Ման-
տինէացւոց և հազարացն Արգիացւոց, խաղացոյց զհամօրէն
գունդն 'ի կողմն տագնապելոցն. և այսպէս 'ի յառաջել
զօրուն Լակեդեմոնացւոց՝ խլրտեալ տեղի ետուն ԱԹենա-
ցիք, ընդ նոսա և Արգիացիքն պարտեալք անձնապուր ճո-
ղոպրեցան: Իսկ Մանտինէացիք և դաշնաւորքն և ընտիրքն
Արգիացւոց տեսեալ զպարտուԹիւն իւրեանցայոցն և
զյառաջ խաղալ Լակեդեմոնացւոց, ոչ ևս այլ զօրելով
յընդդիմամարտ Թշնամւոյն՝ դարձան 'ի փախուստ: Ոչ սա-
կաւք 'ի Մանտինէացւոց անկան մեռեալք. այլ յԱրգիա-
ցւոց յայրընտիր զօրուէն բազմագոյնք ապրեցան: Իսկ
փախուստ նոցա և նահանջ ոչ հապճեպ և ոչ երկար եղև.
քանզի Լակեդեմոնացիք մինչև 'ի պարտուԹիւն և 'ի խոր-
տակումն նոցա արիաբար մարտուցեալ, ոչ ևս այլ երկար
զհետ փախստէին պնդեցան:

ՀԴ. Եւ օրինակ զայս, կամ ոչ օտար յայսմանէ վճա-
րէր մարտս, որ 'ի բազմաց հետէ մեծագոյն քան զայս
կռիւ 'ի Հելլէնս չէր հանդիպեալ, ձեռն հռչակաւոր քա-
ղաքանւոյն 'ի նոյն խառնելով: Լակեդեմոնացիք զԹշնա-
մեաց անկելոց զէնս 'ի հանդիսի եդեալ և նշան յաղԹու-
Թեան կանգնեալ՝ դիակապուտ զնոսա արարին. բարձին և
զիւրեանց մեռեալս տանել Թաղել 'ի Տեգէա, Թողեալ և
Թշնամեաց զիւրեանց դիակունս դաշամբ: Եւ անկան յԱր-
գիացւոց, յՕրնէացւոց և 'ի Կլէոնացւոց եօԹնհարիւր մե-
ռեալք. երկերիւր 'ի Մանտինէացւոց, երկերիւր յԱԹե-
նացւոց և յԵգինացւոց, և երկոքին զօրավարք նոցա ընդ
նոսա: Ոչ մեծ ինչ և արժանաւոր յիշելոյ կրեցին կորուստ

նիզակակիցք Լակեդեմոնացւոց. բայց բուն իսկ Լակեդեմոնացւոցն չէ դիւրին ճշգրտիւ գիտել. ասէին անկանել մեռեալ երից հարիւրոց 'ի նոցանէ։

ՀԵ. Յորժամ մօտ էին սոքա սկիզբն առնել պատերազմիս, Պլիստոանաքս երկրորդ արքայ Լակեդեմոնացւոց ժողովեալ զծերս և զպատանիս՝ գայր յօգնականութիւն իւրոցն, և հասեալ 'ի Տեգէա լուաւ զեղեալ յաղթութիւն և դարձաւ յետս։ Եւ որք 'ի Կորնթեայ և արտաքոյ Իսթմեան նեղցին գային դաշնաւորք՝ առաքեցին և առ նոսա Լակեդեմոնացիք հակառակ պատուէր հրամանի, դարձան և նոքեանք. արձակէին և զդաշնաւորս 'ի պատճառս Կառնեան տօնից խմբելոյ, որ մերձ էր։ Եւ միով այսու նահատակութեամբս զերծան Լակեդեմոնացիք յեպերանաց անտի, որով բամբասէինն զնոսա յայնժամ Հելլէնք 'ի վատութիւն վասն ձախողակի արկածից կղզւոյն, և այժմ արդ, զի ձախողեալ երբեմն 'ի բաղդէն, այլ միշտ նոյն կամք էին նոցա և նոյն արութիւն։ Իսկ աւուրբ յառաջ քան զճակատամարտն յարձակեալ Եպիդաւրացիք ազգովին յերկիրն Արգիացւոց, և 'ի պատճառս պատերազմին Թափուր գտեալ զայն 'ի զօրաց, և զբազումս զօրս գտին 'ի պահանորդաց Թողլոց անդր կոտորեցին։ Յետ վճարելոյ պատերազմին երեքհազար ասպարազէն յԷլէացւոց, և հազար մի՝ Թողզառաջին հազարն, հասեալ օգնական Մանտինէացւոց խաղացին յԵպիդաւրոս՝ մինչդեռ Լակեդեմոնացիք 'ի Կառնեան տօնախմբութիւնս էին. և բաժանեալ յիւրեանս զաշխատութիւն գործոյն, պատնէշ պաշարմամբ փակեցին զքաղաքն։ Եւ մինչ դադարէին այլք 'ի վաստակոց, Աթենացիք յետ վճարելոյ զիւրեանց բաժին՝ ամրացուցին և զակառն, յորում էր մեհեանն Հերայ։ Եւ Թողեալ նոցա ամենեցուն պահնակս ամրոցին՝ մեկնեցան իւրաքանչիւր յերկիր իւր, և վախճան եղև ամարայնոյս։

ՀԶ. Ի յաջորդել ձմերայնոյ ելին Լակեդեմոնացիք յետ Կառնեան տօնից զօրօք 'ի Տեգէա, և արձակեցին անտի

պատգամս խաղաղութեան յԱրգոս՝ 'ի բանս տարարեալ կանխաւ զոմանս 'ի քաղաքայնոց, որոց ձիգն էր քակել զիշխանութիւն ռամկին, որք և յուսային յետ պատերազմին 'ի սոյն կարծիս միաբանել անաշխատ և զժողովուրդն: Կամք էին սոցա դուլ զինուց առնել նախ ընդ Լակեդեմոնացիս, ապա և դաշն նիզակակցութեան, և այսպէս ուրեմն բառնալ զվարչութիւն ամբոխին: Եհաս անդր առանձական Արգիացւոց Լիքաս որդի Արգեսիլայոսի կրկին բերելով պատգամս առ նոսա 'ի դիմաց Լակեդեմոնացւոց, ըստ ընտրութեան կամաց ընդունելեացն պատերազմի կամ խաղաղութեան: Յետ բազում հակառակ իրերաց խօսից, քանզի անդր հանդիպէր և Ալկիբիադ, յաղթեաց կողմն Լակեդեմոնացւոց, որ արդէն իսկ յայտնապէս գլուխ ամբառնայր, հաւանեցուցանել զԱրգիացիս յընդունելութիւն առաջարկեալ խաղաղութեան, որ և եղև օրինակ զայս.

Հէ. « Հաճոյ թուեցաւ ժողովոյ Լակեդեմոնացւոց դաշնադիր ընդ Արգիացիս լինել պայմանօքս այսոքիւք. դարձուսցեն Արգիացիք յՈրքոմենացիս զմանկունս նոցա, 'ի Մենալիացիս զարս դերեալս, 'ի Լակեդեմոնացիս զպատանդս տարեալս 'ի Մանտինէա, և ելանել յԵպիդաւրեայ կործանելով զամրութիւնս նորա:

Եւ 'ի չկամել Աթենացւոց թողուլ ելանել յԵպիդաւրեայ՝ 'ի թշնամիս Արգիացւոց և Լակեդեմոնացւոց համարեսցին և դաշնաւորաց նոցուն Արգիացւոց և Լակեդեմոնացւոց:

Դարձուսցեն Լակեդեմոնացիք 'ի քաղաքս իւրաքանչիւր զմանկտին կալեալ 'ի նոցանէ 'ի պատանդութիւն:

Որ վասն աստուծոյն է Ապողոնի երդումն տացուք Եպիդաւրայցւոց, արասցուք զի և նոքա երդնուցուն:

Քաղաքանին 'ի Պելոպոնէս մեծամեծք և փոքունք ըստ նախնեաց կարգի և ըստ սովորութեան ինքնօրէն ազատք իցեն: Եթէ օտար ոք ժողովուրդ արտաքոյ Պելոպոնեսեայ

վնասակար խորհրդով իշխեսցէ մտանել 'ի նոյն, միաբան հասարակաց հաւանութեամբ, որպէս ինչ իրաւացի թուիցի Պելոպոնեսացւոց՝ ջանասցեն վանել զնա անտի 'ի բաց:

Եւ որք արտաքոյ Պելոպոնեսեայ դաշնաւորք են Լակեդեմոնացւոց, որպէս որք 'ի Պելոպոնէս Լակեդեմոնացւոց և Արգիացւոց՝ 'ի նոյն իրաւունս կացցեն, պահելով զոր ունին զերկիր և զկալուածս:

Ծանուսցեն զայս դաշնաւորաց ամենեցուն, զի եթէ և նոցա հաճոյ թուեսցի, գալ 'ի միաբանութիւն հաւանութեան. իսկ եթէ այլազգ ինչ կամք իցեն, նուիրակութիւն վասն այսր 'ի Լակեդեմոն արձակեսցեն »:

ՀԸ. Ընկալան նախ Արգիացիք զպայմանս դաշնաւորութեանս այսորիկ, և մեկնեցաւ զօրն Լակեդեմոնացւոց 'ի Տեգէայ, և յետ այնորիկ կցորդութիւն հաւասարութեան առ միմեանս լինէր. ընդ հուպ ապա նոքին իսկ արքն ստիպէին զԱրգիացիս հրաժարել 'ի նիզակակցութենէ Մանտինէացւոց, Եղէացւոց և Աթենացւոց, և ընդ Լակեդեմոնացիս կռել դաշինս խաղաղութեան և նիզակակցութեան, որոյ պատճէն օրինակին էր այս:

ՀԹ. Հասարակ հաւանութեամբ հաճոյ թուեցաւ Լակեդեմոնացւոց և Արգիացւոց առնել յիւրեանս խաղաղութիւն յիսնամեայ, և դաշինս նիզակակցութեան օրինակ զայս.

« Հաւասարք իցեն յիրաւունս արդարութեան և 'ի դատաստանի ըստ հայրենաւանդ սովորութեան: Հասարակաց իցէ և այլոց քաղաքաց Պելոպոնեսեայ խաղաղութիւն և դաշնակցութիւն. ինքնօրէնք իցեն ամենեքեան և ազատք պահելով զիւրուրոյն իրաւունս կալուածոց երկրի, և հաւասարք առաջի արդարութեան և դատաստանի ըստ հայրենի կարգաց սովորութեան:

Եւ որք արտաքոյ Պելոպոնեսեայ դաշնաւորք են Լակեդեմոնացւոց՝ 'ի նոյն պայմանս իրաւանց իցեն յոր և Լակեդեմոնացիք. նոյնպէս և Արգիացւոցն դաշնաւորք յո-

բուն և Արգիացիք են, անխախուտ պահելով զիւրաքանչիւր ստացուածս:

Եթէ հարկ լիցի արշաւանս ուրեք գնել, միաբան խորհրդով Լակեդեմոնացւոց և Արգիացւոց եղիցի այն՝ արդարապէս յօգուտ դաշնաւորաց:

Եթէ ուրեք 'ի քաղաքս 'ի ներքոյ կամ արտաքոյ Պելոպոնեսեայ ծագեսցին վէճք 'ի վերայ սահմանաց իւրաքանչիւր նոցա, կամ վասն այլոյ իրիք խնդրոյ՝ օրինօք դատաստանի իրաւախոհ լինիցին: Իսկ եթէ 'ի միջի դաշնաւորաց՝ քաղաք ընդ քաղաքի հակառակութիւն ինչ ունիցին, ընտրեսցեն միաբան հաւանութեամբ զերրորդ ոմն քաղաք 'ի դատաւոր իրաւարար, որ ոչ յայս կամ յայն կողմն միտել ախորժիցէ: Եւ իւրաքանչիւր քաղաքի քաղաքացի ըստ հայրենի օրինաց ժողովրդեան դատեսցի »:

Զ. Այս եղեն պայմանք դաշանցս խաղաղութեան և նիզակակցութեան. և դարձուցան 'ի տեարս որչափ ինչ գրաւեալ յիրերաց երկրակալութիւնք էին, և վախճան եղև վիճից և կռուոց:

Եւ սահմանեցին նոքա միաձայն հաւանութեամբ յիւրեանս չընդունել յԱթենացւոց ոչ քարոզ և ոչ հրեշտակ, մինչև թողեալ նոցա զՊելոպոնէս և զամուրս զինագործ արարեալ. և չառնել ընդ նոսա ոչ պատերազմ և ոչ խաղաղութիւն, բայց եթէ միաբան հաւանութեամբ: Եւ վարէին պնդէին նոքա միապէս ոգւով նախանձու, հրեշտակս արձակելով 'ի քաղաքս Թրակիոյ և առ Պերդիկկաս արքայ, և յորդորէին զնոսա եւս 'ի դաշնակցութիւն միաբանութեան ընդ իւրեանս: Բայց ոչ վաղվաղէր Պերդիկկաս յետս կալ 'ի դաշնակցութենէ Աթենացւոց, այլ իբրև ետես ուծացեալս զԱրգիացիս 'ի նոցանէ, և ինքն գայթ 'ի գայթի կայր այնուհետև, զի 'ի նախնեաց անտի իւրոց յԱրգոսէ էր և ինքն: Իսկ ընդ Քաղկիսացիս նորոգեցին նոքա զիւրեանց վաղեմի երդումն, յաւելեալ 'ի նոյն տալ և այլ նոր երդումն: Հրեշտակս արարին Արգիացիք և առ Ա-

Թենացիս Թողուլ զպաշարումն Եպիդաւրեայ. որոց տեսեալ զսակաւութիւն պաշարիչ զօրուն առ բազմութեան պահանորդաց քաղաքին, յղեցին զԴեմոսթենէս 'ի բաց ածել անտի զզօրն: Հասեալ Դեմոսթենեայ պատճառէր մըրկամարտիկ մրցութիւնս կարգել արտաքոյ ամրոցին. և յելանել զօրուն ըստ ամրոցն, հրաման ետ առնուլ զդրունսն: Բայց յետ այնորիկ նորոգելով Աթենացւոց զդաշինս իւրեանց ընդ Եպիդաւրացիս՝ դարձուցին 'ի նոսա զամրոցն:

ԶԱ. Իբրև յետս կային Արգիացիք 'ի դաշնակցութենէ Աթենացւոց՝ պինդ կային տակաւին Մանտինէացիք. բայց տեսեալ ապա եթէ առանց Արգիացւոց չկարեն ինչ առնել, միաբանեցան և նոքա ընդ Լակեդեմոնացիս՝ հրաժարեալք 'ի նախիշխանութենէ քաղաքաց: Լակեդեմոնացիք և Արգիացիք զինեալ իւրաքանչիւր հազար մի մարտիկ՝ ելին միաբան 'ի չու. Լակեդեմոնացիք 'ի Սիկիոն երթալով հաստատեցին անդանօր զսակաւուց պետութիւն, և ապա ձեռն յԱրգիացիս տուեալ՝ լուծին զիշխանութիւն ռամկին յԱրգոս և զսիրելին Լակեդեմոնացւոց զսակաւապետութիւն կարգեցին: Եւ այս ամենայն լինէր 'ի վերջ կոյս ձմերայնոյ և 'ի սկսանել գարնայնոյ. որով և վախճան եղև չորեքտասաներորդի ամի պատերազմին:

ԶԲ. Իսկ 'ի գալ ամարայնոյ՝ Դիկտիդիացիք բնակիչք Աթոս լերին յետս կացեալ յԱթենացւոց՝ յարեցան 'ի Քաղկիսացիս, և Լակեդեմոնացիք ըստ հաճոյս իւրեանց կարգեցին վարչութիւն յԱքայիա: Կուսակիցք ամբոխին յԱրգոս տակաւ միաբանեալ յիւրեանս խրախուսեցին գլուխ ամբառնալ ընդդէմ սակաւուց, և մնային պարապոյ հանդիսի մերկակռիւ մրցութեանց մանկտւոյն Լակեդեմոնացւոց: Եւ 'ի խանձել քաղաքամարտ կռուոյ՝ զօրանայր ռամիկն 'ի վերայ հակառակորդաց իւրոց, էր զոր կոտորէր և էր զոր հալածական վարէր: Լակեդեմոնացիք որ վաղ իսկ 'ի բազմաց հետէ կոչելով 'ի բարեկամաց իւրեանց և դանդաղէին՝ փութացան յայնժամ հասանել նոցա 'ի Թի-

կունս, յայլում ժամանակի Թողեալ զտօն հանդիսի մրցու-
Թեանց ագոնին. և 'ի Տեգէա լուեալ զպարտութիւն սակաւ
իշխան վարչաց, ոչ ևս յառաջել զՃանապարհն կամէին, և
աղերսարկու Թախանձանաց անգամ վտարելոցն ոչ անսալով՝
դարձան անդրէն 'ի հայրենիս 'ի կատարել զտօն հանդիսի
մերկամարտ խաղուցն: Եւ ահա եկին հասին և հրեշտակք
յԱրգիացւոց՝ առաջի առնել զբողոք իւրեանց՝ յորոց 'ի
քաղաքին էին և յորոց արտաքոյ: Եւ 'ի խօսել նոցա երկո-
ցունց կողմանց 'ի ժողովի դաշնաւորաց երկարագոյնս, խե-
լամուտ լեալ Լակեդեմոնացիք զանիրաւութենէ որոց 'ի
քաղաքին էին բռնացեալք, սահմանեցին խաղալ 'ի վերայ
Արգոսի, բայց ժամանակեալ յամէին: Այլ 'ի ժամանակս
երկուցեալ ժողովրդեան Արգիացւոց յերեսաց Լակեդե-
մոնացւոց, սկսան վերստին 'ի նիզակակցութիւն Աթենա-
ցւոց Թեւակոխել, իբրու կարևորագոյն իւրեանց. և կան-
գնէին զերկայն պարիսպն ձգելով զայն մինչև 'ի ծով, որ
եթէ 'ի ցամաք կուսէ փակեսցին, հասցէ նոցա պարէնք և
պաշար 'ի ձեռն Աթենացւոց ընդ ծով: Եւ ոմանք 'ի քա-
ղաքաց Պելոպոնեսացւոց հաւանէին լռելեայն ընդ շինու-
Թիւն պարսպին. և Արգիացիք ինքեանք և կանայք նոցա և
ծառայք քաղաքովին 'ի գործ շինուածոյն ժրանային. եկին
և յԱթենացւոց քաղաքէն քարակոփք և Ճարտարք, և
վախճան եղև ամարայնոյն:

ՁԳ. Ի գալ ձմեռայնոյ լուեալ և Լակեդեմոնացւոց
եթէ կանգնէին պարիսպքն, խաղացին յԱրգոս ինքեանք և
դաշնաւորք նոցա՝ բաց 'ի Կորնթացւոց, և առաջնորդ զօ-
րուն էր Ագիս արքայ Լակեդեմոնացւոց որդի Արքիդա-
մեայ. սակայն ակնկալութիւն նոցա կանուխ պատրաստե-
լոյ ձեռնտուութեան 'ի քաղաքէն՝ 'ի դերև ել. բայց ա-
ռեալ զամրութիւնս պարսպին քանդեցին, կալան և զի-
սիաս քաղաք յերկրին Արգիացւոց, և կոտորեցին զամե-
նայն այր ազատ՝ զորս միանգամ կալան, և դարձաւ իւրա-
քանչիւր յերկիր իւր և 'ի քաղաք: Ելին և Արգիացիք 'ի

վերայ երկրին Փլիասիացւոց և աւերածս զանդաստանօք նոցա ածեալ մեկնեցան, փոխանակ զի ընկալեալ էր նոցա զտարագիրս յԱրգոսէ, յորոց և զբազումս առ իւրեանս ժողովեալ: Ի ձմերանիս փակեալ պաշարեցին Աթենացիք զծովեզերեայս Մակեդոնիոյ՝ բողոք կալեալ ընդդէմ Պերդիկկայ, զի միաբանէր նա ընդ Արգիացիս և ընդ Լակեդեմոնացիս. և յարշաւել նոցա 'ի վերայ Քաղկիսացւոց Թրակիոյ և Ամփիպօլեայ ընդ զօրավարութեամբ Նիկիասայ Նիկերատեան, ստեաց նա և չեկաց յերդման նիզակակցութեան. և մեկնելով անտի 'ի բաց՝ պատճառս ետ ցրելոյ բանակին, վասն որոյ և 'ի թշնամիս զնա համարէին: Այսպէս վախճան եղև ձմերայնոյս և հնգետասաներորդի ամի պատերազմին:

ԶԳ. Ի գալ ամարայնոյ նաւարկեալ Ալկիբիադեայ քսան նաւօք յԱրգոս, և կալաւ զարս երեքհարիւր՝ իբրու կասկածաւորս 'ի համախոհութիւն ընդ Լակեդեմոնացիս. և նստուցին զնոսա Աթենացիք 'ի կղզիս մերձաւորս՝ որ ընդ իշխանութեամբ նոցա էին: Արշաւանս եդին Աթենացիք և 'ի Մելոս երեսուն նաւօք, յորոց վեց 'ի Քիոսէ էին և երկու 'ի Լեսբեայ. զինեալ 'ի նոսա հազար երկերիւր ասպարակիր զօրական, երեքհարիւր հետևակ աղեղնաւոր, և քսան հեծեալ նոյնպէս աղեղնաւոր. և 'ի դաշնաւորացն իւրեանց 'ի կղզայնոց հազար հինգհարիւր սպայակոյտ ասպարաւոր: Մելոսացիք հաստուածք էին Լակեդեմոնացւոց և ոչ կամէին որպէս զայլս 'ի կղզայնոց հնազանդել Աթենացւոց. և 'ի սկզբանէ անտի պատերազմիս ոչ յայս և ոչ յայն կողմն մտելով՝ հանդարտեալ նստէին. և 'ի նեղել զնոսա ապա Աթենացւոց ասպատակաւ, զէն առին յայտնապէս: Եւ զօրավարք զօրուն Աթենացւոց էին Կլէոմեդէս որդի Լիկոմեդեայ և Տիսիաս Տիսիմաքեայ, որ ամենայն պատրաստութեամբ իւրեանց բանակեալ յերկրին, չև ձեռս 'ի վնաս նորին մխեալ՝ պատգամաւորութեամբ բանագնաց եղեն առ Մելոսացիս: Մելոսացիք փոխանակ 'ի ժողով

ռամկին զպատգամաւորսն հանելոյ, առ սակաւիշխան աւագանին մուծին զնոսա, գիտելոյ վասն եկեալ էին: Եւ խօսեցան պատգամաւորքն Աթենացւոց յայս ձև օրինակի.

ՁԵ. Աթենացիք. « Եւ զի ոչ առ ժողովուրդն թողաք 'ի ձէնջ կարգել զբան հրեշտակութեանս, զի մի' 'ի լուր միաջար հրապոյր բանից չունելով ամբոխին պարապ պատասխանւոյ՝ պատրեալ ըմբռնիցի. այս կարծեմ ձեր խորհուրդ հանելոյ զմեզ առ աւագանին: Դուք ուրեմն, ատենակալք, որ բազմիքդ 'ի լուր բանիցս, կալարուք ձեզ ճանապարհ զգուշագոյն. միտ եդեալ իւրաքանչիւր առաջարկեալ խօսից 'ի մէնջ, և որ անդէպ ինչ ձեզ թուեսցի, արարէք ուրոյն զարժանաւոր պատասխանին: Ասացէք ապա նախ, հաճո՞յ իցէ ձեզ առաջարկս այս »: Որում ատեան ժողովոյ Մելոսացւոց արարին պատասխանի.

ՁԶ. Մելոսացիք. « Մեղմական զգօնութեամբ վարդապետ և ուսուցիչ իրերաց լինել չէ՛ ամենևին եպերանաց գործ. բայց ոչ կասկածաւոր միայն, այլ մօտալուտ վերահաս պատերազմին սպառնալիք՝ այլազգ գլխովին քան զայդ չափաւորութիւն տան մեզ իմանալ: Զի դատաւորս զձեզ տեսանեմք եկեալ բանից մերոց, որոյ և վախճան ամենևին իսկ յայտ է. զի եթէ 'ի յանդիմանութիւն իրաւանց մերոց յաղթողք երևեսցուք՝ որով և անզիջող առաջարկութեանդ, ելք իրացն 'ի պատերազմ յանգիցէ. իսկ եթէ հաւանեալ տեղի տայցեմք՝ 'ի ստրկութիւն ծառայութեան »:

ՁԷ. Աթենացիք. « Զի եթէ զերկմտութենէդ յառապայսդ, և ոչ ըստ առաջիկայ հանգամանաց իրաց՝ զփրկութենէ քաղաքիդ խորհելոյ ժողովեալ էք, լռեալ դադարեսցուք. իսկ եթէ զփրկութենէդ՝ ո՛ն առեալ խօսեսցուք »:

ՁԸ. Մելոսացիք. « Ի դէպ է և ներելոյ արժանաւոր, 'ի պայմանի յորում եմքս՝ ընդլայնել բազմօք զբանս մեր, և այլազգ ունել քան զձեզ կարծիս: Եւ զի ատեանս այս ժողովոյ 'ի փրկութիւն մեր է, ըստ օրինակիս ապա զոր պատշաճ դատիք՝ կալցուք զկարգ խօսիցս »:

ՁԹ. Աթենացիք. « Եւ զի չէն մեր կամք պաճուճեալ երկարաձիգ բանիւք՝ որ կասկածելին է, ցուցանել ձեզ թէ քանի՜ իրաւացի է յաղթողաց Մարին հրամանատու և գլուխ կալ, և կամ թէ անիրաւեալք 'ի ձէնջ 'ի վրէժ քի-նուն գամք այսօր. և հակառակն՝ չկամիմք իսկ լսել 'ի ձէնջ և կամ հաւանել թէ հատուած գոլով ձեր գաղթեալ 'ի Լակեդեմոնացւոց՝ հրաժարելովդ 'ի զինուորելոյ ընդ մեզ, չանիրաւեցայք ինչ մեզ: Այլ որ հնարաւորն է ստու-գիւ խելամտել մեզ և ձեզ, այնմ զհետ գնասցուք. քանզի 'ի մարդկեղէն խորհուրդս՝ գիտեմք յայնժամ պաշտի ար-դարութիւն, յորժամ երկուստեք 'ի հաւասար հարկէն 'ի նոյն բռնադատիցին. այլ սաստ հզօրաց հրամայել է և տկարաց հպատակել» :

Ղ. Մելոսացիք. « Քաջ է. որովհետև քան զարդարոյ և զիրաւէն՝ զօգտակարէն ընտրէք դուք առաւել խօսել, ներեսցի ապա և մեզ ասել զշահաւորն. մի՛ բառնալ զհասա-րակաց բարին զազատութիւն, այլ վտանգելոցս մանաւանդ շնորհել զարդարն և զպատշաճական, և քան զանաչառ արդա-րութիւն՝ խնդրել զշահ օգտի: Որ քան ամենեցուն այլոց շա-հաւորագոյն ձեզ իցէ այս, զի մի՛ 'ի գթելդ ձեր և 'ի գլորել ահաւորագոյն օրինակ պատուհասի այլոց թողուցուք» :

ՂԱ. Աթենացիք. « Վասն մեր թէպէտ և վախճան տէ-րութեանս հասցէ, ոչինչ այնպէս սրտաբեկեալ լքանիցիմք. զի ոչ եթէ իշխեցողք այլոց՝ զոր օրինակ Լակեդեմոնացիք, ահագինք պարտելոց իցեն, թէպէտ չկայ ինչ մեր ընդ Լա-կեդեմոնացիս, այլ որ անբերելին է և ծանր, եթէ ծառայք ընդվզեալ իշխեսցեն տէրանց: Այլ մեզ թողեալ զվտան-գէս խորհել, ցուցցուք ձեզ եթէ որպէս 'ի շահ տիրապե-տութեանս մերոյ եկեալ այսր՝ ընդ փրկութեան քաղաքիդ միաբանել և զայդ կարիցեմք, զի իշխելով ձեզ անաշխատ, 'ի փրկութեան ձերում զհասարակաց զմեր և զձեր օգուտ շահեսցուք» :

ՂԲ. Մելոսացիք. « Եւ զիա՞րդ հանդիպեսցի միապէս

օգտակար լինել մեզ ծառայութիւնս, որպէս ձեզ տիրապետութիւնդ»։

ՂԳ. Արեւացիք. «Զի հպատակութիւնդ այդ ձեր յանհնարին աղետից զձեզ ապրեցուցէ. և մեզ չկորուսանելս զձեզ, 'ի շահ մեծ լինիցի»։

ՂԴ. Մեղուացիք. «Ապա եթէ հանդարտեալ նստիցիմք, և փոխանակ թշնամւոյ բարեկամ ձեզ լինիցիմք, ոչ ընդ ունեք զինուորելով, չիցէ՞ այս ձեզ ընդունելի»։

ՂԵ. Արեւացիք. «Ո՛չ. զի ոչ այնչափ թշնամութիւնդ ձեր այդ վնասակար մեզ լիցէ, որչափ բարեկամութիւնդ 'ի տկարութիւն մեզ համարեսցի առաջի իշխեցելոց. իսկ ատելութիւնդ՝ 'ի նշանակ զօրութեան մերոյ»։

ՂԶ. Մեղուացիք. «Այսպէս ուրեմն նկատեն հպատակք ձեր զիրաւն և զարդար, 'ի նոյն դնել 'ի համարի զնոսա որոց չիցէ ինչ կցորդութիւն ընդ ձեզ հասարակաց, որպէս որոց բազումք հատուածք 'ի ձէնջ, յետս կացեալք և կրկին նուաճեցան»։

ՂԷ. Արեւացիք. «Ոչ ունեք նուազեալ չքաւորել համարին նոքա յիրաւունս, այլ զօրութեան է յաղթել նոցա 'ի վտարանջութեան, և 'ի մէնջ երկիւղի չելանելոյ 'ի վերայ։ Այսպէս բաց 'ի տարածելոյ զիշխանութիւնս 'ի վերայ բազմաց, ձերովդ հպատակութեամբ նոր աներկեւանութիւն յաւելումք մեզ. դուք մանաւանդ կղզայինքդ չպարտիք առաջի հզօրագունի ծովակալ զօրութեան յոխորտալ ձերովդ տկարութեամբ»։

ՂԸ. Մեղուացիք. «Զհամարիցէք աներկեւանութիւն և յայսմ, զոր առաջի առնեմք ձեզ. որովհետեւ լռեցուցեալ զմեզ զարդարութենէ խօսելոյ՝ մղէք վարէք զմեզ անսալ ձերումդ շահու. և մեք արդ առաջի առնելով զօգուտն մեր, ջանամք հաւանեցուցանել զձեզ 'ի նոյն տեսանել և զձեր շահ օգտի։ Ո՞չ ապաքէն ձեր այդ գնացք 'ի թշնամիս յաւելուլ է՝ զորս ոչ ընդ ունեք են մարտակից, կասկածելով յիրաւի զի յաւուր միում և 'ի վերայ նոցա յարիջիք պա-

տերազմաւ. որ զի՞նչ այլ ինչ է, բայց եթէ զթիւ թշնամեաց ձերոց սատարացուցանել. և որք ոչ կամէին հակառակորդ ձեզ լինել, 'ի նոյն 'ի հարկէ զնոսա ստիպել»:

ՂԹ. Արեւմտացիք. «Եւ ոչ բնաւ երբէք. զի ոչ եթէ ահաւորագոյն մեզ համարիմք զբնակս ցամաք երկրին՝ որք 'ի պահ ազատութեան իւրեանց ընդդէմ մեր պնդեալ ամրանան, այլ զկղզեցիս աննուաճս որպէս զձեզ, և որք դառնացեալ զչարին ընդդէմ հարկի հպատակութեան, և յախուռն խորհրդով և զանձինս և զմեզ մղեալ խարդաւանեն 'ի յայտնի վիշտս վտանգի»:

Ճ. Մեղուացիք. «Արդ եթէ դուք առ յոտին պահելոյ զիշխանութիւնդ, և դոք 'ի ծառայութեան են՝ թափելոյ զազատութիւն իւրեանց այնչափ վտանգաց ժուժկալէք, մեք որ ազատքս եմք տակաւին՝ քանի՜ անարի վատութեան իցէ, զամենայն հնարս չհնարել չև ընդ լծով ծառայութեան խոնարհեալ»:

ՃԱ. Արեւմտացիք. «Ոչ՝ այդպէս, եթէ իմաստութեամբ կամիցիք խորհել. զի չէ աստ հանդէս մրցմանց հաւասար ընդ հաւասարի վասն արութեան քաջութեան, յորում յամօթոյ պարտութենէ խորշիցիք. այլ զփրկութենէ են մանաւանդ բանք, զի մի ընդդէմ հզօրագունին վայրապար կքրիցէք»:

ՃԲ. Մեղուացիք. «Բայց գիտեմք եթէ հասարակաց է բաղդ զինուց, անխտիր ընդ բազմութիւն և ընդ սակաւութիւն. զի եթէ վաղվաղեալ զիջանիցիմք՝ անյոյս իցեմք այնուհետև. այլ 'ի խրախուսելս արիական պնդութեամբ, իցէ թերևս յոյս յաջողութեան»:

ՃԳ. Արեւմտացիք. «Յոյս՝ յաղէտս վտանգին մխիթարութիւն է մարդոյ. որ 'ի յաւելորդաց ինչ մի 'ի վտանգի դնէ՝ վնասել վնասի նովաւ, բայց ոչ 'ի կործանումն. իսկ որ դոյն չափ զկեանս իւր դնէ 'ի վտանգի, զի 'ի բնէ վատնիչ է յոյս, յայնժամ ծանօթս տայ զինքենէ և զխաբկանաց իւրոց, երբ չէք այլ ևս փախուստ և երաշխաւորութիւն յայնմանէ: Ո՛վ դուք տկարքդ, որ 'ի մէտ մի բաղդին կա-

խեալ կայք, զգոյշ լերուք 'ի վերահաս արկածիցդ և մի՛ նմանիցէք նոցուն, որոց դեռ ևս ոչ չքաւորեալ 'ի մարդկեղէն ելից հնարից ապրեցուցանելոյ զանձինս 'ի տագնապնեղութենէն, յիսկական յուսոյն՝ յանյայտս դիմեն և յերկբայս՝ 'ի հմայս, 'ի պատգամս դից և յայլս սոյնպիսիս, որ ցնորիւք պատրանաց ածեն չարաչար կործանումն »։

ԾԴ. Մեղոսացիք. « Դժուարին յոյժ և մեք համարիմք, լերո՛ւք աներկբայ, ակարքս և անհաւասարք ընդ զօրութեան ձերոյ և ընդ բաղդիդ մրցել. սակայն և հաւատամք դիցն օգնականութեամբ չնուազել 'ի բաղդէն, զի ընդդէմ անիրաւաց 'ի վերայ սրբութեան և արդարութեան նահատակիմք. իսկ 'ի նուազ զպակասութիւն զօրութեան ակն ունիմք նիզակակցութեամբ Լակեդեմոնացւոց, եթէ ոչ վասն այլոյ իրիք, վասն տոհմային ազգակցութեան գոնեա, վասն պատուոյ ամօթոյն՝ ձեռն տալով նոցա մեզ։ Եւ այսպէս ուրեմն ոչ 'ի սպառ խօլաբար խրախուսեմք »։

ԾԵ. Աթենացիք. « Եւ որ արդ վասն աստուածայնոյն բարեհաճութեան շնորհին է, ակն ունիմք չպակասել և մեզ. զի ոչ օտար կամ՝ արտաքոյ մարդկայնոց մտաց կամ՝ հաւատոց խորհիմք ինչ կամ գործեմք։ Զաստուածայինն՝ 'ի հաւատս մտաց գիտեմք. իսկ զմարդկայինն՝ յայտնապէս ամենայն ուրեք 'ի հարկէ բնութեան, որ կարողն է՝ իշխէ։ Ոչ մեք ինչ եդաք զօրէնս, և ոչ մեք առաջին եղաք՝ որ նովաւ վարեցաք, որ էրն՝ ընկալաք, և թողցուք զայն զհետ մեր, որ և կայցէ մնայցէ յաւիտեան։ Վարիմք նովաւ՝ գիտելով չափ, զի եթէ դուք և եթէ այլ ոք 'ի մերս հասեալ միանգամ զօրութիւն, զնոյն գործիցէք։ Որով աստուածայնոյն նպաստից չերկբայիմք բնաւ նուազ քան զձեզ արժանաւորս լինել. իսկ վասն յուսոյ կարծեացդ առ Լակեդեմոնացիս՝ հաւատալով առ ամօթոյ ձեռնտու ձեզ լինել, զմիամտութիւնդ երանելով չնախանձիմք ընդ անխորհուրդվատահութիւնդ։ Քանզի Լակեդեմոնացիք առանին յիւրեանս և 'ի յօրէնս վարչութեան երկրին առաքինանալ ա-

ռաքինանան. այլ առ օտարս, թէպէտ և բազում ինչ ունիմք ասել, սակայն շատ է սակաւուք անցանել զորոց գիտեմքս յայտնապէս, զհաճոյականն՝ ընդ պատշաճն գրեն և զօգտակարն՝ յիրաւացի։ Եւ արդարև ձերումդ անխորհուրդ յուսոյ փրկութեան չէ կարի նպաստաւոր այսօրինակ նոցա գիտումն խորհրդոց»։

ՃԶ. Մելոսացիք. «Վասն այսորիկ իսկ հաւատամք, եթէ վասն օգտի շահուն իւրեանց՝ մատնելով զՄելոսացիս հատուած 'ի նոցանէ, ոչ կամեսցին կասկածաւոր լինել բարեկամաց իւրեանց Հելլենաց, և ձեռնտու թշնամեաց շահուն»։

ՃԷ. Աթենացիք. «Համարիցիք ուրեմն եթէ 'ի զգուշութեան, յաներկեւանութեան իցէ օգտակարն, և ընդ արդարոյ և ընդ բարւոյ կցորդ միշտ վտանգն, և սակայն դուն ուրեք Լակեդեմոնացիք 'ի վտանգս դիմագրաւել ախորժին»։

ՃԸ. Մելոսացիք. «Սակայն վասն մեր առաւել յառաջամիտ լինել նոցա կարծեմք, և քան այլոց՝ ձեռն տալ մեզ, և զի յարդեանց իսկ մերձաւոր եմք 'ի Պելոպոնէս, և տոհմակցութիւնս հաւատարմագոյն առ նոսա»։

ՃԹ. Աթենացիք. «Երաշխաւորութիւն նիզակակցաց ոչ 'ի բարեմտութեան աղերսարկուաց է, այլ իրօք յիսկական առաւելութեան զօրութեան, զոր նկատեն մանաւանդ Լակեդեմոնացիք. որք և անվստահք յիւրեանց առանձին պատրաստութիւնս՝ ամբոխիւ դաշնաւորաց ելանեն 'ի կռիւս։ Եւ չէ 'ի դէպ, ցորչափ նաւատորմաւս մերով հզօր եմք 'ի ծովու, համարձակել նոցա ելանել 'ի կղզի ուրեք»։

ՃԺ. Մելոսացիք. «Մարթ է նոցա և զայլս արձակել, զի լայնածաւալ է ծով Կրետական, ընդ որ անհնարին իցէ թերևս ծովակալ զօրութեան ըմբռնել զթշնամին՝ քան սմա փախստեամբ ապրել։ Եւ եթէ թերանայցեն յայսմ Լակեդեմոնացիք, արձակեսցեն յերկիր ձեր և յերկիր դաշնաւորաց ձերոց, ուր չկոխեցին ոտք զօրաց Բրասիդայ.

և յայնժամ ոչ 'ի վերայ օտարին, այլ 'ի վերայ բնիկ երկրին և դաշնաւորաց մնայցէ ձեզ աշխատ լինել»:

ՃԺԱ. Արքեմացիք. «Զփորձ առեալ է ձեր և չէք ինչ անգէտ. զի ոչ երբէք առ երկիւղի յետս կացին Աթենացիք 'ի պաշարմանէ ուստէք քաղաքի: Բայց տեսանեմք, զի առաջի արարեալ մեր զփրկութենէդ խորհել, յերկարաձիգ բանախօսութեանս ցարդ՝ չասացէք ինչ, յոր զյոյս փրկութեան յենուլ ոք կարասցէ. այլ հզօրագոյն ապաւինութիւնդ յակնկալիս միայն է, իսկ որք կանս թեթև և անբաւական 'ի յաղթել ընդդիմակացն: Բազում անիմաստութեան խորհուրդս խորհիք, եթէ մինչդեռ ժամանակ է, չև մեկնեալ մեր աստի, ոչ այլազգ ինչ զգօնագոյն սահմանիցէք: Մի զամօթ պատուոյն դարձջիք կրկին յեղյեղել, որ յաճախ 'ի դժնդակագոյն և յանձողոպրելին խարդաւանեաց զմարդիկ 'ի կորուստ: Բազումք արդարև կանուխ իսկ նկատեալ յոր վարեալք դիմէին, սակայն յանընդդիմակալ զօրութենէ ըմբռնեալք՝ զոր ամօթ անարգութեան կոչեն, տկարացան առաջի լոկոյ ձայնիս, և կամովին առեալ արկին զանձինս յանել անդունդս աղէտից. և անարգագոյն քան զբաղդին՝ զամօթ անմտութեան ժառանգեցին: Ով դուք, եթէ քաջախոհ կամիցիք լինել, զգուշլերուք, մի՛ անարժան ինչ և անպատեհ զխոնարհելն առաջի մեծի քաղաքիս համարիցիք, որ ցածուն չափաւորութեամբ կոչէ զձեզ 'ի նիզակակցութիւն. պահելով զձերդ զամենայն անարատ, հարկս միայն տալով հարկանել. և 'ի թողուլն 'ի ձեր ընտրութիւն զպատերազմ կամ զանդորր աներկևանութիւն, մի՛ սնափառ խորհրդով զյոռին ձեզ ընտրիցէք: Զի որ գիտեն չտալ տեղի հաւասարին, ընծայել զարժանաւոր պատիւ աւագագունին, և չափով գնալ ընդ անաւագին, 'ի բազում ինչ իրս յաջողին աներկբայ: Ի մեկնելս մերում 'ի ձէնջ դարձարուք մտադիր 'ի խորհուրդ, յուշ ձեզ անդուլ, զի զհայրենեաց խորհիք որ միակն է, զոր միով խորհրդով 'ի փրկութիւն կամ 'ի կորուստ սահմանիցէք»:

ՃԺԲ. Եւ մեկնեցան Աթենացիք 'ի ժողովոյն. և Մելոսացիք մնացեալ միայն և 'ի նոյն յիւրեանց խորհուրդս մտաց պնդեալ, և մերժելով զառաջարկ Աթենացւոց արարին նոցա զայս պատասխանի. « Ոչ փոփոխիմք 'ի նախկին խորհրդոց մերոց, ո՛ Աթենացիք, և ոչ 'ի սուղ համառօտ ժամու՝ զքաղաքիս զեօթնհարիւր ամս բնակելոյ թողումք զազատութիւն կապտել. այլ վստահացեալ 'ի բախտն՝ որ պահեաց զայն գիցն օգնականութեամբ ցայսօր, և 'ի մարդկան մարտակցութիւն և Լակեդեմոնացւոց, ջանասցուք ճգնեսցուք ապրեցուցանել զնոյն: Զայս 'ի ձէնջ խնդրեմք, թողուլ զմեզ բարեկամս և ոչ ումեք թշնամիս լինել, ելանել ձեզ յերկրէս մերմէ, դաշինս խաղաղութեան ընդ մեզ կռել՝ ձեզ և մեզ պատշաճականս »:

ՃԺԳ. Այսպիսի էր Մելոսացւոց պատասխանի. իսկ Աթենացիք 'ի լուծանել զժողով բանակցութեան իւրեանց, ասեն. « Ի խելամտութեանց աստի ձերոց դուք միայն 'ի մարդիկ՝ թուիք մեզ պայծառագոյն քան որ կանս և երեւի՝ զգալոցն տեսանել, և զաներեւոյթն ըստ ըղձիցդ իբրու արդէն 'ի գլուխ ելեալ և կատարեալ: Եւ զի 'ի Լակեդեմոնացիս, 'ի բախտն և 'ի յոյս զամենայն թողեալ հաւատայք, զբնաւն իսկ վտանեալ կորուսանիցէք »:

ՃԺԴ. Եւ դարձան պատգամաւորքն Աթենացւոց 'ի բանակն, և տեսեալ զօրավարաց զօրուն զանսաստութիւն Մելոսացւոց, սկիզբն արարին անդէն պատրաստութեան պատերազմի. և բաժանեալ զաշխատութիւն գործոյն յիւրաքանչիւր գունդս դաշնաւորաց, ամբարձին շրջապարիսպ զՄելեաւ, և պահանորդս եդեալ յիւրեանցն և 'ի դաշնաւորաց զօրուէն 'ի կողմանէ ծովու և ցամաքի, լռութեամբ բանակին դարձան յետս, և մնացեալ զօրն պաշարեալ նստէր զքաղաքաւն:

ՃԺԵ. Զայսու ժամանակաւ ասպատակութեամբ արշաւեցին Արգիացիք 'ի Փլիասիա, և ըմբռնեալ 'ի դարանս Փլիասիացւոց և վտարանդի փախստէից նոցա՝ թողին

յիւրեանց անտի մեռեալս ութսուն։ Եւ 'ի Պիւլեայ Աթենացիք յաւարի առին զԼակեդեմոնացիս աւար բազում. վասն որոյ և սոքա առանց զդաշինսն լուծանելոյ՝ հարին զնոսա, և քարոզ ետուն կարդալ՝ եթէ կամիցի ոք յիւրեանց անտի զնոյն հատուցումն փոխանակել Աթենացւոց։ Զէն առին և Կորնթացիք վասն իրիք իրիք վիճից յիւրեանս ընդդէմ Աթենացւոց, մինչդեռ այլք 'ի Պելոպոնեսացւոց լռեալ դադարէին։

Իսկ Մելոսացիք յարձակեալ գիշերայն 'ի վերայ շրջապարսպին Աթենացւոց՝ որ 'ի կողմն հրապարակի քաղաքին, և տիրեալ միոյ մասին կոտորեցին զպահանորդս. և մուծեալ 'ի քաղաքն ցորեան և զամենայն պարէն կարևոր, ամփոփեալ վերստին հանդարտեցան։ Բայց Աթենացիք ամրագոյն ևս պնդեցին զպաշարումն և զպահ քաղաքին. և վախճան եղև ամարայնոյ։

ԾԺԶ. Ի գալ ձմերայնոյ խլրտեցան Լակեդեմոնացիք ասպատակ դնել յերկիրն Արգիացւոց, այլ զի հմայք զոհին 'ի յաջող անցս յելս սահմանաց երկրին չեղեն բարեգուշակ, ընկրկեալ դարձան յետս։ Ընդ յամել նոցին կասկածեալ Արգիացւոց զոմանց 'ի քաղաքայնոց՝ կալան 'ի նոցանէ շատ զոք 'ի քաղաքին, և այլք փախստեամբ ապրեցան։

Ի սոյն ժամանակս կալան դարձեալ Մելոսացիք և զայլ մասն մի 'ի շրջապարսպէն, յորում նուազունք էին պահանորդք։ Բայց յետ այնորիկ այլ նոր գունդ զօրաց եկեալ յԱթենացւոց ընդ զօրավարութեամբ Փիլոկրատեայ որդւոյ Դեմէայ, և պնդեալ հզօրեղապէս զպաշարումն՝ մատնութեամբ ոմանց յամրականաց անձնատուր եղև քաղաքն 'ի կամս Աթենացւոց։ Որոց կոտորեալ զամենայն արբուն հասակ Մելոսացւոց՝ զոր միանգամ կալան, զմանկունս և զկանայս 'ի գերութիւն վարեցին. և զերկիրն յիւրեանց անտի բնակեցուցին, առաքեալ հատուած մի հնգհարիւր մարդկան։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## Զ ԳՐՈՑ

---

Ա–ԺԴ. Խորհուրդ աշխարհակալութեան Աթենացւոց 'ի Սիկիլիա. Նկարագիր կղզւոյն. պատճառք արշաւանին և հակառակել այնմ Նիկեայ խոհական խորհրդով։ ԺԵ–ԼԲ. Ալկիբիադէս և Նիկիաս 'ի հակառակ խորհուրդս զարշաւանէս. յաղթէ կողմն Ալկիբիադեայ. արհաւիրք ժողովրդեան ընդ դէպս ծայրատելոյ դրօշելոցն Հերմեայց, և նկարագիր չուոյ արշաւանին 'ի Պիրէոնէ։ ԼԳ–ԽԵ. Շուինդն արշաւանին 'ի Սիրակուսա, և այլևայլ կարծիք և խորհուրդք ատենաբանից նոցա զկրացս, և պատրաստութիւն Սիրակուսացւոց 'ի պատերազմ։ ԽԶ–ԾԴ. Առաջարկ խորհրդոց զօրավարացն Աթենացւոց 'ի հնարս պատերազմին, և եկակոչ լինել Ալկիբիադեայ յԱթէնս, և արհաւիրք ժողովրդեան յերեսաց բռնակալութեան ։ ԾԴ–ԾԹ . Զարտուղել ատենագրիս 'ի կարգէ պատմութեանս յուղղութիւն վրիպակ կարծեաց ժողովրդեան զբռնակալացն Պիսիստրատեանց։ Կ–ԿԱ. Զհերմեայցն խստիւ փութսիչ դատաստանի յԱթէնս և փախուստ Ալկիբիադեայ։ ԿԲ–ՁԸ. Բանակետղ Աթենացւոց 'ի Կատանիա, և հարկանել զՍիրակուսացիս. Ճիգն մեծ մարտադիր հակառակորդաց 'ի յաճախել իւրեանց դաշնաւորս 'ի ժողովրդոց և 'ի քաղաքաց Սիկիլիոյ։ ՁԹ–ՂԴ. Դեսպանք Սիրակուսացւոց 'ի Լակեդեմոն 'ի խնդիր օգնականութեան. խորհուրդ Ալկիբիադեայ ընդդէմ իւրոց հայրենեաց. և առաքումն Գիլիպպոսի սպարտացւոյ 'ի գլուխ զօրուն Սիրակուսացւոց։ ՂԵ–ՃԳ. Զօրանալ Աթենացւոց 'ի Սիկիլիա. առումն Եպիպօլեայ և պաշարումն Սիրակուսայ, և պարտութեամբս խորհել քաղաքին 'ի հաշտութիւն խաղաղութեան։ ՃԴ–ՃԵ. Գիլիպպոս 'ի Տարենտոն, և հարկանելով Աթենացւոց զծովեզերեայս Լակոնիոյ՝ սկիզբն լուծանելոյ դաշանց և պատերազմի ընդ Լակեդեմոնացիս։

# Գ Ի Ր Ք Զ

Ա. Խորհուրդ կալան Աթենացիք 'ի ձմերանիս մեծագոյն ևս հանդերձանօք պատրաստութեան, քան որ երբեմն ընդ Լաքեսայ և ընդ Եւրիմեդոնի գումարեալ էին՝ նաւել 'ի Սիկիլիա, և ջանալ հնարել տիրելոյ կղզւոյն: Բազումք անգէտ էին տարածութեան կղզւոյս՝ և թուոյ բազմութեան բնակչաց նորա՝ եթէ 'ի Հելլենաց և եթէ 'ի բարբարոսաց. և թէ ձեռն արկանէին 'ի պատերազմ ոչինչ խոնարհագոյն քան զՊելոպոնեսեանն: Եւ ոչ բազմօք նուազ քան ութօրեայ աւուրբք նաւ վաճառաբարձ շրջանաւելով կարէ պատել զՍիկիլեաւ, և քսան ասպարիսաւ միայն անջրպետեալ ծով զմեծատարած զայն կղզի 'ի մեծացամաքէն:

Բ. Եւ բնակեալ էր սա 'ի նախնումն այսպէս, և ժողովուրդք 'ի նմա այսոքիկ: Ըստ նախնեացն զրուցաց բնակել ասեն Կիկլոպայց և Լեստրիգոնաց 'ի մասն երկրին, զորոց չունիմ ինչ ասել ոչ զծագմանէն, և ոչ եթէ ուստի եկին նոքա անդր, և կամ յո՛ մեկնեալ գնացին. քերթողաց զրուցիւք որչափ ինչ գիտաց ոք զնոցանէ կարծեօք, պարտ է շատանալ: Յետ սոցա Սիկանիացւոց թուի ունել նախ զբնակութիւն 'ի կղզւոջս, որոց ըստ իւրեանց վկայութեան նախնագոյն լինել և բնաշխարհիկ ասեն. այլ ճշմարտութեամբ հաւաստեալ, Իբերացիք են սոքա հալածականք յերեսաց Լիգիացւոց, գաղութք յափանց անուն

Սիկանոս գետոյն Իբերիոյ, յորոց և կղզին Սիկանիա կոչեցեալ, որ երբեմն Տրինակրիա էր, որք և ունին ցայսօր զաբևմտակողմն Սիկիլիոյ:

Զկնի առման Իլիոնի ոմանք 'ի Տրովացւոց փախուցեալք յԱքայեցւոց՝ նաւաչու հասին 'ի Սիկիլիա. և բնակութիւն ունելով 'ի սահմանածայրս մասին երկրի Սիկանիացւոց՝ Ելիմացիք կոչեցան, և քաղաքք նոցա Երիքս և Եգեստա: Մօտ առ սոսա եկեալ բնակեցան ապա Փոկեացիք, որք 'ի դարձին իւրեանց 'ի Տրովիոյ՝ վարեալք 'ի մրրկէ յափունս Լիբիոյ՝ ածան անտի 'ի Սիկիլիա: Սիկելացիք կամ Սիկուլացիք բնակք երբեմն Իտալիոյ, փախուցեալ 'ի զինուց Ոպիկեանց, որպէս հաւանեալս եմ. և որպէս զրոյցք աւանդեն, 'ի լաստս յաջողակի հողմով վարեալ ընդ նեղուցն, կամ այլով իւիք օրինակաւ նաւարկեալ անցին 'ի Սիկիլիա: Են են արդարև մինչև ցայսօր Սիկելացիք յԻտալիա, զի և երկիրն յանուանէ Թագաւորի ուրուք Արկադացւոց յԻտալոսէ՝ Իտալիա կոչեցաւ: Հասեալ Սիկելացւոց զօրու ծանու 'ի Սիկիլիա, և խորտակեալ զՍիկանիացիս հալածական վարեցին զնոսա 'ի հարաւակողմն կղզւոյն և յարևմուտս, և ետուն փոխանակել զանունն Սիկանիա 'ի Սիկելիա կամ Սիկիլիա. և 'ի գեղեցիկ կողմն երկրին հաստատեալ զբնակութիւն իւրեանց, տևեցին բաւեցին իբրև զամս երեքհարիւր մինչև ցգալուստ Հելլենաց 'ի Սիկիլիա, և ցայսօր իսկ ունին զմիջերկրայս կղզւոյն և զհիւսիսակողմն: Հաստատեցան բնակութեամբ և Փիւնիկեցիք զՍիկիլեաւ, կալեալ զարաւանդս և զմերձաւոր կղզիս 'ի շտեմարանս վաճառուց, զոր ընդ Սիկելացիս[1] փոխանակէին: Այլ իբրև սկսան յաճախել Հելլենացիք անդր, թողին Փիւնիկեցիք նախնական իւրեանց բնակութիւն, և եկին միաբան մօտ յԵլիմացիս 'ի Մոտիէ, 'ի Սոլոյիս և 'ի Պանոր-

[1] Յընթացս պատմութեանս յասել Սիկելացիս՝ զսոսա իմանամք միշտ: Իսկ Սիկիլիացիս՝ զՀելլենացեղ գաղթականս յայլևայլ քաղաքըս կղզւոյս, զորս չէ պարտ ընդ միմեանս շփոթել:

մոս բնակել, վստահացեալ 'ի դաշնակցութիւն ժողովըրդեանս, և զի համառօտ անցիւք անջրպետեր անտի Սիկիլիա 'ի Կարքեդոնէ։ Այսոքիկ են ահա ժողովուրդք բարբարոսաց, և Թէ այսօրինակ բնակութեամբ հաստատեցան 'ի Սիկիլիա։

գ. Իսկ 'ի Հելլենաց Քաղկիսացիք նախ առաջնորդութեամբ Թուկլեսի նաւարկեալ յԵւբիոյ գաղԹեցին 'ի Նաքսոս կանգնելով զբագին Ապոլոնի Արքեգետեայ՝ որ այժմ արտաքոյ կայ քաղաքին, յորում պատգամահարցք Թէորք, 'ի գալ նոցա հրեշտակութեամբ 'ի Սիկիլիոյ, նուիրեն զիւրեանց զառաջին զոհս։ Իսկ յետ այնորիկ 'ի յաջորդ ամին Արգիաս 'ի Հերակլեանց անտի գաղԹեալ 'ի ԿորնԹոսէ կառոյց զՍիրակուսա. և մերժեալ վտարեաց զՍիկելացիս 'ի կղզեկէն 'ի Նիսեայ՝ յորում է արդ ներքին քաղաքն, չհասանելով ծովուն Թանալ զայն այսօր. ապա ժամանակաւ կցեալ արտաքին քաղաքն ընդ ներքնոյն պարսպաւ՝ լցաւ մարդկութեամբ Սիրակուսա։ Թուկլէս և Քաղկիսացիք ամբարձեալ 'ի Նաքսեայ 'ի յհինգերորդ ամի շինութեան Սիրակուսայ, և վանեալ պատերազմաւ զՍիկելացիս, կառուցին զԼէոնտինէ քաղաք և զԿատանա։ Եւ ընտրեցաւ Եւարքոս 'ի զօրավար և առաջնորդ գաղԹականին Կատանացւոց։

դ. Զայնու ժամանակաւ եհաս 'ի Սիկիլիա և Լամիս հատուած ժողովրդեան 'ի Մեգարայ ածելով, և հիմնեաց քաղաք յայնկոյս Պանտակեայ գետոյն՝ Տրոտիլոս անուն. որ յետ ոչ բազում ինչ ամս ըստ Քաղկիսացւոց Լէոնտինեայ քաղաքավարելոյ, հալածեալ 'ի նոցանէ գնաց բնակեցոյց զիւրսն 'ի Թափսոս, ուր և մեռաւ իսկ։ Վանեալ և իւրոցն 'ի Թափսեայ, և առաջնորդութեամբ Հիւպլոնայ արքային Սիկելացւոց ածեալք՝ որ ետ նոցա զերկիրն, կանգնեցին զՄեգարացւոց քաղաքն, զանուանեալն Հիւպլէական։ Յետ զամս երկերիւր քառասուն և ութ բնակելոյ նոցա անդանօր, հալածեաց զնոսա 'ի քաղաքէն յայնմանէ

և յերկրէն Գելոն բռնաւոր Սիրակուսայ. բայց յառաջ քան զմերժել նոցա անտի, յետ հարիւրամեան բնակութեան նոցին 'ի տեղւոջն՝ առաքեցին նոքա զՊամմիլոս գաղթականութեամբ 'ի Սելինոնդ, որ 'ի Մեգարայ 'ի մայր քաղաքաց նոցա եկեալ հիմնադիր եղև գաղթականիս: Եւ 'ի քառասուն և 'ի հինգերորդի ամի հիմնարկութեան Սիրակուսայ՝ Անտիփեմոս 'ի Հռոդոսէ, և Ենտիմոս 'ի Կրետեայ միաբանութեամբ հատուածս ժողովրդեան ածեալ բնակեցուցին 'ի Գելա: Եւ տուաւ անունն քաղաքիս 'ի Գելայ գետոյն. և տեղին յորում է քաղաքս այսօր, որ և նախ պատեալ պարսպաւ Լինդիք կոչի, զդորիացի կալաւ ինքեան զօրէնս: Զամս իբր հարիւր և ութ յետ հաստատութեան նոցա՝ կանգնեցին Գելացիք զԱկրագանդ՝ յանուանէ Ակրագաս գետոյ, և կացուցին առաջնորդ գաղթականին զԱրիստոնուս և զՊիւստիլոս, տալով նոցա զօրէնս վարչութեան ժողովրդեան Գելայ: Եւ Զանկլէ քաղաք յելուզակաց անտի Կիմեայ սկիզբն կալաւ, որոց յՈփիկեոյ 'ի Քաղկիսեան քաղաքէն խախտեալ՝ հիմնեցին զայն. բայց ապա ժամանակաւ 'ի Քաղկիսեայ և 'ի մասնէ անտի Եւբիոյ եկեալ հատուած ժողովրդեան՝ բաժանեցին զերկիրն յիւրեանս, որոց գլուխ և առաջնորդ կացին Պերիերէս և Կրատեմենէս, առաջինն 'ի Կիմեայ և երկրորդն 'ի Քաղկիսեայ: Եւ անունս Զանկլէ կոչեցաւ նախ 'ի Սիկելացւոց. քանզի երկիրն է 'ի ձև գերանդւոյ՝ որ 'ի բարբառ Սիկելացւոց Զանկլէ ասի: Եւ սորա իսկ բնակիչք յետ ժամանակաց հալածեալ վտարեցան յերկրէ անտի իւրեանց 'ի Սամոսացւոց և յայլոց Յոնիացւոց, որք փախստեամբ յերեսաց Մարաց 'ի Սիկիլիա եկին:

Ն. Ոչ բազմօք ինչ զկնի Անաքսիլաս բռնաւոր Հռեգիոնի հալածեալ զՍամոսացիս, բնակեցոյց զքաղաքն խառն ժողովրդովք՝ զորս 'ի տեղեաց տեղեաց էտ ածել անդր, և կոչեաց զանուն քաղաքին ըստ անուան նախնի հայրենեացն Մեսսինէ: Եւ 'ի Զանկլեայ հատուածով հիմնեցաւ Հի-

մերա 'ի ձեռն Եւկլիդեայ, Սիմեայ և Սակոնայ. առհասարակ գաղութք էին սոքա 'ի Քաղկիսացւոց, 'ի սոսա յարեցան և Միւղէտիդք` տարագիրք 'ի Սիրակուսայ, հալածեալք յառտնին խռովութեան: Բարբառ նոցա խառն էր 'ի Քաղկիսացւոյն և 'ի Դորիացւոյն, իսկ օրէնք վարչութեան քաղկիսեան: Ակրէ և Կասմենէ հաստուածք են 'ի Սիրակուսայ, Ակրէ յեօթանասուներորդի ամի շինութեան Սիրակուսայ գաղթեալ, և Կասմենէ իբրու քսան ամօք յետոյ քան զԱկրէ: Եւ Կամարինեայ սկիզբն 'ի Սիրակուսայ լեալ իբրու 'ի հարիւրորդի երեսներորդի հինգերորդի շինութեան քաղաքին, և գլուխ գաղթականութեանս կացեալ Դասկոն և Մենեկոլ: Բայց 'ի յետս կալ նոցա վտարանջութեամբ 'ի Սիրակուսացւոց, վանեալ 'ի նոցանէ պատերազմաւ հալածեցան և յերկրէն. ժամանակաւ ապա Հիպպոկրատ բռնաւոր Գելայ ընկալեալ 'ի Սիրակուսայցւոց զերկիր Կամարինեայ 'ի փրկանս գերւոյն, կրկին բնակեցոյց զԿամարինէ` երկրորդ հիմնադիր լինելով քաղաքին: Քանդեալ վերստին երկրորդ անգամ 'ի Գելոնէ, և այս երիցս շինեալ 'ի նոյն 'ի Գելոնէ լցաւ մարդկութեամբ:

Զ. Սոքա են ժողովուրդք որ 'ի Հելլենաց և 'ի բարբարոսաց բնակեցան 'ի Սիկիլիա: Եւ ահա 'ի վերայ այսպիսւոյ և այսքանոյ կղզւոյ ձեռն արկին Աթենացիք զինուորել, պատճառելով իմն վրէժխնդիր համազգեաց և օգնական դաշնաւորաց լինել, բայց արդարև ըղձիւք ցանկութեան տիրապետելոյ ողջոյն կղզւոյն: Յորդորեցան մանաւանդ 'ի հրեշտակաց անտի Եգեստացւոց, որոց եկեալ ուժգին թախանձէին զնոսա. զի ընդ Սելինոնդաց սահմանակցաց իւրեանց վասն ամուսնական ինչ խնդրոց և վասն ժառանգութեան ուրուք երկրի 'ի կռիւս էին: Քանզի Սելինոնդք օգնականութեամբ Սիրակուսացւոց 'ի նեղ արկեալ զԵգեստացիս պատերազմաւ ընդ ծով և ընդ ցամաք` տագնապեցուցանէին զնոսա, մինչև դիմել նոցա առ Աթենացիս` յուշ ածելով զերբեմն արարեալ նոցա դաշնաւորութիւն առ Լաքե-

սու և առ առաջնով մարտի Լէոնտինացւոց, և խնդրէին 'ի նոցանէ նաւս 'ի Թիկունս օգնականութեան: Եւ երեցագոյնն 'ի բազմապատիկ յորդորս բանից յաւելուին և զայս, թէ 'ի մերժել Սիրակուսացւոց համարձակ զԼէոնտինացիս յերկրէ նոցա, և 'ի ջանալ զմնացորդս դաշնաւորաց Աթենացւոց՝ միալուծ այնուհետև կալցին զողջոյն Սիկիլիա. և Դորիացիքդ ընդ հուպ առ տոհմակից ընտանութեան մեծաւ պատրաստութեամբ միաբանեալ ընդ Դորիացիս Պելոպոնեսեայ՝ յորոց գաղթեալ են, և լուծցեն զիշխանութիւն Աթենացւոց. վասն որոյ խոհականութիւն մեծ է, մնացելովք դաշնակցովք աճապարեալ զառաջս առնուլ Սիրակուսացւոց, մանաւանդ յորժամ ինքնին Եգեստացիք շատ իսկ լնուն զծախս պատերազմին: Եւ լուեալ զայս Աթենացւոց յեղյեղել ստէպ հրեշտակաց Եգեստացւոց 'ի ժողովս, և որոց սատար նոցուն լինէին 'ի Թախանձանաց ածեալք, հրաման հանին դեսպանս յԵգեստա առաքել 'ի ստուգութիւն իրացն, թէ արդարև ըստ համբաւոյ զրուցացն իցէ նոցա արծաթ բաւական 'ի գանձս հասարակաց և 'ի մեհեանս, և գիտել թէ յոր պայման էր պատերազմ նոցա ընդ ժողովրդեան Սելինոնդաց:

Է. Եւ ուղղոյ եղեն դեսպանք 'ի Սիկիլիա. իսկ Լակեդեմոնացիք և դաշնաւորք նոցա՝ բաց 'ի Կորնթացւոց, ասպատակէին 'ի ձմերանին յերկիրն Արգիացւոց և աւերէին զկողմն մի գաւառին, կրելով անտի զցորեանն 'ի սայլս սայլս ածեալս ընդ իւրեանս. և բնակեցուցեալ յՈռնէա զտարագիրս յԱրգոսէ՝ թողին նոցա գունդ մի 'ի զօրուէն, պայմանաւ չմխել ցժամանակ մի յերկիր իրերաց Ոռնէացւոց և Արգիացւոց: Բայց իբրև յետ ոչ բազմաց եկին յԱթենացւոց նաւք երեսուն, և վեցհարիւր զօրական ասպարաւոր, ելին զինուորեցան Արգիացիք համագունդ ընդ նոսա, և պաշարեցին զօրն ողջոյն զՈռնէա քաղաք. այլ 'ի գիշերօթել պաշարիչ զօրուն հեռի 'ի բացեայ, ելեալ փախեան Ոռնէացիք 'ի քաղաքէն: Ի վաղիւ անդր իբրև զգա-

ցին զայն Արգիւացիք՝ հիմն 'ի վեր քանդեալ զքաղաքն մեկ-
նեցան. դարձան և Աթենացիք 'ի նաւս իւրեանց և 'ի տուն:

Եւ ածեալ Աթենացւոց ընդ ծով 'ի Մեթոն 'ի սահ-
մանածայրս Մակեդոնիոյ՝ յիւրեանց անտի և 'ի փախստէից
Մակեդոնացւոց ապաւինելոց 'ի նոսա վաշտս հեծելոց, և
ասպատակեալ աւերեցին զերկիր Թագաւորութեան Պեր-
դիկկայ: Իսկ Լակեդեմոնացիք յղեալ առ Քաղկիսացիս
Թրակիոյ՝ որոց տասնամեայ դուլ զինուց էր ընդ Աթենա-
ցիս, յորդորէին զնոսա զինուորել ընդ Պերդիկկայ 'ի պա-
տերազմ, բայց ոչ շարժեցան նոքա: Եւ վախճան եղև ձմե-
րայնոյս և վեշտասաներորդի ամի պատերազմիս՝ զոր պատ-
մագրեաց Թուկիդիդէս:

Ը. Յամարանիս 'ի սկիզբն անդ գարնայնոյ դարձ արա-
րին դեսպանք Աթենացւոց 'ի Սիկիլիոյ և հրեշտակք Ե-
գեստացւոց ընդ նոսա, բերելով վաթսուն տաղանդս արծա-
թոյ անդրոշմ, իբրև յամսօրեայ ռոճիկ վաթսուն նաւաց՝
զորս և ունէին խնդրել յԱթենացւոց: Ի ժողով գումա-
րեալ Աթենացիք և լուեալ բազում ինչ հրապուրական և
կեղծ յԵգեստացւոց և 'ի դեսպանաց իւրեանց վասն ար-
ծաթոյն՝ որպէս տեսեալ նոցա մեծութիւն բազում 'ի մե-
հեանս և 'ի գանձս հասարակաց, վճռեցին առաքել նաւս
վաթսուն 'ի Սիկիլիա, կացուցեալ զօրավարս լիովին իշխա-
նութեամբ ինքնակալս զԱլկիբիադէս Կլինեան, զՆիկիաս
Նիկերատեան և զԼամաքոս որդի Քսենոփանեայ՝ երթալ
յօգնութիւն Եգեստացւոց ընդդէմ Սելինունդացւոց, և հաս-
տատել զԼէոնտինացիս 'ի բնակութիւնս նոցա. և յորժամ
պարապ 'ի պատերազմէս առնուցուն, կարգել յերիւրել
և զայլն ամենայն 'ի Սիկիլիա՝ որպէս ինչ գիտիցեն յօգուտ
Աթենացւոց: Յետ այնորիկ իբրև անցին աւուրք հինգ՝
դարձան Աթենացիք 'ի խորհել, թէ զիա՛րդ փութալ պիտի
հանդերձել զինել զնաւս, և ըստ ժամուն տալ հրաման
չուոյ: Իսկ Նիկիաս յոչ կամս ընտրեալ 'ի գլուխ զինուո-
րութեան արշաւանիս, տեսանելով զձախողակի խորհուր-

դըս քաղաքացւոց՝ որ սնոտիապատուասս բաղբաղանօք 'ի տիրապետութիւն բովանդակ Սիկիլիոյ Թեակոսեն՝ 'ի գործ մեծ և յանհնարին, մատուցեալ յատենի ժողովոյն. և շրջել զմիտս նոցա կամելով յառաջարկեալ խորհրդոյն, խօսեցաւ առ նոսա այսպէս.

Թ. « Ի խորհուրդ պատրաստութեան արշաւանիս Սիկիլիոյ ժողովեալ է ժողովս, թէ ևս և որպէս 'ի գլուխ տանել իցէ զայն: Բայց ինձ թուի թէ նախ պարտ է մանր 'ի քննին առնուլ, իցէ՞ արդեօք շահաւէտ նաւատորմ արձակել, և վեր 'ի վերոյ խորհրդով 'ի ծանրս այս և 'ի կարևոր խնդիր՝ օտարաց այլացեղից վստահացեալ, 'ի պատերազմ՝ որ ոչ է մեզ անկ և պատշաճ՝ խառնել: Իսկ ես որ պատուիմս 'ի ձէնջ 'ի գլուխ կալ արշաւանիս, քան վասն անձին իմոյ՝ վասն այլոց հոգամ, թէպէտ համարիցիմ և բարւոյ քաղաքացւոյ պարտս և վասն անձին իւրոյ և ընչից խնամ ունելոյ, զի այնպիսին և 'ի սոսին իսկ զօգուտ հասարակաց խնդրէ: Եւ զի ոչ երբէք հակառակ մտաց իմոց և խղճի խօսեցայ ցայսօր՝ հետամուտ փառաց և պատուոյ, և ոչ այժմ իսկ այլ ինչ քան զոր ճանաչեմս լաւագոյն ասացից: Ժողովրդեան ձեզ նման բնաւորելոց գիտեմ զի տկար են բանք իմ, եթէ զոր ունիմքս՝ պահել յորդորել զձեզ կամիցիմ, և մի՛ անյայտից և ապառնեաց յուսով՝ զոր կանս 'ի ձեռին վտանգել: Եւ զի անդէպ է ամենևին վաղվաղկոտ ճիգն ձեր և շտապ փութոյդ, և թէ չէ դիւրին յոր դիմէքդ՝ ցուցից ձեզ հաւաստեաւ:

Ժ. « Թողեալ ձեր, ասեմ, աստէն զայդ ամբոխ թշնամեաց, և երթալ նաւել 'ի հեռաւոր արշաւանս, ըղձալ է այս հրաւիրել այսր զայլս նորանորս: Համարիցէ՞ք թերևս եթէ դաշինքդ այդ խաղաղութեան կանդաղուն ինչ իցէ. ցորչափ լռեալ դադարէք՝ անուամբ միայն է դուլ զինուց, 'ի սոյն միտս և յոմանց 'ի մէնջ և 'ի հակառակորդաց կռեցաւ այն. այլ 'ի ձախողել ձեր ուրեք, պատրաստ է թշնամին յառնել 'ի վերայ. նախ զի 'ի հարկէ արկածից վշտաց

'ի նախատինս նորա կռեցան դաշինքս, յորս և մեք բազում ինչ ունիմք երկմտել: Են են արդարև որ չընկալան զայդ դաշնաւորութիւն՝ ոյք և չեն անզօրք ոմանք, են և որք յայտնապէս կռուին ընդ մեզ. Թո՛ղ և զորս վասն զի Լակեդեմոնացիք հանդարտեալ նստին, և զի տասնամեայ դուլզինուց է՝ դէտ ակն կալեալ մնան: Եւ աներկբայ յորժամ զզօրութիւն մեր բաժանեալ տեսցեն յոր փութամքս արդ, միաբանեսցին անդէն ընդ Սիկիլիացիս ընդդէմ մեր, զորոց երբեմն պատուէին մեծապէս զնիզակակցութիւն: Պարտ է ուրեմն ապա խոհական խորհրդով միտ դնել, և մի մինչդեռ գայթ 'ի գայթի կան իրք պետութեանս, նորոց վտանգաց 'ի խնդիր ելանել, և չև ամրապնդեալ զոր ունիմքս՝ նորանոր աշխարհակալութեանց զհետ լինել: Բազում ամք են յորմէ հետէ Քաղկիսացիք Թրակիոյ յետս կացեալ 'ի մէնջ չև են նուաճեալք. են և որ 'ի ցամաք երկրի 'ի քաղաքս քաղաքս ժողովուրդք՝ որոց ընդ կարծեօք է հնազանդութիւն. և մեք Եգեստացւոց դաշնաւորաց մերոց իբրև զօգնելոց փութամք 'ի Թիկունս, և դանդաղիմք խնդրելոյ զվրէժ 'ի բազմաց հետէ ապստամբելոց 'ի մէնջ:

ԺԱ. «Եւ սակայն խորտակեալ զնոսա միանգամ, և մարթէաք 'ի հպատակութեան պահել. իսկ զսոսա՝ զժողովուրդս Սիկիլիոյ ասեմ, թէպէտ և վանեալ վկանդեսցուք, բայց առ բազում հեռաւորութեան և առ ամբոխ բազմութեան՝ դժուարին իցէ յոյժ իշխել նոցա: Անմտութեան է արդարև երթալ 'ի վերայ, որոց յաղթեալ և չմարթիցիմք 'ի նուաճութեան պահել. և 'ի ձախողելս՝ չմնալ 'ի նոյն պայման յոր յառաջ քան զձեռնարկ գործոյն գտանէաք: Սիկիլիացիք, որպէս հաւանեալս եմ, որպիսի ինչ ենն արդ՝ չեն մեզ երկիւղալիք, և նուազագոյն արդեօք լինիցին՝ նուաճեալք միանգամ ընդ Սիրակուսացւովք, որով երկեղուկս մեզ արկանել ձգնին Եգեստացիք: Մարթ է այժմ 'ի շնորհուկս Լակեդեմոնացւոց զինել զմի մի 'ի նոցանէ ընդդէմ մեր, բայց այլազգ չէ 'ի դէպ պետական իշխանութեան 'ի

վերայ պետականին յառնել։ Զի եթէ միաբանեալ նոցա ընդ Պելոպոննեսացիս բարձցեն զմերս իշխանութիւն, 'ի նոցունց անտի Պելոպոննեսացւոց բարձցի և նոցայն։ Եթէ ընաւ իսկ չերևեսցուք Հելլենացդ այդոցիկ Սիկիլիոյ՝ ահաւորագոյնք լինիցիմք, և կամ ցուցեալ մեր միանգամ զզօրութիւնս, և անդէն ամփոփեսցուք․ ապա եթէ ձախողիցիմք, իսկոյն արհամարհ լեալ նոցուն՝ միաբան ընդ աստի Թշնամեաց խիզախեսցեն նոքա ընդդէմ մեր։ Քանզի զարմանալ գիտեմք մեք ամենեքին ընդ հեռաւորն և որոց չիցէ տուեալ զփորձ համբաւոյն, որպէս դուք արդ, ո՛ Աթենացիք, զնոյն կիրս կրէք վասն Լակեդեմոնացւոց և դաշնաւորաց նոցա․ զի յորոց երկնչէիքդ երբեմն, քան զկարծիս գերազանցեալ զնոքօք, արհամարհէք արդ և 'ի տիրապետութիւն Սիկիլիոյ խրախուսէք։ Չէ պարտ ընդ ձախող արկածս հակառակորդաց ամբարհաւաճեալ մոզանալ, այլ չափ եդեալ փառասէր խորհրդոց՝ աներկիւղ արիանալ։ Ոչ յայլ ինչ 'ի նուաստութեան իւրեանց մտախոհեն Լակեդեմոնացիք, բայց եթէ ջանալ հնարել մերով ձախողելով սրբել զամօթ անարգութեան իւրեանց․ և այս այնչափ ևս աւելի, զի 'ի բազմաց հետէ մրցմամբ մեծաւ զհետ պնդին համբաւոյ առաքինութեան։ Մինչ զի եթէ իմաստնանալ կամիցիմք, ոչ ևս զԵգեստացւոց խժից այլասերից 'ի Սիկիլիա խնդիրս արարեալ, վաղագոյն փութով պատսպարել յաղատիշխան վարչութենէ քաղաքի և ժողովրդեան, որ 'ի կործանումն մեր դարանակալ հսկէ միշտ։

ԺԲ. « Յուշ լիցի ձեզ, զի մինչդեռ այն ինչ 'ի մեծէ սրածութենէ և յաղխտից մարտին սակաւիկ մի ոգի առեալ կազդուրիմքս, և յինչս և 'ի մարմին զարգացեալ աճիմք, 'ի մեր պէտս տպաքէն վարեսցուք զայնս․ և մի 'ի վերայ գնացական և 'ի խնդիր օգնականութեան մուրացիկ մարդկան վատնել վայրապար, որոց սուտն շահավաճառ է գեղեցիկ․ և որոց 'ի յաջողելն վտանգաւ ընկերին, ոչինչ այլ շնորհ փոխարինի, բայց եթէ բան լոկ եդեալ 'ի կշիռ․ իսկ

'ի ձախողելն՝ 'ի նոյն իւրեանց կորուստ ածեալ մղել և ըզբարեկամս: Իսկ եթէ իշխանասիրութեամբ ոք վառեալ յորդոր ձեզ յարշաւանդ լինիցի, և մանաւանդ մանկահասակ ոք առ այդպիսի իշխանութիւն ձեռներէց իւրումն միայն միտ եդեալ, ձիաբոյծ ձիադարման ճոխութեամբ զարմանալի լինել ըղձանայցէ, և բազմապայծառ շուայտութեամբն շահել յիշխանութենէս կամեսցի, մի՛ թոյլ տայք այնպիսւոյն 'ի տոյժս հասարակաց պետութեան փայլել պայծառ փառօք: Վնասակարս համարեցջի՛ք զայնպիսիս խրաց հասարակաց և վատնիչս իւրեանցն: Մեծ և կարևոր են իրքդ և ոչ մանկտւոյ խաղ, 'ի սահմանել յախուռն և 'ի գործել:

ԺԳ. « Զօրս իբրև տեսանեմ հրաւէր կոչմամբ առ առնն բազմեալս՝ երկնչիմ յոյժ. և խմովանն յորդոր կարդամ ծերունեաց, եթէ իցեն առ նմա ոմանք, մի՛ ամաչել հակառակ տալով կարծիս յերկչոտս երևելոյ. և մի՛ որպէս զնոսա կրել կիրս, և զկնի հեռաւորաց և զանյայտից զրահետ վարել. գիտելով չափ եթէ մոլեկան աչարձակութեամբ ոչ մի ինչ յաջողի, ուր խոհական զգուշութեամբ բազում ինչ: Հա՛պա 'ի սէր հայրենեաց, որ չտեսաւ երբեք յայսպիսի վտանգ մեծ, տո՛ւք զվճիռ կարծեաց ամբարձմամբ ձեռացդ. զի կամք են ձեր պահել Սիկիլիացւոց ողջանարատ զսահմանս՝ զոր ունին այսօր 'ի ձեր կուսէ զծոցն Յոնիական ընդ երկայնութիւն, և զծովափունս Սիկիլիոյ 'ի մեծէ ծովէ կուսէ. և կեալ նոցա միաբան վայելելով իւրաքանչիւր 'ի տէրութիւն ստացուածոց իւրոց: Իսկ վասն Եգեստացւոց, որովհետև առանց Աթենացւոց հարան նոքա նախ պատերազմաւ ընդ Սելինոնդս, թողցուք զի և ինքեանք 'ի գլուխ տարցեն զայն անձամբ: Եւ ոչ արասցուք մեզ յայսմ հետէ նիզակակիցս, որպէս սովորեցաք ցարդ, որոց ձեռն տալով 'ի ձախողուածս, և 'ի կարօտութեան մերում չշահեսցուք ինչ բնաւ սատարութեամբ նոցին:

ԺԴ. « Եւ դու Բրիտանէ, Նախագահ Ժողովոյս, եթէ համարիս զհոգս պետութեանս քեզ հաւատացեալ, և ցանկաս լինել քաղաքացի ընտիր, ա՛րկ զխնդիրդ վերստին 'ի քննութիւն և հրաւիրեա զԱթենացիս տալ միւսանգամ զիւրեանց վարկ. ուր եթէ երկնչիս կրկին դարձիւդ 'ի քուէայս օրինազանց գտանել, աներկբայ լեր, զի բազմութեամբ վկայից զայդ գործելով՝ ոչ ոք կարիցէ ամբաստան զքէն լինել. և քաղաքիդ չարախորհուրդ ախտացելոյ բուժիչ լինիցիս. և այս է բարւոք վարել զիշխանութիւն, յորժամ բազմապատիկ օգուտս ոք հայրենեաց ընծայեսցէ, կամ գոնեա ոչինչ իւիք կամովին վնասակար նմին լինիցի »։

ԺԵ. Զայս այսպէս խօսեցաւ Նիկիաս։ Եւ բազմութիւն 'ի ժողովականաց Աթենացւոց յառաջ մատուցեալ 'ի խորհուրդ արշաւանին խրախուսէին, և մի՛ զվճռեալն միանգամ և զսահմանեալն 'ի դերև հանել. սակայն էին և որ զհակառակն ասէին։ Իսկ որ պնդագոյնս պետ լինէր խորհրդոյ արշաւանին՝ էր Ալկիբիադ Կլինեան, հակառակորդ Նիկիայ և յայլ ամենայն գնացս քաղաքավարութեան նորա. և խստիւ պարսաւեալ 'ի նմանէ՝ սաստն բանից խորհրդոց նորա յառնէր. մանաւանդ զի զզօրավարութեան թեկն ածէր նա, և յուսով տիրապետութեան Սիկիլիոյ և Կարքեդոնի ընչիւք և փառօք ճոխանալ։ Մեծապատիւ մեծարեալ նորա 'ի քաղաքացւոց իւրոց, քան զիւրական պայման 'ի բոյծս կուտից երիվարաց և յայլ ծախս շռայլէր նա, և պատրաստէր զառյապա կործանումն քաղաքին։ Քանզի երկուցեալ բազումք 'ի զեղխ և 'ի տարօրինակ գնացից նորա և 'ի գոռոզ պերճութենէն՝ զոր յամենայն գործս իւր ցուցանէր, իբրև թևածու զնա բռնակալութեան ասէին։ Ի վարչութեան հասարակաց և 'ի գործ պատերազմի ոչ աննշան ոք էր Ալկիբիադ, այլ իւրով առանձին խառնավար կենօքն տաղտկալի ամենեցուն. և յայլոց ձեռս անցեալ վարչութեան, ընդ հուպ 'ի կործանումն դիմեաց քաղաքն։ Եւ մատուցեալ նորա յաւուր յայնմիկ յատենի ժողովոյն, խրախուսեաց զԱթենացիս օրինակ զայս.

ԾՋ. « Ինձ մանաւանդ վայել է, ո՛ Աթենացիք, քան այլում ումեք իշխան հրամատար կալ, սակայն աստ սկիզբն տալ խօսից, որով ամբաստան զինէն կայ Նիկիաս, քանզի և արժանաւոր զիս առ այն իշխանութիւն գիտեմ։ Եւ զի որով իւիք հռչակիմս՝ զփառս նախնեաց իմոց և զիմ, որով և զհայրենեաց իսկ զշահս օգտի գիտեմ յաւելուլ։ Զի որք յառաջագոյն խոնարհեալ զքաղաքս համարէին յերեսաց հարուածոց պատերազմին, մեծափայլ շքովս յՈլիմպիական խաղսն, մեծամեծ կարծիս սկսան զնմանէ կարծել։ Զի կառս եօթն 'ի կրկէսին արձակեցի, զոր ոչ ոք յառաջ քան զիս ռամկական այր զայդ արար. և յաղթող՝ ընկալայ և զերկրորդն և զչորրորդ մրցանակ, և արժանաւոր յաղթանակիս ցուցի մեծաշուք սպասս։ Եւ իրաւամբ զայդ ամենայն համարիմ փառս՝ որ յարդեանց իսկ իրաց զօրութեան է նշանակ։ Եւ եթէ առատաձեռն բաշխոյիւքս 'ի պարս հանդիսից և այլով ամենայնիւ պայծառացեալ 'ի քաղաքիս, առիթ նախանձու քաղաքացւոցս լինիմ, առ օտարս զօրութեան նորին տամ պատկեր և կերպարանս։ Զէ խօլութիւն անպիտան, որ իւրովք ծախուք ոք ոչ անձին իւրում միայնոյ, այլ և հասարակաց օգտիցի։ Եւ ոչ դարձեալ անիրաւ ինչ է ընդ անձին առաւելութիւնս մեծամեծս զինքենէ խորհելով՝ չկամել հաւասարել այլում երկրորդի, զի և ոչ թշուառն՝ իւրումն թշուառութեան կցորդ ունի զոք։ Այլ որպէս յաղէտս մեր ոչ ոք կամի զմեզ ժողովել, պարտ է ուրեմն տանել արհամարհանաց բարեբաստիկ որերոյ, կամ ըստ արդեանց իւրաքանչիւր գիտել փոխանակել։ Գիտեմ ես և զայնպիսի որեար, որ 'ի բազում ինչ իրս պայծառացեալ՝ ատելի են 'ի կեանս իւրեանց հաւասարից՝ մանաւանդ և ընդ որս կցորդութիւնս ունիցին. բայց յետ ժամանակաց գայցեն նոր ծնունդք, որ 'ի տոհմակցութիւն սոցին՝ թէպէտ կեղծ և վայրապար, թեւակոխել ձգնիցին. պանծասցին 'ի նոսա և հայրենիք, ոչ իբր ընդ օտարս և ընդ յանցաւորս 'ի նոսա ակնարկելով, այլ որպէս 'ի բնիկ իւրեանց քաղաքացիս և ընդ երախտա-

ւորս։ Որոց ըղձացեալ նախանձաւոր լինել փառաց, և իմովքս իսկ առանձին գործովք հռչակեալ, տեսէք արդ եթէ 'ի յանձանձանս իրաց աշխարհի քան զայլ ոք յետնեալ գտանիցիմ։ Քանզի չարժեալ իմ գումարել զհզօրագոյնս 'ի ժողովրդոց Պելոպոնեսեայ՝ առանց ինչ ձեր մեծի վտանգի և ծախուց, առեալ ձգեցի զԼակեդեմոնացիս դիմագրաւել միայնակ 'ի վերայ բոլորից 'ի ճակատամարտ 'ի Մանտինեա, յորում թէպէտ յաղթողք՝ սակայն յերերի կան ցայսօր և յերկբայս։

ԺԷ. « Եւ զայս ամենայն՝ մանկութիւնս է և չբնական համարեալ յիմարութիւնս՝ որ ընդդէմ զօրութեան Պելոպոնեսացւոց համարձակեցաւ գործել. և հրապոյր բանիւք և պատշաճական՝ 'ի ցասումն վառեալ հաւանեցոյց մի՛ ևս այլ երկնչել 'ի զօրութենէս։ Եւ ցորչափ բարգաւաճեալ պայծառանամ սովաւ, և Նիկիաս 'ի համբաւ իւրոյ բարեբաղդութեան, մի՛ ապախտ առնիցէք օգտել մեօք և մի՛ ստրջանայցէք 'ի խորհրդոց արշաւանին Սիկիլիոյ. որպէս եթէ ընդդէմ մեծի զօրութեան գնայցէք. զի օտարածին խառնամբոխ մարդկամբ խճողեալ քաղաքանին, պատրաստք են 'ի յեղափոխութիւն և յընդունելութիւն նորոց օրինաց։ Ոչ ոք 'ի նոցանէ իբրև 'ի վերայ բնիկ աշխարհին զէն առնուցու, ոչ 'ի վերայ կենաց և օրինօք բարեկարգեալ երկրին կռուելով, այլ այր այր 'ի ճոռոմ խօսից իւրոց և 'ի ժխորից յուզելոց շահել ձգնիցի, և 'ի չյաջողելն՝ ելեալ տարաշխարհիկ գնայցէ բնակել յերկիր օտար։ Եւ չէ՛ ըմբռն յայդօրինակ խառնաժողով ամբոխ՝ միաբանութիւն խորհրդոց կարծել և միաձայն հաւանութիւն 'ի գործ. այլ ըստ իւրաքանչիւր մարմաջելոյ լսելեաց՝ ձգեսցին 'ի կարծիս և 'ի կողմնակցութիւն, որպէս և լսեմքս արդ 'ի բազում յերկպառակ հերձուածս։ Դարձեալ չեն առ նոսա այնչափ ասպարազէն զօրու գունդք, որչափ ինչ պարծինն ունել, որպէս և ոչ այլուր Հելլէնք այնչափ ինչ երևեցան, զոր համարէին ուրոյն առանձին ունել. ցայնվայր վրիպեալ

մեծապէս յայսմ Յունաստան, դժուարաւ արդ 'ի պատերազմիս կարէ հանել բանակ շատ իսկ հզօր: Այս է զոր 'ի լուր ականջաց լուայ, և որ մեծապէս նպաստաւոր մեզ լիցի, զի ունիցիմք մեք զբազումս 'ի բարբարոսաց՝ որք առ ատելութեան ընդ Սիրակուսացիս, նոցին հակառակ պատերազմակից մեզ լինիցին. ոչ մի ինչ արգել և աստի գործս նմին լինիցի, եթէ ուղղութեամբ խորհիցիք: Հարքն մեր ոչ զսոսա միայն, զորս զհետ մեր թողեալ ելանեմք յարշաւանս՝ ունէին 'ի թշնամիս, այլ և զՄարս պատերազմաւ 'ի մօտոյ, և կանգնեցին զպետութիւնս. և այս ոչ այլով իւիք, բայց եթէ նաւականին առաւելութեամբ: Եւ ոչ երբէք այնպէս անյոյս երևեցան Պելոպոնեսացիք ընդդէմ մեր, որպէս այսօր. զի եթէ պնդեալք զօրասցին նոքա, արշաւել արշաւեսցեն յերկիրս մեր, զոր և առանց այսր իսկ կարեն առնել. այլ ոչ և նաւաց բազմութեամբ զօրեն ինչ վնասել մեզ, ուր է մեր և այլ նաւախումբ 'ի ծովամարտ:

ԺԸ. « Եւ ի՞ւ, որո՞վ դիպաւոր պատճառանօք դանդաղել հաւանիցիմք՝ չփութալ 'ի թիկունս դաշնաւորաց մերոց, որոց երդումն տուաք փոխանակաւ օգնական իրերաց լինելոյ, և չկարեմք պատճառս ածել եթէ չշարժին և նոքա 'ի մեր օգնականութիւն: Ոչ զի և աստ առ մեզ մարտակից և ձեռնտու լինիցին՝ դաշինս ընդ նոսա կռեցաք, այլ զի սատան ընդդէմ թշնամեաց մերոց այդր և խոչընդոտն յառնիցեն՝ չխլրտել շարժել 'ի վերայ մեր: Սովին այսու արարաք մեք մեզէն զայս իշխանութիւն, և որք դիտացին միանգամ իշխել. զի մտադիւրագոյնս անձապարեցաք յօգնականութիւն՝ որոց առ մեզ դիմեցին և բարբարոսաց և Հելլենաց: Զի եթէ հանդարտեալ նստէաք, և կամ խղճէաք ո՞յց արժան էր օգնել և ո՞յց ոչ, դուն ուրեք և սակաւ յոյժ յաւելուած յիշխանութիւնս առնէաք, և մանաւանդ 'ի վտանգ զդոյն արկանէաք: Ապաքէն ոչ միայն զնախայարձակ հզօր թշնամին վանել պարտ է, այլ և կանխել զառաջս առնուլ՝ մինչչև նորա 'ի նոյն համարձակեալ: Զէ այսուհետև 'ի

մեր ձեռս՝ յայս ծագ ժամանեալ միանգամ, սահման իշխանութեանս դնել. հարկ է 'ի դարանելս ընդդէմ ոմանց, չմոռանալ և զայլս. զի եթէ ոչ մեք մեզէն իշխիցեմք այլոց, վտանգ է ընդ իշխանութեամբ նոցուն լինելոյ: Ձէ արժան մեզ ըստ օրինակի հասարակաց մարդկան զհանգստենէ խորհել, ապա թէ ոչ հարկ էր և զհանգունատիպ տարազ կենաց նոցուն յանձն առնուլ: Հաւանեալ միանգամ եթէ առաւելումք այսու 'ի զօրութիւն, ելցուք ապա 'ի նաւս, դիմեսցուք անդր, և ընկձեալ խոնարհեցուսցուք զամբարհաւած միտս Պելոպոնեսացւոց, տեսեալ նոցա զմեզ արհամարհօղս զառձեռն պատրաստ հանդիսա՝ և նաւարկելով 'ի Սիկիլիա: Եւ տիրապետեալ կղզւոյս, արկցուք և զբովանդակ Յունաստան ընդ իշխանութեամբս. և կամ գոնեա չարիս մեծամեծս Սիրակուսացւոց հասուսցուք, և այս 'ի մեր շահ օգտի և դաշնաւորաց մերոց: Բազմութեամբ նաւացս անքոյթք յապահովութեան՝ կալ մնալ անդանօր 'ի յաջողել արշաւանին, և կամ ըստ կամի ելանել մեկնել 'ի բաց. քանզի և զօրութեամբս այսու ինքնատէր իշխանք եմք գործել միշտ և ընդդէմ միաբանութեան բոլորից Սիկիլիացւոց: Եւ մի բանք յուլութեան Նիկիայ հերձուած երկպառակութեան յերիտասարդս արկեալ և 'ի ծերունիս՝ տացէ ձեզ յետնել 'ի գործոյն. այլ որպէս սովորեցաք վայելչականաւս կարգաւ, զոր օրինակ և հարքն մեր երբեմն, երիտասարդք ընդ ծերոց միաշունչ և միաբան յայս ծագ բարձրութեան զպետութիւնս ամբարձին, նովին օրինակաւ և այժմ արդ ընդարձակեսցուք զսահմանս նորին: Գիտասջիք զի առանց փոխանակաւ ձեռն իրերաց տալոյ մանկութեան և ծերութեան՝ չկարեմք ինչ մի մեծ գործել. այլ տկարն և միջին և գերածայրեալն միազոյգ միախառնուրդ՝ զմեծ զօրութիւն գործեն: Եւ քաղաքս և ժողովուրդ՝ եթէ լռեալ նստիցի, ինքն յինքեան լուծեալ քայքայիցի, որպէս և այլն ամենայն, և հասարակաց հանճար հնացեալ ծերասցի. իսկ 'ի զէն և 'ի մրցութիւնս յաւելցէ իւր միշտ վարժս փորձոյ,

և մարզեսցի 'ի պահ անձին՝ ոչ բանիւ լոկով, այլ հսկու-
թեամբ և արդեամբք գործոց: Գլուխ խօսիցս, քաղաք
կամ ժողովուրդ ժիր և գործօն, եթէ յանկարծ յանգոր-
ծութիւն փոխեսցի, կործանեսցի նա աներկբայ. և անվը-
կանդ հաստատութիւն ժողովրդեան յայն է, զի իւրաքան-
չիւր անայլայլակ, անփոփոխ յիւր օրէնս և 'ի սովորու-
թիւնս պինդ կայցէ, թէպէտ և յոռի իցէ այն և չար »:

ԺԹ. Զայսոսիկ այսպէս խօսեցաւ Ալկիբիադէս: Իսկ
Աթենացիք յետ լսելոյ զբանս, և զաղերս օգնականու-
թեան Եգեստացւոց և Լէոնտինացւոց վտարանդեաց, ոյք
մատուցեալ յատենին յիշատակաւ երդմանց նոցուն պա-
ղատէին, ևս քան զևս 'ի նոյն խորհուրդ արշաւանին վա-
ռեցան: Եւ գիտացեալ Նիկիայ թէ չէն այլ ևս բանք նորա
բաւական 'ի կասեցուցանել զնոսա 'ի հաստատութենէ մը-
տաց նոցին, առաջի առնէր այնուհետև զբազում և զան-
հնարին մեծութիւն պատրաստութեան, զի թերևս այնու
խախտել զնոսա յառաջարկեալ խորհրդոյն մարթասցի. և
մատուցեալ յատենին խօսեցաւ նա դարձեալ օրինակ զայս.

Ի. « Եւ զի ամենևին իսկ վառեալս զձեզ տեսանեմ, ո՛
Աթենացիք, յայս զինուորութիւն, իցէ՛ թէ յաջողեսցի
սա ըստ ըղձից մերոց. բայց ես զոր գիտեմս կարևոր, ոչ
դանդաղեցայց դնել արդ ձեր առաջի: Զի զոր 'ի լուր ա-
կանջաց 'ի զրուցաց լուայ. երթամք մեք 'ի վերայ հզօր և
ազատ քաղաքանւոյ՝ չունելով նոցա պէտս յեղափոխու-
թեան, յոր 'ի բնէ յօժարին մարդիկ յուսով 'ի ստրուկ
ծառայութենէ 'ի հեշտագոյն գալոյ պայման. և ո՛չ՝ որպէս
թուի, փոխանակելոյ զազատութիւն իւրեանց ընդ մերոյս
տիրապետութեան, յորոց 'ի բազմաբնակ քաղաքաց 'ի
միում անդ կղզւոջ՝ յոլովագոյնք հելլենացեղք են: Բայց
'ի Նաքսեայ և 'ի Կատանեայ՝ զորս առ ազգակցութեան ընդ
Լէոնտինացւոց յուսամք 'ի մեզ յարել, են անդ և այլ
եօթն քաղաքք զինեալք ըստ մերումս օրինակի հզօր զօրու-
թեամբ, յորոց մանաւանդ 'ի վերայ դնամք՝ Սելինունդ և Սի-

րակուսա։ Բազում է նոցա գունդ ասպարազէն, աղեղնաւոր և տիգաւոր, բազում և նաւք պատերազմիկք և ամբոխ մարդկան նաւաստեաց։ Են նոցա և գանձք արծաթոյ առ սոսկական քաղաքացիս և 'ի մեհեան Սելինոնդաց, և առաւել ևս Սիրակուսացւոց՝ զոր հարկս հանեն ազգաց ազգաց բարբարոսաց, և որովք անցանեն զանցանեն նոքա զմեօք․ են նոցա և ձիան բազում․ և առատութիւն ցորենոյ յանդս, չունելով պէտս յօտարաց։

ԻԱ. « Ընդդէմ այսքանոյ զօրութեան չէ բաւական նաւական միայն տկար զինուորութիւն, այլ պիտի և հզօր բանակ հետևակախումբ, եթէ ըստ խորհրդոյ մերոյ կամիցիմք արժանաւոր ինչ գործ գործել, և ոչ արգելեալ փակել յերկրի թշնամեաց յերեսաց յաճախագունդ հեծելազին․ մանաւանդ յորժամ երկուցեալ քաղաքանւոյն դաշնաւորութեամբ միաբանիցին, և չգտանի մեզ այլ ժողովուրդ բարեկամ պատրաստելոյ մեզ այրուձի բաւական․ և գործ է ամօթոյ ստիպել մեկնել անտի, կամ առ կանուխ յառաջագոյն թերի խորհրդոց սպասել մնալ անդանօր օժընդակ նորանոր գնդից։ Պարտ է ուրեմն կարևոր պատրաստութեամբ ելանել 'ի ջուր, գիտելով չափ զի յերկիր հեռաւոր առաջի կայ մեզ նաւել, և ոչ 'ի հանգոյն ինչ արշաւանս՝ զոր օրինակ առնէքդ երբեմն ուրեք ուրեք զինուորելով ընդ ձեզ զդաշնակից հպատակս, յորում չէ դժուարին հայթայթել զկարևորս 'ի բարեկամաց այտի․ այլ ամբարձեալ արդ երթամք յաշխարհ օտար, յորմէ ընդ քառեակ ամիսս ձմերայնոյ չէ դիւրին և բանբերս անգամ ընդունել։

ԻԲ. « Հարկ է ապա, որպէս ինձ թուի, ածել ընդ մեզ գունդս ասպարազէն զօրու 'ի մերոց, 'ի դաշնաւորաց և 'ի հպատակաց բազում․ և հնարել ածել և 'ի Պելոպոնեսեայ վարձկանս, և աղեղնաւորս բազումս և պարսաւորս ընդդէմ հեծելազօրուն, և բազմութիւն նաւաց 'ի հեշտեաւ փոխադրութիւն կարևորաց ամենայնի։ Պարտ է դարձեալ

բառնալ ատի համբարս 'ի նաւս նպարաւորս, ցորեան և գարի խանձեալ, և հացարարս յաղօրեաց անտի վարձկանեալ բռնի 'ի զինուորութիւն. զի եթէ առ անհարթութեան օդոյ և աննաւարկելի ծովուն արգելուցումք ուրեք, ունիցի զօրականն զիւր կարևոր պարէնս, զի չէ ամենեցուն քաղաքաց կերակրել բանակ ստուար. ապա զամենայն ըստ կարի պատրաստել, և մի 'ի ձեռս օտարին հայել: Մանաւանդ արծաթ բազում առնուլ ատի ընդ մեզ, զի որ յԵգեստացւոց պատրաստեալ ասի անդ, բանիւ միայն համարեսցէք պատրաստ և ոչ արդեամբք:

ԻԳ. « Զի եթէ չուեմք ատի ոչ քաջազէն միայն սպառագունդ բանակաւ 'ի հակառակամարտ զօրութեան Թըշնամւոյն, այլ և գեր 'ի վերոյ իսկ յամենայնի առաւելութեամբ, սակայն և այնպէս ոչինչ դիւրեաւ կիսոյ յաղթական և այլոց ապրեցուցիչք լինիցիմք: Զայս այսպէս դիք 'ի մտի, իբրու եթէ 'ի մէջ այլազգեաց և ոսոխաց երթամք բնակութիւն հաստատել և քաղաք, որ յառաջնմէ օրէ անտի ժամանելոյս անդր հարկ է մեզ տիրել երկրին, կամ գիտելզի 'ի ձախողելս, զամենեսին աներկբայ թշնամիս ունիցիմք մեզ յարուցանել: Յայս կասկած երկիւղին խելամուտ ամենեքին, թէ 'ի բազում ինչ իմաստութեամբ խորհելի է և 'ի բազմագոյնս յաջողելի, որ չէ դիւրին 'ի մարդկեղէնս պայմանի. վասն որոյ զգուշանամ ըստ կարի չլինել անձնատուր բաղդին, և մինչև ապահովեալ 'ի կարևոր պատրաստութիւնս՝ չելանել 'ի ճանապարհ: Յորում զաներկեանութիւն պետութեանս համարիմ և զինուորելոցս մեր զփրկութիւն. և եթէ իցէ ոք որ այլազգ խորհիցի, թողում 'ի նա մտադիւր զիշխանութիւնս »:

ԻԴ. Զայս այսպէս խօսեցաւ Նիկիաս, կարծելով յաճախութեամբ կարևորացն պահանջից շրջել զմիտս Աթենացւոց. և կամ եթէ բռնադատեսցի 'ի պատերազմն առաջիկայ, բազում զգուշութեամբ գոնեա 'ի նոյն լինել ձեռնամուխ: Այլ ոչինչ հովացեալ Աթենացւոց յեռանդանէ ար-

շաւանին 'ի լուր բազմադիմի բազմախուռն պիտոյից պատրաստութեան, առաւել ևս 'ի նոյն բորբոքեալ վառէին, և ամենևին հակառակ ակնկալութեան Նիկիայ իւրն վճարէր. քանզի առաջարկ նորա գլխովին քաջախորհուրդ երևեալ, աներկևան այնուհետև 'ի նոյն լինէին։ Եւ ցանկութիւն արշաւանիս միապէս ածէր շարժէր զամենեսին. Ծերունիք յուսով աշխարհակալութեան՝ յոր դէմ եդեալ գնային, կամ գոնեա անկասկածք ընդ ձախողակի կատարած մեծի հզօր բանակին. իսկ հասակն առոյգ ըղձիւք հետաքննին տեսութեամբ հեռաւոր երկրի և բարեյոյսք 'ի փրկութիւն. և խառնաղանճ ամբոխ զօրուն 'ի յոյս առաջիկայ շահուն, յընդարձակել պետութեան՝ անդուլ անընդհատ ռոճկի։ Մինչ զի որոց չէր հաճոյ գործն՝ տեսեալ զեռանդն բազմաց, և երկուցեալ զի մի հակառակելով՝ չարակամ և չարախոհ քաղաքին լինել երևեսցին, հանդարտեալ լռէին։

ԻԵ. Ի վերջէ ուրեմն յառաջ մատուցեալ ոմն յԱթենացւոց և ձայն ետ Նիկիայ, թէ ոչ ևս այլ բաղբաղել է կամ յապաղել, այլ արժան է աստէն յանդիման ամենեցուն համարձակ ասել թէ որպիսի՛ հանդերձանս պատրաստութեան վասն արշաւանիդ պարտ է վճռել Աթենացւոց։ Որում Նիկիաս իբրև յակամայս, Խորհեցայց, ասէ, պարապով ընդ իշխանակիցս իմ զիրացդ. այլ որ ինձն թուի 'ի ժամուս, ոչինչ պակաս քան հարիւրովք պատերազմիկ նաւուք ելանել է 'ի ծով. և զոր կազմեսցեն Աթենացիք որչափ ինչ բաւական համարեսցին 'ի փոխադրութիւն ասպարակիր զօրուն, և զօրս 'ի դաշնաւորաց անտի խնդրեսցեն։ Իսկ վահանաւորաց սպայից թիւ՝ թէպէտ յԱթենացւոց, թէպէտ 'ի դաշնաւորաց, չիցեն պակաս քան զհինգ հազար, որ եթէ հնար իցէ և առաւել իսկ. առնել և զայլ պատրաստութիւնս ըստ նմին համեմատութեան, և աղեղնաւորս աստի 'ի մէնջ և 'ի Կրետեայ և պարսաւորս, և որ այլ ինչ դատեսցի կարևոր՝ փոյթ կալցեն պատրաստութեան։

ԻԶ. Եւ լուեալ զայս Աթենացւոց, վճռեցին անդէն տալ զամենայն իշխանութիւն 'ի ձեռս զօրավարաց միահեծան հրամանատարաց, սահմանել զթիւ բանակի զօրուն, և զպէտս հանդերձանաց պատերազմին, և զոր միանգամ տեսցեն յօգուտ պետութեան Աթենացւոց. և վաղվաղակի սկիզբն արարին պատրաստութեանս, պատուէր յղեալ և առ դաշնաւորս 'ի զօրաժողով: Այն ինչ ոգի առեալ քաղաքն 'ի սրածութենէն և յանդուղ պատերազմաց՝ զարգանայր և հասակն առոյգ 'ի դուռ անդ զինուց, հաւաքէր և արծաթ բազում 'ի դիւրութիւն հանդերձանաց ամենայնի, և զչետ լինէին յայնժամ պատրաստութեանս:

ԻԷ. Եւ ահա մինչ այս մինչ այն, անդրիք Հերմեայ վիմատաշք 'ի քաղաքին Աթենացւոց՝ ըստ սովորութեան աշխարհին քառակուսիք, ցիր սփռեալք 'ի դաւիթս տանց և 'ի մեհեանս, գտան 'ի գիշերի միում բազումք ծայրատեալք 'ի դէմս: Ոչ ոք գուշակէր զչարեացապարտից, թէպէտ խոստմունք մեծամեծ պարգևաց 'ի հասարակաց գանձուէ եղեն 'ի յայտնութիւն իրացն, և վճիռք ևս հրամանի 'ի վերայ յաւելան, զի եթէ ոք թէպէտ քաղաքացի, թէպէտ եկ, թէպէտ ստրուկ՝ այլ ինչ նոր եղեալ գուշակեսցէ գործեալ, աներկիւղ 'ի վեր հանցէ զայն: Քանզի ծանր զեղեալսն համարէին և չարագուշակ առաջիկայ արշաւանիս, և դաւադրութիւն իմն 'ի յեղափոխութիւն և 'ի քակել զիշխանութիւն ռամկին:

ԻԸ. Ոչինչ զՀերմեայցն գուշակելով յեկաց անտի և 'ի ծառայից, զայլոց դրօշելոց ծայրատելոց երբեմն յոմանց 'ի պատանեաց 'ի խաղս անդ զուարճութեան նոցա և 'ի գիներբուս՝ զորոց լինէին, որպէս և զխորհրդատօնիցն 'ի տունս տունս առ ծաղու կատարելոց[1]: Եւ ընդ այլոց և զԱլկիբիադեայ եղեն ամբաստան, մանաւանդ ոյք ատելութեամբ էին ընդ նմա վասն արգել իշխանութեան նոցա լինելոյ

[1] Խորհրդատօնք Դեմետրեայ:

'ի ժողովրդեան՝ հաճութեամբ ունկն մատուցին ամբաստանութեանցն. կարծելով 'ի մերժելն զնա՝ յաջողեսցի նոցա նախիշխան կալ 'ի բարձու աւագութեան, և ստուարացուցանէին զնմանէ զամբաստանութիւնս, բողոք բարձեալ եթէ 'ի քակտումն իշխանութեան ժողովրդեան՝ զխորհուրդս պղծէին և զՀերմեայս ծայրաքաղ առնէին, և թէ ոչ մի ինչ 'ի սեղանակապտութեանց աստի առանց նորա լինէր. և 'ի հաւաստիս ասացելոցս զհակառակ օրինաց հասարակաց զցոփակեաց վարս նորա 'ի մէջ բերէին:

ԻԹ. Ալկիբիադ փութայր պատասխանի առնել անդ յայնժամ վասն ամբաստանութեանց զանձնէն, և մինչև ուղղոյ լեալ կամէր յատեան դատաստանի ելանել, քանզի յաւարտ էր պատրաստութիւն չուոյն. և եթէ ինչ մի յայնցանէ գործեալ էր, ընտրէր մանաւանդ լուծանել զպատիժ պատուհասին, և յարդարանալն միայն կալ յիշխանութեան: Բողոք բառնայր մի 'ի բացակայութեան իւրում փուրսիչս ամբաստանութեան զնմանէ ընդունել, և եթէ յանցաւոր էր՝ անդէն 'ի մահ վարել. զի չէ իմաստութեան, ասէր, ընդ այնպիսի ծանր վնասու, չև տուեալ զվճիռ դատաստանի՝ 'ի գլուխ մեծի բանակին զնա արձակել: Այլ թշնամիք նորա երկուցեալ յեկակոչ զնա առնելոյ, զի մի բարեխոհ գտեալ առ նա զօրականին՝ մեղկասցի և ժողովուրդն, զի 'ի շնորհս Ալկիբիադեայ Արգիացիք և ոմանք 'ի Մանտինեացւոց զինուորէին յարշաւանին, փութացան մուծին 'ի ժողովն զայլ ատենախօսս պնդել աճապարել նոցա մտանել 'ի նաւս և մի արգելուլ զչուն, և 'ի դարձին սահմանել զօր դատաստանին. և խորհէին բարդել կուտել զամբաստանութիւնս 'ի վերայ հեռաւորին՝ որ չէրն դժուարին, և առաքեալ կոչել զնա յատեան հարցափորձի: Եւ բարւոք թուեցաւ հրաման չուոյ Ալկիբիադեայ:

Լ. Յետ յայնորիկ յընդմիջել ամարայնոյս, սկիզբն եղև չուոյ արշաւանիս Սիկիլիոյ: Պատուէր տուաւ նախ բազմաց 'ի դաշնաւորաց և նպարաւոր և կարասեկիր նաւաց երթալ

ժողովել 'ի Կորկիւրա, և անցանել անտի ընդ Յոնիական նեղուցն մինչև 'ի սարն Յապիւգեայ: Աթենացիք և որք 'ի քաղաքին էին գունդք Նիզականցաց 'ի ժամադիր աւուրն իջին 'ի Պիրէոն, և ընդ այգն ելին ամբարձան 'ի նաւս խաղալ 'ի խորս: Ամենեքեան յԱթէնս բնակք և եկք 'ի նաւահանգիստ անդր դիմէին. բնիկք ընտանեօք հանդերձ, կէսք ազգականօք և այլք բարեկամօք և որդւովք 'ի տեղին աճապարելով՝ երթալով երթային և զողբս հառաչանաց առնուին, ըստ ակնկալութեան յուսոյ առաջիկայ աշխարհակալութեանս, երկիւղիւ չտեսանելոյ միւսանգամ զայնոսիկ, զորս նաւագնաց հեռաւոր ճանապարհ 'ի հայրենի աշխարհէն անջատէր:

ԼԱ. Ի ժամու անդ բաժանման յիրերաց 'ի բազմավտանգ յայս արշաւանս դիմագրաւ, ուժգինս ազդէր 'ի նոսա անհնարին ահ երկիւղին, քան 'ի վճռելն զայն և 'ի սահմանել. սակայն բուռն բերումն և խանդ 'ի տեսիլ մեծի բանակին և 'ի բազմախուռն հանդիսին խրախուսեալ վառէր զոգիս: Ամենեքեան եկք համայն և ամբոխ խաժամուժ դիմէր յայն տեսիլ հոյակապ և զարմանալի: Զայս առաջին նուագ քաղաք մի միայնակ 'ի հանդէս ածէր 'ի ծովու զայս պատրաստութիւն հելլենական զօրուն, քան որ երբեք մեծապայծառ և մեծածախ չէր երևեալ ցայնժամ: Յոգնախումբ նաւատորմաւ և սպայակոյտ զինուորութեամբ արշաւանք Պերիկլեայ յԵպիդաւրոս և Ագնոնի 'ի Պոտիդէա, չէին քան զայս խոնարհ. քանզի չորեքհազար ասպարաւոր սպայք Աթենացւոց էին, և երեքհարիւր այրուձի և հարիւր պատերազմիկ նաւք. և 'ի Լեսբացւոց և 'ի Քիացւոց յիսուն, և ամբոխ յոյժ 'ի Նիզակակցաց խառն ընդ նոսա 'ի չու. այլ 'ի նաւարկութիւն համառօտ և 'ի հանդերձանս կազմուածոց ոչինչ նշանաւոր: Իսկ զինուորութիւն արշաւանիս սահմանէր վասն երկարաձիգ ժամանակի, և ըստ հարկի պիտոյից 'ի մարտ պատերազմի ընդ ծով և ընդ ցամաք. և պատրաստէր նաւարկութիւնս ծախուք կարգա-

պետաց և ժողովրդեան, և ելանէր աւուր աւուր 'ի հասարակաց գանձուէն միում միում 'ի նաւաստեաց ռոճիկ՝ մի մի դրաքմայ. և հանդերձէին նաւք գատարկք, յորոց վաթսունք սրընթացք էին, և քառասունք սպայակիր՝ 'ի փոխադրութիւն զօրուն: Քանզի կարգապետաց էր զինել զպատերազմիկ նաւս, հանդերձել ընտիր ընտիր նաւաստեօք, յաւելլով 'ի վերայ թոշակաց նոցուն՝ որ 'ի գանձուց հասարակաց բաշխէր, այլ ևս վարձս յառաջակարգ թիավարացն և նաւաստւոյն. որք և ելևելս զմիմեամբ մեծապայծառ զարգարէին զնաւսն 'ի դրօշելս և 'ի հանդերձանս գեղեցիկս, գերազանցեալ մի քան զմի 'ի վայելչութեան և յերագութեան: Եւ զօրն երկրախումբ 'ի յընտրելոց անտի կազմէր, որոց փոյթ էր զինուց և սպասուց մարմնոյ, և'ի նախանձ ընդդէմ մրցութիւնս 'ի կատարումն պարտուց իւրաքանչիւր, 'ի հանդէս իմն ածելով զզօրութիւն իւրեանց և զիշխանութիւն առաջի բոլորից Հելլենաց, քան 'ի մարտ պատերազմի ընդդէմ թշնամեաց: Եթէ ոք 'ի համար առնուլ կամէր զհասարակաց ծախս քաղաքին, և զառն առն զզինուորելոցն, և զքաղաքին արդէն իսկ կանուխ ծախեալս, և զոր միանգամ 'ի ձեռս զօրավարաց աւանդէր, և զմիոյ միոյ ռոճկականի վասն անձին իւրոյ, և կարգապետաց 'ի նաւս իւրաքանչիւր, և զոր դեռ ևս ունէին ծախել, թող և զոր 'ի դէպ էր՝ բաց 'ի հասարակաց թոշակէն, առն առն առնուլ իւր պաշարս 'ի պէտս առաջիկայ երկարաձիգ արշաւանին, և որչափ ինչ 'ի տուրևառ փոփոխութիւն զօրականն և թանգարք բարձեալ տանէին ընդ իւրեանս, բազում տաղանդաց ոք գտանէր գումարս ելեալ 'ի քաղաքէն: Եւ արշաւանս այս ոչինչ նուազ յանդգնութեամբն զարմանալի, և մեծաշուք տեսլեամբ հանդիսին երևելի գտաւ, որպէս և առաւելութեամբ զօրութեան յորոց վերայ դիմէրն և հեռաւոր նաւարկութեամբ և մեծայոյս ակնկալութեամբ ելից իրաց:

ԼԲ. Իբրև լցեալ հանդերձեցան նաւքն, եմուտ և զօրն,

'ի ձայն փողոյ տուաւ նշան լռութեան. և կատարէին օրհնաւոր աղօթս հասարակաց յառաջ քան զչուն՝ ոչ ուրոյն ուրոյն 'ի նաւս իւրաքանչիւր, այլ համօրէն միաբան 'ի ձայն քարոզի. և գինի խառնեալ 'ի տաշտս 'ի տեսիլ ողջոյն բանակին, և 'ի բաժակս ոսկիս և յարծաթեղէնս նաւորդք ամենայն և իշխանք զօրուն զհաշտարար զոհս քաւութեան հեղուին: Աղօթակից նոցուն լինէր և ամբոխն 'ի ցամաքէն, որոց կցորդ էր և քաղաքացւոց և բարեկամաց բարեխոհից խումբ: Եւ հնչեցուցեալ զՊէոնական զերգ պատերազմի, յաւարտ զոհին քաւութեան ելին 'ի ջուր, նախ 'ի ռազմ մահկաձև տողեալք մինչև յԵգինէ ընդ հակառակս միմեանց թիավարելով, և անտի առխեթեալ զնաւսն 'ի Կորկիւրա կոյս թևակոխեցին, ուր զօրաժողով էր դաշնաւոր նիզակակցաց: Լուր արշաւանիս 'ի տեղեաց տեղեաց հասանէր 'ի Սիրակուսա, բայց ոչ կամէին նոքա վաղվաղակի հաւատս ընծայել համբաւոյն. և գումարեալ 'ի ժողով՝ կէսք 'ի հաստատել զստուգութիւն արշաւանին, այլք 'ի ստել ճըգնէին: Եւ մատուցեալ Երմոկրատէս Երմոնեան յատենի ժողովոյն, իբրև քաջ տեղեակ զիրացն խօսել կալաւ՝ խորհուրդ այսպիսի առաջի անելով նոցա.

ԼԳ. « Հանդուգնատիպ այլոց ոմանց անհաւատ թուիցիմ թերևս և ես ձեզ զստուգութենէ արշաւանիս խօսելով: Եւ գիտեմ, զի որ անհաւան ինչ առեալ զրուցեն, ոչ միայն չընծային նոցա հաւատք, այլ և ընդ խելայեղս և ընդ մտամթափս համարին նոքա: Սակայն և այնպէս մինչդեռ 'ի վտանգի կայ քաղաքս, ոչ բնաւ երբէք երկուցեալ դեդևեցայց, փութամ յանձն իմ տեղեկագոյնս քան զայլ ոք զոր գիտեմս խօսել: Աթենացիք, ընդ որս զարմանայքդ, բազմաձեռն երկրախումբ և նաւական զօրութեամբ խաղան 'ի վերայ ձեր, զնիզակակից իւրեանց բարեկամութիւն ընդ Եգեստացւոց պատճառելով, և հաստատելոյ զգաղթականն Լէոնտինացւոց. այլ ինքնապէս տենչ ցանկութեան աշխարհակալութեան Սիկիլիոյ ձգէ զնոսա 'ի տիրապետութիւն,

մանաւանդ մերոյս Սիրակուսայ. գիտելով քաջ զի տիրեալ միանգամ քաղաքիս, կալցեն այնուհետեւ անարգել և զՍիկիլիա ողջոյն: Եւ զի ընդ հուպ հասցեն նոքա այսր, տեսէք որով զնոսա վանել 'ի ձէնջ կարիցէք, և մի արհամարհելովդ յանպատրաստից ըմբռնիցէք, և կամ անհաւատ ամենևին անփոյթ զնոցանէ լինիջիք: Բայց և 'ի հաւատալն մի ոք ընդ յանդուգն խիզախումն նոցա և ընդ զօրութիւն պակուցեալ երկիցէ, զի ոչ աւելի ինչ վնասել նոքա մեզ կարիցեն, քան որչափ ինչ 'ի մէնջ կրիցեն: Եւ ոչ դարձեալ, զի հզօր նաւատորմաւ գան 'ի վերայ մեր՝ սակաւ ինչ անտի շահիցեմք, յորժամ ահաբեկեալ Սիկիլիացիք դիմեսցեն 'ի մեր նիզակակցութիւն, և 'ի լաւագոյն ևս յայնժամ պայման յաջողեսցուք խորտակել իսպառ զԱթենացիս. և կամ 'ի դերև ելեալ նոցա 'ի յուսոյն՝ որոյ վասն գանն, ձեռնունայն 'ի մէնջ 'ի բաց մերժեսցին. քանզի չկասկածեմ բնաւ երբեք հասանել նոցա ակնկալեացն, նա մանաւանդ մեծայոյս իսկ եմ, զի մերս մրցութիւն նահատակութեան շքեղագոյն փայլեսցի: Զի դուն ուրեք զօր բազմամբոխ՝ Թէպէտ 'ի Հելլենաց, Թէպէտ 'ի բարբարոսաց՝ 'ի բնիկ աշխարհէն 'ի հեռաւորս արշաւանս եդեալ և յաջողեցան. զի չկարեն նոքա գլել անցանել զբազմութեամբ բնակաց երկրին և նոցին սահմանորդաց՝ որք առ երկիւղի շարժեալ 'ի մի միաբանութիւն ձուլեսցին աշխարհաւ. և զի առ 'ի չգոյէ իսկ կարեւոր պարինից նոքա յերկիր օտար վրիպեալ վատթարասցին, և որոց դարանակալն կամին լինել, Թէպէտ և անձամբ անձանց վրիպանօք գթեալ անկցին, սակայն և այնպէս Թողուցուն նոցա զանուն փառաւոր: Այսպէս և Աթենացիք յետ բազմօրինակ և անակնկալ վրիպանաց արկածից ձախողութեանց Մարին, որ 'ի վերայ քաղաքի նոցա դայր, աճեցան 'ի փառս և 'ի համբաւ. ոչինչ օտար համարեսցի սմին և մեզ հանդիպել:

ԼԴ. « Որով քաջալերեալ պատրաստեսցուք ապա, և յղեսցուք առ Սիկիլիացիս, զոմանց առ լաւագոյն ևս պըն-

դելոյ ընդ մեզ զբարեկամութիւն, և զայլոց փորձ փորձել որսալոյ զնիզակակցութիւն միաբանութեան. արասցուք հրեշտակս և առ այլ ժողովուրդս Սիկիլիոյ, ծանուցանել նոցա զհասարակաց վտանգ. արձակեսցուք և յԻտալիա նուիրակս 'ի հրաւէր մարտակցութեան, և կամ գոնեա չընդունելոյ զԱթենացիս 'ի բարեկամս: Բարւոք թուի ինձ և 'ի Կարքեդոն պատգամաւորել, զի չեն ինչ անկասկած և նոքա, այլ 'ի խեթի կան և յերկիւղի, թէ մի՛ յաւուր միում հասցեն Աթենացիք և 'ի վերայ քաղաքի նոցա. և 'ի դէպ է յոյժ խորհել նոցա, եթէ յապախտ առնելն այժմ զայս պատեհ, լիցի ապա կրել զաշխատութիւն մեծ. և դայցեն մեզ թէպէտ 'ի ծածուկ, թէպէտ և յայտնի, որով և է օրինակաւ 'ի թիկունս օգնականութեան: Որոց չատ է կամելն միայն, զի հզօրք են 'ի ժամանակիս. որոց յաճախութիւն է ոսկւոյ և արծաթոյ, որով յաջողիմքս 'ի պատերազմի և 'ի խաղաղութեան: Առաքեսցուք և 'ի Լակեդեմոն և 'ի Կորնթոս, թախանձել և զնոցայն անյապաղ զօգնականութիւն, վառել և անդր զհրդեհ պատերազմին: Եւ զոր մանաւանդ կարի 'ի ճահ տեսանեմ, որում և դուք ձերովդ բնաւորեալ խաղաղասէր հանդարտութեամբ գիտեմ զի չտայք տեղի կամ հաւանիք, սակայն և ասացից: Աշխարհովին զամենայն Սիկիլիացիս, իսկ եթէ ոչ, զյոլովագոյնս 'ի նոցանէ միաբանեալ ընդ մեզ՝ ողջոյն նաւական զօրութեամբս և երկամսեայ պաշարաւ ելցուք, ասեմ, 'ի ծով հանդիպել նաւատորմին Աթենացւոց 'ի Տարենտա և 'ի Յապիգեան հրուանդանին. տացուք նոցա 'ի միտ առնուլ, եթէ մինչև անցեալ ընդ Յոնիական նեղուցն, չմարթի մարտ մղել զՍիկիլեաւ. ահ արկանել մանաւանդ նոցա, զի յերկրէ բարեկամաց մերոց գամք՝ որոց և պահապան իսկ եմք, զի ընկալցի զմեզ Տարենտա. և զի առաջի կայ նոցա հատանել անցանել ընդ ընդարձակութիւն ծովուն ամենայն կազմուածովք հանդերձ նաւախմբին, յորում յերկար նաւարկութեան դժուարին իցէ զգուշանալ ռազմին,

և կարգին միտ դնել, և մեզ դիւրին 'ի յառաջել նոցա յուշիկ յամրաշարժ 'ի բազում առաջս՝ յարձակել 'ի վերայ։ Իսկ եթէ երագապէս նաւարկեալ սրընթաց պատերազմիկ նաւուք թիավարեալ խմբովին զյարձակումն առնիցեն, 'ի վաստակել խոնջ թիավարացն՝ անկցուք 'ի վերայ նոցա. ուր եթէ այլազգ ինչ կամք լիցին մեզ, նահանջեսցուք ամփոփել 'ի Տարենտա։ Նոքա հապճեպ իբրու 'ի նաւամարտ ելեալ, ոչ լիովին պաշարապինդ զչուգ առնեն. և չքաւորեսցին 'ի պարենից յանշէն յամայոջ, և 'ի յամելն անդանօր՝ փակեալ պաշարեսցին. իսկ 'ի փորձ փորձելն զափամբ գնալ, բռնադատեսցին անշուշտ թողուլ զկահ և զկարասին, և յերկբայս անդ և 'ի գայթ 'ի գայթի ընդունելութեան քաղաքաց՝ լքեալ վհատեսցին։ Ըստ իս ապա, այսու խորհրդով արգելեալ նոցա 'ի Կորկիւրա, չելցեն անտի. և 'ի լրտեսել զզօրութիւն մեր և զբանակետղ՝ ձմերայնոյ թողցեն զգործ պատերազմին, և կամ յանակնկալ գալստենէս ահաբեկք ամենևին իսկ ձեռնթափ յարշաւանէն լինիցին։ Դարձեալ, որպէս լսեմս, քաջահմուտն 'ի զօրավարս նոցա յակամայս կայ 'ի գլուխ զօրուն, և մտադիւր ընկալցի 'ի պատճառանս զհզօր պատրաստութիւնս մեր։ Հռչակ համբաւոյս՝ գիտեմ, տուարացեալ աճեսցի քան զոր եմքս, զի ըստ զրուցաց են կարծիք մարդկան. որ նախայարձակ 'ի կռիւ լինի, և կամ որ անվեհեր յառաջէ ընդդիմամարտ, վեհագոյն քան զվտանգն հանդիսացեալ ահագին երևի։ Ի սոյն կիրս են այժմ Աթենացիք. անբաւականս կարծելով զմեզ 'ի պահ և 'ի վրէժ անձանց մերոց՝ գան 'ի մեր վերայ, և յիրաւի յարհամարհս դրեն զմեզ, զի չմիաբանեցաք ընդ Լակեդեմոնացիս 'ի սպառապուռ ջախջախանս նոցա. այլ եթէ քան զկարծիս խիզախել զմեզ տեսանիցեն, յանակնկալ դիպացս քան յիսկական ստոյգ զօրութենէս մերմէ երկուցեալք զարհուրեսցին։ Հաւատացէք ինձ, արիաբար մանաւանդ զհետ եկայք խորհրդոց իմոց. ապա թէ ոչ, անձապարեալ բուռն հարէք 'ի պատրաս-

տութիւն պատերազմիս. զայս դիք 'ի մտի, զի յարհամարհանս ունել զթշնամին անվեհեր գործ է արութեան, բայց եթէ երկիւղիւ վտանգին՝ ապահովագոյն ճանապարհ համարիցիք 'ի պատրաստութիւն փութալ: Չի յառաջէն արքդ 'ի վերայ մեր, խաղայ տորմիղ նաւացն նոցա 'ի ծովուն, և գիտեմ քաջ, զի ընդ հուպ երևեսցին »:

ԼԵ. Երմոկրատեայ զայս օրինակ խօսելով լռեաց: Եւ ժողովուրդն Սիրակուսացւոյ 'ի բազում հակառակ կարծիս յիւրեանս վիճէին. կէսք թէ բնաւ իսկ չունին գալ Աթենացիք, և թէ որ ինչ ասի՝ չէ ճշմարիտ. ոմանք թէ և 'ի գալն իսկ զի՞նչ չարիս կարասցեն առնել, զորոց զհաւաստարն և զչարագոյնն չկրեսցեն և նոքին ինքեանք. այլք ամենևին իսկ անգոսնեալ զբանն, և 'ի ծաղր և 'ի ծանակ զնոյն դարձուցանել ջանային. էին և որք հաւատս Երմոկրատեայ ընծայելով՝ երկնչէին 'ի մօտալուտ սպառնալեացն: Յառաջ մատուցեալ յայնժամ յատենի հրապարակին Աթենագորաս՝ գլուխ և վերակացու ժողովրդեան, և 'ի ժամանակին յայնմիկ՝ արգոյ յոյժ առ ամբոխին, խօսեցաւ և նա օրինակ զայս.

ԼԶ. « Որք միանգամ չկամիցին յայն անմտութիւն Աթենացւոց անկշիտանալ, մինչև գալ նոցա անկանել 'ի ձեռս մեր, այնպիսիքն կամ վատասիրտ ոմանք են, կամ ոչ բարեխոհ սիրող հայրենեաց: Իսկ որք զայսպիսի ինչ զրոյցս յերկիւղ ձեզ քաղաքացւոցդ տարածել սփռել հնարին, քան ընդ յանդգնութիւն՝ ընդ անմտութիւն նոցա զարմանամ, որ չկասկածեն բնաւ ընդ յայտնութիւն պատճառացն, զի որով իւիք ահաբեկին ինքեանք՝ 'ի գոյն և զքաղաքն ջանան արկանել, որպէս զի 'ի հասարակաց երկիւղին՝ զիւրեանցն պատրուակել մարթասցին: Այս ահա պատճառք զրուցացս, ոչ դիպաց ծնունդ, այլ յարանց որ զայսպիսիս սիրեն միշտ ժխորս՝ ստեղծեալք: Բայց դուք, եթէ բարւոք միտս ունել կամիք, մի 'ի զրուցաց արանցս այսցիկ՝ զհնարաւորն դատիք, այլ որ յուսալ է 'ի յաջո-

զամիտ և 'ի փորձ մարդկանէ, զորպիսիս ոմանս զԱթէնացիս կարծեմ լինել։ Զէ նոցա 'ի դէպ զՊելոպոնեսացիս թողեալ և զանտի պատերազմն չև հաստատութեամբ աւարտեալ, գալ կամովին յոչ թեթևագոյն ինչ 'ի կռիւ մարտի։ Ըստ իս շատանալ պարտ էր նոցա, զի ոչ մեք մեզէն 'ի նոսա արշաւեմք, այսքան և այսպիսի մեծամեծ և բազմամարդ քաղաքօքս։

Լէ. «Զի եթէ՝ որպէս լսեմքս, գան նոքա արդարև, յաջողակագոյն կարծեմ զՍիկիլիա քան զՊելոպոնէս 'ի հակառակամարտ նոցին, որչափ գեր 'ի վերոյ է քան զնոսա յամենայնի կարևորօք 'ի պատերազմ. որով և քաղաքս մեր այս ինքնին միայնակ, եթէ բանակք զօրու թշնամւոյն՝ որ 'ի ջուն է, ասեն, գալ 'ի վերայ, կրկին ևս առաւելուցուն քան որչափ ենն, շատ իսկ հզօր է սա 'ի վերամարտ նոցուն և 'ի յաղթութիւն։ Եւ գիտեմ զի չէն նոցա երիվարք յայս արշաւանս, և չկարասցեն իսկ հայթայթել ուստեք, բայց եթէ սակաւս յԵգեստացւոց. և ոչ ըստ մերոյս բազմութեան բառնալ 'ի նաւս այնչափ զօր սպայակոյտ, զի չէ դիւրին յերկարաձիգ նաւագնացութեան ծանրաբեռնել զնաւս չնչինս և թեթևս՝ այնպիսի և այնչափ կազմածովք պատրաստութեան 'ի վերամարտ ոչ դուզնաքեայ ուրուք քաղաքի։ Մինչ զի քանի՛ օտար են խորհուրդք իմ 'ի խորհրդոյ աստի. զի եթէ էր, ասեմ, քաղաք հզօր որպէս Սիրակուսայն, և գային նոքա 'ի սահմանաց աստի մերոց 'ի պատերազմ, հազիւ եթէ ապրել կարէին 'ի բնաջինջ կորստենէ. զի՞նչ ապա, յորժամ բովանդակ Սիկիլիա իբրև զայր մի 'ի կռիւ միով ոգւով ընդդէմ նոցին զինեսցի, չունելով նոցա քան զնաւս և քան զանձուկ զաղփաղփուն վրանս՝ այլ բանակետղ ամրութեան, և չկարելով խլրտել ուրեք յերեսաց հեծելազօրուս։ Եւ բնաւ իսկ թէ կարիցեն ելանել ունել զցամաք երկիր, զի այնպէս հզօր համարիմ զմերս պատրաստութիւն։

ԼԸ. «Այլ զայս ամենայն զոր ասեմ գիտելով և Աթէ-

նացուց, աներկբայ ապրեցուցանել խորհեցին զոր ունէինն, մինչդեռ մարդիկն մեր աստ զչմարթուն՝ զանկայն ստեղծեալ հնարին: Զորս ոչ եթէ այսօր նախ, այլ 'ի բազմաց հետէ ճանաչեմ ես զնոսա, որ այսպիսի և աւելի քան զայն Թիւր բանիւք և չարագոյն գործովք ահաբեկել զռամիկն ճարտարեն, զի ամենևին իշխել նոցա կարասցեն. և երկընչիմ իսկ զի յետ որոգայթադիր հնարիցս յաջողեսցին առ-քա 'ի նոյն, և մեք ապիկարքս չժամանիցեմք կանխել զառաջս առնուլ ակնյայտնի ապառնացեալ չարեաց: Վասն այսօրիկ է, զի քաղաքս մեր հազիւ երբեք հանդարտեալ նստի՝ 'ի բազմապատիկ յուզմունս և 'ի կռիւս ընդ անձին մաքառելով ստէպ քան ընդ Թշնամիս, է զի և ընդ բռնաւորս իսկ և ընդ անիրաւ իշխանութիւնս: Զանացայց՝ եթէ կամիք զհետ իմ գալ, զի մի՛ յայսպիսեաց ինչ կրեսցուք յաւուրս մեր, ընդ ձեզ ընդ բազմութեան հաւան բանիւք գնալով, և ընդ արան ընդ այնոսիկ ընդ նենգաւոր չարեացապարտս՝ պատուհասիւք վարելով. ոչ միայն յըմբռնելն զնոսա 'ի չարիս, որ դժուարին յոյժ է, այլ և 'ի կամս անօրէնութեան նոցա յանկարս և յանարգիւնս 'ի վերայ հասանելով: Զի 'ի Թշնամին՝ ոչ զգործոց միայն, այլ և զդարանակալ խորհրդոց անգամ պարտ է կանխել հանել զվրէժ, զի չաճապարելն 'ի զգուշութիւն՝ կանուխ իսկ անկանել է 'ի նոյն: Այլ վասն ազնուապետականաց, զոմանս յայնցանէ խայտառակեցից, յայլոց զգուշացայց և զկէսս խրատեցից: Այսպէս մանաւանդ համարիմ զառաջս անօրէնութեան չարեաց առնուլ: Եւ դուք, պատանիք, քանզի զձէնջ խորհիմ յաճախ, զի՞նչ խնդրէք. իշխանութեան էք հետամուտ, այլ մի՛ արտաքոյ օրինաց: Կարգեցան օրէնք վասն անբաւականութեան հասակիդ, և ոչ բաւականութեամբք անպատիւ զձեզ առնելոյ: Ծա՞նր իցէ ձեզ ընդ ամբոխին հաւասարել, և ո՞ր իրաւունք հաւասարից չվայելել 'ի հաւասարութեան:

ԼԹ. « Ասիցէ ոք Թերևս, 'ի ռամկավարութեան չիք

հանճար, չիք արդարութիւն, եթէ 'ի ճոխսն է և 'ի փարթամսն ճարտարութիւն վարչութեան: Իսկ ես ասեմ. ժողովուրդ՝ բոլորից է անուն, ազնուապետութիւն՝ մասին միայն. ճոխք՝ ընտիր պահապանք են ընչից, հանճարեղք՝ 'ի տալ զխորհուրդս, և բազմութեան է դատել զխորհեալսն. յընկերհաշտութեան՝ միապէս ըստ մասին և ըստ բոլորին, այն է, իւրաքանչիւր դաս մարդկան վայելէն յիրաւունս հաւասարութեան: Իսկ 'ի սակաւուց իշխանութեան՝ զռամիկն բաժանորդ առեալ 'ի վտանգսն, 'ի շահսն՝ ոչ միայն աւելաստացք ագահեն, այլ և զբնաւն յափշտակեալ գրաւեն. այս է, որում ճոխք և հասակ մանկութեան 'ի մեծի քաղաքիս անկարելւոյն զհետ նկրտին: Այլ և արդ այսօր, ո՛ անմտագոյնքդ 'ի մարդիկ, եթէ չիմանայք յո՛ր չարիս մղեալ ձգիք, տխմարք էք քան զամենայն Հելլենացիս, և անօրինագոյնք՝ եթէ գիտելով զայդ և տակաւին 'ի դոյն յանդգնիք:

Խ. «Հա՛պա, ուսեալք և զգաստացեալք ջանացարուք 'ի շահ հասարակաց գանձել զբարին. գիտելով զի լաւաբեարն՝ տոհմիկքն 'ի ձեզ հաւասար և աւելի իսկ քան զամբոխ ռամկին լիցի նմին բաժանակից. ուր եթէ այլազգ ինչ խորհիցիք, յամենայնէ վրիպել ձեզ հասանիցէ: Դադարեցէք ապա 'ի սփռելոյ զլուրսդ, որոց խելամուտ են խորհրդոց ձերոց՝ զի չըմբռնին նոքա վայրապար 'ի նոյնս: Զի թէպէտ և գայցեն Աթենացիք, բաւական է քաղաքս վանել զնոսա յիւրմէ. են են արդարև մեր զօրավարք՝ որոց դէտակն կալեալ զգուշացին նմին: Իսկ եթէ ոչ մի ինչ 'ի լրոյս յայացանէ իցէ ճշմարիտ, որպէս և հաւանեալս եմ, ոչ 'ի զրուցաց ձերոց ահաբեկեալ ինչ քաղաքս, կացուսցէ զձեզ իշխանս՝ արկանել անձամբ զանձն 'ի ստրկութիւն ինքնակամ: Այլ ինքնին մտ եդեալ և զբանս ձեր ընդ գործոցդ կշռեալ, մի՛ 'ի լուր բանիցդ թողուցու կողոպտել յինքենէ զժառանգութիւն ազատութեան իւրոյ, այլ արդեամբ պահ եդեալ ապրեցուցանել զայն ճգնիցի»:

ԽԱ. Զայսոսիկ Աթենագորաս ասաց: Եւ յարուցեալ

անդ յայնժամ ումն 'ի զօրավարաց, և ոչ ումեք թոյլ տուեալ յառաջել քան զինքն՝ խօսեցաւ ըստ ժամուն պիտոյից այսպէս. «Ոչ է գործ խոհականութեան՝ բանիւք ամբաստանութեան և պարսաւանաց 'ի միմեանս յարձակել, և ոչ դիւրահաւատ նոցին ասացելոց լինել. այլ ընդ չախինդն համբաւոյս արժան է առն առն քաղաքացւոյ և բոլորումն իսկ քաղաքին զարթուցեալ կազմ լինել և պատրաստ՝ զյարձակումն թշնամւոյն 'ի մէնջ 'ի բաց վանելոյ: Թէպէտ և ոչ իւիք չքաւորիցի քաղաքս, սակայն չէ ինչ վնաս ձոխագոյն ևս զդա գործել երիվարօք, զինուք և այլովք ամենագի կազմուածովք՝ որ 'ի յաջողութիւն և 'ի փառաւորութիւն իցէ պատերազմի: Իսկ զհոգ և զհանդէս համարոյ ամենայնի՝ մեր յանձն առեալ է. առաքեսցուք և 'ի քաղաքս քաղաքս հոգալ և պատրաստել զամենայն ինչ կարևոր: Զայսոցիկ խնամ կալեալ ցարդ, և զոր այլ ինչ իմասցուք յօգտակարացն, չարասցուք ապախտ տալոյ գիտել և ձեզ»: Եւ յետ բանից զօրավարիս լուծաւ ժողովն:

ԽԲ. Աթենացիք վաղ իսկ 'ի Կորկիւրա հասեալ, ինքեանք և դաշնաւորք նոցա, և միաանդամ հանդէս արարեալ զօրուն՝ օրինադրեցին զօրավարք զկարգ չուոյն և զօրինակ բանակելոյ: Յերիս զատուցին յառաջս զզօրն, զի մի 'ի համախումբ նաւարկութեան պակասեսցի նոցա ջուր, և նաւատորմին ուր զերեսս հաստատեալ երթայցեն՝ իցէ կայան և կերակուր 'ի լիութիւն բաւականի. և զի դիւրին ևս իցէ և բարեկարգ վարչութիւն իշխանութեան, մէն մի հատուած զօրուն ուրոյն միում միում զօրավարի անսալով հրամանի: Յետ այնորիկ արձակեցին նաւս երիս յԻտալիա և 'ի Սիկիլիա, գիտել թէ ո՞յք 'ի քաղաքաց լինիցին նոցա բարեկամք, և տալ փութալ նոցա ելանել ընդառաջ նաւախմբին, և կանխել յառաջ քան զժամանել ինքեանց 'ի տեղին՝ առնուլ 'ի նոցանէ հրամանս:

ԽԳ. Յետ այսորիկ ամբարձեալ Աթենացիք 'ի Կորկիւրայ՝ համախումբ պատրաստութեամբն խաղային 'ի Սիկի-

լիա. հարիւր երեսուն և չորս նաւք էին նոցա, և երկու յիսնաթի հռոդացի: Ի գումարտակէ աստի նաւաց հարիւրքն՝ Ատտիկեցւոց էին. վաթսուն պատերազմիկք թեթեւագնացք, և այլք սպասակիր 'ի փոխադրութիւն զօրուն. և մնացեալքն 'ի Քիացւոց և յայլոց նիզակակցաց: Ասպարազէն զօրական հինգհազարք էին և հարիւր. յորոց հազար հինգհարիւրն 'ի քաղաքացւոց դասուէն էր, եօթնհարիւրն 'ի կարգէ ռամիկսպաս վարձկան զօրուէն, և այլք 'ի դաշնաւոր ժողովրդոց գումարեալ, և կէսք 'ի հպատակաց. յԱրգիացւոց և 'ի Մանտինէացւոց հինգհարիւր, և 'ի վարձկանաց անտի նոցա երկերիւր յիսունք: Աղեղնաւորաց գունդ էր ընդ ամենայն չորեքհարիւր ութսուն. յորոց ութսունք Կրետացիք էին, և պարսաւորք Հռոդացիք եօթնհարիւր, և Մեգարացիք թեթեւազէնք 'ի վտարանդեաց անտի նոցա հարիւր և քսան, և նաւ գրաստաբարձ ածելով երիվարս երեսուն:

ԽԴ. Այսպիսի էր առաջին զինուորութիւն արշաւանիս: Զհետ զօրուն գայր գումարտակ մի երեսուն պարենակիր նաւաց, բերելով համբարս և հացարարս և որմնադիրս և հիւսունս և զամենայն կարեւոր 'ի կազմութիւն պատնիշաց. և էին նաւք հարիւր ընդ նպարակաւոր և վաճառաբարձ նաւս 'ի հարկէ մասն արշաւանին. թո՛ղ և զայլ բազմութիւն նաւաց թանգարաց, որք ինքնակամ ընկերէին չուոյս 'ի սպաս և բանակին: Ամենեցուն սոցա եկեալ 'ի Կորկիւրայ անցին ընդ Յոնիական նեղուցն, և հասեալ կէսք 'ի սարն Յապիւգեան, այլք 'ի Տարենտա, և այլուր յոր վայր կարացին՝ զափամբ գնային այնուհետեւ զԻտալիով: Փակեցին քաղաքք ընդդէմ սոցա զդրունս իւրեանց և զհրապարակս վաճառուց, թոյլ տալով միայն մօտ խարիսխ արկեալ ելանել զջրոյ. ուր Տարենտացիք և Լոկրացիք և ոչ զայն ներեցին նոցա: Մինչև հասեալ նոցա 'ի Հռեգիոն 'ի սարաւանդն Իտալիոյ, և խմբեցաւ անդանօր ողջոյն բանակն. և զի չթողան նոցա մտանել 'ի քաղաքն, արտաքոյ 'ի ստր-

թավայրս տաճարին Արտեմեայ հարին նոքա զբանակս իւրեանց, յորում և շնորհեցաւ նոցա հրապարակ վաճառուց, որոց հանեալ 'ի ցամաք զնաւս իւրեանց՝ նստան 'ի տեղւոջն։ Եւ անտի բանագնաց առ Հռեգիոնացիս եղեն, զի որովհետև Քաղկիսացիք էին և նոքա, խնդրելով 'ի նոցանէ ձեռն տալ Լէոնտինացւոց սերնդոց Քաղկիսացւոց։ Որոց պատասխանի արարին Հռեգիոնացիք՝ ոչ ընդ ումեք դաշնաւոր լինելոց, բայց որ հաճոյն իցէ Իտալացւոց՝ զայդ արասցուք։ Իսկ Աթենացիք դեգերելով անդանօր՝ լրտեսէին ըզպայման իրաց 'ի Սիկիլիա, որով հնարիւք յաջողակի 'ի գլուխ հանել զգործն մարթասցեն. և միանգամայն մնային գալստեան նաւաց յառաջագոյն արձակելոց առ Եգեստացիս, գիտել ինչ զգանձուց արծաթոյն, զորմէ զրոյց տային հրեշտակք նոցա յԱթէնս։

ԽԵ. Ի ժամանակին յայնմիկ 'ի տեղեաց տեղեաց լուր առ Սիրակուսացիս հասանէր, և 'ի լրտեսաց նոցա 'ի ստոյգ բանբերաց, եթէ 'ի Հռեգիոն էր նաւախումբ բանակ զօրուն Աթենացւոց։ Եւ այնուհետև միաշունչ միաբան հաւանութեամբ աներկբայ ձեռն 'ի գործ 'ի պատրաստութիւն պատերազմի լինէին. առաքէին ընդ ամենայն Սիկիլիա, է ուրեք գունդս պահանորդաց, և է ուրեք հրեշտակս. և զամուրս երկրին պնդէին զօրօք, և 'ի քաղաքին հանդէս զօրուն արարեալ և երիվարաց, և հոգ խնամոյ ունէին զի մի ինչ պակասեսցէ. և զամենայն ինչ այնպէս յերիւրէին՝ կազմէին, որպէս եթէ արդէն իսկ մօտ առ դուրս էր թշնամին։

ԽԶ. Եւ դարձան երեք նաւք Աթենացւոց պատգամաւորք 'ի Հռեգիոն՝ զրոյց բերելով յԵգեստացւոց, եթէ խոստացեալ գանձք արծաթոյ չէրևին լինել աւելի քան զերեսուն տաղանդաց։ Ընդ որ դժկամակեալ բեկան լքան յոյժ զօրագլուխք ընդ տարադէպ պատրանսն, և ընդ հրաժեշտ Հռեգիոնացւոց զինուորելոյ ընդ նոսա, ոչ անսալով թախանձանաց նոցին և ոչ երբեք առնելով առհմակից հասա-

րակաց սիրոյն ընդ Լէոնտինացիս, և կարևոր մտերիմ բարեկամութեան ընդ նոսա: Ոչինչ օտար և անակնկալ թուեցան Նիկիասայ Եգեստացւոցն իրք, որպէս իշխանակցաց նորա երկուց զօրավարաց: Եւ տես որպիսի ինչ հնարս խաբէութեան հնարեալ էր Եգեստացւոց. 'ի գալ առ նոսա զառաջին նուագ հրեշտակացն Աթենացւոց 'ի ստուգութիւն ճշմարտութեան հաստատակաց նոցա գանձուց, ածեալ նոցա զարսն 'ի մեհեան Աստղկան յԵրիքս, ցուցին նոցա զնուէրս տաճարին զսկահակս և զըմպանակս գինւոյ, զխնկանոցս և զայլ սպասս ոչ սակաւս համայն արծաթիս, որք և 'ի պատրողական յերևման անդ առաւելուլ թըւէին քան զարժան գնոյն: Եւ զնաւաստին հրաւիրեալ 'ի տունս տունս 'ի հացկերոյթ, զոր 'ի բուն իսկ յԵգեստացւոց ժողովեալ էին բաժակս ոսկիս և արծաթիս, և զոր 'ի դրացեաց անտի քաղաքաց յանօթ առեալ 'ի Փիւնիկեցւոց և 'ի Հելլենաց՝ ածէին կուտէին 'ի կոչունսն, իբրու իւրաքանչիւր նոցա ստացուած սեպհական: Եւ զի առ հասարակ ամենայն ուրեք նոքիմբք վարէին սպասուք, սփիւռ յաճախութիւն նոցին յապուշ կրթէր զմիտս նաւազին Աթենացւոց. որոց դարձեալ յԱթէնս, հռչակ հարին զտեսիլ յաճախութեան անհնարին յոլովութեան գանձուց: Սոքա ինքեանք պատրեալք՝ 'ի նոյն պատրանս և զայլս արկին. այլ իբրև 'ի վեր ել բանն՝ թէ սուտ էր համբաւ գանձուն արծաթոյ յԵգեստէ, կշտամբանս ծանունս 'ի զօրականէն ընդունէին: Իսկ զօրավարք 'ի խորհել եկին զառաջիկայ իրացս:

ԽԷ. Նիկիայ խորհուրդ էր խաղալ համագումար 'ի վերայ Սելինոնդաց, վասն որոյ իսկ եկեալ էին. և եթէ կարասցեն Եգեստացիք հայթայթել զռոճիկ զօրուն, խորհել յայնժամ և վասն նոցա. ապա թէ ոչ, փոխանակ վաթսուն նաւաց միայն՝ զորս խնդրեցին, պահանջել 'ի նոցանէ թոշակս. և զկայ առեալ նստել առ Սելինոնդս մինչև հնարել կամայ կամ ակամայ, դաշամբ կամ զինու ածել զնոսա 'ի

հաշտութիւն ընդ Եգեստացիս. և զափամբ գնալով ապա անցանել և զայլովք բազում քաղաքօք 'ի ցոյց հանդիսի փառաւորութեան զօրուն Աթենացւոց և յառաջամտութեան նոցա 'ի Թիկունս օգնականութեան բարեկամաց և դաշնաւորաց իւրեանց, և դարձ առնել 'ի տուն. բայց եթէ ընդ հուպ և յանակնկալս հանդիպեսցի նոցա օգտակար Լէոնտինացւոց լինել, և կամ զայլս 'ի քաղաքաց յիւրեանս յարել. ապա թէ ոչ՝ մի՛ վայրապար վտանգելով զզօրութիւն պետութեանս, ասէր, 'ի վտանգ զայն արկանել:

ԽԸ. Իսկ Ալկիբիադ պնդէր եթէ չէ պարտ այսգունակ մեծազօր զինուորութեան երևեալ 'ի ծովու և ամօթով տեղի տալ. այլ հարկ է քարոզս ընդ ամենայն քաղաքս արձակել Սիկիլիացւոց՝ բաց 'ի Սելինոնդաց և 'ի Սիրակուսացւոց, և փորձ փորձել ուծացուցանելոյ զոմանս 'ի նոցանէ 'ի Սիրակուսայ, և զայլս 'ի բարեկամութիւն իւրեանց ձգել՝ տալ նոցա պարէնս և զօր 'ի Թիկունս: Եւ հաւանեցուցանել նախ զՄեսսինիացիս, որոց քաղաքն կառուցեալ յանցս Սիկիլիոյ՝ համարձակ մուտ տայ 'ի նոյն, և նաւակայս և քաջադէպ տեղի բանակին՝ ելանելոյ անտի 'ի մարտ յոր վայր և կամք իցեն նոցա արշաւել: Եւ յետ դաշնաւորելոյ ընդ քաղաքս, և գիտելոյ ընդ ում առաջի կայ նոցա կռուել, այնպէս ապա ձեռն 'ի մարտ մխել ընդ Սիրակուսայ և ընդ Սելինոնդայ, յորժամ չհաշտեսցի սա ընդ Եգեստացիս, չթողուցու և նա բնակելոյ զաղթականին Լէոնտինացւոց:

ԽԹ. Իսկ Լամաքոս հակառակ խորհրդոցս այսոցիկ, պարտ է, ասէր, ձեպել խաղալ 'ի վերայ Սիրակուսայ, և ածել անպապաղ պատերազմ զքաղաքաւն, 'ի վերայ անպատրաստ աչաբեկ թշնամւոյն: Զի նախկին տեսիլ աշխարհագումար բանակին ահաւորագոյն իցէ, քան ժամ տալով նոցա ոգի առնուլ, և յերևելն՝ ամենևին իսկ արհամարհ գտանել: Զի եթէ յեղակարծուց անկցուք 'ի վերայ, ասէր, ցրչափ պակուցեալ կայ հակառակորդն և զանհնարին ահ երկիւղին ամենուստ ածցուք զնոքօք, մեր լիցի

յաղթութիւնն աներկբայ. քանզի 'ի խեթ մտալուտ չարեաց և 'ի վերահաս վտանգ պատերազմին՝ քան զոր եմքս արդեամբք՝ բազմամբոխ ևս և հզօրք երևեցուք նոցա: Ի դէպ է, զի ժողով բաղում 'ի նոցանէ արտաքոյ յագարակսըն իցեն՝ չունելով կարծիս զարշաւանէս. և 'ի գալ ամփոփել նոցին 'ի քաղաքն, ոչ չքաւորեսցի զօրս 'ի կարևոր պարէնից, եթէ յաղթականք միանգամ զտեղի առեալ առ քաղաքաւն նստիցիմք. այնուհետև և այլք 'ի Սիկիլիացւոց ոչ մնալով վայրապար 'ի հանդէս ելից յաղթութեան մարտադիր ախոյենիցն, թողեալ զնոցայն նիզակակցութիւն, 'ի մեզ 'ի յաղթողսն եկեալ յարեսցին: Այլ 'ի խնդրել նաւամատոյցս և հանգրուան և տեղի ապաստանի նաւախմբիս, պարտ է դարձեալ զՄեգարա ընտրել. յամայոջ անդ խարխուլ արկեալ՝ զկայս մեր հաստատել, ոչինչ հեռի 'ի Սիրակուսայ ընդ ծով և ընդ ցամաք:

Ծ. Զայս այսպէս առաջի արարեալ Լամաքեայ, միանգամայն և 'ի խորհուրդ Ալկիբիադեայ յօժարագոյնս միտեր: Յետ այսորիկ անցեալ Ալկիբիադէս իւրով նաւաւն 'ի Մեսսինէ՝ խօսէր ընդ նոսա 'ի դաշնաւորութիւն նիզակակցութեան. և 'ի չհաւանելն նոցա և չառնուլ յանձն ընդունել զԱթենացիս 'ի քաղաքն, հրապարակ վաճառուց միայն շնորհելով նոցա արտաքոյ, դարձ արար նա վերստին 'ի Հռեգիոն: Եւ զօրավարացն հանդերձեալ վաղվաղակի նաւս վաթսուն պաշարապինդս և գունդս զօրաց՝ զցամաքաւ գնալով 'ի Նաքսոս կոյս նաւէին, թողեալ ընդ մնայորդ զօրուն զոմն յիշխանակցաց իւրեանց: Յընդունել զնոսա Նաքսիացւոց, ձգեցին զնաւարկութիւնն մինչև 'ի Կատանիա. այլ չընկալեան զնոսա Կատանացիք, զի էին 'ի նոսա՝ որոց ձեռն ընդ Սիրակուսացիս էր. և չուեցին անտի 'ի Տերիաս գետ, և գիշերօթեալ 'ի տեղւոջն՝ 'ի վաղիւանդր 'ի Սիրակուսայ կոյս նաւէին՝ միաշար տողեալ զնաւս, բաց 'ի տասանց յառաջագոյն արձակելոց երթալ մտանել 'ի մեծ նաւահանգիստն, տեսանել թէ իցեն նաւք իջու-

ցեալ 'ի ծովուն. և մերձեցեալ 'ի ցամաք՝ կարգացին առ քաղաքացիս 'ի նաւաց անտի իւրեանց, եթէ հասեալ գան Աթենացիք հաստատել զԼէոնտինացիս վասն ազգային ընտանութեան և նիզակակից բարեկամութեան 'ի բնակութիւնս նոցա. և որք 'ի Սիրակուսա են Լէոնտինացիք՝ եկեսցեն աներկիւղ համարձակութեամբ առ Աթենացիս, իբրու առ բարեկամս և առ բարերարս: Յետ ձայնելոյ քարոզիս և լրտեսելոյ նոցա զքաղաքն և զնաւահանգիստն և զարձակավայրսն շուրջ զքաղաքաւն՝ ուստի մարթ էր զյարձակումն առնել, դարձան վերստին 'ի Կատանիա:

ԾԱ. Ի ժողով գումարեալ Կատանացիք՝ չընկալան զզօրն 'ի քաղաքն, թոյլ ետուն միայն զօրավարաց մատուցեալ առաջի առնել զխորհուրդս կամաց իւրեանց: Եւ մինչդեռ ճառ արկեալ խօսէր Ալկիբիադէս, և քաղաքացւոց ուշ մտաց և աչք զժողովով յածէին, քակեալ զօրականին անտեսաբար զդուռն մի փոքրիկ վարկպարազի որմահիւս, և մտեալ 'ի ներքս սփռեցան ընդ քաղաքն գնել զկարևորս: Որք 'ի Կատանացւոց կուսակից Սիրակուսացւոց էին՝ տեսեալ 'ի քաղաքամիջի անդ զզօրն, և 'ի յեղակարծ ահ երկիւղին՝ վազեցին ելին արտաքս 'ի քաղաքէն, ոչ թուով բազումք. այլք յայնժամ քուէիւք ընտրոյ հաւանեցան ընդ նիզակակցութիւն Աթենացւոց, թոյլ տալով և մնացելոյ զօրուն գալ 'ի Հռեգիոնէ: Յետ այսորիկ նաւարկեալ Աթենացւոց 'ի Հռեգիոն, կրկին դարձ արարին անդրէն համագումար զօրօք 'ի Կատանիա, և զակիշ ածեալ բանակեցան անդանօր:

ԾԲ. Ազդ եղև նոցա վասն Կամարինեցւոց եթէ յառաջամիտ են նոքա ձեռն տալ ինքեանց, միայն եթէ եկեալ մերձեսցին զօրօք, և թէ հանդերձեալ զինեն Սիրակուսացիք տորմիղս նաւաց: Խաղացին Աթենացիք ողջոյն բանակաւ նախ 'ի Սիրակուսա. և զի չտեսին անդ նաւատորմ զինեալ, խաղացին դէպ ուղիղ 'ի Կամարինէ. և ելեալ 'ի ցամաք նուիրակս 'ի քաղաքն արձակեցին, զորս չընկալան քաղա-

քացիքն, զի յերդմունս, առէին, լինել՝ յայնժամ միայն ընդունել զԱթենացիս, յորժամ միով և եթ նաւու դայցեն, բայց եթէ ինքեանք Կամարինեցիք առաքեալ խնդրեսցեն 'ի նոցանէ զբազմութիւն նաւուց: Ի դերև ելեալ Աթենացւոց 'ի յուսոյ ակնկալութեան՝ դարձան ունայն յետս. և իջեալ 'ի կողմն մի Սիրակուսացւոց երկրին՝ յաւարի առին զայն. այլ 'ի հասանել հեծելազօրուն Սիրակուսացւոց 'ի վերայ մեկնակազէն ասպատակաւորաց նոցա վայրատելոց, և 'ի կրճատել 'ի նոցանէ զոմանս՝ դարձան նոքա 'ի Կատանիա:

ԾԳ. Եւ գտին անդ զնաւն Սալամինեան՝ որ գայր յԱթենայ խնդրակ Ալկիբիադեայ, և եկակոչ նմին 'ի պատասխանատուութիւն անձին իւրոյ վասն ամբաստանութեան ժողովրդեան զնմանէ. նոյն կոչ էր և առ ոմանս 'ի զօրուէն՝ ամբաստանելոց յամբարշտութիւն ընդդէմ Խորհրդոցն և կամ վասն Հերմեայց: Քանզի յետ չուոյ զօրուն ոչ թուլացեալ Աթենացւոց 'ի խուզարկութենէ յանդգնելոցն ընդդէմ Խորհրդատօնից և Հերմեայց, և առանց խտիր ընդդուշակն առնելոյ՝ 'ի հաւատ անօրէն մարդկան զամենայն լաւորեարն 'ի քաղաքացւոց, ընդ լոկ միայն կարծիս չարեաց՝ ձերբակալեալ 'ի կապանս արկանէին. լաւ համարէին 'ի խստագոյն փորձ քննութեան վարել զնոսա 'ի յայտնութիւն գաղտնեաց, քան առ չարութեան ամբաստանիցն և զմի ոք 'ի ծանուցեալ բարեբարոյից անգամ առանց հարցափորձի յերկբայս թողուլ: Զի 'ի լրոյ ականջաց գիտելով ժողովրդեան զՊիսիստրատեայ և զորդւոց նորա զբռնակալութիւն 'ի չարաչար կատարած վախճան առեալ, և ոչ 'ի ձեռն նոցա կամ Արմոդեայ լուծեալ զայն, այլ զինու զօրութեամբ Լակեդեմոնացւոց քակտեալ զնոյն, 'ի հանապազօրեայ արհաւիրս անդ՝ յամենայնէ խիթային:

ԾԴ. Եւ արդարև Արիստոգիտոնի և Արմոդեայ յանդուգն ձեռնարկ՝ առփանաց սիրոյ տարփաւորի էին դէպք, և զոր ոչ օտարքն և ոչ ինքնին Աթենացիք զբռնաւորէն իւրեանց և զանցիցս անցելոց կարացին ինչ ճշգրտիւ գտանել ստան-

դէն՝ զայն ես մանրապատում եդից առաջի: Քանզի Պիսիստրատեայ վախճանեալ զկեանս իւր լցեալ աւուրբք 'ի բռնակալութեան իւրում, ոչ Իպպարքոս՝ որպէս բազումք կարծեցին, այլ Իպպիաս երիցագոյնն յորդիս նորա ժառանգեալ պայազատէր զաթոռն հայրենի: Իսկ Արմոդիոս 'ի ծաղկի հասակին պատանի էր գեղադէմ, որում տռփացեալ Արիստոգիտոն, չափաւոր պայմանաւ բաղդի այր քաղաքացի՝ ունէր զնա առ իւր: Հրապուրեալ Արմոդիոս և յԻպպարքեայ յորդւոյ Պիսիստրատեայ՝ մերժէր զնա, 'ի վեր հանելով զբանն Արիստոգիտոնի: Որ 'ի նախանձու սիրոյ խանձեալ, և 'ի զօրութենէ հակառակող Իպպարքեայ երկուցեալ թէ գուցէ բռնի յիւր կամս զպատանին արկցէ, խորհուրդ կալաւ, եդ 'ի մտի 'ի յոյզս անդ կրիցն՝ քակել զբռնակալութիւն: Եւ Իպպարքեայ երկրորդ անգամ 'ի փորձ մատուցեալ՝ իբրև չկարէր հաւանեցուցանել զԱրմոդիոս, չկամելով և ոչ բռնի ինչ կամ յայտնապէս գործել, այսպիսի ինչ գաղտնորոգայթ հնարս նախատանաց նիւթեաց եգիտ: Եւ զի այլով իւիք չէր իշխանութիւն նորա ատելի ամբոխին և անպարսաւ վարէր նա զիւր տէրութիւն, և ընդ երկար իսկ ցուցին բանաւորքս այսոքիկ զառաքինութիւն և զհանճար, զքսաներորդ մասն միայն հարկելով յարարոց Աթենացւոց, վայելուչս զարդարեցին զքաղաքն նոցա, վարելով զպատերազմունս և 'ի գլուխ զոհից կալով. իսկ յայլն ամենայն ինքնին նախնի օրինօք վարէր քաղաքն, փոյթ էր սակայն բանաւորացս՝ կացուցանել զմի ոք յընտանեաց իւրեանց նախիշխան 'ի յանձանձանս աշխարհին: Յորոց և բազումք կացին 'ի տարևոր իշխանութեան յԱթէնս. և Պիսիստրատա որդի բռնակալին Իպպեայ զանուն հաւուն իւրոյ ունելով, իբրև նախիշխան նուիրեալ սրբեաց զբագին երկոտասան աստուածոց 'ի հրապարակին, և զԱպողոնեայն 'ի մեհենին Պիւթեայ: Այս ժամանակաւ յաւելեալ ժողովուրդն Աթենացւոց 'ի բարձրութիւն բագնոյն, ծածկեալ անհետ արարին զարձանագրութիւն

հրապարակին. այլ որ 'ի Պիւթեայն է՝ երևելի է դեռ ևս կիսաւեր գրութեամբն,

Զարձանս յիշատակի իշխանութեան իւրոյ նուիրեալ կանգնեաց Պիսիստրատ որդի Իպպեայ 'ի սրբավայրում Ապոլոնի Պիւթեայ :

ԾԵ. Եւ զի երէց էր Իպպիաս՝ կալաւ զիշխանութիւն հօրն, և իմ 'ի տուչութենէ քան զայլ ոք հաւաստեաւ գիտելով զայս՝ պնդագոյնս հաստատեմ, որում և դիւրեաւ ոք կարէ 'ի վերայ կալ, զի 'ի հարազատ եղբարս նմա միայնոյ երևին որդիս լինել, որպէս յայտ է 'ի բագինն և 'ի կոթողն յիշատակի 'ի նշանակ անիրաւութեան բռնաւորաց 'ի միջնաբերդի քաղաքին. յորում ոչ Թեսսալեայ և ոչ Իպպարքեայ որդիք արձանագրին, իսկ Իպպիասայ որդիք հինգ ծնեալք նմա 'ի Միւռինեայ 'ի դստերէն Կալլիասայ որդւոյ Հիւպերոքիդեայ : Զի 'ի դէպ էր երիցուն կանխել յամուսնութիւն, որ և 'ի կոթողին զկնի հօրն ունի զանուն իւր արձանագրեալ, որով և կարի 'ի ճահ առ երիցութեան պայազատել նորա զհայրն յիշխանութեան : Զկարծեմ դարձեալ այնպէս արագ յաջողել Իպպիայ 'ի նմին իսկ աւուր մահու սպանութեան Իպպարքեայ՝ յաջորդել զեղբայրն. այլ ըստ կանուխ սովորութեան՝ ահագին քաղաքացեաց երևելով, և մտադիր ընտրութեամբ Թիկնապահ գնդին ամրացեալ՝ կայր անվտանգ յիւրում իշխանութեան. որ եթէ կրտսեր էր քան զեղբայրն, և 'ի բազմաց հեռաէ ոչ ընտելացեալ 'ի հոգս տեսչութեան՝ չմարթէր նա այնպէս անվեհեր հանդիսանալ: Դէպ լինէր ուրեմն Իպպարքեայ 'ի չարաբախտ արկածս իւր՝ թողուլ զանուն և զկարծիս ունելոյ զաթոռ բռնակալութեան :

ԾԶ. Արդ որպէս երկնէրն 'ի մահ Իպպարքոս, ծանր թշնամանօք զկծեցոյց զԱրմոդիոս՝ զմերձաւորն հրապուրից տարփանաց նորա, զի զքոյր պատանւոյն զօրիորդ կոյս զսահմանեալն բերել զորբանուէր կողով 'ի հանդիսի տօնին՝ մեր-

ժեաց երրու անհրաւէր և անկոչ վասն անարժանութեանն։ Ի խոր խոցեալ լինէր ընդ այս Արմոդիոս, և 'ի պատճառս նորա առաւել ևս զչարեալ գրգռէր Արիստոգիտոն. որոց և յետ պատրաստելոյ զամենայն ընդ համախոհ դաւակից-սըն՝ միայն մեծի Համաթենական տօնին, յորում աւուր միայն մարթ էր նոցա խառնել անկասկած 'ի խումբս վա-ռելոց քաղաքացւոց 'ի հանդէս տօնին. նոցա էր սկիզբն տալ հարուածոցն, և դաւակցացն դիմել վաղվաղակի 'ի վերայ Թիկնապահ զօրուն։ Առ զգուշութեան զաղտնու-թեան նուազունք էին թուով երդմնակիցք՝ յուսով զի և յառաջագոյն անծանօթք անգամ 'ի խիզախել սոցին, աճա-պարեալք 'ի զէն ընթանայցեն 'ի թիկունս նոցա յաղ-թութիւն հասարակաց։

ԾԷ. Իբրև եհաս օր տօնին, Իպպիաս Թիկնապահ գըն-դաւն արտաքոյ քաղաքին գտանէր 'ի տեղին անուանեալ Կերամիկոն՝ 'ի կարգել զընթացս բազմութեան ուղեկցաց հանդիսին։ Արմոդիոս և Արիստոգիտոն զինեալք 'ի դաշոյն՝ մերձեցան 'ի գործ սպանութեան, և տեսեալ զոմն 'ի դա-ւակցաց ընտանեբար ընդ Իպպիայ խօսելով, զի ամենեցուն դիւրամատոյց էր այրն՝ երկեան, համարելով 'ի յայտնու-թիւն դաւոյն եկեալ նորա, և ինքեանք անփախուստ ըմ-բռնեալք, խորհեցան փութալ թափել 'ի գլուխ չարեացա-պարտին զվրէժ վտանգի կորստեան իւրեանց. և ընթա-ցեալ մտին ընդ դուռն քաղաքին 'ի ներքս, և հանդիպեալ Իպպարքեայ մօտ 'ի տեղին Լէոկորիոն, և մոլեգնաբար ան-կեալ 'ի վերայ՝ ոմն առ նախանձու սիրոյ, ոմն առ վրէժ քինու թշնամանաց, հարեալ զնա և սպանին։ Արիստոգի-տոն զերծաւ նախ 'ի խառն ամբոխին 'ի պահապան գնդէն, բայց ըմբռնեալ ապա՝ չարաչար կալաւ վախճան. իսկ Ար-մոդիոս անդէն առ տեղ սպանաւ։

ԾԸ. Իբրև եհաս լուրն չարագուժ առ Իպպիաս 'ի Կե-րամիկոն, ոչ 'ի տեղին՝ այլ 'ի ժողով հանդիսին առ զի-նեալսն դիմեաց, որոց չև էր լուեալ զեղեալսն, քանզի հե-

ուի էին. և 'ի դէմս կերպարանացն կեղծաւորեալ նորա զպա-
ղճէտան՝ հրամայեաց նոցա երթալ անդէն 'ի տեղի ուրեք
նշանակեալ: Եւ յերթալ ժողովել նոցա անդր՝ կարծելով
բան ինչ լինել բռնաւորին առ նոսա, պատուէր ետ Իպ-
պիաս Թիկնապահաց իւրոց 'ի բաց զզէնսն առնուլ 'ի ժո-
ղովրդենէն. որոշէր և զայնոսիկ զորոց կասկածէրն, և զորս
զինեալս գտանէր 'ի դաշոյնս, զի 'ի հանդիսին 'ի վահան մի-
այնև 'ի նիզակ սովոր էին զինել:

ԾԹ. Եւ այսպէս առ զայրոյթ տռփանաց նախանձուն
սկիզբն դաւաճանութեանն լեալ, և 'ի յեղակարծ երկե-
ղէն յանխորհուրդ յանդգնութիւն մղեցան Արմոդիոս և
Արիստոգիտոն: Յետ այնորիկ ապա դժնդակագոյն ծան-
րանայր բռնակալութիւն 'ի վերայ Աթենացւոց. զի յաւե-
լեալ յԻպպիաս կասկած երկիւղին, տայր կորուսանել
զբազումս 'ի քաղաքացւոց. և միանգամայն զաչս արձակէր
արտաքոյ՝ 'ի դէպս խռովից յեղափոխութեան գտանել ին-
քեան տեղի ուրեք ապաւինի: Եւ ետ զԱրքեդիկէ զդուս-
տրն իւր 'ի կին Եանտիդեայ որդւոյ Հիպպոկլեայ բռնաւորի
Լամփսակեցւոց. Աթենացի գոլով ինքն՝ Լամփսակեցւոյն
տայր, զի գիտէր 'ի շնորհս գոլ նոցա առ արքային Դարեհի:
Եւ շիրիմ Արքեդիկեայ կայ 'ի Լամփսակոն ունելով զար-
ձանագիրս.

Զառն երևելւոյ 'ի Հելլէնս ժամանակին
Զհիպպիասայ դուստր զԱրքեդիկէ ամփոփէ աճիւնս.
Որ զհայր, զամուսին և զեղբարս բռնաւորս ունելով,
Ի սոյն և զորդիս՝ չամբարձաւ միտք 'ի ժպրհութիւն ամբարհաւաճ:

Եւ զայլ ևս ամս երիս բռնակալեալ Իպպիայ յԱթէնս, 'ի
չորրորդումն արկաւ յաթոռոյն 'ի ձեռն Լակեդեմոնացւոց
և յԱլկմէոնեանց տարագրելոց 'ի քաղաքէն. և դաշամբ
պայմանաց մեկնեցաւ 'ի Սիկէոն, և եկն առ Եանդէս 'ի
Լամփսակոն. և անտի էանց յարքունիս Դարեհի, ուստի
եկեալ ապա յետ ամաց քանից 'ի հասակի ծերութեան
զինուորեցաւ ընդ Մարս 'ի Մարաթոն:

Կ. Զայս ամենայն անմոռաց յուշի ունելով ժողովրդեան Աթենացւոց, և զոր 'ի զրուցաց ունէին, երկուցեալ 'ի խէթս և 'ի կարծիս խստանային յոյժ ընդդէմ ամբաստանելոցն 'ի սեղանաղերծ պղծութիւն Խորհրդոցն. և թուէր նոցա յամենայնի յայտնի զմենքենաւոր դաւաճանութիւն սակաւապետաց և զկուսակցաց բռնաւորութեան նկատել: Եւ 'ի զայրոյթ ցասման նոցա յոլովք յաւագամեծար որերոյ 'ի բանտ և 'ի կապանս արկան, և չէր թիւլ և դադար, այլ օր ըստ օրէ առաւելեալ ամբոխին 'ի վայրենութիւն յաճախէին զթիւ կալանաւորացն. անդ ուր 'ի կապելոցն որ յանցաւորագոյն կարծէր՝ յորդորեալ 'ի միոյ 'ի բանտակցաց ծանօթս տալ զեղելոցն, թէպէտ սուտ, թէպէտ ճշմարիտ, (բազմադէմ եղեն կարծիք զայսմանէ, և ոչ ոք կարաց ոչ յայնժամ և ոչ յետոյ ժամանակաւ ասել ինչ ստուգութեամբ՝ թէ ո՞յք եղեն որ յանդգնեցան յայս գործ սեղանակապտութեան): Եւ հաւանեցոյց այրն զընկեր իւր, զի եթէ և չէր ինքն յանցաւոր, թափէր զանձն իւր անպատուհաս 'ի վտանգէն, և զքաղաքն 'ի չարաչար կասկածանաց ապրեցուցանէր. և զի աներկբայ ևս էր փրկութիւն նորա յաներկիւղ խոստովանութենէ՝ քան ուրացութեամբ դատապարտ լինելով: Եւ ամբաստանեաց այրն զանձն և զայլոց ոմանց վասն Հերմեայցն: Եւ ժողովուրդն Աթենացւոց մտադիւր ընկալեալ զոր ճշմարիտն համարէր լինել, և ծանրացասումն՝ զի ցայն վայր չկարաց 'ի յայտնութիւն ածել զդաւադիրսն, եթող անդէն ազատ զգուշակ մատնուտն և զնոսա զորոց չլինէր նա ամբաստան: Այլ զորոց գուշակն եղև՝ կալեալ զամենեսեան որոց միանգամ ձեռնհասն գտան՝ դատապարտանաւ մահու կորուսին, և փախստէից դատակնքաւ հատան գին գլխոց: Եւ սակայն ո՞յք կորեան, անյայտ մնաց թէ յիրաւի՞ արդեօք կամ յանիրաւի կրեցին զայդ պատուհաս. բայց մեծապէս շահեալ սովաւ հանդարտեալ լռեաց քաղաքն:

ԿԱ. Իսկ 'ի շարժել Թշնամեացն զԱլկիբիադեայ, որոց

և յառաջագոյն քան զչուն նորա 'ի նոյն զնա ամբաստանեալ էր՝ զչարէին յոյժ Աթենացիք. և զի ոչ ևս այլ տարակուսել զՀերմեայց համարէին, աներկբայք մանաւանդ հաստատեցան 'ի միտս, եթէ և 'ի Խորհրդատօնս նովին խորհրդով և հաւանութեամբ նիւթեալ նոցա զգործ դաւակցութեան հակառակ ռամկին: Եւ 'ի շփոթս անդ խռովութեան դէպ եղև գալ երևել ջոկատու միոյ Լակեդեմոնացւոց, յառաջելով մինչև 'ի Նեղուցն 'ի բանակցութիւն ընդ Բիովտացւոց: Եւ եղև այս 'ի խէթ մտաց ժողովրդեան, իբրու ոչ եթէ առ Բիովտացիս, այլ առ համախոհութեան ընդ Ալկիբիադեայ եկեալ նոցա. և եթէ ոչ աճապարեալ էր մտել ձեռն 'ի դաւաճանսն՝ մատնէր անշուշտ քաղաքն. և զգիշերն ողջոյն վառեալ զինու հսկէին 'ի մեհենին Թեսեայ որ 'ի քաղաքին: Առ սովիմբ և ասպնջական բարեկամք Ալկիբիադեայ յԱրգոս՝ կարծիս ետուն 'ի կռիւ հակառակութեան ընդ ռամկին, 'ի սոյն սակս և պատանդք Արգիացւոց աւանդք 'ի գիպահոց 'ի կղզիս՝ մատնեցան յԱթենացւոց անտի 'ի կամս ռամկին 'ի սպանդ: Ամենևին յաճախէին կասկածք չարեաց զԱլկիբիադեայ, մինչև վճռով դատապարտել զնա 'ի մահ. և առաքեցաւ նաւն Սալամինեան 'ի Սիկիլիա 'ի խնդիր նորա և ամենեցուն ամբաստանելոց ընդ նմա: Հրաման կոչոյս էր 'ի պատասխանատուութիւն անձին նորա միայն և ոչ 'ի կալանաւորութիւն, զի մի խռովութիւն ինչ ծագեսցի 'ի բանակի զօրուն 'ի Սիկիլիա և կամ 'ի թշնամիս. և զի ոչ կամէին խրտուցանել զՄանտինէացիս և զԱրգիացիս՝ 'ի նորա բանից եկեալս 'ի զինուորութիւն արշաւանին:

Եւ Ալկիբիադէս 'ի նաւ իւր, և ընդ նմա ամբաստանեալքն նաւելով 'ի Սիկիլիոյ ընդ Սալամինեան նաւուն յԱթէնս, և հասեալ նոցա 'ի Թուրիոն՝ ոչ ևս ծովելով ընդ նմա ելին 'ի ցամաք, և 'ի բաց արացեալ ոչ ուրեք երևէին. քանզի երկեան 'ի սպառնացեալ դատաստանէն, և խնդրանք Սալամինեան նաւուն հետամուտ Ալկիբիադեայ և ընկերաց նորա զաւուրս ինչ, և չկարացեալ գտանել զնոսա

ուրեք 'ի բաց մեկնեցան: Իսկ Ալկիբիադէս տարագիր այնուհետև 'ի հայրենեաց, էանց վաղվաղակի 'ի Թուրիոնէ 'ի նաւակ մի փոքրիկ 'ի Պելոպոնէս. և Աթենացիք զփախուցեալն յատենէ դատաստանի՝ մահու դատապարտեցին զնա և զընկերս նորա:

ԿԲ. Իսկ զօրավարք զօրուն Աթենացւոց 'ի Սիկիլիա՝ 'ի կրկին գունդս զզօրն բաժանեալ, կային վիճակաւ 'ի գլուխ նոցին, և խաղային համօրէն նաւատորմաւն 'ի Սելինոնդ և յԵգեստէ՝ գիտել թէ ունիցին հատուցանել Եգեստացիք զպայմանեալ արծաթն, և լրտեսել զվիճակ իրաց Սելինոնդաց, և 'ի վերայ հասանել վիճից որ ընդ սոսա և ընդ Եգեստացիս: Եւ առխեթեալ զգումարտակ նաւացն 'ի ձախակողմն կոյս Սիկիլիոյ 'ի մասն բաժնի Տիւրսենեան ծովուն՝ զտեղի առին 'ի Հիմերա, որ է 'ի կողմն կղզւոյս մի միայն քաղաք հելլենացի: Եւ զի չընկալան զնոսա Հիմերացիք, յառաջեալ նոցա 'ի չուն՝ առին զՀիւկկարա քաղաք փոքրիկ Սիկանացւոց զծովեզերեայ՝ թշնամի Եգեստացւոց. 'ի գերութիւն զմարդիկն վարեալ՝ զքաղաքն ետուն 'ի ձեռս Եգեստացւոց, որոց այրուձին մարտակից էր ինքեանց: Եւ անցեալ նոցա հետևակախումբ զօրօք ընդ երկիրն Սիկելացւոց հասին մինչև 'ի Կատանա, և նաւախումբն զափամբ գնալով ածէր զմարդագերին: Եւ Նիկիայ դէպ ուղիղ նաւելով 'ի Հիւկկարայ յԵգեստէ, կարգեալ յերիւրէր զիրս քաղաքին, և առեալ 'ի նոցանէ երեսուն տաղանդս՝ դարձ արար 'ի զօրն. անդ 'ի վաճառ հանեին զգերին, յորմէ և ժողովեցաւ հարիւր քսան տաղանդ արծաթոյ: Եւ շրջելով զՍիկելացւովք դաշնաւորովք իւրեանց, խնդրէին 'ի նոցանէ տալ նոցա զօրս. և միւսոյ կիսոյ բանակին գնալով 'ի վերայ Հիւպլայ Գելէադեան՝ որ 'ի թշնամեաց էր, չկարաց առնուլ զայն. և վախճան եղև ամարայնոյս:

ԿԳ. Ի գալ ձմերայնոյ պատրաստէին Աթենացիք յարձակել փութով 'ի վերայ Սիրակուսայ, մինչդեռ և Սիրակուսացիք ինքնին նախարշաւ 'ի կռիւ լինել ըղձային: Փո-

խանակ զի յառաջնում անդ յարհաւիրման չարարին Ա-
թենացիք զյարձակումն, որով տակաւ օր ըստ օրէ սրտա-
պնդեալ խրախուսեցին սոքա. և 'ի հեռանալ 'ի նոցանէ
Աթենացւոց նաւարկելով 'ի կողմն կղզւոյն և չերևելն, և
'ի Հիւպլայ ոչ մի ինչ վնասեալ ամօթով դարձն՝ յաւելոյր
զարհամարհանս նոցա, և աղաչէին զզօրավարս, որպէս սո-
վորութիւն է խրախուսելոյ ամբոխին, ածել զնոսա 'ի Կա-
տանա, զի յամէր թշնամին գալ 'ի վերայ իւրեանց: Եւ-
ստէպ յարձակելով հեծելազօրուն Սիրակուսացւոց մինչև
'ի բանակն Աթենացւոց 'ի լրտեսել, ընդ այլ թշնամանա-
գիր բանս, 'ի բնակակցութի՞ւն արդեօք ընդ նոսա յերկիր
օտար եկեալ իցեն, ասէին, եթէ զՂէոնտինացիս հաստա-
տել 'ի բնակութիւնս նոցա:

ԿԴ. Զայս տեսեալ զօրավարացն Աթենացւոց և կա-
մեցան ձգել զթշնամին համագունդ քաղաքովին արտաքս,
մինչև ինքեանք գիշերայն զցամաքաւ նաւելով՝ հասցեն պա-
րապով ունել հանդարտութեամբ վայր դիպան 'ի բանա-
կետղ. քանզի ամենևին իսկ խելամուտ Աթենացիք եթէ չէր
նոցա այլազգ յաջողել 'ի տեսիլ պատրաստական թշնամեացն
թափել զօրս 'ի ցամաք, կամ յայտնապէս շարժել զզօրա-
կանն թեթևազէն և զամբոխ հետևակախումբ՝ չունելով
այրուձի բաւական, առանց մեծի կորստեան յերեսաց բազ-
մաձեան վաշտուց հեծելոց Սիրակուսացւոց. և թէ այսու
միայն մարթ էր նոցա ունել վայր, յորում առանց մեծի
վնասու պատսպարել կարէին: Ի սոյն առաջնորդեալ և 'ի
դասալիք Սիրակուսացւոց՝ որք զհետ գնային նոցա, հա-
սեալ ունել զտեղին առ Ողիմպեաւ. և հնարիմացութիւն
դարանակալ խորհրդոց զօրավարաց յելս յաջողութեան
գործոյն եղև այսօրինակ: Առեալ առաքեցին նոքա այր մի
հաւատարիմ ոչինչ կասկածաւոր և առաջին զօրավարացն
Սիրակուսացւոց. և այրն էր Կատանացի, որ 'ի Կատանայ
ասէր գալ, 'ի կողմանէ որոց անուանք չէին անծանօթ զօ-
րավարաց Սիրակուսայ՝ իբրև ինքեանց բարեխօսից բարե-

կամաց, և զոյց այսպիսի բերէր. Ագանին, ասէր, Աթե-նացիք գիշերի 'ի քաղաքին հեռի 'ի բանակէն, և եթէ կամ իցէ Սիրակուսացւոց որ սահմանել և գալ անկանել ընդ-արեւածայրս 'ի վերայ բանակի նոցա, մինչդեռ Կատանացիք փակեալ զօրս առ նոսա 'ի քաղաքին և հրձիգ 'ի նաւսն լինիցին, յարձակեալ նոքա ընդ ցցապատնէշն առնու-ցուն անաշխատ զբանակետղն. և թէ կազմ է դարանն, և յոլովք 'ի Կատանացւոց յառաջամիտք 'ի գործն, յորոց 'ի դիմաց իսկ գամ, ասէր:

ԿԵ. Զօրավարք Սիրակուսացւոց՝ որ առանց իսկ այսր 'ի խրախոյս արութեան իւրեանց պատրաստք էին արշաւել 'ի Կատանա յանխորհուրդս ամենևին հաւատս ընծայել բանից առնն, ժամ եդին, որ սահմանեցին արշաւանին, և արձակեցին զայրն: Եւ զի Սելինունդք և այլք ոմանք 'ի նի-զակակից ժողովրդոց վաղ իսկ հասեալ էին առ նոսա, հրա-ման ետուն զօրավարք ժողովրդեան Սիրակուսայ միա-խուռն քաղաքովին ելանել 'ի մարտ պատերազմի: Իբրև ա-մենայն ինչ կազմ էր և մերձենայր օր ժամադրին, 'ի չու անկեալ դէմ եդեալ գնային 'ի Կատանա, և հասեալ յեր-կիրն Լէոնտինացւոց առ Սեմեթոս գետով՝ անդ ագան զայն գիշեր: Իրազեկ Աթենացիք զգալուստնէ նոցա, շարժեցին միահամուռ զզօրն՝ Սիկելացւովք հանդերձ և այլով օժըն-դակ գնդովք. և ամբարձեալ 'ի նաւս և յամենայն նաւ-կնեար, և անցին գիշերաւ 'ի Սիրակուսա, և ընդ այգն առա-ւօտուն ելին 'ի ցամաք մօտ յՈղիմպիոն՝ 'ի յառաջագոյն նկատեալ վայր 'ի բանակետղ զօրուն: Իսկ յառաջընթաց կարապետ հեծելազնդին Սիրակուսացւոց հասեալ 'ի Կա-տանա, և լուեալ զմիախուռն չու Աթենացւոց՝ փութա-ցան դառնալ ազդ առնել հետևակազօրուն իւրեանց, և միագունդ աճապարեցին գալ յօգնութիւն քաղաքին:

ԿԶ. Եւ զի մեծ ճանապարհ առաջի կայր նոցա առնել, ամրացուցին Աթենացիք պարապով 'ի գիպան տեղւոջ զբանակ իւրեանց. յորում մարթ էր նոցա ըստ կամս 'ի

մարտ դալ կամ դադարել, ոչ յառաջ և ոչ յետոյ նեղելով յերեսաց պյրուձիոյն Սիրակուսացւոց։ Քանզի երկուտեք արգելիչք խորոցք էին, աստ՝ որմունք և տունք, և ծառաստան և լիճ, անտի գաղտավէժք անմատոյցք։ Եւ կոտորեալ նոցա զծառատունկն մերձաւոր, յօրինեցին նոքօք ցցապատնէշս 'ի ծովեզերին ընդ երկայնութիւն նաւատորմղին և ընդ Դասկոն. և ուր դիւրամատոյց էր թշնամեաց՝ ամրացուցին ձեպով պատուարափակ 'ի քարանց հաւաքելոց և 'ի փայտից, քակեցին և զկամուրջն Անափայ։ Ի ժամ աշխատութեան գործոյս, չերևեցաւ ոք 'ի քաղաքէն որ խափանէր զնոսա. եհաս ապա նախ հեծելազօրն Սիրակուսացւոց յօգնութիւն քաղաքին, յետ այնորիկ և հետևակազօրն եկեալ խմբեցաւ։ Մօտ մատեան սոքա նախ 'ի բանակ զօրուն Աթենացւոց, և տեսեալ զի չխլրտին նոքա՝ խոտորեալ անտի անցին ընդ ճանապարհն Հելորինեայ՝ գիշերել 'ի տեղւոջն։

ԿԷ. Ի վաղիւ անդր կազմեալ պատրաստեցան Աթենացիք նիզակակցաւք հանդերձ 'ի մարտ պատերազմի, և ռազմ ճակատուն նոցա էր ըստ օրինակիս ըստ այսմիկ։ Յաջում թևին Արգիացիք էին և Մանտինեացիք. 'ի բուն բանակին Աթենացիք ինքնին. և 'ի ձախումն այլք 'ի դաշնաւոր գնդից։ Կէս զօրուն տողեալ 'ի ռազմ ութկարգեան. և միւս կէսն առ վրանօք քառակուսի նոյնպէս ութկարգեան 'ի խորութիւն. որոց պատուէր տուաւ փութալ հասանել ըստ ժամուն 'ի թիկունս վտանգելոյ կողմանն։ Եւ զկարասեկիր զռամիկսպաս զօրականն զետեղեցին 'ի միջավայր պահեստի գնդին։

Իսկ Սիրակուսացւոց ճակատուն կարգ այսպիսի էր յօրինեալ. յասպարակիր զօրականէ վեշտասան այր 'ի խորութիւն համայն 'ի Սիրակուսացւոց և 'ի մօտոյ հասելոց նիզակակցաց՝ յորս յառաջամիտ էին Սելինոնդք. և հեծելազունդ 'ի Գելայ՝ ընդ ամենայն երկերիւր. և 'ի Կամարինեցւոց որպէս թէ քսան պյրուձի և յիսուն աղեղնա-

ւորք: Հեծելազօրն որ չէր պակաս քան զհազար երկերիւր, ունէր զաջ թեւ ճակատուն, առ որովք և զօրականն աղեղնաձիգ: Իբրև ամենայն ինչ կազմ էր և ձեռն 'ի մարտ խառնել կամէին, Նիկիաս անցանելով ընդ ռազմ բազմացեղ զօրուն, կարդէր առ ամենեսին օրինակ զայս զբանս.

ԿԸ. «Հիմ, առ ինչ պէտս յորդոր երկարաձիգ, ո՛ արք, որոց 'ի նոյն մրցութիւնս նահատակեցիմք. յօրինուած ռազմիս և կերպարան պատրաստութեանս ճահողագոյն եւս է 'ի խրախոյս արութեան, քան զգեղեցիկ ճառս բանից առ տկար բանակ զօրուն: Որք միանգամ Արգիացիք էն, Մանտինէացիք և Աթենացիք, և 'ի կղզեաց կղզեաց յառաջադէմք, զիա՞րդ այսչափ և այսպիսի նիզակակցօք չլինիցիմք մեծայոյս 'ի յաղթութիւն, մանաւանդ յորժամ առաջի կայ մեզ գուպարել ընդ գուգազ խառնամբոխ, և ոչ ընդ այր ընտիր նման մերոյս զօրականի, ընդ Սիկիլիացիս՝ որ անդոսնել գիտեն, այլ գերազանցել զմեօք ոչ երբեք. որք առ յախուռն արութեան իւրեանց թերանան 'ի հրահանգս զինուորութեան: Դիք և զայս իւրաքանչիւր 'ի մտի, զի հեռաւորացս մեզ 'ի բնիկ աշխարհէս չիք երկիր բարեկամ, բայց եթէ զոր զինուք ստանայցեմք: Եւ որով թշնամին ոգոտապնդեալ խրախուսէ 'ի կռիւ, զամենևին իսկ զհակառակն նորին ձեզ յիշեցուցանեմ: Նոքա 'ի վերայ հայրենեաց մարտնչին. իսկ մեք ոչ 'ի վերայ բնիկ երկրիս, այլ յերկրի յորում պարտ է յաղթական լինել. ուստի չիք դիւրեաւ նահանջել յերեսաց բազմութեան հետամուտ հեծելազօրուն: Ի յուշ մեծի անուան պատուոյդ և փառաց ընթացարուք արիաբար ընդդէմ հակառակորդացդ, և զառաջիկայն հարկ բռնութեան և զկարիս չքաւորութեան ահաւորագոյն քան զթշնամին համարեսջիք»:

ԿԹ. Եւ յետ այսոցիկ քաջալերբ բանից էած Նիկիաս վաղվաղակի զզօրն 'ի պատերազմ: Սիրակուսացիք անկասկածք ամենևին և անակնկալք ընդ մերձաւոր պատերազմին, ոմանք՝ զի մօտ էր քաղաքն, մեկնեալ էին. այլք՝ թէպէտ

ձեպէլին գայլին 'ի զօրն, այլ յետամնացք յորում և համ-
գիպէլին գնդի, 'ի նոսա խառնէին: Ապաքէն ոչ եռանդն ա-
րութեան և ոչ յանդուգն համարձակութիւն պակասէր
նոցա ոչ յայսմ և ոչ յայլ պատերազմունս. հաւատարք
յարութեան քաջութեան, ցորչափ ձեռնտու էր նոցա
փորձ և հրահանգ, այլ 'ի թերանալ նմին՝ ձախողէր ակա-
մայ և յառաջամիտ յօժարութիւն: Անկասկածք ոչքա ըն-
նախաձեռն յարձակումն Աթենացւոց 'ի կռիւ, և բանա-
գաստեալք 'ի գիմամարտ, զէն առեալ խոյացան 'ի թշնա-
մին: Նախ քարաձիգ լինելով սաստ և անտի պարսաւորքն
և աղեղնաւորք ակնդէտ արարին մարտին. և որպէսզի լինի
յաձախ, զօրն թեթևազէն փոխանակաւ մղէին վանէին զմի-
մեանս: Յետ այնորիկ սպա ըստ օրինի զէնին խըճք զինս և
փողք հնչէցին 'ի խրախոյս և 'ի հրաւէր մարտի սպառա-
կոյս զօրուն, և գոչոգեալ շարժեցան ախոյենից ճակատք:
Միրահօսացիք 'ի վերայ հայրենեաց, 'ի վերայ նուաքան-
չէր փրկութեան անձին 'ի ժամուն և առ յապա ազատու-
թեան կռուելով, և կոչմն հոկատակորդ՝ Աթենացիք 'ի ան-
րապետութիւն ծովուն և զի մի պարտութեամբ 'ի վտանգ
զհուրեանցն արկանիցեն. Արգելացիք և ինքնորէն աղաւաքն 'ի
գաշնաւորաց, զի բաժանակից եկկրակալութեան լինիցին՝
յոր և եկեալն էին, և փառօք յաղթութեան 'ի հայրենիս
դարձցին. իսկ հարկատուք և հպատակք 'ի մարտակցաց՝
վան կենաց տալու կռուէին, որ 'ի պարտութեան՝ ան-
յոյս, և 'ի յաջողելն՝ 'ի յաւելուած թուոյ հպատակաց
նուաձելոյ, թեթևաբեռնել զլուծ ծերեանց յուսային:

Հ. Իբրև ձեռն 'ի մարտ խառնեալ և երկուստեք եր-
կարէին 'ի նոյն անպարտելի, և առհա գէպ եղև որոմանց.
շանթից, տարափով անձրևոյ՝ յանհարկութիւն որոց զայս
տեսլին անգամ 'ի պատերազմ մտանէին, և որոց չէր սո-
վորեալ 'ի նոյն. իսկ փորձքն և հմուտք զկատարած եղա-
նակի տարւոյ նկատեալ յայսմ, և երկնչէին տալու
հժողով կորզել թշնամեաց զյաղթութիւնն 'ի ձեռանէ:

Արգիւացիք վանեալ նախ զաջ թեւ Սիրակուսացւոց, և Ա-
թենացիք զերրեանց կողմն դիմամարտ, որով իսպառ 'ի
պարտութիւն մատնեալ նոքա 'ի փախուստ խուճապեցան:
Այլ ընդ երկար հետամուտ փախստէին եղեն Աթենացիք՝
արգելեալք 'ի բազմութենէ անհնուն հեծելազօրուն Սիրա-
կուսացւոց, որոց անկեալ 'ի վերայ հետամտիցն սպայից
Աթենացւոց, զյառաջախաղացսն յետս ընկրկէին. բայց Ա-
թենացիք մեծաւ զգուշութեամբ միագունդ զհետ թշնա-
մւոյն պնդեալ՝ ցորչափ կարացին, դարձան ապա ընդ կը-
րունկն՝ կանգնելով զնշան յաղթութեան: Ժողովեալ Սի-
րակուսացւոց 'ի վերայ ճանապարհին Հելորինեայ, և ըստ
ներելոյ ժամուն կարգեալ վերստին 'ի ռազմ, յղեցին յեր-
եանց անտի գունդ մի պահանորդ յՈլիմպիոն, երկուցեալ
գուցէ յափշտակեսցեն Աթենացիք զգանձս արծաթոյ մը-
թերեալս անդանօր. և զօրն հնացեալ դարձաւ 'ի քաղաքն:

ՀԱ. Զգուշացեալ Աթենացւոց միջամուխ լինել 'ի սրբավայր մեհենին, ժողովեցին զդիակունս անկելոցն և 'ի խարոյկս եդեալ՝ ագան 'ի տեղւոջն զայն գիշեր: Ի վաղիւն թօղին և Սիրակուսացւոց զմեռեալս նոցա, որոց թիւ դաշնաւորօքն հանդերձ էր երկերիւր և վաթսուն այր. Ժողովեալ և նոքեանք զոսկերս մեռելոց իւրեանց, ընդ աթենացի և ընդ դաշնաւոր նիզակակից՝ արանց յինից, բարձեալ զառ և զաւար թշնամւոյն նաւեցին 'ի Կատանա: Քանզի ձմեռն էր և չէր այլ ևս հնար յառաջ վարել զպատերազմ, մինչև առեալ բերել յԱթենայ և 'ի դաշնաւորաց անտի երկրին այրուձի բաւական, զի մի խափան խոնարհեսցին առաջի հեծելազօրուն: Կարծեալ խորհէին հաւաքել և արծաթ 'ի Սիկիլիոյ, տալ բերել և յԱթենայ. ձգել յիւրեանս և զոմանս 'ի քաղաքանւոյն, զորս յետ պատերազմին յուսային առաւել դիւրաւորս դառնել. Նոյնպէս և ցորեան և զայլ ինչ կարևոր պատրաստել, զի 'ի գալ գարնայնոյ դարձցին վերստին 'ի կռիւ ընդ Սիրակուսայ:

ՀԲ. Ի սոյն խորհուրդս նաւեցին 'ի Նաքսոս և 'ի Կա-

տանս՝ ձմերել անդանօր։ Իսկ Սիրակուսացիք յետ զմեռեալն թաղելոյ գումարեցան 'ի ժողով. յորում յառաջ մատուցեալ Երմոկրատէս, այր որ 'ի բաժին հանճարոյ իմաստութեան ոչ յետնեալ ոք էր, 'ի պատերազմունս փորձ և յարութեան քաջութեան նշանաւոր, սրտապընդեալ քաջալերէր զնոսա մի ձախողութեամբն վհատել։ Յարութեան մասին անպարտելիք, ասէր, յանհրահանգ աղմկին պարտեցան, բայց և այնպէս ոչինչ յետնեալք երևեցան, որ և չէր ինչ անդէպ կարծել. զի արք տգէտք և անփորձք, որպէս բանիս կարգ է ասել, ձեռնարուեստք ոմանք ընդ առաջին պատերազմափորձ Հելլենս 'ի մրցել խիզախեցին։ Եւ որ մեծապէս վնասակար գտաւ նոցա, յոլովութիւն էր զօրավարաց և բազմիշխանութիւն, զի հնգետասան զօրավարք էին նոցա, և անկարգ անիշխանութիւն ամբոխին։ Բայց եթէ սակաւուք փորձ զօրավարօք 'ի ձմերանիս ընուցումք զթիւ զօրականիս, ասէր, որոց զէն չիցէ՝ զէնս հոգալ, և կազմել ձեռն հզօր՝ յամենայն հրահանգամարզից հլուս. կարի 'ի դէպ իցէ յայնժամ կորզել զյաղթութիւն 'ի թշնամւոյն։ Քանզի 'ի չպակասել մեզ քաջապինդ արութեան, յաւելեալ 'ի վերայ և զգեղեցիկ հրահանգըս, երկոքին սոքա միմեամբք զօրացեալ, հրահանգ փորձով կրթութեան 'ի վտանգս, և արութիւն ոգւոյ 'ի յոյս գիտութեան՝ անվտանգ ևս իցէ։ Զօրավարս կացուցանել ազատ հրամանատուս. որոց և երդուեալ՝ ըստ իւրեանց գիտութեան հրամանս տալ, և զգաղտնիս զանխուլ ունել. և այսպէս համայն իսկ լի կարգաւ և անհրաժեշտ օրինօք յարդարեալ վայելչապէս 'ի գլուխ տանել զամենայն։

ՀԳ. Լուեալ Սիրակուսացւոց զայս ամենայն, մատեան 'ի քուէս ըստ ամենայն բանից առաջարկութեան նորա. և զնա ինքն զԵրմոկրատէս ընտրեցին 'ի զօրավար, և զՀերակլիդէս Լիսիմաքեան և զՍիկանոս Եկզէկեստեան յիշխանակիցս նմին. յղեցին և դեսպանս 'ի Կորնթոս և 'ի Լակեդեմոն խնդրել ձեռն օգնականութեան 'ի նոցանէ, և

Թախանձել զԼակեդեմոնացիս սաստկացուցանել յայտնապէս զմարտ պատերազմին 'ի վերայ Աթենացւոց, դարձուցանելով զնոսա յետս 'ի կառուցն Սիկիլիոյ, և կամ խափանելով մի նորանոր օժընդակ գնդովք ստուարացուցանել զբանակ զօրուն իւրեանց 'ի Սիկիլիա:

ՀԴ. Բանակն Աթենացւոց որ 'ի Կատանիա էր, ամբարձեալ 'ի նաւս խաղաց ձեպով 'ի Մեսսինէ, յուսով առնուլ զայն մատնութեամբ. բայց 'ի դերև ելին նոքա յակնկալութենէն և 'ի նիւթելոյ հնարից. քանզի իբրև արկեալ յիշխանութենէ Ալկիբիադէս՝ եկակոչ լինէր յԱթէնս 'ի դատաստան, իմացեալ զիւր աքսոր դատապարտութեան՝ կանխեաց ազդ արար 'ի Մեսսինէ կուսակից բարեկամաց Սիրակուսացւոց զդարանակալ խորհուրդ պատրաստութեան 'ի քաղաքին. որոց և աճապարեալ կորուսին զդաւաճանսն՝ մինչև երևեալ թշնամեաց զօրուն, և 'ի զէն դիմեալ պնդեցին զօրացուցին զկողմն հակառակորդ չընդունելոյ զԱթենացիս: Ձմեռուրս երեքտասան յամելով անդանոր Աթենացւոց, և յանհարթութենէ օդոց և 'ի չքաւորութենէ կարևորաց նեղեալք և ոչինչ վճարեալ դարձան 'ի Նաքսոս և առ Թրակացիս[1]. և չէրատաւոր ցցապատնէշ յօրինեալ բանակ, նստան ձմերել անդ. յղեցին անտի և նաւ մի պատերազմիկ յԱթէնս խնդրել արծաթ և երիվարս 'ի սկիզբն գարնայնոյ:

ՀԵ. Իսկ Սիրակուսացիք 'ի ձմերանիս պարապեալ փակեցին զՏեմենիդէ 'ի ներքս 'ի քաղաքին, ընդ երկայնութիւն 'ի կողմն կոյս Եպիպօլեայ, զի 'ի դիպել ձախողութեան մի դիւրասցի թշնամեաց պաշարումն քաղաքին. պնդեցին և զՄեգարա և զՈլիմպիոն ամրութեամբ և զինու, և ցցապատնէշ ամրացուցին զծովափունս, ուր դիւրամատոյցն երևէր յելս թշնամեացն 'ի ցամաք: Եւ զի գնաէին

[1] Անտեղի թուի աստ ամենևին Թրակացի անունս, ոչինչ նուազ և Դիոդորեայ մեկնութիւնն, իբրու եթէ երբեմն Թրակացւոց 'ի Նաքսոս զբնակութիւն կալեալ. ըստ իմ՝ 'ի կարծոյ առելով, գրչին է սխալեալ:

ձմերել Աթենացւոց 'ի Նաքսոս, խաղացին բազմութեամբ 'ի Կատանէ. զկողմն մի երկրին աւերեցին, հրձիգ արարին զվրանս և զբանակետղ Աթենացւոց, և դարձան յիւրեանս: Եւ իմացեալ, եթէ Աթենացիք ըստ դաշինն կռելոյ 'ի Լաքիսայ, նուիրակութեամբ 'ի Կամարինէ գնան յորդորել զնոսա 'ի նիզակակից միաբանութիւն ընդ նոսա, առձակեցին և ինքեանք դեսպանս 'ի վերայ դեսպանաց նոցա. զի կասկածաւորք էին նոցա Կամարինեցիք, որ և ոչ յառաջնում անգ միայն յօժարամիտք գտան 'ի տալ նոցա գունդ օժանդակ, մի գուցէ և այժմ զյաջողութիւն զինուց Աթենացւոց տեսեալ՝ իսպառ ձեռնթափ 'ի նոցանէ և վաղեմի բարեկամութեամբն յԱթենացիս յարեսցին: Իբրև հասին հրեշտակք 'ի Կամարինէ, Երմոկրատէս 'ի Սիրակուսացւոց և Եւփիմոս յԱթենացւոց՝ իւրաքանչիւր ընկերովք 'ի ժողով գումարեալ զԿամարինեցիս, կանխեաց Երմոկրատէս, և առ կասկածաւոր զԱթենացիս ցուցանելոյ խօսեցաւ զնոցանէ այսպէս.

ՀԶ. «Ո՛չ զի գուցէ 'ի տեսիլ զինուորութեանդ այդորիկ Աթենացւոց, ո՛ Կամարինեցիք, պակուցեալ խռովեսջիք՝ փութացաք դեսպանութեամբ գալ առ ձեզ. այլ երկեաք մանաւանդ, զի մի՛ չև զմերոն լուեալ՝ 'ի բանից անտի նոցա յորդորեալ հաւանիցէք: Համարեալ կան սոքա 'ի Սիկիլիա բաղբաղանօք, որոց չէք ինչ անտեղեակ խորհրդոյն՝ յորմէ խիթամքս ամենեքին. զի ոչ եթէ առ 'ի զԼեոնտինացիս բնակեցուցանելոյ գան նոքա այսր, այլ որպէս ինձ թուի, զմեզ մանաւանդ խախտելոյ 'ի բնակութենէս: Զի չէ ամենևին ըմբոն կարծել, որ խլիչք՝ խանգարիչք այդր առ նոսա քաղաքաց, հաստատիչք առ մեզ 'ի Սիկիլիա լինիցին. որ Լեոնտինացւոց՝ ոյք 'ի Քաղկիդացւոց են, առ առհմակից սիրոյն այնչափ խնամս ունիցին, և զՔաղկիդացիս Եւբէոյ՝ յորոց սոքա հատուած են, 'ի ստրկութիւն ծառայութեան կալցեն: Նոյն խորհրդով որով զքաղաքանին կալան նոքա, գան այսօր և առ մեզ 'ի փորձ: Ի հասարակաց

հաւանութենէ Նախիջևան առաջնորդ կացեալ Յոնիացւոց և ազգակից իւրեանց դաշնաւորաց՝ իբրու 'ի վրէժ քինու Մարաց, զկէսս՝ որպէս թերացեալս 'ի պարտուց օժընդա-կութենէ, և զայլս՝ որպէս անխաղաղասէրս առ միմեանս, և զամենեսեան՝ վեր 'ի վերոյ կերպարանեալ պատշաճական օրինօք պատուհասեալ նուաճեցին: Վասն որոյ ոչ սոքա 'ի վերայ Հելլենացն, և ոչ Հելլենք 'ի վերայ իւրեանց բնիկ ազատութեան ընդ Մարաց կռուեցան. այլ սոքա զի ին-քեանց և ոչ խժին ծառայեսցեն, և նոքա զի 'ի փոփոխու-թեան տեարց՝ ոչ անհանճարին, այլ խորամանկագունին հպատակեսցեն:

ՀԷ. « Եւ զի ոչ զյայտնի պարսաւելեաց Աթենացւոց՝ որչափ ինչ անիրաւին, գամք ամբաստան լինել առաջի գիտակացդ, այլ զմէնջ առաւել, որ զօրինակ այսի Հելլե-նաց 'ի ծառայութիւն նուաճելոց առաջի աչաց ունելով՝ փոխանակ զի չետուն նոքա միմեանց ձեռն, և այսօր իսկ 'ի լուր նենգաւոր առաջարկութեանն նոցա 'ի հաստատութիւն առհմակցաց Լէոնտինացւոց և 'ի թիկունս դաշնաւորաց Ե-գեստացւոց, չզարթնումք բնաւ, չյորդորիմք միաձայն հա-սարակաց հաւանութեամբ տալ նոցա 'ի միտ առնուլ, թէ ոչ Յոնիացիք են սոսա, ոչ Ելլեսպոնտացիք և կղզայինք, որք զտեարս իւրեանց սոսկ փոփոխեն՝ զՄարն կամ զայլ ոք, և կան մնան միշտ ստրուկք. այլ Դորիացիք եմք ազատք յինքնորէն՝ յինքնատէր Պելոպոնէսեայ գաղթեալք 'ի Սի-կիլիա: Եւ զի՞նչ ուրեմն, կայցցո՞ւք մնասցո՞ւք, մինչև մի առ մի ըստ քաղաքաց.քաղաքաց ըմբռնեսցուք 'ի նոցանէ, գիտելով զի այսու միայն դիւրըմբռնելիք եմք. և տեսանելով զնոսա 'ի հնարս նենգաւորս բանիւք ճարտարութեան ձեղքել զո-մանս 'ի մէնջ 'ի հասարակաց միաբանութենէ, զայլս 'ի յոյս նիզակակցութեան ընդ միմեանս գրգռելով, և առ իւրա-քանչիւր ըստ մօտ խօսելով՝ չարիս մեծամեծս ածել կու-սել 'ի վերայ. և համարիցիմք եթէ գաւառակից ոք հա-մաբնակ յառաջելով 'ի կորուստ՝ ինքն միայն թշուառա-,չհասցէ՞ ն և և մեզ աղէտք անհնարինք:

ՀԸ. « Եթէ ումեք 'ի ձէնջ խորհուրդ այսպիսի 'ի միտ անկցի. Սիրակուսացին է և ոչ ինքն թշնամի Աթենացւոյն, և ծանր համարիցի վասն իմոյս հայրենեաց 'ի վտանգ զանձն արկանել, յուշ լիցի այնպիսւոյն, զի ոչ եթէ վասն իմոյս, այլ հաւասար վասն իւրոյ հողոյն 'ի վերայ իմոյս պատերազմ տայ. և այնչափ աներկեան իցէ, ցորչափ չյառաջեմ ես 'ի կորուստ, և մարտակից զիս ունելով՝ չմնասցէ միայնակ անօգնական 'ի չահատակութեանն: Ոչ եթէ Աթենացւոյն կամք են զթշնամութիւն Սիրակուսացւոյն պատուհասել, այլ իմով պատճառանօք զձեր մտերմութիւն ընդ իւր պնդել: Եթէ ոք առ նախանձու կամ առ երկիւղի, զի երկոցունց այսոցիկ կրից նշաւակ է աւագութիւն, ըղձանայցէ չարեօք տագնապել Սիրակուսայ, զի փոքր մի ցածնուցու, միանգամայն և յաղթող լիցի վասն ինքեան աներկեանութեան, ոչ ըստ մարդկեղէն պայմանի խղձս ըղձանայցէ այնպիսին. զի չէ 'ի դէպ և ըղձից և բաղձին միօրինակ անօրէն կալ: Զի եթէ յակնկալութեան իւրում վրիպեսցի միանգամ, յետ ողբալոյ զաղէտս իւր, չէ ինչ անհաւան, եթէ և դարձցի ընդ հուպ նախանձել ընդ իմս երանութիւն: Բայց անհնար է խուսելոյն և ոչ խառնողի զանձն 'ի վտանգս հասարակաց, բանից քան արդեանց միտ դնողի հասանել նմին. զի բանիւք զմեր իշխանութիւն յուսին ունեցի, և արդեամբ զիւր փրկութիւն գործեսցէ: Ի դէպ էր ձեզ մանաւանդ, Կամարինեցիք, որ սահմանորդ մեր էք. և զկնի մեր բաժանորդ վտանգին, կանխաւ չարեացս լինել, և մի՛ մեղկագոյնս որպէս ցայժմ՝ պատերազմակից ընդ մեզ լինել. զի եթէ 'ի Կամարինէ նախ հասեալ գային Աթենացիք, ձեզ մանաւանդ պարտ էր առ մեզ դիմել յաղերս. զնոյն և արդ միապէս հարկ է ձեզ երևել՝ թախանձելով չտալ տեղի թշնամւոյն. բայց ոչ դուք ցարդ և ոչ այլք ոմանք 'ի դոյն ալիական խորհուրդս վառեցարուք:

ՀԹ. « Առ երկչոտ զգուշութեան թերևս և առ մեզ և առ նախայարձակ 'ի վերայ մեր հակառակորդն զնոյն ար-

դարութիւն պաշտել կամիցիք, դաշինս նիզակակցութեան ընդ Աթենացիս, ասէք, ունել. ոչ հակառակ բարեկամաց զայդ արարեալ, այլ թշնամեաց որ դայցեն 'ի վերայ ձեր. և Աթենացւոց 'ի թիկունս օգնականութեան՝ յորժամ նեղեսցին նոքա, և ոչ որպէս այժմ փառաւոր և զրկիչ ընկերին լինիցին: Եւ Հռեգինացիք ինքնին թէպէտ 'ի Քաղկիդացւոց են, չկամին ընդ առհմայինս իւրեանց ընդ Լէոնտինացիս բնակակից լինել: Քանի՛ անձահ, զի մինչդեռ նոքա ընդ գործ արդար և վայելուչ կասկածեալ յանպատճառս իմաստնանան, դուք 'ի կարի իսկ իրաւունս զգուշութեան՝ 'ի բնէ ձեր թշնամեաց ձեռն տայք, և միաբան ընդ ոխերմագունին և ատելւոյն կոտորել զընիկ առհմայինս: Զէ այդ արդար. եկայք ձեռն տուք մեզ, մի՛ երկնչիք 'ի պատրաստութենէ զինուց նոցա. զի ոչ եթէ յորժամ ամենեքեան մեք միաբանք լիցեմք, ահաւորք ինչ են նոքա, այլ երբ՝ որպէս հնարինն նոքա և ջանան՝ պառակտեալք 'ի միմեանց ձեղքիցիմք: Քանզի և ոչ 'ի վերայ մեր միայն եկեալ նոցա, թէպէտ յաղթողք՝ կարացին ինչ զոր կամէին վճարել, այլ շտապաւ նահանջեալ մեկնեցան:

Զ. «Եւ զի չէ 'ի դէպ 'ի միակամ միադունդ միաբանութեանս վհատել, 'ի նիզակակցութիւն ապա յօժարամիտ դիմեսջուք. և զի և 'ի Պելոպոնեսեայ ժամանեն մեզ դունդք օգնական, որ դեր 'ի վերոյք են 'ի զինուորութեան քան զթշնամին: Եւ մի՛ կարծեցեալն այն խոհական զգուշութիւն՝ չտալ ումեք ձեռն, զի երկոցունց իսկ դաշնաւորք եմք, մեզ արդար և ձեզ աներկևան ինչ երևեսցի: Զի ոչ որ յիրաւունս՝ նոյն և յարդիւնս անդ գործոյն արդար լիցէ: Քանզի և ոչ միում լինելով ձեռնտու մարտակից, լիցէ կողմն՝ որ ձախողեալ ընկճիցի, և կողմն՝ որ զօրացեալ յաղթիցէ. զի յայդ ձերդ հրաժեշտ՝ զզրկեալն ոչ ապրեցուցանէք, և զզրկողն՝ 'ի չարեաց ոչ արգելուք: Ապաքէն գեղեցիկ ևս էր, ընդ զրկելոցն միանգամայն և ընդ ձեր առհմայնոց և ազգակցաց միաբանեալ, հասարակաց շահու

օգտին Սիկիլիոյ զգուշանալ. և Աթենացւոց՝ որք բարեկամք ձեր են՝ չթողուլ ազատ 'ի մեղանչել: Կնիք խօսիցս զայս ասեմք ձեզ, Սիրակուսացիքս. չէ ինչ դժուարին գնել ձեզ և այլոց յայտնապէս առաջի, որոց ոչինչ նուազ քան զմեզ տեղեակ էք. աղաչեմք և վկայութիւն իսկ դնեմք, եթէ չկարեմք զձեզ հաւանեցուցանել, զի դարանակալ են և պատերազմող միշտ ընդ մեզ Յոնիացիք և մատնիմք 'ի ձէնջ Դորիացիքս 'ի Դորիացւոց. եթէ յաղթահարեալ տիրեսցեն մեզ Աթենացիք, 'ի ձերոց կամաց այն լինիցի. նոցա լիցին փառք յաղթութեան, և որոց զայն պատրաստեցին՝ ոչ մի ինչ մրցանակ: Իսկ եթէ մեր լիցի յաղթութիւն, պատճառք չարեացս դուք և վտանգին, չարալիցէք յարժանաւոր պատուհասէն: Տեսէք արդ և ընտրեցէք, կամ 'ի մօտոյ զանվտանգ ստրկութիւն, և կամ ընդ մեզ յաղթականք՝ չընդունել զնոսա անարգաբար 'ի տեարս, և 'ի մերոյս ատելութենէ՝ որ չլինիցի փոքր և թեթև՝ զերծանել» :

ԶԱ. Զայսոսիկ խօսեցաւ Երմոկրատէս. և յետ նորա Եւփիմոս հրեշտակ Աթենացւոց այսպէս.

ԶԲ. « Ի նորոգել զառաջին մեր դաշնակցութիւն եկաք. այլ զի ամբաստանիմք 'ի Սիրակուսայցւոց, պարտ է մեզ տալ վասն իշխանութեանս 'ի վերուստ առեալ կարգել, թէ որպէս իրաւամբ ունիմք զոր ունիմքս: Նա ինքն զերիցագոյն վկայութիւն ետ մեզ, որ ասացն թէ Յոնիացիք թշնամի են միշտ Դորիացւոց, և այդ յիրաւի այդպէս է: Զի մեք որ Յոնիացիքս եմք, ջանացաք թէ լու 'ի Պելոպոնէսացւոց դրացեաց մերոց Դորիացւոց բազմութեամբ հզօրագունից քան զմեզ իսպառ ազատ լինիցիմք: Եւ յետ Մարական պատերազմին պատրաստեալ մեզ նաւատորմիղ հզօր, 'ի բաց 'ի մէնջ զնախիշխան առաջնորդութիւն Լակեդեմոնացւոց թօթափեցաք. զի չէր արժան այնուհետև ոչ նոցա մեզ, և ոչ մեզ նոցուն հրամանատու կալ. թո՛ղ զի հզօրագոյնք էին նոքա յայնժամ: Կացեալ մեր 'ի գլուխ ժողովրդոց, որոց յայնժամ ընդ իշխանութեամբ արքային

էր եղեալ, ոչ ինչ 'ի ճա՛հ վարկաք այնուհետեւ ընդ Պելո-պոնեսացւովք լինել, ինքնին իսկ բաւականք 'ի պահ ազա-տութեանս. ստուգիւ ասել, ոչ յանիրաւի ինչ զՅոնիացիս նուաճեալ և զկղզայինս, զորս ազգակիցս գոլով, ասեն Սի-րակուսացիք, և մեր ծառայեցուցեալ: Զի ընդ Մարաց եկին 'ի վերայ մեր և մայրաքաղաքիս, և չիշխեցին օտարանալ 'ի բնակութենէ և յընչից, որպէս մեքս արարաք՝ թողլով զքաղաքս, այլ ծառայութիւն յանձն առեալ, 'ի նոյն և զմեզ արկանել կամեցան:

ՁԳ. « Փոխանակ այսր ահա արժանապէս իշխեմք, որոց իշխեմքս. զի նաւախումբ հզօր և խորհուրդ անյեղլի մա-տուցաք մտադիւր Հելլենաց, մինչդեռ նոքա ձեռնտու Մա-րին ոչինչ նուազ վնասակարք մեզ եղեն, միանգամայն զի և առ Պելոպոնեսացւովք հզօրագոյն երեւել ըղձամք: Ոչ մե-ծաբանեալ պանծամք այնու, զի զխուժն խորտակեալ միակ և իրաւամբք իշխեմք. և ոչ զի 'ի վերայ ազատութեան ա-մենեցուն նոցա և մեր զոգիս 'ի բաւին 'ի վտանգս չահատա-կեցաք: Ներելի ամենեցուն և անպարսաւ զիւրուրոյն փրկ-ութենէ խորհել, որոց վասն և այժմ արդ և առ ձեզ գամք այսր 'ի խնդիր մերոյս աներկեւանութեան, զնոյն զայն շա-հաւէտ և ձեզ ցուցանելով: Եւ բանիցս հաւատալիք որով ամբաստան կան ոմանք զմէնջ, յորմէ և ձերդ երկիւղ կար-ծեաց, գիտելով քաջ զի որք յերկիւղի են և 'ի կարծիս. յառժամայն քաղցրութիւն բանից ըմբռնեալք հեշտանան, բայց յորժամ 'ի գործ մատչին, ըստ թելադիր շահու օգ-տին գործեն: Առ ահի ձեռն արկաք յիշխանութիւնս, 'ի սոյն պատճառս գամք և այսր բարեկամօք մերովք հաստա-տել 'ի սմա կարգս զգուշաւորս, ոչ 'ի ծառայեցուցանել զնոսա, այլ առ 'ի խափանել արգելուլ, զի մի՛ զայդ յայ-լոց կրեսցեն:

ՁԴ. « Եւ մի՛ ոք բանս ընդդէմ ածիցէ, եթէ ոչինչ իւիք մեզ մերձաւորացդ 'ի գութ ընդ ձեզ խառնիմք և զօգտիցդ խորհիմք. գիտասցէ այնպիսին զի 'ի փրկութեան

ձերում և 'ի չտկարանալդ ընդդէմ Սիրակուսացւոց, և 'ի չզօրել նոցա արձակել 'ի թիկունս Պելոպոնեսացւոց գունդս զօրաց 'ի վնաս մեր, յայսմ ամենայնի ահա մերձաւոր մեր էք և կարևոր ազգակիցք: Որով և յոյժ 'ի դէպ հաստատել զԼէոնտինացիս 'ի բնակութիւնս, ոչ իբրև հպատակս՝ որպէս զտոհմայինս նոցա որ յԵւբիա, այլ իբրև յոյժ զօրաւորս 'ի սահմանաց անտի իւրեանց մերձաւորաց՝ փոխան մեր սատան Սիրակուսայ: Զի անդ յերկրի մերում բաւականք եմք մեք մեղէն ընդդէմ թշնամեաց մերոց, և յոր ամբաստանիմքս՝ զՔաղկիսացին անպատճառ ծառայեցուցեալ, զաստիս ազատ առնել կամիցիմք. զի յօգուտ մեր է անդ անձեռնհաս նոքա 'ի զէն և 'ի պատերազմ, արծաթով միայն մեզ ընծայաբեր լինիցին. և աստ զի Լէոնտինացիք և այլք 'ի բարեկամաց ինքնօրէնք իցեն և ազատք:

ՁԵ. « Առն բանաւորի՝ որպէս և քաղաքի իշխեցողի, որ օգտակարն է նոյն և բանաւոր. չիք մտերմութիւն ուր չիցէ հաւատ. ըստ ժամուն պիտոյից բարեկամ լինել է և կամ թշնամի. որպէս այժմ աստ շահ մեր չվնասել է բարեկամաց, այլ 'ի ձեռն զօրութեան նոցա անզօր զթշնամին գործել: Զէ ինչ անհաւատ, զի ընդ այսոր նիզակակիցս մեր ըստ շահու օգտիս վարիցիմք. զՔիացիս և զՄեթիմնացիս՝ որք նաւս մեզ մատակարարեն, ինքնօրէնս թողուցումք. զյոքունան 'ի տուրս հարկաց ստիպեցեմք, և զայլս թէպէտ կղզայինս և զդիւրըմբռնելիս՝ ամենևին յաղատ դաշնաւորս ունիցիմք, զի 'ի դիպան վայր շուրջ զՊելոպոնեսաւ բնակին: Այնպէս զի 'ի ճահ է յոյժ և աստանօր՝ որպէս ասացաքս, մերովս շահաւորութեամբ ինչ մի կարգել ընդդէմ երկիւղի Սիրակուսացւոց. զի նոցուն խորհուրդ են և կամք խեթիւ չարեաց միաբանեալ զձեզ ընդդէմ մեր, 'ի մեկնելս մերում աստի ձեռնունայն, տիրացեալ բռնակալեսցեն 'ի Սիկիլիա: Վճարեալ է ամենայն, եթէ ընդ նոսա խմբիցէք, զի չէ մեր այդչափ զօրութիւն դիմակալ. և 'ի թողուլս մերում և 'ի հեռանալ 'ի ձէնջ, ոչ ևս տկարասցին նոքա ընդդէմ ձեր 'ի նուաճել զձեզ:

ՁԶ. « Եւ որ այլազգ ինչ խորհիցի, յարգեանց իւրոց յանդիմանեսցի այնպիսին. քանզի յառաջնում անգ նուագի 'ի կոչել ձեր զմեզ 'ի թիկունս, ոչ այլ ինչ երկիւղ մեզ առաջի առնէիք, բայց զի եթէ թողուցումք զձեզ ընդ Սիրակուսացւովք, և մեզ ինքնին անտի վտանգ հասանիցէ: Եւ արդ չէ արժան անհաւատանալ բանին, որով զմեզ հաւանեցուցանել ջգնէիք, և մի զի քան զթշնամին հզօրագոյն ձեռամբ գամք՝ խիթայք ինչ զմէնջ. 'ի նոցանէ մանաւանդ արժան է ձեզ կասկածել: Քանզի չկարեմք մեք մեզէն կալ 'ի տեղւոջս՝ եթէ ոչ ձեօք. զի եթէ և չարիմաց լինի նենգանօք յաջողեսցի մեզ տիրապետել կղզւոյդ, պահել զայն սակայն անհնարին է վասն երկարաձիգ ճանապարհաւ հեռաւորութեանս, և առ 'ի չգոյէ պահանորդ զօրուն ընդդէմ մեծամեծ և հզօր գնդովք ամրապինդ քաղաքանւոյն: Իսկ սոքա Սիրակուսացիքն ոչ եթէ բանակեալ առ ձեզ, այլ մեծաւ և քաջամուր քաղաքաւն մերձ բնակելով հանապազորդ դարանակալ ձեզ լինիցին. և չթողուցուն ամենևին զդէպ բարեպատեհ, զոր և ցուցին ընդ այլս ամենայն ցայժմ և առ Լէոնտինացիս. և յանդգնին իսկ գըրգռել զձեզ իբրև խակամիտս ոմանս հակառակ խափանարարաց խորհրդոց իւրեանց, և որոց արգել լինին նոցա ցայսօր չանկանել Սիկիլիոյ ընդ նոքօք: Արդարև իսկ 'ի սոյդ ճանապարհ փրկութեան հրաւիրեալ կոչեմք զձեզ, աղաչելով զի զոր ունիմքս, միմեամբք պատսպարեալ չմոռանիցեմք վայրապար: Գիտասջիք, զի առանց իսկ դաշնաւոր նիզակակցաց առ բազմամբոխ զօրութեան՝ բաց է նոցա ճանապարհ ընդդէմ ձեր. մինչդեռ ոչ հանապազ մօտ իցէ ձեզ այսպիսի ձեռն հզօր օգնական, եթէ առ խէթ կասկածանաց թողուցուք զնոսա մեկնել 'ի բաց, կամ 'ի պարտութիւն խոնարհել կորակոր. և եկեսցեն աւուրք յորում փոքու քան զայդ ցանկանայցէք հատուածի զօրու, յորժամ ոչ ևս այլ լիցի այն ձեզ պիտանացու:

ՁԷ. « Այլ մի, Կամարինեցիք, ոչ դուք և ոչ այլք տա-

րապարտաչարախօսութեանց արանցդ այդոցիկ ունկն մատուցանիցէք, տացաք ձեզ զամենայն ստուգութեամբ, որով և կասկածաւոր գտանիմք. զնոյն արդ երկրորդելով կարճ 'ի կարճոյ, հաւանեցուցանել զձեզ ջանասցուք: Իշխել. ասեմք, որոց առ մեզ են ժողովրդոց, զի մի այլում հպատակեսցեն. յազատութիւն հանել տալ զմարդիկն, զի մի 'ի նոցանէ վնասեսցուք, 'ի բազում ինչ ձեռնամուխ լինել բռնադատիմք, զի և 'ի բազում ինչ իրաց է մեզ զգուշանալ. որպէս այսօր և յառաջնում անդ նուագի եկաք յօգնականութիւն զրկելոց 'ի ձէնջ, ոչ անկոչք՝ այլ հրաւիրեալք 'ի նոյն: Եւ մի արդ դատաւոր կալով ձեր գործոց մերոց և քննիչք և ուսուցիչք՝ որ դժուարինն է, 'ի կէտ եդեալ նպատակէ խորհրդոց ձերոց յեանիցէք. այլ որչափ ինչ 'ի ձեռներէց ժրութենէս և յօրինակէ գնացից մերոց շահել է ձեզ, մի տալով առնիցէք օգտել նոքօք. և հաւատայցէք, զի ոչ միայն չէ վնասակար այդ հասարակաց ամենեցուն, այլ և բազմաց 'ի Հելլենաց կարի յոյժ շահաւէտ: Զի ընդ բնաւ իսկ վայրս, և ուր չիցեմք մերձաւորք, որ խիթայն 'ի զրկանաց և որ խորամանկէ 'ի նոյն, նա՝ վերահաս ակնկալութեամբ ձեռնտու նպաստից 'ի մէնջ գտանելոյ. առ՝ յերկիւղ վտանգին 'ի խլրտելս մերում, բռնադատին հաւասար ամենեքեան՝ մին ակամայ զգօնանալ, և միւս ձրի փրկիլ: Զհասարակաց զայն ապա պատրաստական կարօտելոյն և ձեզ արդ զդիւրամատոյց աներկեանութիւն մի յանխորհուրդս մերժէք. այլ հաւասարելով այլոց ամենեցուն, փոխանակ անդուլ 'ի դողի և 'ի զգուշութեան կալոյ յերեսաց Սիրակուսացւոց, հատուսջիք նոցա ուր ուրեմն միաբան 'ի միասին ընդ մեզ չարիս փոխանակ չարեաց նոցին »:

ՁԸ. Զայս այսպէս խօսեցաւ Եւփիմոս: Այլ Կամարինեցիք զայսպիսի կալան գնացս բարեմտութեամբ ընդ Աթենացիս, ցորչափ չհամարէին զնոսա 'ի ձեռնարձակութեան տիրապետելոյ Սիկիլիոյ, և ընդ Սիրակուսացիս 'ի

խէթս էին միշտ վասն դրակից սահմանակցութեան. սակայն և երկուցեալ թէ գուցէ Սիրակուսացիք մերձաւորակք նոցա առանց իւրեանց ձեռնտու օգնականութեան յաղթողք լինիցին, առեալ արձակեցին նոցա 'ի սկզբան անդ այրուձի սակաւաւոր, և սահմանեցին այս ըստ կարի ամփոփել զձեռս իւրեանց 'ի նոցանէ. իսկ յայնժամ զի մի արհամարհել զբարեկամութիւն Աթենացւոց կարծիցին, մանաւանդ յորմէ հետէ յաջողեցան նոքա 'ի կռուին, խորհեցան միապէս հաւասար երկոցունց առնել պատասխանի։ Եւ այսպէս 'ի վճռոյ սահմանելոյ 'ի ժողովրդեանն արարին պատասխանի. և զի 'ի միջի երկոցունց ընդ նոսա դաշնաւոր ժողովրդոց էր պատերազմ, ըստ երդմնապահ ուխտին իրաւունս համարիմք, ասեն, չտալ ումեք ձեռն 'ի կռիւ. և մեկնեցան պատգամաւոր հրեշտակքն։ Մինչդեռ Սիրակուսացիք 'ի հանդերձանս պատրաստութեան մարտի էին, Աթենացիք նաւեալ 'ի Նաքսոս բանագնաց առ Սիկելացիս եկեն, ըստ կարի յաճախել նոքօք զնիզակակից դաշնաւորս։ Որք հպատակք էին Սիրակուսայ դաշտայինք 'ի Սիկելացւոց վտարանջեալ յետս կացին 'ի նոցանէ. իսկ միջերկրայքն ինքնօրէնք միշտ և յառաջագոյն իսկ ազատք, բաց 'ի սակաւուց՝ յԱթենացիս յարեցան. և բերին զօրու նոցա ցորեան, ոմանք և արծաթ իսկ։ Եւ եկին Աթենացիք 'ի վերայ չմիաբանելոյն ընդ իւրեանս, 'ի նոյն առնել զնոսա և կամ չընդունել նոցա զօր օգնական և պահանորդ 'ի Սիրակուսացւոց։ Զայն ձմեռն 'ի Նաքսոսէ 'ի Կատանիա անցեալ Աթենացիք, և զհրկէզ բանակ իւրեանց 'ի Սիրակուսացւոց վերստին կանգնեալ՝ ձմերեցին անդանօր։ Արձակեցին նաւ մի պատերազմիկ 'ի Կարքեդոն 'ի խնդիր բարեկամութեան, եթէ մարթէր և ձեռին օգնականութեան. բանագնաց և 'ի Տիւրենիս եղեն, յորում էին քաղաքք որ կամէին իսկ յօժարէին 'ի նիզակակցութիւն նոցա, հրեշտակս և առ Սիկելացիս առաքեցին շուրջ և առ Եգեստացիս ըստ ձեռին բաւականի իւրեանց յղել ձիան բազում. պատրաստեալ ժողովէին և աղիւս և երկաթ և զամենայն նիւթ կա-

րեւոր 'ի շինութիւն շրջապատուարայն, զի յերեւել գարնայնոյ սկիզբն արտայեն պատերազմի:

Իսկ որ 'ի Կորնթոս և 'ի Լակեդեմոն առաքեցան հրեշտակք Սիրակուսացւոց՝ ջանային զճանապարհայն հաւանեցուցանել զԻտալացիս մի՛ անտես առնելով անփոյթ լինել զգործովք Աթենացւոց, որոց ձախողակի էին միտք նոցա և խորհուրդք վասն հասարակաց ամենեցուն: Հասեալ նոցա 'ի Կորնթոս բանս առաջի արարին 'ի շնորհս տոհմային ազգակցութեան ձեռն կարկառել նոցա յօգնականութիւն: Եւ նախամատոյց յառաջամիտ գտան Կորնթացիք քուէիւք սահմանելովք փութալ 'ի թիկունս Սիրակուսացւոց. և ընդ հրեշտակս նոցա արձակեցին և իւքեանց դեսպանս 'ի Լակեդեմոն. որպէս զի միաբան հաւանեցուսցեն զԼակեդեմոնացիս յայտնապէս շարժել 'ի կռիւ ընդդէմ Աթենացւոց, և առաքել զօր օգնական 'ի Սիկիլիա: Ընդ դեսպանս Կորնթացւոց երեւեցաւ և Ալկիբիադէս 'ի Լակեդեմոն, որ ընդ ընկերս աքսորանաց իւրոց ելեալ 'ի նաւ մի վաճառական՝ գնաց նախ 'ի Թուրիոյ 'ի Կիւլենէ Եղէացւոց և անտի 'ի Լակեդեմոն, 'ի նոցին իսկ 'ի Լակեդեմոնացւոց հրաւիրեալ 'ի հաւատ երաշխաւորութեան, քանզի երկնչէր 'ի նոցանէ, վասն որ առ Մանտինէացիս նենգութեան գործոյն: Եւ դէպ եղև 'ի ժողովս Լակեդեմոնացւոց զնոյն աղերս թախանձանաց առաջի արկանել և Կորնթացւոց և Սիրակուսացւոց և Ալկիբիադեայ ջանալով հաւանեցուցանել զնոսա 'ի պատերազմ: Խորհեցան Պարէտքն և աւագանին հրեշտակս 'ի Սիրակուսա արձակել 'ի սրտապնդել զնոսա չզիջանել Աթենացւոց, սակայն չերեւէին այնչափ յօժարք և զօրօք յօգնականութիւն. յառաջ մատուցեալ յայնժամ Ալկիբիադ, և գրգռեալ շարժէր զԼակեդեմոնացիս բանիւքս այսոքիւք.

ԶԹ. « Հարկ է ինձ նախ որոց զանձնէս իցէ ամբաստանութիւն՝ առնել պատասխանի, զի մի 'ի խէթս զինէն ապախերտանիցէք առ 'ի չլսելոյ զօգուտ հասարակաց: Նախնեաց

իմոց առ փաստու զրկանաց երբեմն 'ի ձէնջ՝ 'ի մտերմական առանձնականութենէն հրաժարեալ, 'ի նոյն դարձայ ես վերստին, և երախտաւոր ձեզ գտայ ընդ այլս ամենայն և յարկածս անդ Պիւլեայ։ Ի հանապազորդելս իմում 'ի յօժարական բարեկամութեան ընդ ձեզ, դուք 'ի ձեռն Թըլնամեաց իմոց հաշտութեամբ դաշնաւորեալ ընդ Աթենացիս, նոցա զօրութիւն և ինձ ամօթ անարգանաց յաւելէք։ Վասն որոյ իրաւամբ շրջելով իմ յայլ խորհուրդս 'ի խնդիրս անդ Մանտինեացւոց և Արգիացւոց, և որ այլ ուրեք հակառակեցայ ձեզ, արդարև վնասել վնասեցայք յինէն։ Եւ եթէ 'ի կրեցի ոք և 'ի վշտանալ՝ յանիրաւի արդեօք ցասեաւ ընդ իս, տեսեալ արդ այժմ զյայտնի ճշմարտութիւն և հաւանեալ փոխեսցէ զկարծիս. զի եթէ չարաչար ոք զինէն խորհեցաւ, զի առաւել հակամէտ 'ի կողմն ռամկին գտայ, մի այդպէս ուղղութեամբ ինչ զչարեալ համարեսցի։ Բռնաւորաց հակառակ կացաք մեք միշտ, և որ բռնակալութեան հակառակն կայ՝ ժողովուրդ կոչի. և աստի եկաց մնաց մեզ խնամակալու թեւարկութիւն ժողովրդեան։ Եւ 'ի վարել քաղաքիս ընկերհաշտութեամբ, պարտ էր մեզ 'ի բազում ինչ իրս զհետ օրինաց տեղւոյն և կարգաց հպատակել. սակայն և այնպէս փոյթ կալաք 'ի սանձարձակ վարչութեան անդ չափով և ցածուն երևել։ Այլք ոմանք էին՝ որպէս երբեմն և այսօր իսկ, որք զամբոխն 'ի չարիս մղեցին և զիս յաքսոր դատապարտեցին։ Իսկ մեք ցորչափ 'ի գլուխ վարչութեան պետութեանս կացաք, պարտ անձին համարեցաք՝ յոր ձև և պայման յայս մեծութիւն և յազատութիւն ամբարձաւ քաղաքս, և ամենայն ոք ընկալաւ ժառանգութեամբ, զնոյն անարատ պահել։ Բայց որ վասն ռամկավարութեան բանք են, գիտեմք քաջ. որ խելս 'ի գլուխն ունիցին, և ոչ ոք աւելի թերևս քան զիս, մինչև թշնամանս անգամ կարգել զայնմանէ. այլ զծանուցեալս անմտութենէ չիք ինչ նոր ասելոյ. սակայն և փոխել զայն ոչ աներկեան թուէր, ցորչափ մօտ առ մեզ հակառակորդք 'ի վերայ կային։

Դ. « Այսուքիկ ահա պատճառք չարաչար զինէն խմանալոյ: Իսկ որ ձեզ արդ խորհելի է, և ինձ՝ եթէ աւելի ինչ գիտիցեմ՝ ասելի, լուարուք: Խաղացաք մեք նաւուք 'ի Սիկիլիա. զՍիկիլիացիս նախ ջանալ նուաճել, և յետ նոցա զԻտալացիս. անտի ապա փորձ փորձել և 'ի վերայ պետութեան Կարքեդոնացւոց. և 'ի յաջողել այսոցիկ ամենայնի, կամ ըստ մասնէ, դարձ առնել 'ի Պեղոպոնէս, շարժելով անդր զամենայն զօրութիւն Հելլենաց. վարձկանեալ և զամբոխ բարբարոսաց և Իբերացւոց և զայլոց խըժից գոռ պատերազմողաց, 'ի վերայ նաւացմերոց յաւելլով և զայլս բազումս յառատ փայտից անտի Իտալիոյ, որով և զՊեղոպոնէս փակեալ պաշարել շուրջանակի, և երկրախումբ զօրօք հասեալ ընդ ցամաք, զկէսս 'ի քաղաքաց զինու բռնութեամբ, և զայլս պատնէշ պաշարմամբ նուաճելով անաշխատ՝ յուսայաք տիրապետել այսպէս հասարակաց հելլենական ժողովրդոց: Իսկ արծաթ և պարէն 'ի լիութիւն բաւականի հանել յաշխարհացն այնոցիկ. թող որ աստի եկամուտք են մեր:

ԴԱ. « Այս էր ահա խորհուրդ արշաւանիս, զոր 'ի ճշգրիտ գիտողէս՝ որպէս ինչ խորհեցաք՝ լուայք. զոր և գործ է արդ զօրավարացն մնացելոց 'ի գլուխ տանել եթէ կարասցեն: Գիտասջիք ապա, զի եթէ չփութայք նոցին յօգնականութիւն, չկարասցեն նոքա ապրել 'ի վերահաս վտանգէն: Սիկիլիացիք թէպէտ անփորձք, սակայն եթէ միագունդ զինուորեսցին, այժմէն իսկ կարող են ինչ մի վըճարել. իսկ Սիրակուսացիք միայնակ քաղաքովին հարեալ պարտեցան, և պաշարեալք 'ի գումարակէ նաւացն Աթենացւոց՝ չկարեն խլրտել ընդդէմ զօրութեան նոցա: Եթէ 'ի բուռն անկցի միանգամ Սիրակուսա, հուպ և ողջոյն Սիկիլիա և Իտալիա նուաճեսցին. և զոր այժմ ասացի՝ ոչ յամեսցէ վտանգն գալ և 'ի վերայ ձեր: Այնպէս զի ոչ զՍիկիլիոյ է միայն խորհել, այլ և զՊեղոպոնեսեայ. եթէ ոչ վաղվաղիցէք առաքել զօրս, որոց իբրև զնաւաղն

Թիավարելով 'ի նաւս, զինեսցին անդր 'ի սպայս ապարաւորս. բայց քան զգունդս զօրու՝ լաւ համարիմ յղել անդր զայր սպարտացի իշխան և առաջնորդ նոցա, հրահանգել զզօրականն 'ի կարգ և 'ի ռազմ, և զանկամն բանադատել 'ի զինուորութիւն: Այսպէս որ այժմէն բարեկամք ձեր են քաջալերեալ խրախուսեսցին, և որ գայթ 'ի գայթի կան՝ յաներկիւղս 'ի ձէնջ յաւելուցուն: Պարտ է պնդել և զառաւի պատերազմին յայտնապէս, որպէս զի տեսեալ Սիրակուսացւոց զփոյթ խնամոյ ձերոյ՝ առկայցին 'ի կռիւ դիմամարտ, և չքաւորեսցին Աթենացիք առաքել այլ ևս օժընդակս 'ի զօրաւիգն իւրեանցայոյն: Պարտ է դարձեալ ամրացուցանել զԴեկելիա յԱտտիկէ, որ խէթ է և փուշ միշտ յաչս Աթենացւոց, զոր և 'ի մեծագոյն չարեաց պատերազմին համարին: Հաւաստեաւ ոք արդեօք վնասէ թըշնամւոյն՝ գուշակ լեալ յորմէ մեծապէս խիթայն նա, զնոյն 'ի գլուխ նորա հասուցանելով: Զի 'ի դէպ է իւրաքանչիւր ճշգրտագոյնս գիտելով զիւր աղէտս, անտի ահիւ դողայցէ: Եւ որպիսի՞ շահ ձեզ յամրոյս աստի՝ և նոցա խոչընդոտն խափանարար. 'ի բազմաց զկարևորագոյնսն գլխաւորելով, յագարակաց նոցա, ասեմ, արդիւնք ինքնակամ կամ բռնի առ ձեզ եկեսցեն. և 'ի Լաւրեայ արծաթահանացն զեկամուտս և որչափ ինչ 'ի կալուածոց երկրի և 'ի դատարանաց ատենից շահեն նոքա՝ վրիպեալ կորուսցեն. մանաւանդ որ 'ի դաշնաւորաց տուրք հարկաց են՝ նուազեսցին, որոց տեսեալ զնոսա նեղեալս յերեսաց զինուց ձերոց, արհամարհեսցեն զնոսա:

ՂԲ. «Եւ զի ընդ փոյթ և մասգիւրագոյնս 'ի գլուխ ելցեն ինչ ինչ 'ի խորհրդոց ասացի իմոց, ձեզ է այն ապատան, ո՛ Լակեդեմոնացիք. զի ընդ անվրէպ խորհուրդս իմ և ընդ հնարաւորութիւն իւրին վստահ եմ ամենևին: Ոչ ուժեք 'ի ձէնջ 'ի չար ինչ կարծիս զինէն լինել աղաչեմ. զի հայրենասէր երևելով իմ երբեմն՝ ընդ ոխերիմ թշնամիս նորա արդ միաբանիմ ցասմամբ. և մի՛ ոք ընդ բանս իմ երկ-

մուցէ իբրու 'ի տարագիր զպայրագնելոյ Թելադրեալ: Տարագնաց 'ի չարութենէ որոց զիս հալածեն, այլ ոչ և 'ի ձերոց օգտից ձեռնթափ, եթէ առնալ ինչ կամիցիք: Անագորյնք նոքա են, որք ոչ իբրև զձեզ հակառակորդաց երբեմն վնասեցին, այլ որ զբարեկամս 'ի Թշնամիս փոխել բռնադատեցին: Հայրենասէր գտանիմ, ոչ յորում անիրաւեալ զրկեցայ, այլ յորում անքոյթ քաղաքավարեցայ. և չհամարիմ գնալ 'ի վերայ հայրենեաց և քաղաքի որ կայն. այլ 'ի խնդիր խախտելոյն և կորուսելոյն ընթանամ: Ճըշմարտութեամբ հայրենասէր ոչ այն ոք է, որ 'ի կորուսանելն զայն յանիրաւի՝ լռեալ դադարիցէ, այլ որ առ սիրոյ փութոյն զամենայն հնարս հնարիցէ 'ի ձեռս բերել զնոյն վերստին: Եւ վասն այսորիկ իսկ աղաչեմ զձեզ, Լակեդեմոնացիք, անկասկած վարել զիս 'ի վտանգս և յաշխատութիւն, զի ըստ հասարակաց առածին, եթէ իբրև Թշնամի 'ի բազում ինչ իրս վնասեցի ձեզ, արդ որպէս բարեկամ շատ իսկ օգտակար եղէց, զԱթենացւոյն գիտելով զամենայն հաւաստեաւ և զձերդ գուշակելով: Եւ դուք արդ զծանունց և զկարևորաց ունելով խորհել, մի դանդաղիք զօրս 'ի Սիկիլիա և յԱտտիկէ արձակել, զի ժամանեալ միանգամ այդր փոքու ձեռամբ, մեծ փրկութիւն գործիցէք. զԱթենացւոց զայժմեան և զառյապայ զօրութիւն քակտեսջիք. և յետ այնորիկ բնակեսջիք անքոյթ, և բոլորից Հելլենաց՝ ինքնակամ և ոչ բռնաբար ընդ ձեօք բարեմտելոց՝ կացջիք 'ի գլուխ առաջնորդութեամբ »:

ԴԳ. Զայսոսիկ Ալկիբիադէս ասաց: Իսկ Լակեդեմոնացիք յառաջագոյն իսկ զէն առնուլ ընդդէմ Աթենացւոց խորհելով՝ դիպող ժամու մնային. իբրու 'ի տեղեկագունէն լուեալ զայս ամենայն վառեցան պնդեցան 'ի խորհուրդըս, ուշ կալան 'ի շինութիւն Դեկելիայ, և յղել փութով օգնութիւն Սիկիլիոյ և զԳիլիպպոս Կղէանդրեան 'ի զօրավար Սիրակուսացւոց՝ հրաման տալով նմա միաբան ընդ նոսա և ընդ Կորնթացւոց գործել, մինչև 'ի պատրաստից

անտի հասուցեն նմա վող զօր 'ի Թիկունս: Իսկ Գիլիպպոս երկուս միայն նաւս խնդրեաց 'ի Կորնթացւոց յղել նմա յԱսինէ, և զայլս խոստացեալն պատրաստեալ 'ի ժամուն հանել 'ի ճանապարհ. զայս այսպէս յարմարեալ մեկնեցան նոքա 'ի Լակեդեմոնեայ : Եհաս 'ի ժամանակին և պատերազմիկ նաւն Աթենացւոց 'ի Սիկիլիոյ յղեալ 'ի զօրավարաց անտի նոցա 'ի խնդիր արծաթոյ և այրուձիոյ. և լուեալ ժողովրդեան զայդ, սահմանեցին ժողովել առաքել զխնդրեալ նպաստն, համբարս և զօր հեծելազօրուց: Վախճան եղև ձմերայնոյ և կատարած եօթնևտասներորդ ամի պատերազմիս, զոր գրեաց Թուկիդիդէս:

ՂԴ. Ի գալ ամարայնոյս 'ի բանալ գարնան՝ որք 'ի Սիկիլիա էին Աթենացիք ամբարձեալք 'ի Կատանեայ զափամբ գնալով նաւեցին 'ի Մեգարա Սիկիլիոյ. զորոյ զբնակիչսն վարեալ Սիրակուսացիք առ Գելոնիւ բռնաւորաւ՝ որպէս 'ի վեր անդր ասացի, կալեալ էին զերկիրն: Ելեալ Աթենացւոց 'ի ցամաք ապականեցին զերկիրն. հասեալ և 'ի վերայ միոյ յամրոցայն Սիրակուսացւոց և չկարացեալ առնուլ զայն, 'ի գետաբերան անդր Տերեայ մղեցին զարշաւանն՝ երկրախուռն զօրօք և նաւատորմաւ զծովեզերբ գնալով. աղարտ վարեցին զդաշտավայրս և զցորեանն հրձիգ արարին. և հանդիպեալ ջոկատու միոյ զօրու Սիրակուսացւոց, կոտորեցին զոմանս 'ի նոցանէ, և նշան յաղթութեան կանգնեալ դարձան 'ի նաւս: Անցին անտի 'ի Կատանէ, և պաշար զօրուն առարեալ՝ միագունդ չուեցին 'ի Կենտորիպա քաղաք փոքրիկ Սիկելացւոց, և առեալ զայն դաշամբ խաղաղութեան, և 'ի հուր մատնեալ զհունձս Ինեսսացւոց և Հիբլէացւոց՝ մեկնեցան: Եւ հասեալ 'ի Կատանէ գտին զհեծելազն հասեալ յԱթենայ զարս երկերիւր և յիսուն, սակայն աներիվար, զկազմածս հեծելութեան միայն ընդ իւրեանս բերելով, զի իցէ նոցա գտանել 'ի Սիկիլիա ձիան բաւական, և երեսուն հեծեալ աղեղնաւոր և երեքհարիւր տաղանդս արծաթոյ:

ՂԵ. Ի գարնանի արշաւանս եգին Լակեդեմոնացիք յԱրգոս խաղալով մինչև 'ի Կլէոնացիս, և 'ի լինել սասանութեան երկրի՝ մեկնեցան: Եւ Արգիացիք ասպատակեալ մինչև 'ի Թիւրէատիս 'ի սահման երկրի իւրեանց, և 'ի բազում արարոցն զոր առին 'ի Լակեդեմոնացւոց՝ վաճառեալ հանին գինս ոչինչ նուազ քան զքսան և հնգից տաղանդաց արծաթոյ: Ի նմին ամարանի ոչ բազմաց ինչ զկնի խլրտէր ապստամբութեամբ ժողովուրդն Թեսպիացւոց ընդդէմ իւրեանց աւագանւոյն, և չկարացին ձեռն 'ի նոսա արկանել. ժամանելով Աթենացւոց յօգնութիւն նոցուն, ոմանք յիշխանացն ձերբակալ եղեն և այլք յԱթէնս անկեալ ապրեցան:

ՂԶ. Առ սովին 'ի սմին ամարանի իբրև լու լինէր 'ի Սիրակուսս գալուստ նորոյ հեծելազին Աթենացւոց և պատրաստութեան նոցուն ընդ հուպ խաղալոյ՝ 'ի վերայ քաղաքին, վստահք սոքա եթէ մինչև տիրեալ Աթենացւոց Եպիպոլեայ՝ բարձու սեպացելոյ 'ի գլուխ քաղաքին, և յաղթողաց անգամ պատերազմաւ չէր դիւրին պատնէշ պաշարմամբ փակել զնոսա. վասն որոյ խնամ կալան զգուշանալ 'ի թշնամւոյն զանխուլ ելս 'ի նոյն, ուր այլուր ամենևին անմատոյց էր վայրն: Եւ արդարև վերամբարձ էր տեղին զառ 'ի կողեալ մինչև 'ի քաղաքն, հոլանի ունելով զամենայն 'ի տեսիլ որ 'ի ներքս 'ի քաղաքամիջի էր, վասն այնորիկ և Եպիպոլէ (վերնաքաղաք) կոչեցաւ 'ի Սիրակուսացւոց, զի 'ի գագաթ բովանդակ քաղաքին վերամբառնայր: Ելեալ նոցա համագումար զօրօք 'ի մարգագետին առ գետեզերբ Անապայ ընդ առաւօտն յարևածագս, Երմոկրատէս և իշխանակիցք նորա 'ի գլուխ զօրուն. և հանդէս արարեալ զատուցին գունդ մի ընտիր եօթնհարիւր սպայից, և իշխան նոցա Դիոմիլոս տարագիր յԱնդրեայ՝ կարգեալ 'ի պահանորդս Եպիպոլեայ, ուր եթէ և այլ ուրեք պէտք լինիցին՝ ընթանալ նոցա միաբան 'ի միասին 'ի պահ. զգուշութեան:

ՂԷ. Ի վաղիւն և Աթենացիք հանդէս արարեալ զօրուն մեկնեցան անտի 'ի Թշնամեաց ողջոյն բանակաւն 'ի Կատանիայ, և եկեալ ելին 'ի ցամաք 'ի տեղւոջ՝ որ անուանեալ կոչի Լէոն, վեց կամ եօթն ասպարիսաւ հեռի յԵպիպոլեայ, մինչդեռ նաւախումբն 'ի Թափսոս խարիսխ արկեալ դադարէր, 'ի ցամաք կղզւոջ՝ երկայնելոյ 'ի ծովն անձուկ պարանոցաւ, ոչինչ հեռի 'ի Սիրակուսայ ընդ ծով և ընդ ցամաք: Իբրև նաւական բանակ զօրուն Աթենացւոց չերտափակ ամրացեալ նստէր 'ի պարանոցին 'ի Թափսոս, հետևակախումբն մեծարշաւ գնացին դիմեալ յԵպիպոլիս հասին յելս Եւրիելեայ, չև զգացեալ զոյն Սիրակուսացւոց 'ի պատճառս զօրահանդիսին առ գետեզերբն 'ի դաշտավայրին: Ճեպեցին փութացան նոքա տագնապաւ ամենեքեան, և որ ընդ Դիոմիլեաւ էին եօթնհարիւրքն, որոց 'ի դաշտավայրէն առ Թշնամին հասանելոյ առաջի կայր նոցա ճանապարհ առնել ոչ ինչ նուազ՝ քան զքսան և հինգ ասպարիսաց: Այսպէս խառն 'ի խուռն՝ անկարգ և անռազմ դիմեալ Սիրակուսացիք՝ խորտակեցան առ Եպիպոլեաւ և ընկրկեալ մտին 'ի քաղաքն. կորեաւ Դիոմիլոս և երեքհարիւր այր ընդ նմա: Յետ այնորիկ նշան յաղթութեան կանգնեալ Աթենացիք, և զմեռեալսն թողեալ պայմանաւ 'ի Սիրակուսացիս, 'ի վաղիւն իջեալ մերձեցան 'ի քաղաքն. այլ իբրև տեսին թէ չելանէր ոք ընդդէմ նոցա, դարձան անտի յետս: Եւ կառուցին ամրոց 'ի Լաբդալոն 'ի կատարած դահաւանդին Եպիպոլեայ հանդէպ Մեգարայ, զի իցէ նոցա այն 'ի շտեմարան մթերից կահուց և կարասեաց և կարևորաց ամենայնի, 'ի կռուել նոցա ընդ Սիրակուսացիս 'ի մօտոյ, և կամ 'ի փակել պաշարել զնոսա:

ՂԸ. Եւ դային հասանէին նոցա վաղվաղակի այրուձի յԵգեստեայ երեքհարիւր. 'ի Սիկելացւոց և 'ի Նաքսիացւոց և յայլոց հարիւր մի, զի երկերիւր և յիսուն հեծելազն էր Աթենացւոց աներիվար, առին և վասն նոցա

ձիան՝ կէս մի յԵգեստացւոց և 'ի Կատանացւոց, և կէս մի գնոց արծաթոյ. և ընդ ամենայն միահամուռ գումարեցան 'ի վեցհարիւր յիսուն տրևձի: Պահանորդս 'ի Լապդալոն եդեալ՝ խաղացին Աթենացիք 'ի Սիքէ, և նստեալ զնովաւ փութանակի փակեցին զայն շրջապատնէշ պարսպաւ, և երագութեամբ գործոյն ահ մեծ արկին 'ի Սիրակուսացիս: Որոց առ 'ի խափանել զգործն ելեալ յարձակմամբ 'ի քաղաքէն, և կամէին ճակատել 'ի կռիւ. այլ տեսեալ զօրավարաց զվայրատել զօրուն՝ և դժուարին լինել 'ի ռազմ, ամփոփեցին զնոսա վերստին 'ի քաղաքն, բաց 'ի վաշտուց հեծելազօրուն, որք ոչինչ կացեալ խափան լինէին Աթենացւոց մի՛ 'ի հեռաւորս յոյժ սփռել առ հաւաքելոյ քարինս. բայց և 'ի վերայ սոցա անկեալ գունդ մի տապարաւոր զօրու Աթենացւոց հեծելովք հանդերձ, և զոմանս կոտորեալ 'ի նոցանէ՝ զայլս հալածական տարան, և իբրև յաղթողք հեծելամարտին նշան կանգնեցին:

ՂԹ. Իսկ յաւուրն երկրորդի կէսք 'ի զօրուէն Աթենացւոց 'ի շինութիւն մասին պատուարացն՝ որ 'ի հիւսիսոյ շրջապատնիշաց ձգէր՝ պարապէին. այլք ժողովելով քարինս և կոճեղս ծառոց բերեալ կուտէին 'ի տեղւոջն՝ որ Տրովկիլոս կոչի. կարճագոյն էր նոցա այս ամրութիւն՝ 'ի մեծէ նաւահանգստէն մինչև 'ի ծովն՝ որ հանդէպ կայ: Սիրակուսացիք ըստ խորհրդոյ զօրավարաց իւրեանց և Երմոկրատեայ սահմանեցին ոչ ևս այլ քաղաքօրէն 'ի կռիւ գալ, լաւ համարելով ամբառնալ նոցա հակառակ ընդդիմապատնէշս՝ ախիղբն արարեալ 'ի տեղւոյն, ուստի Աթենացիք ձգէին զիւրեանցն. յորում եթէ յաջողէին ըստ ժամուն, հասեալ փակէին զթշնամեաց անցս: Եւ 'ի յարձակել անդր Աթենացւոց՝ զմասն զօրուն ընդդէմ նոցա հանեալ, խորհէին հասանել ունել զանցս ցցապատնիշին. և այսպէս ստիպել զթշնամին թողեալ զգործն միախուռն ելանել 'ի կռիւ: Եւ ելեալ ախիղբն արարին շինութեան որմոյ պատուարին՝ որ 'ի քաղաքէ անտի նոցա և 'ի ստորև շրջա-

պարսպին Աթենացւոց սկսեալ ձգէր խոտորնակի. և հա-
տանելով զձիթենիս սրբավայրին՝ աշտարակս փայտեայս
կանգնէին: Եւ զի չև էին եկեալ նաւք Աթենացւոց 'ի
Թափսեայ 'ի մեծ նաւահանգիստն, վասն որոյ հզօրք էին
տակաւին Սիրակուսացիք 'ի ծովէ, և Աթենացիք տային
բերել զամենայն կարևորս զօրուն 'ի Թափսեայ ընդ ցա-
մաք:

Ճ. Խորհէին Սիրակուսացիք չատ լոկ յաջողեալ 'ի
գործ ցցապատնիշին և 'ի շինութիւն ընդդիմապարսպին,
զի չշարժէին Աթենացիք 'ի խափանել զգործն, երկուցեալ
թէ 'ի բաժանել զօրութեան իւրեանց՝ դիւրաւ ըմբռնես-
ցին 'ի կռիւ. և միանգամայն փութային 'ի լրումն իւրեանց
շրջապարսպին, ուստի թողեալ Սիրակուսացւոց գունդ մի
'ի պահ շինուածոյն՝ մեկնեցան նոքեանք 'ի քաղաքն: Աւե-
րեալ ապականեցին Աթենացիք զամենայն ագուգայս՝ որ
ընդ երկրաւ ածէր նոցա ջուր ըմպելի 'ի քաղաքն. և տե-
սեալ զի ոմանք 'ի պահանորդաց Սիրակուսացւոց նստէին
'ի վրանս իւրեանց 'ի միջօրէին և ոմանք 'ի քաղաքն գնա-
ցեալ, և որք առ ցցապատնիշին յանհոգս կային, արձակե-
ցին գունդ մի երեքհարիւր յայրընտիր զօրուէն, և մեկնա-
կաղէնս անդակաղմս հասանել ունել յեղակարծում զընդ-
դիմապարիսպն. և միացեալ զօրուն յերկուս զատուցեալ
յառաջն՝ կէսն 'ի քաղաքն կոյս խաղայր առաջնորդու-
թեամբ միոյ ուրուք 'ի զօրավարաց՝ ընդդէմ որոց եթէ
խլրտեսցին անտի 'ի Թիկունս պահանորդացն. և միւս կէսն
ընդ այլում զօրավարի յառաջէր 'ի ցցապատնէշն կոյս որ
առ փոքու դրամբ: Հասեալ երից հարիւրոց կալան զպատ-
նէշն, զոր թողեալ պահնակ զօրուն փախեան 'ի պատուար-
ըն առ Տեմենտեայ. զհետ պնդեցաւ սոցա զօրն յաղթա-
կան, թէպէտ մտանել մաւին ուքս 'ի ներքս, այլ բուռն զօ-
րութեամբ 'ի բաց վանեցան 'ի Սիրակուսացւոց. յորում
և անկան սակաւք ոմանք յԱրգիւացւոց, անտի և յԱթե-
նացւոց: Դարձ արարեալ անտի ողջոյն բանակ զօրուն,

քանդեալ աւերեցին զընդդիմապարիսպս Սիրակուսացւոց. քակեցին և զչերտաւոր պատուարսն, տարան և ցցեցին 'ի բանակս իւրեանց և նշան յաղթութեան կանգնեցին:

ԾԱ. Ի վաղւեն ամրացուցին Աթենացիք 'ի շրջապարըսպէն սկսեալ զտա 'ի Թափսն' որ ձգի 'ի մօրուտս, և որ 'ի կողից Եպիպօլեայ 'ի մեծ նաւահանգիստն կոյս հայի. ընդ որ միանգամ իջեալ համառօտագոյն ճնայր նոցա խարոց ամրացուցանելոյ ընդ դիւր տափարակն և ընդ մօրուտս մինչև 'ի նաւահանգիստն: Եկին յայնժամ և Սիրակուսացիք կանգնել այլ նոր պատնէշ չերտաւոր, որ սկիզբն առեալ 'ի քաղաքէն ձգէր ընդ մօրուտս, պեղէին և խրամս առ 'ի խափանելոյ զամրութիւնս Աթենացւոց չընդարձակել մինչև 'ի ծով: Իբրև աւարտեցին Աթենացիք զգործ շինութեան 'ի կողս զառ 'ի վայրին, խորհեցան դառնալ յարձակել վերստին 'ի վերայ պատնիշին և խրամս Սիրակուսացւոց. հրաման ետուն գումարտակի նաւաց գալ 'ի Թափսեայ 'ի մեծ նաւահանգիստն Սիրակուսայ, և ինքեանք ընդ արշալուրշն իջեալ յԵպիպօլեայ 'ի դաշտավայրն, և ընդ մօրուտս ճահճին' ուր տղմուտ էր և առաւել տրամ' եդեալ 'ի վերայ դրունս և տախտակս անցին յայնկոյս. և ընդ ծագել աւուրն հասեալ կալան զպատնէշս և զխրամս, բաց 'ի սակաւուց՝ զորս ընդ հուպ առին և զայնոսիկ: Հարեալ անդ պատերազմաւ յաղթողք գտան Աթենացիք. և որ զաջ թև գնդին ունէին Սիրակուսացիք խորտակեալ 'ի կողմն կոյս քաղաքին փախեան, իսկ ահեկինքն 'ի գետն կոյս. զորոց առ 'ի խափանել զանցս անձապարեցին երեքհարիւր ընտիրքն յԱթենացւոց հասանել ունել զկամուրջն: Զահի հարան Սիրակուսացիք, և զի բազմութիւն հեծելազօրու նոցա մօտ էր 'ի տեղին, խոյացան նոքա միագունդ 'ի վերայ երեքհարիւրոցն և վանեալ զնոսա' անկան և 'ի վերայ աջոյ թևոյն Աթենացւոց, յորոց 'ի բուռն յարձակմանէն սասանեցաւ առաջապահ գունդ թևոյն. զայս տեսեալ Լամաքոս 'ի ձախմէն' դիմեաց անդր

աղեղնաւորօքն ոմամբք և Արգիացւովք, և անցեալ ընդ խրամ մի սակաւուք միայն արամբք, անկաւ ինքն մեռեալ և հինգ կամ վեց ընկերք նորա ընդ նմա: Զասին անդր Սիրակուսացիք յափշտակել զդիակունս նոցա 'ի տեղի անքոյթ յայնկոյս գետոյն. բայց 'ի գալ յարձակել զօրուն Աթենացւոց՝ տեղի տուեալ մեկնեցան:

ԾԲ. Յայնմ պահու որ 'ի սկզբան փախստեայք գնային 'ի քաղաքն՝ տեսեալ զեղեալսն ձայն ետուն միմեանց ելանել գումարել ընդ ընկերս հակառակամարտ Աթենացւոց. զկէս մի զօրուն արձակեալ 'ի շրջապարիսպն 'ի վերոյ Եպիպօլեայ, յուսով 'ի բուռն առնուլ անաշխատ զվայրն մարդաթափ յայնժամ. և արդարև կալան զնախապարիսպըն տասնըծվարեան (δεκάπλεθρον) և քակեալ աւերեցին. այլ հասեալ 'ի շրջապարիսպն արգելան 'ի Նիկիասայ, որ առ խօթութեան անդ էր 'ի տեղւոջն: Եւ հրաման ետ Նիկիաս ծառայից իւրոց հուր 'ի մեքենայս արկանել և 'ի շեղջակոյտս փայտից որ առ որմովք պարսպացն, զի ետես անհնարին գոլ առանց զօրականի այլով իւիք ապրել: Եւ յաջողեցաւ նմա այն, զի ոչ ևս յառաջ մատուցեալ Սիրակուսացւոց ընդդէմ բոցոյ հրդեհին, տեղի ետուն անտի. քանզի և գունդ մի աթենացի 'ի դաշտավայրէն ելանէր յօգնութիւն շրջապարսպին հալածական տանելով զթշնամին. դէպ եղև յայնժամ և նաւատորմղին ըստ հրամանին եղելոյ առ նա, գալ մտանել 'ի մեծ նաւահանգիստն: Զայս իբրև ետես 'ի բարձուէն զօրն Սիրակուսացւոց՝ վաղվաղակի նահանջեալ ամփոփեցաւ վերստին 'ի քաղաքն. զի ոչ ևս այլ այնուհետև ակն ունէին առձեռն զօրօքն կարել արգելուլ զշինութիւն պարսպին մինչև 'ի ծով:

ԾԳ. Յետ այսորիկ նշան յաղթութեան կանգնեալ Աթենացւոց և թողեալ 'ի Սիրակուսացիս զմեռեալս նոցա, ընկալան և նոքեանք զիւրեանցն, զԼամաքեայ և զընկերաց նորա: Եւ այնուհետև մօտ ունելով նոցա զնաւական և զցամաքախումբ զօրութիւն իւրեանց ձեռն արկին կրկնա-

կի պատուարաւ փակել զՍիրակուսա սկսեալ յԵպիպօլեայ և 'ի կողից ղաւ 'ի Թափին մինչև 'ի ծով: Եւ համբարք և ամենայն պէտք կարևորք զօրուն գային 'ի կողմանց կողմանց Իտալիոյ. և Սիկելացիք որ դանդաղէինն ցայնժամ 'ի դաշնաւորութիւն, շարժեցան և 'ի նոցանէ բազումք 'ի նիզակակցութիւն. և 'ի Տիւրռենեայ եկին երեք պատերազմիկ նաւք յիմնաթի. և ըստ յուսոյ ակնկալութեան նոցա յաջողէր ամենայն մինչև ոչ ևս այլ ակն ունել Սիրակուսացւոց փրկութեան և յուսոյ ապրանաց: Եւ զի չէրևէր նոցա ուստեք օգնականութիւն 'ի Պեղոպոնեսեայ, քանս 'ի մէջ առնուլին նոքա այնուհետև խօսելոյ 'ի հաշտութիւն, և բանագնաց իսկ առ Նիկիաս լինէին, որ զկնի մահուն Լամաքոսի՝ միայնակ ունէր զիշխանութիւն զօրավարութեան: Սակայն որպէս 'ի դէպ է մարդկան տարակուսելոյ և 'ի նեղութեան պաշարելոց, ոչ մի ինչ հաստատութեամբ սահմանէր 'ի նոսա. բազում ինչ առաջարկութիւնք առ Թշնամին լինէին, և բազմադոյնք 'ի ներքս 'ի քաղաքին յիւրեանս: Զի և 'ի վերահաս աղէտս չարեաց 'ի կարծիս կասկածանաց զմիմեանց խիթային, և զզօրավարսն՝ ընդ որովք այս ամենայն դէպ լինէր՝ յիշխանութենէ պատուոյն արկանէին, որպէս եթէ առ չարաբախտ չարաբաստութեան նոցա, կամ առ մատնութեան զխաս կրեալ, և զայլս փոխանակ կարգէին, զՀերակղիդէս, զԵւկղէս և զՏեղլիաս:

ԾԳ. Իսկ Գիլիպպոս Լակեդեմոնացի և 'ի Կորնթեայ առաքեալ նաւք վաղ իսկ 'ի Լեւկաս էին հասեալ, գալ անտի ընդ հուպ յօգնութիւն Սիկիլիոյ: Եւ զի համբաւ չարագոյժ բազմապատիկ իսկ սաստութեամբ լու առ նոսա լինէր, իբրու եթէ իսպառ Սիրակուսայ պաշարեալ, և ոչ մի ինչ յոյս փրկութեան ունելով այնուհետև Գիլիպպեայ զՍիկիլիոյ՝ կամէր զԻտալիա գոնեա ապրեցուցանել, անձապարեալ անց ինքն և Պիւթէն կորնթացի երկու Լակոնացի և կորնթացի նաւուք ընդ նեղուցն Յոնիական գնալ 'ի Տա-

րենտոն։ Կորնթացիք յուղեալ 'ի վերայ լուրեանց տա-
սանցն և այլ ևս երկուս նաւս Լեւկադացւոց և երիս Ամ-
բրակիացւոց, խորհէին անտագան ուրեմն ելանել 'ի Ճանա-
պարհ։ Իսկ Գիլիպպոս 'ի Տարենտեայ հրեշտակութեամբ
'ի Թուրիա եկեալ, 'ի յուշ իրաւանց քաղաքակցութեան
ընդ նոսա՝ զոր երբեմն հօր նորա ընկալեալ էր 'ի նոցանէ,
և ոչ կարելով յիւր կողմն զնոսա ձգել՝ ել անտի. և մինչ
զափամբ Իտալիոյ գնայր՝ յափշտակեցաւ 'ի հողմոյ առ Տե-
րինեան[1] ծոցին, ուր ուժգին շնչէ հիւսիս, և վարեցաւ 'ի
խորս. և ձմերունս կրելով անհնարինս՝ անկաւ վերստին 'ի
Տարենտոն, և զնաւս հողմակոծս խախտեալս հանեալ 'ի
ցամաք նորոգէր։ Լուեալ Նիկիայ եթէ Գիլիպպոս 'ի ծո-
վու է, ունչս իմն առնելով արհամարհեաց զթուով նաւաց
նորա, որպէս և Թուրիացիք՝ հինաբար ասելով գնալ նորա
ընդ ծով՝ ոչ զգուշացան 'ի նմանէ։

ՁԵ. Ի սմին յայս ամարանիս առ սովիմբ մտին ասպա-
տակաւ Լակեդեմոնացիք յԱրգոս ինքեանք և դաշնակիցք
նոցա, և ապականեցին զկէս կողմն մի երկրին։ Հասին Աթե-
նացիք երեսուն նաւուք յօգնութիւն Արգիացւոց, որով և
յայտնապէս լուծան դաշինք խաղաղութեան ընդ նոսա և
ընդ Լակեդեմոնացիս։ Թէպէտ կանուխ իսկ ելանէին Աթե-
նացիք ասպատակաւ 'ի Պիւղեայ, և միաբանութեամբ ընդ
Արգիացիս և ընդ Մանտինէացիս թշնամաբար աւերէին
զկողմանս կողմանս Պելոպոնեսեայ, այլ ոչ մտեցան երբէք 'ի
Լակոնիա, և աստէպ թախանձեալ յԱրգիացւոց 'ի սոյն,
գոնեա զկողմն մի երկրին հարկանել՝ չառին յանձն. բայց
իջեալ յայնժամ ընդ զօրավարութեամբ Պիւթոդորայ,
Լեսպոդեայ և Դեմարատոսի յԵպիդաւրոս Լիմերայ, 'ի
Պրասիա և այլուր ասպատակաւ, յայտնապէս իրաւունս

[1] Եղեն որ զՏերինէ կամեցան Տարենտոն ընթեռնուլ, զի ընդ հա-
րաւ կոյս նաւէր Գիլիպպոս, և Տերինէ 'ի հիւսիսակողմն անկանի
կղզւոյն. որով կամ գրչաց սխալել ասացին կամ պատմագրին
վրիպել։

եսուն Լակեդեմոնացւոց վրէժխնդիր յառնելոյ և հակառա-կամարս: Յետ մեկնելոյ Աթենացւոց նաւախմբին յեր-կրէն Արգեայ, հեռանալոյ և Լակեդեմոնացւոց, մտին Ար-գիացիք 'ի Փլիասիս, աւերեցին զերկիրն, սպանին և զո-մանս 'ի բնակչացն, և դարձան յերկիր իւրեանց: